ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃՀԲ.

# ԲԱՂԷՇԻ ԴՊՐՈՑԸ

1500—1704

ՆՊԱՍՏ ՄԸ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ
ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1952

# DIE THEOLOGISCHE SCHULE VON BITLIS

## EIN BEITRAG ZUR ARMENISCHEN KIRCHENGESCHICHTE UND LITERATUR

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN

MECHITHARISTEN-BUCHDRUCKEREI

1952

# ԲԱՂԷՇԻ ԴՊՐՈՑԸ

**1500—1704**

ՆՊԱՍՏ ՄԸ ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑԻՈՅ
ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԵՒ ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԵԱՆ


ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ







**ՎԻԷՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1952

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Հայ Մշակոյթի պատմութեան մէկ դրուագը նկատի ունի հատորս. Բաղէշի Դպրոցը ԺԶ եւ ԺԷ դարուն։ Դպրոցիս պատմութիւնը չէր ունեցած իր մանրաքննին ուսումնասիրողը։ Եւ երբ առաջին անգամ ես համարձակեցայ ձեռնարկել այս աշխատութեան, կ'ենթադրեմ թէ պիտի ունենայ այն իր թերի կողմերը։ Աշխատասիրութիւնս յեցած է ձեռագրական Յիշատակարաններու վրայ, զորոնք հաւաքած եմ տպագիր եւ ձեռագիր աղբիւրներէ, որքան անոնք տրամադրուեցան ինձ տեսնել եւ օգտուիլ։

Աշխատեցայ կազմել Դպրոցիս գլխաւոր գործիչներու կենսագրութիւնները, մատնանշել անոնց աշակերտները, վեր հանել անոնց գրական արտադրութիւնները։ Այսպէս ստացաւ Աշխատութիւնս եկեղեցապատմական եւ մատենագրական նկարագիր։

Ինչպէս շրջանիս Հայոց Եկեղեցւոյ պատմութիւնը, որ այնքան մութ էր, նոր դէմքերով պայծառացաւ, նոյնպէս Հայոց գրականութեան պատմութիւնը ունեցաւ ծանօթ եւ անծանօթ մատենագիրներու կենսագրութեան եւ մատենագրութեան շուրջը նոր լոյս։

Անշուշտ շատ աւելի մեծ պիտի ըլլար, եթէ ինծ օժանդակութիւն եւ բարեացակամութիւն բերուած ըլլար ձեռագրական Հաւաքածոյքներէն աւելի շատ օգտուելու: Համոզուած եմ, որ շրջանիս մէջ աւելի թուով մատենագիրներ ծաղկած են եւ ծանօթ մատենագիրները աւելի արտադրած են: Ինչ որ ինծ չյաջողեցաւ վեր հանել, կը մաղթեմ որ յաջողէր ուրիշներուն, միշտ ի պարծանս հայ Մշակոյթին:

Աշխատասիրութիւնս լոյս տեսած էր մաս առ մաս «Հանդէս Ամսօրեայ» հայագիտական ուսումնաթերթին մէջ (1951, էջ 172—238, 289—323, 497—516. 1952, էջ 17—66, 187—212, 404—414): Արտատպութիւնս կրած է ինչ ինչ մանր փոփոխութիւններ եւ ճշդումներ. նոր են հոս § 9 (Յովհ. Երզնուեցիս[1]) եւ § 15 (Սիմէոն Ապարանեցի) եւ Յաւելուածը:

Վիեննա 5 Հոկտ. 1952:

ՀԵՂԻՆԱԿԸ

---

[1] Նախ հրատարակուած Հանդ. Ամս. 1937, էջ 210—215:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Էջ

# ԲԱՂԷՇԻ ԴՊՐՈՑԸ

## 1500—1700

### 1. ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒ ԱՐԵՒՄՏԵԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

*Տասնըհինգերորդ դարու վերջին քառասնամեակին Երզնկայի Աւագ եւ Կապոսի վանքերու մէջ ծաղկած էր Յովհաննէս Վ. Համշենցի. որ բացած էր այն տեղ համալսարան մը, ուսկից բողբոջեցան ապա բազմաթիւ վարդապետներ: Յովհաննէսի մահէն ետքը* († 1497) *խամրեցաւ այդ համալսարանը: Բայց իր աշակերտներէն երկուքը, Թորոս Տարօնեցի եւ Գրիգոր Արճիշեցի բացին նոր Դպրոցներ, «համալսարաններ», Տարօնի Ս. Առաքելոց վանքին եւ Արճէշի մէջ, որոնք կազմեցին այսպէս կոչուած Արեւելեան եւ Արեւմտեան վարդապետարանները: Արեւելեանը Գրիգոր Արճիշեցւոյ վարդապետական սերունդէն ծաղկեցաւ Բաղէշի մէջ, Արեւմտեանը՝ նախ Տարօնի Գլակայ վանքին մէջ եւ ապա Ամիդ եւ Ուրհա:*

*Այդ կրկին Վարդապետաններէն ընձուղեցան բազմաթիւ վարդապետներ, որդւոց յորդի, որոնք տարածուեցան հայաբնակ գաւառ-*

ներ, գործեցին իբրեւ քարոզիչներ, կարգաւեցան առաջնորդներ վանքերու, եկեղեցիներու, նոյն իսկ կաթողիկոսական աթոռներու. ուսուցին, հովուեցին եւ լուսաւորեցին Հայ ժողովուրդը հոգեպէս եւ մտաւորապէս, այն պատերազմաշատ եւ բազմավրդով դարերուն, եւ հանդիսացան միաժամանակ ազգային մշակոյթին, նախնեաց գրաւոր մնացորդներուն պահապաններ եւ արծարծիչներ:

Անոնք ջանք տարին աւելի հոգելից քարոզիչներ եւ իմաստուն առաջնորդներ մատակարարել Հայ Եկեղեցւոյ եւ Հայ ժողովուրդին, քան մատենագիր հեղինակներ: Անոնք քրքրեցին Վանքերու եւ Եկեղեցիներու դարակները, վերհանելու նախնեաց գրաւոր մնացորդները, արտագրութեամբ աճեցնելու անոնց թիւը եւ ընդհանուրին մատչելի ընելու զանոնք: Կազմեցին Մատենադարաններ: Ուշադրութիւն դարձուցին ոչ միայն աստուածաբանական, մեկնողական եւ հոգեշահ գրականութեան, այլ եւ փիլիսոփայական եւ պատմական սեռերու: Փիլիսոփայութեան ուսումը, որ վաղուց դադրած էր դասախօսութեան առարկայ ըլլալէ, այժմ կը բեմադրուի: Մասնաւորապէս սէր եւ խնամք ցոյց տուին պատմական մատենագրութեան: Պատմագիրներ, որոնք դարերէ ի վեր չէին տեսնուեր հրապարակի վրայ, եւ հազուագիւտ էին, խնամքով երեւան հանուեցան եւ օրինակութիւններով բազմացուեցան. Փաւս-

տոսի, Կորիւնի, Ղ. Փարպեցւոյ, Սեբէոսի, Ղեւոնդ Երէցի, Ստեփանոս Ասողնիկի, Արիստակէս Լաստիվերտացւոյ, Մատթէոս Ուռհայեցւոյ եւ այլ պատմագիրներու գործերը հասած են մեզի այս Դպրոցներու արտադրութիւններով: Չունէ՞ն անոնք ծածուկ նպատակը, այն բազմաչփոթ դարերուն, հայ պատմագիրներու ընթերցումով ոգեւորելու հայ ժողովուրդը, նախնեաց օրինակով ազգային գիտակցութիւնը արծարծելու անոր մէջ:

Եթէ Դպրոցները չտուին աչքի զարնող մատենագիրներ, բայց տուին շնորհալի տաղասացներ. ծաղկեցուցին պատմագիրներ. հայթայթեցին լեզուագէտ թարգմանիչներ. իսկ ԺԸ. դարուն բողբոջեցաւ արեւելեան ճիւղէն Յակոբ Նալեան մը, որ պայծառացաւ թէ իբրեւ աստուածաբան եւ թէ իբրեւ մեկնիչ եւ արտադրեց մեծահատոր աշխատասիրութիւններ:

ԺԷ. դարու առաջին տասնեակին Կարապետ Վ. Փարխնդեցի, Բաղէշի Դպրոցին սնունդէն, կը գրէր, թէ այդ Դպրոցներու ընծայած Վարդապետները «չէին ինչ պակաս յառաջին Վարդապետացն ուսմամբ եւ գործով, այլ եւս գերագոյն»: Այս ժամանակակցի մը դատաստանն է, արձագանգ մը ընդհանուրին գնահատանքի: Հարկ չկայ խծրծել զայն Նոր Դարուս ըմբռնումով եւ ճաշակով:

## 2. ԿԱՐԳՔ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

Առաջին անգամ Կարապետ Փարխնդեցի զանազանած է Արեւելեան եւ Արեւմտեան Դպրոցներ եւ փորձած տալ անոնց ծննդաբանութիւնը, մէկ բունէն, Յովհաննէս Վ. Համշէնցիէն ընձիւղեցնելով երկու ճիւղ յանձինս Թորոս Տարօնեցւոյ եւ Գրիգոր Զարթառն Արծկեցւոյ: Այս բունն եւ ճիւղերը ապա զարգացած են դէպի ետ եւ յառաջ: Ոմանք կը սկսին Գրիգոր Տաթեւացիէն († 1410), ուրիշներ Մխիթար Գոշէն († 1213) եւ դարձեալ ոմանք Հրեշտակաց առեղծումէն մինչեւ Քրիստոս — Գրիգոր Լուսաւորիչ — Սահակ եւ Մեսրոպ — Մխիթար Գոշ — Յովհաննէս Համշեցի հանգուցէ հանգոյց իջնալով: Իսկ դէպի յառաջ զարգացումը մինչեւ մեր օրեր կախում ունի հեղինակներէ եւ անոնց ժամանակներէ: Վասն զի ԺԷ. դարէ սկսեալ սովորութիւն եղած է, որ մէն մի Վարդապետ, որ կու տար իր աշակերտին գաւազանի իշխանութիւն, նշանակէր իր վկայագրին մէջ թէ ո՞ր գաւազանէ կ'իջնար իրեն Վարդապետական իշխանութիւնը:

Ունիմ աչքի առաջ այսպիսի «Կարգք Վարդապետաց» թէ ինքնակաց եւ թէ իբրեւ վկայագիր տրուած: Եւ ոչ մին յամենայնի նոյն միւսին հետ, յատկապէս ԺԷ. դարու կէսէն ետքը ծագած օրինակները: Ասոնք են.

A. «Կարգք Վարդապետաց» Կարապետ Փարխնդեցւոյ. Էջմ. Թ. 45, Թղ. 322 (1642):

B. *Առաքել Դաւրիժեցի ձեռքի տակ ունեցած է* A *օրինակը եւ զետեղած զայն իր Պատմութեան մէջ (գլ. ԼԲ. Վաղարշապատ* 1896, *էջ* 441—442) *մանր փոփոխութեամբ:*

C. *Կարգք Վարդապետաց: Այս պատճէնը, որ պահուած է Էջմիածնի Թ.* 462, *թղ.* 182*ա ձեռագրին մէջ, գրուած իր* 1692*ին, անխորագիր է եւ կը սկսի «Ըստ առաջին հարցն աւանդութեանց»:*

*Այս* A *եւ* C *բնագիրները կը հրատարակեմ իբրեւ հնագոյն օրինակներ, ամբողջութեամբ:*

D. *«Վարդապետաց կարգն այս է». այսպէս խորագրուած է Էջմիածնի Թ.* 462, *թղ.* 182*բ կարգաց համառօտ մէկ օրինակը, որ կը սկսի Յովհ. Կախիկէն եւ կ՚աւարտի Յովհ. Այնթափցւոյ եւ Գրիգոր Կեսարացւոյ յիշատակութեամբ: Կարեւոր տարբերութիւնները տուած եմ* C *օրինակի սարուածքի մէջ:*

E. *«Յանկ վարդապետաց». զոր դրած է Գարեգին Վ. Սրուանձտեանց Ամիդ, Աւետայեան Մկրտիչի Թ.* 42 *ձեռագրին (Մեկնութիւն Գործոց Առաքելոց Մատթէոս Պարթեւի) կողին վրայ. Թորոս Աղբար, Բ., էջ* 483—484*: Կը սկսի. «Նախ եռամեծ եւ երջանիկ Վարդապետն (Մխիթար) որ մականուն կոչի Գոշ». եւ կ՚աւարտի Յովհաննէս Ձնքուշեցի վարդապետի* (1703) *յիշատակութեամբ: Տարբերակները տե՛ս* C *օրինակի սարուածքին մէջ:*

F. «Կարգ Վարդապետաց սկսեալ ի Գօշէ Մխիթարայ գաւազանաւն որ իջանէ յէջմիածնի զաստատունն»: Յառաջ բերած է Առաքել Դաւրիժեցի, Պատմութիւն, գլ. ԼԲ, էջ 440: Մխիթար Գօշէն մինչեւ Վարդան Մակուեցի: Տես Cի սարուածքը:

G. Առաքել Դաւրիժեցի ունի երրորդ «կարգ» մ՚ալ, զոր զետեղած է իր Պատմութեան ԻԹ. գլուխին մէջ, էջ 391· Գրիգոր Տաթեւացիէն մինչեւ Մելքիսէթ Վժանցի: Տես Cի սարուածքը:

H. Վկայագիր Վարդան Բաղիշեցւոյ· էջմիածին, Թ. 737, Թղ. 5ա—7ա: Տրուած է 1680ին Գրիգոր Բաղիշեցւոյ (ո՛չ Շղթայակիրին): Բնագիրը կը հրատարակեմ ստորեւ, դուրս թողլով ընդարձակ նախաբանը:

I. Վկայագիր Մարգարէ Վ. Կարնեցւոյ, տրուած 1697ին Մխիթար Սեբաստացւոյ: Բնագիրը լոյս տեսած է Հանդ. Ամս. 1949 (Մխիթար տօնագիրք), էջ 340—341:

J. Վկայագիր Սահակ Վ. Կոստանդնուպոլսեցւոյ, տրուած 1785ին Սերովբէ Վ. Կ. Պոլսեցւոյ· Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 565 (Ցուցակ, էջ 1032):

K. Կարգ Վարդապետաց· հաւանօրէն 1662էն· հրտ. Յ. Թօփճեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Դաղեան Խաչիկ վարդապետի, Թ. 62, էջ 69:

L. *Մեծ Մաշտոց, Կ. Պոլիս* 1807, *էջ* 335—337 : *Հոս Եղիազար կաթողիկոսէն մինչեւ Սիմէոն կաթողիկոս յաջորդութիւնը ներկայացուած է իբրեւ վարդապետական կարգ. ուստի նկատելու է կեղծիք* :

*Այս բնագիրներէն հնագոյնն է առաջինը, զոր կազմած է Կարապետ Բաղիշեցի իբրեւ ականջալուր եւ ականատես. «զոր լուաք ի պատմագրացն եւ զոր աչօք մեր տեսաք»* : C *կը հետեւի իրեն ընդհանրապէս. իսկ կը խոտորի անկէ այն նոր յաւելուածներով, որոնք ԺԷ. դարու կը պատկանին եւ կրնան Կարապետ Վարդապետի Կարգաց շարունակութիւնը նկատուիլ* : *Նոյնպէս միւս* D—K *օրինակները ԺԶ. դարու վարդապետաց կարգերու մէջ հետեւած են* A*ի. իսկ ԺԷ. դարու համար կրնան նոր աղբիւր նկատուիլ յատկապէս երկու կարգերու նոր ճիւղաւորումներու համար. յամենայն դէպս անոնք աչքի առաջ ունեցած են* B. *մասին համար նաեւ* C :

*Վարդապետաց այս երկու կարգերու բարդաւաճման ճշգրիտ պատկերը տալ անհնարին է. որովհետեւ իւրաքանչիւր վարդապետ, որ կ'ընդունէր իր վարդապետէն վարդապետական ծայրագոյն իշխանութիւն, կ'ընդունէր նաեւ իրաւունք իր կարգին ունենալու աշակերտներ եւ բաշխելու անոնց վարդապետական գաւազան* : *Այսու կ'ընձիւղէին նոր նոր ճիւղեր* : *Կ'ըսուի, թէ Եսայի Նչեցի* 600 *աբեղայի վարդապետական իշխանութիւն*

տուած ըլլայ։ Զափազանցութիւն է թերեւս այս։ Բայց ստոյգ է որ յընթացս 200—300 տարիներու Արեւելեան եւ Արեւմտեան Դպրոցները բարգաւաճեցան նորանոր ճիւղերով, ծաղկեցուցին մեծաթիւ վարդապետներ, անոնց թուին մէջ ինչպէս ականաւոր դէմքեր, նոյնպէս աննշան անձեր։ Երկու տեսակներն ալ ծնան վարդապետներ. անոնցմէ ոմանք տեղ գտան պատմութեան մէջ, ուրիշներ խամրեցան անյիշատակ։ Եղան եւ այնպիսիներ որոնք թէպէտ եղան արժանի յիշատակութեան ձեռագիրներու յիշատակարաններու մէջ, բայց առանց մասնանըշումի, թէ ո՛ր ճիւղին կ՚անդամակցէին անոնք։ Այս պատճառով ալ չեն կրնար գետեղուիլ Տոհմածառին մէջ։ Եւ հարկ ալ չկայ տեղ շնորհել այդ ծառին վրայ ամէն անուան, որ Վարդապետ յորջորջումը կրած է առանց արժանաւորութեան եւ կամ յիշատակի արժանի գործք գործելու։ Անշուշտ այս մտածմունքով առաջնորդուած են Վարդապետաց գաւազանագիրքը յօրինողները, երբ այնպիսիները չեն առած իրենց ցանկին մէջ։

Այս տեղ կը գետեղեմ A բնագիրը ամբողջութեամբ համաձայն Էջմիածնի Թ. 45 ձեռագրին, սարուածքի մէջ տալով B օրինակին ընթերցուածները։

Ամբողջութեամբ կու տամ նաեւ C բնագիրը, որ թէեւ կախում ունի Aէ, բայց այն առաւելութիւնն ունի որ Մխիթար Գօշէն

*մինչեւ Յովհաննէս Համշենցի եւ Բարսեղ Գուառացիէն մինչեւ Թադէոս Խարբերդցի կը հասնէ։*

*Իսկ* D—L *օրինակներէն կ՚առնեմ այն անունները միայն, որոնք կը լրացնեն որ եւ է կերպով Ա. եւ Բ. կարգերու ճիւղաւորումները։*

*Իբրեւ նմոյշ Վարդապետական վկայագրի յառաջ կը բերեմ Վարդան Վ. Բաղիշեցւոյ Գրիգոր Բաղիշեցւոյ տուած վկայագիրը, բաց թողլով ընդարձակ նախաբանը։*

*Ուրիշ երկու վարդապետական ցանկեր ԺԸ. դարէն տե՛ս Յաւելուածին մէջ։*

⁂

## Ա.

## ԱՅՍ ԵՆ ԿԱՐԳՔ ՎԱՐԴԱՊԵՏԱՑՆ ՄԵՐՈՑ ՈՉ ԱՌԱՋՆՈՑՆ, ԱՅԼ ՎԵՐՋՆՈՑՆ

(Կարապետ վ. Բաղիշեցւոյ)

*Նախ Գրիգոր Տաթեւացին. եւ*

*Նորին աշակերտն Դանիէլ:*

*Նորին Յովհաննէս Համշենցին:*

*Նորին Գրիգոր յԱրճիշոյ, որ մականուն Ձորթան ասի: Նորին եւ միւս աշակերտն Թորոս վարդապետն:*

*Իսկ Ձորթանի աշակերտն՝ Ներսէս, որ Մառաղ ասի:*

*Նորին՝ Ներսէս Բաղիշեցին:*

*Նորին՝ Ներսէս Ամկեցին:*

*Նորին աշակերտքն երկու՝ Յովհաննէս Ոստանցին ի գեղջէն Վառնուշատայ. եւ Ագարիս ի Հայոց մեծաց, ի գեղջէն Շահկերտոյ, մերձ ի քաղաքն Նախճուանայ:*

*Իսկ աշակերտքն Յովհաննէս Ոստանցւոյն՝ Սիմէոն Ապարանցին եւ Բարսեղ Գաւառցին:*

*Սիմէոնի աշակերտքն՝ Կարապետ Կայօն եւ (Կարապետ) Փարխնդեցին: Եւ նորին՝ միւս Փոքր Սիմէոն Ճգնազգեացն:*

*ԽՈՐԱԳԻՐ.* A *կարգ:* B *այլ եւս կարգ վարդապետաց: Այսոքիկ են կարգ վարդապետաց...:*

2 B *աշակերտ:* — 3 B *համշէնցին:*

9 A *Բաղիշեցի:* — 11 A *Յոհաննէս:*

13 A *ագարիայ:* — 14 B *շահկերտայ, որ է մերձ քաղաքին Նախչուանու:*

17 A *Սիմոն:* — 19 B *աշակերտն: Կայոն.* չունի *եւ Փարխնդեցին:*

*Եւ Բարսեղի աշակերտքն՝ Յովհաննէս Բուժիկ Բաղիշեցին եւ այլք բազումք:*

*Եւ Յովհաննէսին՝ Խաչատուր մեծ րաբունին:*

*Եւ այլ Արեւելեանքս ամէն ի Զորթանէն սերեցան:*

Դարձեալ նոր սկսայց ի Յովհաննէս Համշենցւոյն:

*Նորին միւս աշակերտն Թորոս, որ ի վերոյ ասացաւ:*

*Թորոսի աշակերտն Գրիգոր Տարօնեցին:*

*Նորին՝ Յովհաննէս Ծիրաքն:*

*Նորին՝ Ղուկասն, որ էր ի Խորձունեաց գաւառէն ի Կեղւոյ, (եւ) Պետրոս Կարկառեցին:*

*Եւ (Նորին Ղուկասու)՝ Սրապիոն Ուրհայեցին, որ եղեւ կաթողիկոս սուրբ Աթոռոյն Էջմիածնայ տարի մի եւ վեց ամիս. եւ փոխեցաւ առ Քրիստոս:*

*Այլ եւ Նորին (Սրապիոնի) աշակերտքն՝ Բարսեղ, որ է ի Սասնոյ ի Նիջ գաւառէն,*

21 B *բուժիկ Յովհ. Բաղ.:*
24 B *եւ Յովհաննիսիս աշակերտ Խ. բաղիշեցին:*
27 B *յովհաննէսէ* A *համշեցին:* — 33 B *ղուկաս:*
34 A չունի *ի* (*կ.*). B *որ է Կեղի:*
34 Այս տեղ բնագիրը խանգարուած կ'երեւայ, երբ կ'ըսուի. «*... ի Կեղւոյ: Պետրոս Կարկռեցին. եւ Սրապիոն*»: Ուղղեցի համաձայն C օրինակին:
36 A *յուրհայեցին:*
36 B *սրբոյ... էջմիածնի:*
41 AB *Մարման* այլ ունին *Մարմանդոյ:*

*ի գեղջէն որ առ ի Մարմանդ. եւ Յովսէփ Հզվեցին, Յովհաննէս Ուրհայեցին:*

*Ես Նուաստ Կարապետ բանի սպասաւոր Բաղիշեցի, ի գեղջէն Փարխնդոյ, զոր լուայ ի պատմագրացն եւ զոր աչօք մեր տեսաք. զի չէին ինչ պակաս յառաջին վարդապետացն ուսմամբ եւ գործով. այլ եւս գերագոյն:*

Այլ եւ երկու անուանի վարդապետ այլ գրեցից:

*Յովհաննէս Անթապեցին, որ է կաթողիկոս Կիլիկեցւոց, եւ Գրիգոր Ղայսարցին յԱռաջին Հայոց, բանիբուն եւ սիրող իմաստասիրական հանճարոյ:*

*Յովհաննէս ի մերոց Ներսիսեանցն է. եւ Գրիգոր ի Թորոսի աշակերտացն:*

*Էջմիածին, Թ.* 45, *թղ.* 322*բ*: *Ասկէ* B (*Առաքել Դաւրիժեցի, Պատմութիւն. Վաղարշապատ* 1896, *էջ* 441—442):

Բ.

(ԿԱՐԳ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ)

*Ըստ առաջին հարցն աւանդութեանց տալով իշխանութիւն աշակերտեալ մանկանցն ըստ հրամանի Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ ետ իշխանութիւն Առաքելոցն ա-*

42 *եւ*] B *եւ ես* B *հզուեցին*. B չունի *յովհաննէս Ուրհայեցին* (A *յուրհայեցին*):
43 A *լուա*. B *լուաք*:
45 B *պատմագրացս* B *մերովք*: — 47 B *յառաջնոց*: — 50 B *անթափեցին*: — 51 A *ղասարցին*:
54 B *ի մերոյ ներսէսեայն*:

*սելով. «Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս». եւ Առաքեալք աշակերտաց իւրեանց. մինչեւ որ եհաս ի յեռամեծ եւ յերջանիկ բարունապետն Մեսրոպ. եւ անտի յեռամեծն Մխիթար, որ մականուն Գոշ կոչի:*

*Նորին աշակերտ Յովհաննէս Վանական:*

*Նորին՝ Վարդան:*

*Նորին՝ Ներսէս:*

*Նորին՝ Եսայի, որ ի Նիչ գաւառէ:*

*Նորին՝ Յոհան Որոտնեցին:*

*Նորին՝ Գրիգոր Տաթեւացին:*

*Նորին՝ Դանիէլ ճգնաւորն:*

*Նորին՝ Յովհաննէս Համշենցին:*

*Նորին՝ Գրիգոր Արճիշեցին, որ մականուն Ձորթան:*

*Նորին՝ Ներսէս Մատաղն:*

*Նորին՝ Ներսէս Բաղիշեցին:*

*Նորին՝ Ներսէս Ամկեցին:*

*Նորին՝ Յովհաննէս Բրդուժեցին:*

10 հոս կը սկսի E *նախ եռամեծ եւ երջանիկ վարդապետն որ մականուն կոչի Գոշ:*

11 *Յովհ. Վանական*, տես էջ 17. ծ. 4: — 15 E *նիչ:*

15 E *նիչ:*

16 հոս կը սկսի D *վարդապետաց կարգն այս է. նախ Յոհան Կախիկն, որ է Որոտնեցին:* E չունի *որոտնեցին:*

18 DG չունին *ճգնաւորն* E *ճգնաւոր վարդապետն:* — 21 G *Ներսէս որ Մատաղ ասի:*

24 C *բգ''բեւցին* D *Յ. ստանցին ի գեղջէն Վանաչատայ:* E *բրդուժ* G *բրդուտ Յ. Ոստանցին:* Անմիջապէս կը կցէ D *եւ Ազարիա ի Հայոց մեծաց ի*

*Նորին՝ Բարսեղ Գաւառցին, որ էր ներքին եւ արտաքին իմաստութեամբ զարդարեալ:*

*Իսկ Ազարիա մեծ քարունապետն, որ եղեւ կաթողիկոս Սըսայ աթոռոյն:*

*Նորին՝ Յովհաննէս Անթափցին, կաթողիկոսն Սսայ:*

*Նորին՝ Մեծ Մինասն Եզնկացին:*

*Նորին՝ Մինաս կաթողիկոս Սսայ:*

*Նորին՝ Ներսէս կաթողիկոս Սեբաստացին:*

*Նորին՝ աշակերտ Յակոբ Եզնկացին եւ Խաչատուր Սեբաստացի:*

Դարձեալ նոր սկսցուք:

*Յովհաննէս Համշենցին:*

*Նորին աշակերտք, մինն Զորթան Արեւելեան վարդապետ. եւ միւսն Թորոս արեւմտեան վարդապետ:*

*գեղջէն Շահկերտոյ մերձ ի քաղաքն Նախջուան (տ'ես Ա.): Իսկ աշակերտք Յովհաննիսի՝ Սիմէոն Ապարանցին եւ Բարսեղ Աղբակեցին: Դարձեալ (աշակերտ) Ազարիային՝ Յովհաննէս Անթափեցին, որ եղեւ կաթողիկոս Կիլիկեցւոց, քաջ յուսումն երաժշտութեան:* G *որին (Բարսղի) աշակերտ Մոկացի Ներսէս ի գեղջէն Աւկնջաւսայ, զորոյ մականուն Բեղլու ասեն,* զի մեծ էր բեղն: Սորին աշակերտ Մելքիսէթ Երեւանցի, ի գեղջէն որում անուն Վժան:*

26 D *քարունապետն Բ. որ էր պայծառ ի մէջ վարդապետացն ներքին եւ արտաքին իմաստութեամբ:*

27 E չունի *որ:* — 28—36 չունի D:

29 C *եզնկանցին:* — 29—34 չունի E:

38—41 D *դարձեալ զարեւմտեանն ասացից Համշենցւոյ աշակերտացն. Թորոս Տարօնեցին, զոր յառաջն ծանուցաք. նորա աշակերտ՝ Գրիգոր Տարօնեցին:*

*Թորոսի աշակերտ՝ Գրիգոր Տարօնեցին։*

*Նորին՝ Յովհաննէս Ծիրաքն։*

*Նորին երկու. մինն Ղուկաս որ ի Խորձունեաց. եւ միւսն Պետրոս կաթողիկոս Կարկառցի։*

*Եւ նորա (Պետրոսի) աշակերտք երկու. մինն Ղազար եւ միւսն Կարապետ Եզնկացի։*

*Դարձեալ Ղուկաս Կեղեցւոյ երկու աշակերտք. մինն Մինաս Արզրումցի. եւ միւսն Սրապիոն Ուրհայեցի. որ եղեւ կաթողիկոս սուրբ էջմիածնին։*

*Նորին (Սրապիոնի) չորս աշակերտք. Յովհաննէս Ուրհայեցին. եւ միւսն Գրիգոր Կեսարացին մեծն. եւ միւսն Բարսեղ Սասնեցին. եւ միւսն Մովսէս Արեւելցին, որ եղեւ*

43 D *խորձունեաց. որ է Կեղի. նորին աշ. Պետրոս կարգառեցին* (C *գարկառցի*)։

44 D *նորին (Յովհ. Ծիրաքի) աշ. Պետրոս կարգառեցին եւ Սրապիոն Ուռհայեցին, որ եղեւ կաթ. սուրբ աթոռոյն էջմիածնայ ամ մի եւ ամիսս Զ. եւ փոխեցաւ առ Քրիստոս։*

45—46 չունի E։ — 47—48 E չունի *երկու աշ. — եւ միւսն։*

52 D *նորին (Սրապ.) աշ. Բարսեղ Սասնեցին, որ ի գեղջէն Մարմանդոյ եւ Գր. Ղարասարցին, այր բանիբուն եւ սիրող իմաստութեան* հոս կ'աւարտի D: E *նորին աշ. Բարսեղ որ ի Սասնոյ ի գեղջէն Մարմանդու. եւ աշակերտ Պետրոսի Կառկացուն* (2 *տող դատարկ*), *որ կաթողիկոս եղեւ ի Սիս Հայոց* (խօսքը անշուշտ Յովհ. Այնթափցւոյ մասին է)։ *Մարտիրոս Ձնրուչցի։ Եւ աշակերտ(ք) Մարտիրոսին՝ Յովհ. Ձնրուչցի, Արիստակէս Խարբերդցի, Սիմէոն գիտողն։*

*կաթողիկոս սուրբ Էջմիածնի եւ կրկին լուսաւորեաց զազգս Հայոց։*

*Նորին (Մովսէսի) աշակերտ՝ Փիլիպպոս կաթողիկոս սուրբ Էջմիածնի։*

*Իսկ Պետրոս կաթողիկոսի աշակերտք՝ Կարապետ Թուրկուրանցին, Մաղաքիա Թոխաթցին. Զաքարիա Վանեցին, որ մականուն Գիշի տղայ կոչիւր, Մարտիրոսն Տնքուշցի եւ այլք։*

*Մարտիրոսի աշակերտք՝ Առիստակէս Խարբերթցին. եւ Յովհաննէս Տնքուշցի։*

*Նորին աշակերտ Խաչատուր Տնքուշցի։*

58 F *Եւ նորին (Փիլիպպոսի) աշակերտ՝ անարժան եւ մեղապարտ գրիչս Առաքել (Դաւրիժեցի, պատմագիր)։ Եւ իմ աշակերտ՝ Մակուեցի Վարդան։* K *Մովսէս... որ ունէր բազում աշակերտս, մին Փիլիպպոս... եւ միւսն Եսայի վ., որ ի Թուին ՌՁ եւ Զ ամին նստաւ յաթոռս Երնջակայ...։*

63 J *Մեծն Մարտիրոս Տնքշեցին. նորին աշակերտ Ռստակէս Խարբերդցին։ Նորին աշ. Գաբրիէլ. Ն. ա. Ստեփաննոս Չէյթունցին. Ն. ա. Կարապետ Չէյթունցին, որ եղեւ կաթուղիկոս Էջմիածնայ. Ն. ա. Պետրոս Գաղատացի։ Եւ նա ետ ինձ Կոստանդնուպոլսեցի Սահակ վարդապետիս։ Եւ ես ետու որդեկին իմոյ Կոստանդնուպոլսեցի Սերովբէ վարդապետին յարքունանիստ ի մայրաքաղաքն Կ. Պոլիս յամի Փրկչին* 1785, *ի նոյ. ԻԵ։*

66 E *Աշակերտք Յովհաննիսին՝ Աստուածատուր, (որ) Երուսաղեմայ առաջնորդ եղեւ. Խաչատուր Ամիշեցի, Կիրակոս Պուլանըխցի, Եղիազար կաթողիկոս Երուսաղեմայ եւ Էջմիածնայ*[1], *Մարկոսն* ||| [2]։

[1] L *(Մեծ Մաշտոցը) Փիլիպպոս կաթուղիկոս. նորին աշ. Յակոբ կաթուղիկոս Ջուղայեցի. նորին աշ. Եղիազար կաթ. Հռոմկլայեցի* եւ այլն։

[2] *Յովհաննէս ուսուցիչ Եղիազարու կաթողիկոսի եւ Մարկոս վարդապետի. Թորոս Աղբար, Բ.*, 485։

70 Առիստակէս վարդապետի աշակերտք երկու. մինն՝ Եղիազար եւ միւսն՝ Թադէոսն Խարբերթցին:

=Էջմիածին Թ. 462, 182ա (1692՞):

## Գ.

(ՎԿԱՅԱԳԻՐ ՎԱՐԴԱՆ ԲԱՂԻՇԵՑԻՈՅ)

Ի գերագանց լուսոյ եւ ի բարերուն յաստուածպ(ետա)կ(ա)ն Հօրէ. յառաջ իսկ յիսկզբան շարժեալ գթութեամբ յստեղծումն ամենայն էից...: Ժեներորդ եկն եհաս շնորհս այս եւ աստիճանս ի Մեծն Մեսրոպ վարդապետն Հայոց...:

Եւ անտի եկն եհաս յեռամեծ եւ յերջանիկ րաբունապետն մեր Մխիթար, որ մականուամբ Գոշ կոչեցաւ:

Եւ նա շնորհեաց յայտնապէս զաւազան Յովհաննէսի Վանական վարդապետին[4]:

Եւ աշակերտ Մարկոսի՝ Մինաս Համթեցի, որ եղեւ առաջնորդ Երուսաղեմի ՌՃԻԷ (1678) թուին, ընտրութեամբ ամենայն Հայոց, նաեւ տեառն Եղիազարու կաթողիկոսին, որ կայր ի Ս. Էջմիածին:

Եւ նորին աշակերտ Զնբուզցի Յովհաննէս...:

Ռ(Ճ)ԾԲ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. մարտ ԻԹ Զատկին[3]»:

---

[3] Զատիկը 1703ին կ'իյնար մարտ 28ին. իսկ 29ին՝ 1719ին:

[4] Վանական վարդապետի անունը առաջին անգամ այս CH օրինակներու մէջ է, որ Յովհաննէս կը կոչուի:





Եւ նա ետ Վարդանայ մեծ վարդապետին:
Եւ նա Ներսէս վարդապետին:
Եւ նա Եսայեայ Վ. Նչեցուն:
Եւ նա Յովհաննու Վ. Որոտնեցուն:
Եւ նա Գրիգորի Վ. Տաթեւացուն:
Եւ նա Դանիէլի Վ. Ճգնաւորին:
Եւ նա Յովհաննու Վ. Համշէնցուն:

Եւ նա Գրիգորի Վ. Արճիշեցուն, մականուամբ Զորթան կոչեցելոյ եւ Մեռելյարոյց ասեն զնա:

Եւ նա Ներսէս Մառաղ վարդապետին:

Եւ նա Ներսէս Վ. Բաղիշեցուն:

Եւ նա Ներսէս Վ. Ամկեցուն:

Եւ նա Յովհաննէս Բրդութ Վ. Ոստանցուն:

Եւ նա Բարսղի մեծի Վ. Կարպեղացուն:

Եւ նա Յովհաննէս Բուժիկ Վ. Բաղիշեցուն:

Եւ նա Խաչատուր Վ. Բաղիշեցուն:

Եւ նա Վարդանայ [մեծ եւ ընտիր] Վ. Բաղիշեցուն:

Եւ արդ ես Բաղիշեցի Վարդան Վարդապետս յերկիրն Բաղիշու եւ ի մենաստանն սրբոյն Յովհաննու, որ մականուամբ Ամիրտոլու սուրբ Յովհաննէս կոչի, առաջի բազմահոյլ Վարդապետաց, Քահանայից եւ առաջի մեծամեծ Իշխանաց եւ Ժողովրդոց ետու մեծ գաւազան եւ կարգեցի գլուխ Վարդապետ, դաս ասել, իշխանութիւն եւ մեծ գաւազան տալ խնդրողաց հոգեւոր եւ սիրա–

*սնունդ որդւոյն իմոյ Գրիգոր վարդապետին Բաղիշեցւոյ ի Թուականութեանս հայկական զարմից ՌՃԽԹերորդի:*

*Արդ մի ոք իշխեսցէ հակառակ կալ սիրազան որդեկիս իմոյ Գրիգորի Վարդապետին, զի այլ ոք չունի իշխանութիւն ի վերայ դորա, բայց յինէն: Կապեալն ի դմանէ կապեալ է, ըստ բանի Տեառն, եւ արձակեալն՝ արձակեալ: Կատարօղք հրամանաց մերոց աւրհնին յԱստուծոյ. ամէն:*

*Այս բանիս վկայ*

1. *Մարգարէ Վ. Արզրումցի*[1]. 2. *Բարաղամ Վ. Հզվեցի*. 3. *Ներսէս Վ. Արծկեցի*. 4. *Կարապետ Վ. Սպարտակերցի*[2]. 5. *Սարգիս Վ. Բաղիշեցի*. 6. *Յովհաննէս Վ. Ատանացի*[3]. 7. *Յովհաննէս Վ. Թօխատցի*. 8. *Մխիթար Վ. Խութեցի*. 9. *Սարգիս Վ. Արզրումցի*. 10. *Անդրէաս Վ. պարոնտէր Արծկեցի:*

*Բաւ է:*

=*Էջմիածին*, *Թ.* 737, *թղ.* 5*ա*—7*ա*:

[1] *Սա* 1699*ին վարդապետական իշխանութիւն շնորհած է Մխիթարին. վկայագրին մէջ ստորագրած է. «Ես Մարգարէ Վ. Թէոդուպօլսեցի* (*յամէ* 1580) *ի յեպիսկոպոսարանէ հրաշագեղոյ սրբոյ Աստուածածնին, Կարմիր եւ Ընծուց վանք կոչեցելոյ. որ եւ զնոյն հրաման եւ զիշխանութիւնն փրկչական եռու աշակերտեցելոյն իմոյ... Մխիթարայ Սեբաստացւոյն». Հանդ. Ամս.* 1949, *էջ* 340:

[2] *Զ. սպա''կերցի:*

[3] *Յովհ. Ատանայի, եպիսկոպոս* 1685*էն, քահանայ ձեռնադրած էր Մխիթար Սեբաստացին* 1691*ին. իր տուած վկայականին մէջ կը ստորագրէ. «որ եմ աշակերտ Բաղիշեցի Վարդանայ մեծի վարդապետին», անդ, էջ* 337:

## Յ. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ՀԱՄՇԵՆՑԻ ԵՒ ԻՐ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ ԹՈՐՈՍ ԵՒ ԳՐԻԳՈՐ ՋՈՐԹԱՆ

Կարապետ Բաղիշեցի կազմած էր իր Կարգքն Վարդապետաց համաձայն այն տեղեկութիւններու, «զոր լուայ, կ'ըսէր, ի պատմագրացն եւ զոր աչօք մեր տեսաք»: Ան տեսած էր անշուշտ այն վարդապետները, որոնք ծաղկած էին 1550էն ետքը: Աւելի հնագոյններու մասին ան ունեցած է գրաւոր աղբիւրներ, «պատմագիրք»: Ինձ անծանօթ են այդ պատմագիրները, որոնք խօսած են Դանիէլ, Թորոս, Գրիգոր Ջորթան կամ «Մեռելյարոյց» վարդապետներու մասին: Ո՛չ Թոմաս Մեծոփեցի եւ ոչ ժամանակակից յիշատակագիրներ չեն յիշած, թէ Գրիգոր Տաթեւացի ունեցած ըլլայ Դանիէլ անուն աշակերտ, կոչուած «Ճգնաւոր»*, եւ ոչ ալ յիշատակուած է, թէ Յովհաննէս Համշենցի աշակերտած ըլլայ Դանիէլ վարդապետի եւ անկէ առած ըլլայ վարդապետական իշխանութիւնը: Յովհաննէս հրապարակ կու գայ առաջին անգամ յԱւագ վանս Երզնկայի 1463ին իբրեւ դասապետ նոյն վանքի «համալսարանին» եւ վախճանած է 1497ին Կապոսի վան–

* Դանիէլ վարդապետ մը կը յիշուի 1461ին ի Սեւան (Հանդ. Ամս. 1892, էջ 83): Սա իբրեւ Սեւանի միաբան կարող էր ճգնաւոր տիտղոսի արժանացած ըլլալ: Բայց ան այս տարւոյն յառաջացած տարիքի մէջ պէտք է նկատուիլ, եթէ իրօք 1410ին վախճանած Գրիգոր Տաթեւացւոյ աշակերտած էր. գոնէ 80ամեայ մը:

քին մէջ, ուր փոխադրուած էր «Համալսարանը»: Իր աշակերտներու թուին մէջ կը յիշուին Գրիգոր Կաֆացի եւ Գրիգոր Տարօնեցի (սկսեալ 1488էն): Վերջինս յետոյ (1505) երեւան կու գայ Տարօնի Գլակայ վանքին մէջ իբրեւ վարդապետ նոյն վանքի «Համալսարանին»: Չի յիշուիր թէ ան վարդապետական գաւազանը ստացած ըլլայ Թորոս վարդապետէն, զոր Է ձեռագիրը Տարօնեցի կը կոչէ[1]: Գրիգոր որ 1488էն յառաջ մտած էր Համշենցւոյ համալսարանը, արդէն հմուտ գրչագիր, պիտի ենթադրենք թէ մինչեւ 1497, ուստի յընթացս 10 տարիներու աւարտած ըլլայ իր դասընթացքը եւ ստացած գաւազանի իշխանութիւնը: Անոր աշակերտը եղած է Մաղաքիա Դերջանցի, որ կը հաւաստէ, թէ Գրիգոր վախճանած է 1521ին Հալէպ: 1519ին Մաղաքիա գրած է Երուսաղէմ գովասանք մը իր Վարդապետին համար, որուն մէջ կը գրէ ի մէջ այլոց (Երուսաղէմ, Թ. 1455, թղ. 281 ա).

Անունն Արթուն է եւ զըւարթ...
Մականունն է Մըշեցի...
Սընեալ ի վանքըն Գըլակայ...
Ելեալ գընայ ի յԵրզընկայ...
Աշակերտեալ մեծ րաբունւոյն,
Եւ Յոհաննէս կոչեցելոյն...

[1] Տարօնի մէկ ձեռագիր Յայսմաւուրքի Յիշատակարանին մէջ, ըստ Գեղամ Տէր-Կարապետեանի, 1526ին կը խնդրուի յիշել «գերջանիկ րաբունապետն մեր զԹորոս»:

Յինն հարիւր Հայոց թըվին,
Վեցեակ տասին երկեակ քառին (ՋԿԲ)
Ի մենաստան Սուրբ Յակոբին,
Զի արտաքինքն մեկնեալ պատմին:

Այս ինքն 1519ին Գրիգոր Երուսաղէմի մէջ դասախօսած է Արտաքինքը:

Գրիգոր Վ. Արճիշեցի «Զօրթան կոչեցեալ, եւ Մեսելլարոյց ասեն գնա», ինչպէս կը գրէ Վարդան Բաղիշեցի, այլուր այս յորջորջանքներով չէ յիշուած: Չէ յիշուած նաեւ թէ Համշեցւոյ աշակերտած ըլլայ: Նա վարդապետ էր արդէն 1480ին. որ իր մէկ յիշատակագրութեան մէջ կը տեղեկացնէ, թէ Երուսաղէմ գացած է եւ հոն երեք տարի դասախօսած է, ուստի 1480—1483. իր տարիներն են.

Յիմար Գրիգորս Արճիշեցի,
Կոչման ամեն վարդապետի
Յինն հարիւր (Ջ) Թուականի,
Ի քառն եւ ինն (ԻԹ) աւելորդի,
Ի սուրբ Երուսաղէմ եկի.
Երեք տարի ի տեղս կացի
Զաւետարանս Քրիստոսի,
Զգլուխն ուր Ղուկաս անուանի,
Որ է մեկնեալ Իգնատիոսի
Աստուածաբան հռետորի,
Բաներ ունի յոյժ պիտանի,
Քաղցրահամ քան զխորխս մեղուի,
Ըստ իմ տկարութեանս կարի
Բանիկ բանիկ դաս տուացի,

Աւգնականութեամբն Յիսուսի։
Ի սուրբ Գէորգ սկիզբն առի,
Ի Նոր Կիւրակէն վճարեցի։
Կայն էր հնացել, նոր կազմեցի,
Հոգեւոր եղբայրն մեր բարի,
Քաջ վարդապետն Եսայի,
Որ է ամէն շնորհաւքն ի լի,
Հմուտ ամենայն արհեստի,
Ի կայելն այս սուրբ Կտակի
Խրատատու եղեւ մեզի։
Որք հանդիպիք այսմ տառի.
Ընթերցմամբ կամ աւրինակի,
Միշտ յիշեցէք զմեզ յաղաւթի,
Ասացէք մեզ՝ Աստուած ողորմի.
Նայ որ առատն է ի տուրս բարի,
Ձեզ եւ մեզ հաւասար ողորմի։

Երուսաղէմ, Թ. 352 (Իգնատիոս վարդապետի Մեկնութիւն Ղուկասու, յամէ 1272). Մ. եպ. Ազաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, 1929, էջ 95։

Վերադարձին կ՚երեւայ թէ հաստատուած է Աղթամար եւ հոն շարունակած իր դասախօսութիւնները։ 1499ին հոս կ՚օրինակէ Թումա քահանայ Մաշտոց մը, «ի ստոյգ եւ յընտիր աւրինակէ, զոր սրբագրեաց եւ փարթամացոյց մեծ հռետորն Գրիգոր վարդապետն, քաջն եւ արին» (Էջմիածին, Թ. 1684. Հմմտ. Հանդ. Ամս. 1930, էջ 42)։ Իրեն աշակերտած է Գրիգորիս Աղթամարցի բանա-

ստեղծը, որ յետոյ կաթողիկոս ընտրուեցաւ: Սա Ս. Մարինոսի նուիրած իր տաղին մէջ կը ձօնէր 1516ին տողերս իր ուսուցչին.

Ես Գրիգորս նուաստըս Աղթամարցի...
Ոտնաչափ համառօտ ի յաւարտ ածի...
Առ ոտս երջանիկ Բարունապետի,
Գրիգորիս անուն արթուն հըսկողի,
Քաջ հըռետոր 'ւ անյաղթ փիլիսոփայի,
Եւ երիցս երանեալ մեծ վարժապետի:

Նուիրած է առանձին տաղ մ'ալ իր Վարդապետին.

Գրիգոր մեծ բաբունի առ քեզ գրեցի ես...:

Իսկ Աստուածատուր Խաթայեցի վկային ընծայած տաղին մէջ կը գրէ.

Առ մեծ բաբունապետն ճառս այս յարմարի,
Որ եւ անուն նորա Գրիգոր յորջորջի:

(Ակինեան, Գրիգորիս Աղթամարցի եւ իր տաղերը, էջ 38, 51:)

Խ. Լեւոնեան կը հաստատէ թէ Գրիգոր Ձորթան «գրած ունի ոտանաւոր Ներբողեան մը 1490ին մի քանի նշանաւոր հայ վարդապետներու վրայ սկսեալ Խաչատուր Վ. Կեչառեցիէն մինչեւ Գրիգորիս Խլաթեցին Ծերենց († 1425): Գրած է նաեւ մէկ երկու նա–

*հատակներու պատմութիւն* (*Կոչնակ* 1914, *էջ* 493):

*Կարապետ Բաղիշեցւոյ համաձայն այս Զորթան Գրիգոր Արճիշեցւոյ աշակերտը եղած է Ներսէս Մառաղ, զոր կը կրկնեն ուրիշներ, բաց ի մէկէն, այսինքն* D *օրինակէն, որ ունի. «Յովհ. Համշենցի. նորին աշակերտ Ներսէս Մառաղն»: Բայց հաւանօրէն հոս գրչի անուշադրութեամբ է, որ ինկած է Գրիգոր Արճիշեցւոյ անունը: Զարմանալի է նաեւ հոս, որ իրողութիւնս այլուստ իր հաստատութիւնն չի գտներ: Բայց ստիպուած ենք ընդունիլ:*

*Մեր նպատակն է հոս տալ միայն Արեւելեան վարդապետներու գաւազանագիրքը,* 1500—1700 *շրջանի, գլխաւորաբար ծանրանալով Բաղէշի Դպրոցի վարդապետներու ծննդածառին ճիւղաւորութեան վրայ մինչեւ* 1700, *երբ Վարդանի աշակերտք կը ցրուին եւ Ամիրտոլուի Դպրոցը կ՚անշքանայ:*

*Ուրիշ առթիւ թերեւս պատեհութիւնն ունենամ նկարի առնելու արեւմտեան Դպրոցն, որուն գլխաւոր ներկայացուցիչներն եղան Գրիգոր Տարօնեցի, Յովհաննէս Շիրաք, Ղուկաս Կեղեցի, Սրապիոն Ուրհայեցի, Պետրոս Կարկառեցի, Գրիգոր Կեսարացի եւ Մովսէս եւ Փիլիպպոս կաթողիկոսները:*

## 4. ԲԱՂԷՇԻ ՎԱՆՔԵՐԸ

*Բաղէշ բերդաքաղաք էր։ Առաջին անգամ կը յիշէ Սեբէոս. Կոստանդ կայսր 652ին զօրք կը ղրկէ կալանաւորելու Ռշտունեաց տէրն Թէոդորոս։ Անոնք կալանաւորեցին իշխանին զօրքի մէկ մասը միայն, զորոնք «եառուն տանել* ի բերդն Բաղիշոյ. *եւ զոմանս ի կղզիս Բզնունեաց»։ Թէոդորոս ապաստանեցաւ Աղթամար կղզին։ Թովմաս Արծրունի, Ժ. դարուն, Բաղէշը* շահաստան *գիտէ. Աշոտ Բագրատունի Տարօնի մէջ կը յարձակի Մուսէի վրայ. Թշնամւոյն մնացորդներէն ոմանք «հասանէին մինչ ի շահաստան Բաղէշ (հին օրինակը՝ Բաղաղէշ» էջ* 110)։ *Թովմայի պատմուածքէն կը տեսնուի, թէ Բաղէշ շահաստանը միաժամանակ բերդաքաղաք էր։ Յոյները զայն Κλεισοῦρα Βαλαλείσων (Բաղաղէշ կղեսուր, բերդ) կ՚անուանեն, որուն ճշդիւ կը համապատասխանէ Թովմայի հին օրինակին Բաղաղէշ ընթերցուածը։ Մ. Խորենացւոյ ընծայուած Աշխարհացոյցը «բերդն Բաղէշ» Բզնունեաց գաւառին մէջ կ՚ենթադրէ։ Այսպէս նաեւ Վարդանայ Աշխարհագրութիւնը. «Բզնունիք՝ Արծկէ եւ Խլաթ եւ Բաղէշ մինչեւ Հիզան. այս միջոց ամէնն Բզնունիք ասի»։ Հ. Ղ. Ինճիճեան կը գրէ թէ «Բնակիչքն զԲաղէշ ասեն լինել Սալնոյ ձոր, որ է գաւառ Աղձնեաց» (Հին Հայաստան,* 123—124)։ *ԺԷ. դարուն Յիշատակագիր մը կը գրէ թէ Ամիրագիզ, Միքայէլ եպիսկոպոսի եղբօրորդին «էր*

յԱղձնեաց երկրէ, ի նահանգէն Խողձնեաց, ի վիճակէն Բզնունեաց, որ այժմ ասի Բաղէշ» (Երուսաղէմ, Թ. 410)։ Այլուր կ՚ըսուի, թէ նոյն Ամիրադիզ էր «ի յերկրէն Խողձնեաց, որ այժմ ասի Բաղէշ, ի Գօզալդարայ կոչեցեալ գաւառադոյն (ա՛յսպէս) նահանգէն, ի Նէլ անուն գեղջէն, որ է մերձ... Թուխ անուն աւանին» (Երուսաղէմ Թ. 2352)։ Թուխ, Հողց = Հողձ = Խողձ Աղձնեաց նահանգի գիւղերն են. բայց ծանօթ չէ խողձնեաց նահանգ կամ երկիր։ Կրնայ Բաղէշ իբրեւ գաւառ նկատուիլ «վիճակ Բզնունեաց»։ ԺԴ. դարէ սկսեալ իշխանանիստ քաղաք եղաւ Բաղէշ, եւ այդ իշխանին, կոչուած խան, իշխանութիւնը կը տարածուէր մինչեւ Վան եւ մինչեւ Ամիդի փաշայութեան սահմանները։ Հին ժամանակներէ սկսեալ քաղաքին բնակչութեան ստուար մասը կը բաղկանար Հայերէ. կային հոն նաեւ Ասորիներ։ Ունէր քաղաքը իր շուրջը նաեւ հայաբնակ գիւղեր։ ԺԴ. դարէ ի վեր կը յիշուին հոն Հայ եպիսկոպոսներ։ Թեմը ունէր իր վանքերն եւ եկեղեցիները։ ԺԵ. եւ յաջորդ դարերուն կը ծաղկէին հոն մասնաւորապէս հետեւեալ չորս վանքերը.

ա. Յովհաննու Ամլորդւոյ վանք, որ կոչուեցաւ Ամրտոլու վանք.

---

[1] Բաղէշի մասին հմմտ. Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ Մեծ Հայս, Վենետիկ 1864, էջ 239—246. Հ. Ղ. Ինճիճեան, Նոր Հայաստան, Վենետիկ 1806, էջ 167—179։ Հ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, Վիեննա 1907, էջ 187—188։

բ. Գոմաց ձորի մէջ, Ամիրտոլէն կէս ժամ հեռաւորութեան վրայ, Ս. Աստուածածնի վանք, կոչուած Գոմաց Ս. Աստուածածնի վանք, որ եպիսկոպոսանիստ էր եւ առաջնորդարան:

գ. Աւեխու ձորին մէջ՝ Աւեխու Ս. Աստուածածնի վանք:

դ. Ամ(պ) գիւղին հանդէպ, Խնդրակատար Ս. Աստուածածնի վանք, քաղաքէն իբր երկու ժամ հեռու[2]: Բաղէշի արեւմուտքը անջատ դիրքի մը վրայ, բաց ու զուարճալի դաշտակի մը, նայելով հանդիպակաց լեռներուն եւ ձոր ու ծմակներուն վրայ (Արգոս, Բիւզանդիոն, 1909, Թ. 3918):

Այս վանքերէն անուանի հանդիսացան պատմութեան մէջ նախ Խնդրակատարն, ապա Գոմաց վանքը եւ ի վերջոյ Ամիրտոլու վանքը:

Այս վանքերու մասին խօսած է ընդարձակ Հ. Հ. Ոսկեան[3]: Մեր աշխատութեան

---

[2] Խնդրակատար վանքի պատմութեան հայող ընդարձակ Յիշատակարան մը, գրուած 1703ին եւ շարունակուած Վարդան վարդապետէ, հրատարակեց F. Macler, Notre-Dame de Bitlis, Հայ բնագիրը՝ Բանասէր (Պարիս 1905), 289—303. Պարիսի Ազգ. Մատենադարանի հայերէն ձեռագրաց Թ. 195էն. իսկ ձեռագրին համապատասխան էջերը տուաւ նաեւ լուսատիպ եւ ֆրանսերէն թարգմանութեամբ՝ Notre-Dame de Bitlis. Texte arménien traduit et annoté par F. Macler: Journal Asiatique 1915, p. 357—444 (Արտատպ. Պարիս 1916, 8°, էջք 88), Planches I—VII:

[3] Հ. Հ. Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքերը. Մասն Գ. Վիեննա 1947, էջ 895—943:

մէջ նկատի պիտի առնուին անոնք միայն իբրեւ Դպրոցներ:

## 5· ՆԵՐՍԷՍ Վ· ՄԱՏԱՂ (ՄՈԿԱՑԻ)

Կարապետ Փարխնդեցի, ինչպէս տեսանք, կը ներկայացնէր զինքը իբրեւ Գրիգոր Արճիշեցւոյ աշակերտ «Ներսէս Մատաղ», առանց հայրենիքը յիշատակելու: Մեզի անծանօթ է այլուստ անոր «Մատաղ» յորջորջանքը: Եթէ աշակերտած է ան Գրիգոր Ձորթան Արճիշեցւոյ, պէտք է ենթադրել, թէ ան եղած է Աղթամար, 1483էն ետքը:

Ստեփանոս դպիր 1464ին կը յիշէ Յովհաննէս Համշենցւոյ աշակերտներու թւոյն մէջ «պաէր Ներսէս Բաղիշեցի» (Արարատ 1913, էջ 601): Եթէ ուզենք այս Բաղիշեցին նոյնացնել համանուն Մատաղին հետ, դժուարաւ պիտի կրնանք զանիկա Արճիշեցւոյ աշակերտ ճանչնալ: ԺԵ· դարու վերջերը պէտք է ապրած ըլլայ այն Ներսէս Վ· Մոկացին, որուն անունով Գանձարաններ տաղ մը եւ երեք գանձ յառաջ կը բերեն, որոնք կը գտնուին արդէն 1505ին գրուած Գանձարանի մը մէջ: Այլուստ անծանօթ է նաեւ այս Մոկացին:

Որովհետեւ Արճիշեցւոյ աշակերտ կը ներկայացուի Ներսէս Մատաղ եւ չի չեշտուիր անոր Բաղիշեցի ըլլալը, հաւանօրէն ան ոչ-բաղիշեցի մ՚էր, նոյնպէս Արճէշի շըրջանէն, որ դիւրութիւն ունեցած է աշակեր-

տիլ Արճիշեցւոյ համալսարանին մէջ յԱրճէշ եւ կամ յԱխթամար: Ներսէս վարդապետական իշխանութիւնը ստանալէ ետքը փնտռած է իրեն գործունէութեան վայր մը. եւ ի վերջոյ եկած է (1514էն ոչ շատ յառաջ) Բաղէշ եւ հաստատուած է Խնդրակատար վանքին մէջ: Ան ունէր իրեն հետ Ներսէս անուն պատանեակ մը իբրեւ աշակերտ, որուն համար կ՚ըսուի թէ հայրենեօք Մոկացի էր, եւ յետոյ բնակութեամբ կոչուեցաւ Բաղիշեցի: Այս պարագաները թոյլ կու տան ենթադրելու, թէ Ներսէս Մաստաղ նոյնպէս Մոկացի եղած ըլլայ, եւ նոյն վերոյիշեալ Մոկացի համանուն գանձասաց եւ տաղասաց վարդապետին հետ:

Բաղէշի Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքը, ուր հաստատուեցաւ Ներսէս Վ. Մաստաղ, կը յիշուի արդէն 1458ին. այս տարւոյն ոմն Մուրատի որդի, աշակերտ վարպետ Գրիգոր աբեղայի, օրինակած է «ի յուսապարդ անապատիս Աստուածածնի Տիրամօր տաճարիս, որ այժմ Խնդրակատար վանս կոչի Նարեկի Լուծմունք եւ Ժամագիրք (Նոտարք, էջ 188—189):

Շահ Իսմայէլի արշաւանքներու շրջանին (1500—1514) ինչպէս շատ վայրեր, նոյնպէս Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքը կրած էին աւերումներ: Ժամանակին աղէտի մասին ակնարկութիւններ ունին ժամանակակից յիշատակագիրները. Յակոբ դպիր 1504ին

ի Մուշ կ՚օրինակէ Աւետարան մը «ի դառն եւ ի չար ժամանակի», երբ «վասն բազում մեղաց մերոց մատնել է զմեզ Աստուած ի ձեռն օտար եւ այլադէմ արիւնարբու ազգին, որ Կարմիր Գլուխ Սօֆի ասին. որ յինչ տեղ որ գնացին, զամենեսեան անողորմ ի սուր քարշեցին, գերեցուցին եւ թալանեցին եւ զորս փախստական արարին: Եւ յայսմ ամի զերկիրն Աղբակայ ղազայ արարին. զայրս եւ կանայս սրով կոտորեցին. եւ զանմեղ տղայս, զաղջկամարդսն գերեցուցին: Եւ ի սոյն աւուրքս զՎան եւ զՈստան աւերեցին: Եւ կըրկին պատուհաս չարժեալ է ի վերայ աշխարհիս՝ մահ տարաժամն» (Աւետարան Մխլք գիւղի): Նոյն տարւոյն կը գրէ Յակոբ դպիր նաեւ Դանձարան մը «յիշխանութեան Միր Շարաֆին եւ վերակացութեան Նորին Շէխ Ամիրին, որ յայսմ ամի հանին ի Մշոյ բերդէն եւ տարան ի Բաղէշ եւ զբերդն տուին եւ ամիրայ դրին: Եւ Թաւրիզոյ թախթի պարոնութիւնն խարանեբ էր Աղրլու (Ազգոյուն) ազգին եւ Սօֆի ոմն Իսմայիլ անուն ելեալ ի վերայ աշխարհիս[4]»: 1513ին Մելքիսէթ Բաղիշեցի կ՚օրինակէր Յայսմաւուրք մը «ի բռնակալութեան ազգին Նետողաց Շահ Սմայելին, յամի յորում զՇէխ Ամիր աղայն կոտորեցին եւ շատ աղայք բազում զօրօք ի սուրն քարշեցին. եւ զամենայն քաղաքն եւ զերկիրն առ եւ աւար եւ գերի երին. եւ զԹլաթ ղա-

[4] Գեղամ Տէր Կարապետեան, Ձեռագիրք Տարօնի:

գայ երին եւ ԽԵ ձեռն կարեցին, դեւ Ալի պարոնն[5]»:

Բաղէշ, որ Շահ Իսմայէլի գերիշխանութեան տակ էր, 1514ին Ամիր Շարաֆի († 1533)[6] ապստամբութեամբ ենթարկուեցաւ Սելիմ սուլտանի իշխանութեան. եւ վերջ գտան պատերազմները: Գեղեցիկ կը գրէ այս անցքերու մասին Վարդան Վ. Բաղիշեցի, առաջնորդն Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին, իր Յիշատակաց Մատեանին մէջ. «Ոմն բռնաւոր Սօֆ անուն (Սօֆի շահ Իսմայէլ) եկեալ ի Պարսկաստանէ եւ տիրեալ այսմ աշխարհի աւերելով, թալանելով եւ կողոպտելով. որ երեք ամ ամայի եւ աւեր մնաց քաղաքս այս (Բաղէշ), վանք եւ եկեղեցիք: Եւ յետոյ կարողութեամբն Աստուծոյ Ամիր Շարաֆն էառ զբերդն. եւ ցրուեալ ժողովուրդքն դարձան ուրախութեամբ ի տունս իւրեանց. եւ շինեցաւ երկիր, քաղաքս եւ վանորայք եւ շատ եկեղեցիք: Զի օրհնեալն յԱստուծոյ Ամիր Շարաֆն էր իբրեւ զմի ի բարեպաշտ թագաւորացն. եւ ինքն օգնական լինէր աղքատաց եւ վանօրէից: Ի յայս բարի ժամանակս, որ էր թվականն ՋԿԳ (1514), շինեաց Ներսէս վարդապետն ձեռամբ խօջայ Թումաջանին զպարիսպն Խնդրակատար Ս. Աստուածածնին»: (Բանասէր, 1905, էջ 293):

---

[5] Հ. Յ. Քոսեան, Ցուցակ Կարնոյ գիւղերու հայերէն ձեռագիրներու, Թ. 10 (անտիպ):

[6] Դիւան Հայոց պատմութեան, Ժ., 22:

*Այս «Ներսէս Մատաղն եւ (նորին աշակերտ) Ներսէս րաբունապետն օգնականութեամբ եւ վերակացութեամբ Թումաջանին շինեցին զպարիսպն եւ զտներն եւ արարին հանգիստ վանք, դասատուն եւ դպրոց: Եւ եղ բարի համբաւ սոցա ի բազում տեղիս. եւ լուեալ բազմաց գային ի պատճառս ուսման եւ ի հետեւումն աստուածային գրոց»* (անդ, 293—294):

*Այսքան է մեր գիտցածը Ներսէս Մատաղի մասին: Ան վախճանած ըլլալու է իբր* 1530*ին Բաղէշի նոյն մենաստանին մէջ:*

*Ներսէս Վ. Մոկացւոյ անունով ունինք Գանձարաններու մէջ երեք գանձ եւ մէկ տաղ: Անոնք կը գտնուին արդէն* 1505*ին գրուած Գանձարանի մէջ: Ինծ կը թուի թէ այս Ներսէս Վ. Մոկացի նոյն է Ներսէս Վ. Մատաղի հետ: Յիշեալ չափական գրութիւններն են.*

*ա.* Գանձ Վարդավառին ի Ներսէս վարդապետէ:

*Նախախնամող Աստուած յայտնեցար*[1],
*Յիսուս Քրիստոս օրհնեալ տիրաբար...*
*Տուները կը կազմեն՝ ՆԵՐՍԷՍ:*

*Ձեռագիրք. Երեւան, Պետ. Թանգարան, Թ.* 355, *էջ* 659—670 (=*Կանայեանց, Ցուցակ հայ. ձեռագրաց Ներսիսեան Վարժա-*

[1] *Ուրիշ ձեռագիրներ (Երեւան, Թ.* 359, 361. *Էջմիածին, Թ.* 324) *առաջին տողն ունին. «Ներգործական Աստուած բարերար...»:*

րանի, էջ 15. յամէ 1505) ։ 359 ։ 361 ։ Էջմ. 424 ։ Քէչիչեան, Ցուց. Հայ. Ձեռ. Զմմառու, Թ. 22, Թղ. 216բ (ԺԶ դար) ։

բ. Գանձ Վարագայ Ս. Խաչին, ի Ներսէս վարդապետէ Մոկացւոյ[2] ։

Նշան օրհնեալ եւ փառաւորեալ,
Աստուածադարդ փայտ կենաց տնկեալ,
Աստուածամուխ սուրբ շողացեալ,
Եւ քառանիշ աթոռ բարձրացեալ...
Տուները կը կապեն՝ ՆԵՐՍԷՍ ։

Ձեռագիրք. Երեւան Պետ. Թանգարան, Թ. 355, էջ 690—703 (= Կանայեանց, ցուցակ Հայ. Ձեռ. Ներսիսեան Վարժարանի, էջ 15) ։

դ. Գանձ Շողակաթին Եկեղեցւոյ ։

Ներբողական բանըս հրաշալի,
Քեզ երգեսցուք միածին որդի.
Օրհնեմք զանուն քո սուրբ սոսկալի,
Բարեբանեմք զբնութիւնդ սքանչելի...
Տուները կը կապեն՝ ՆԵՐՍԷՍ ։

Ձեռագիրք. Թաւրիզի Թ. 43, Թղ. 337ա—39բ (= Աճառեան, Ցուց. Թաւրիզի Հայ. Ձեռագրաց, էջ 36). տե՛ս Աճառեան, Գանձարան, Թղ. 458 ։

[2] Ձեռագիրը խորագրին մէջ ունի. «ի Ներսէս վարդապետէ», իսկ լուսանցքի վրայ. «ի Ներսէս վարդապետէ Մոկացւոյ» ։

դ. Տաղ Վարդավառի ի Մոկացի Ներսէս վարդապետէ:

Այսօր ցընծայ լեառն Թաբոր եւ զուարճանայ
 մեծն Ահերմոն.
Քանզի լոյսն աստուածային այսօր ծագեաց
 յայն սուրբ լերին,
Ա՛յ ցընծայ լեառն Թաբոր եւ զուարճանայ
 մեծն Ահերմոն...

Ձեռագիրք. Անտոնեանց ի Զմմառ, Թ. 100, Թղ. 244բ—245ա (ԺԶ). Քիւրտեան, Տաղարան յամէ 1681. Բերլին, Պետ. Մատենադարան, Թ. 67, Թղ. 225բ: Երեւան, Պետ. Թանգ. 1026, Թղ. 12բ (1595). Էջմ. 45, Թղ. 324ա (1642). 2398, Թղ. 145բ (1613). Վիեննա Մխիթ. Մատ. 343, 83ա (ԺԷ), 401, 129ա (ԺԷ). 577, 83ա (ԺԸ), 745, 246ա (ԺԷ). 1002, 174ա (ԺԷ) եւ այլն: Հրատարակուած՝ Բազմավէպ, 1864, էջ 234—235, առանց անուան հեղինակի:

Ձեռագիր Տաղարաններն առ հասարակ անանուն ունին տաղս: Բերլինի ձեռագիրն խորագրին մէջ ունի «ի Մոկացի Ներսիսէ». Քիւրտեանի Տաղարանը՝ «Տաղ Վարդավառի Գ. աւուր Մոկացոյ ասացեալ». իսկ Անտոնեանց ձեռագիրը խորագրին մէջ ունի. Տաղ գեղեցիկ երրորդ օրն» (Վարդավառի) եւ տողերին լուսանցքի վրայ «ի Մոկացի Ներսէս վարդապետէ (ասացեալ է) տաղս»:

Իբրեւ ճաշակ Ներսէս Մոկացւոյ ոճին կը հրատարակեմ տաղս համաձայն A (Անտոնեանց Թ. 100), B (Բազմավէպ 1864), Վիեննայի C (Թ. 745), D (Թ. 1002), E (Թ. 343) ձեռագիրներու :

ՏԱՂ Ի ՎԱՐԴԱՎԱՌՆ
Ի ՄՈԿԱՑԻ ՆԵՐՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԱՍԱՑԵԱԼ

Այսօր ցընծայ լեառըն Թաբօր,
Եւ զուարճանայ մեծն Ահերմոն.
Քանզի լոյսըն աստուածային
Այսօր ծագեաց յայն սուրբ լերին.
Ա՛յ ցընծայ, ա՛յ ցընծայ
Լեառըն Թաբօր եւ զուարճանայ:

Այսօր Թաբօր լեառն ուռճացեալ,
Լուսատեսիլ ծաղկով լցեալ.
Քանզի Յիսուս մարմնով ծաղկեալ,
Եւ զԱդամայ փառսըն ցուցեալ.
Ա՛յ ցնծան, ա՛յ ցընծան,
Ադամ 'ւ Եւա եւ զուարճանան:

Այսօր շողէր շուշան յովտին,
Եւ շողշողէր դէմ արեւին.
Քանզի լոյս աստուածային
Իջեալ ցօղէր այն ծաղկընին.
Ա՛յ ցընծան, ա՛յ ցընծան
Ծաղկունքդ ամէն եւ զուարճանան[2]:

---

[1] Ձեռագիրք առաջին տան հետեւելով առ հասարակ եզակի կը գրեն «ցընծայ». ուղղեցինք ուր պէտք էր:
[2] Այս տունը ունի միայն A:

*Այսօր վարդն անուշահոտ*
*Բուրեաց ըզհոտն աստուածական,*
*Փթթեալ հասակն երեւամբն*
*Յայտնեաց զծածուկ լոյսն ի մարմին,*
*Ա՜յ ցընծան, ա՜յ ցընծան,*
*Վարդերդ ամէն եւ զուարճանան*[3]:

*Այսօր մեծ Վարդըն վառեալ,*
*Կարմիր սպիտակ լուսով վայլեալ·*
*Կանաչ դեղով գունաւորեալ*[4],
*Ապա զդեղին լոյսըն ցուցեալ·*
*Ա՜յ ցընծայ, ա՜յ ցընծայ,*
*Վարդըն վառեալ*[5] *եւ զուարճանայ:*

*Այսօր լուսին 'նդ արեգական·*
*Եւ աստեղաց պարքն ամենայն,*
*Տեսին ըզտէրն արփիական,*
*Իւրեանց լուսոյն նըւաղեցան·*
*Ա՜յ ցընծան, ա՜յ ցընծան*
*Աստղունք ամէն*[6] *եւ զուարճանան:*

*Այսօր Մովսէս մեծ մարգարէն,*
*Կենդանացեալ գերեզմանէն,*
*Եկն ի Թաբոր մօտ ի Որ էն,*
*Ունէր զտախտակըն քարեղէն·*
*Ա՜յ ցընծայ, ա՜յ ցընծայ,*
*Սուրբ մարգարէն եւ զուարճանայ*[7]:

---

[3] A *ունի «Այսօր մարգարէն եւ զուարճանայ»:*
[4] B *կանաչ գունով գեղաւորեալ·* CDE *կ· դե-ղով* (D *դեղով*) *գունաւորեալ:*
[5] D *վարդերտ ամէն...:*
[6] E *լուսին 'ւ արեւ...:*
[7] *Այս երեք տուները չունի* A:

Այսօր եկեալ մեծն Եղիա,
Որպէս եկեալ ի Թաբերայ.
Դասանէր 'ւ երկրպագէր,
Աստուած անէր ըզՄեսիա,
Ա՛յ ցընծայ, ա՛յ ցընծայ.
Սուրբ մարգարէն[8] եւ զուարճանայ:

Այսօր Մովսէս 'նդ Եղիայի
Խօսին գեւլիցն ընդ Քրիստոսի,
Տէր փութով եկ ի խաչի[9]
Զի դու փրկիչ ես աշխարհի.
Ա՛յ ցընծան, ա՛յ ցընծան
Սուրբ նահապետքն եւ զուարճանան:

Այսօր Մովսէս լալով ասէր
Հոգիքն ամէն քեզ կու մընան,
Զի դու գաս եւ չարչարիս,
Եւ ազատես զհոգիս նոցա.
Ա՛յ ցընծան, ա՛յ ցնծան
Արդար հոգիքն եւ զուարճանան:

Այսօր Պետրոս, Յակոբ, Յոհան
Հետ Քրիստոսի ի լեառն ելան,
Լըսան զբարբառըն հայրական,
Դա է որդի իմ սիրական.
Ա՛յ ցընծան, ա՛յ ցընծան,
Յակոբ, Յոհան եւ զուարճանան[10]:

---

[8] B սուրբ Եղիա...:

[9] A խաչին. B ի խաչըն եկ C ասէր փութով ի խաչն արեկ:

[10] Այս տունը ունի միայն B:

*Այսօր Պետրոս վէմ պատրաստէր,*
*Տապատարաց հիմն արկանէր.*
*Բայց Յիսուս խորան չինէր,*
*Իւր սիրելեացն տեղ պատրաստէր.*
*Ա՜յ ցնծան, ա՜յ ցնծան*
*Սուրբ հրզնաւորքն եւ զուարճանան:*

*Այսօր Հոգին ամպ երեւեալ,*
*Իւր Էակցին հովանացեալ,*
*Ճառագայթիւք փըրկիչն յայտնեալ,*
*Յառաքելոց գունդըն հանդեալ.*
*Ա՜յ ցընծան, ա՜յ ցնծան*
*Սուրբ առաքեալքն եւ զուարճանան:*

*Այսօր Հայր յամպոյն ձայնեալ,*
*Եւ Միածնին իւր վըկայեալ.*
*Դա է որդին իմ մարմնացեալ,*
*Հոգւովս ի դմա եմ հաճեցեալ.*
*Ա՜յ ցնծան, ա՜յ ցնծան*
*Երկինք 'ւ երկիր եւ զուարճանան:*

## Ե. ՆԵՐՍԷՍ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ

Ներսէս Վ. Բաղիշեցի, հայրենեօք Մոկացի, ձեռնասունն էր Ներսէս Վ. Մատաղի, որուն գործակիցն եղաւ Խնդրակատարի նորոգութեանց ժամանակ եւ անոր մահէն ետքը յաջորդը առաջնորդութեան: Ներսէսի ծննդավայրն էր Մոկք. բայց կոչուած է Բաղիշեցի, երկար ժամանակ Բաղէշ ապրած ըլլալուն համար: Կը յիշուին իր հայրն՝ Յակոբ քահանայ եւ մայրը՝ Շնոհւոր: Ներսէս

վախճանեցաւ 1573/4ին: Զունինք իրմէ գրուոր երկասիրութիւն: Իր աշակերտն է Ներսէս Վ. Ամկեցի: Ժամանակակիցները գովութեամբ կը յիշեն զինքը: Յառաջ կը բերեմ.

ա. Հերապետ գրիչ 1534ին ի վայելումն Ներսէս Բաղիշեցւոյ կ՚օրինակէ Տաթեւացւոյ Քարոզգիրք Բ. հատորը[10]. ուր կը գրէ. «Զստացող քարոզ սուրբ գրոցս զՆերսէս րաբունապետն եւ զծնաւղսն իւր յիշեցէք ի Քրիստոս Աստուած...: Գրեցաւ ՋՁԳ թվին ի դուռն Խնդրակատարին»: Կը գրէ նաեւ ստացիչը նոտրագիր (թղ. 359բ). «Զստացող սորայ զՆերսէս Բաղիշեցի վարդապետն եւ զծնօղսն իմ զԱկոբ քահանայն եւ զՇնոհուրն յիշեցէք ի Քրիստոս, որ ստացաւ զսայ ի հալալ արդեանց իւրոց» (Էջմիածին, Թ. 2077):

բ. Կարապետ գրիչ Խլաթի Սողած գիւղին մէջ 1542ին կ՚օրինակէ Աւետարան մը եւ կը խնդրէ յիշել «զվարդապետն եւ զրաբունապետն Ներսէս, որ տղայ տիաւք եւ երիտասարդ հասակաւ զաւեալ տաղանդն չահեցուց ըստ Աւետարանին. եւ ստացաւ զսուրբ Աւետարանս յարդար վաստակոց իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնաւղացն՝ հօրն Յակոբ քահանային եւ մաւրն Շնաւհորին, եւ եղբարցն Ազուպշին եւ Մուրատշին, Դարմանին. եւ քուերն Քնքուշին եւ որդոյն որդին Յակոբ քահանային եղբաւրն Վարդանին» (Բրիտ. Թանգարան, Թ. 19 (Conybeare, Catalogue, p. 34):

Գ. Վարդան քահանայ 1567ին «ի Բաղէշ քաղաքի եղերն, ի գեօղն Մար-Գորգ, ընդ հովանեաւ Ս. Գէորգեայ զօրավարին» եւ «ի մերոյ սուրբ ուխտի աստուածորդութեան Թըն-դրակատար Ս. Աստուածածնին՝ Ներսէս բա-նիբուն եւ երջանիկ բարունապետին» կ'օրի-նակէ Գանձարան մը եւ կը խնդրէ յիշել ստա-ցիչն Ներսէս բարունապետը, «որ զԳանձա-րանս ետ գրել յիշատակ (մօրն) Շնորհաւո-րին, եղբօրն Մուրատշին եւ քուերն Բնքու-շին...: Դարձեալ յիշեցէք զբարունապետն մեր զտէր Ներսէս Բաղիշեցին. եւ զհոգեւոր զաւակսն, որ են աշակերտք իւր՝ զՆերսէս բանիբուն եւ քաջ բարունապետ Ամկեցին, զՀերապետ վարդապետ, զԴաւիթ վարդա-պետ, զՅովհաննէս վարդապետ եւ զԳրիգոր աշակերտն. եւս առաւել զմխարանքն իւր՝ զՂազար աբեղայն, որ յայժմ ամի հէրպետ էր, եւ զՅակոբ կրօնաւորն եւ զԱբրահամն եւ զայլսն ամենայն՝ զօտար եւ զընակսն, զանուես եւ զարկաւագունս, զմշակս եւ զայ-նուսիկ, որ երախտիք եւ աշխատանք ունին ի վերայ սուրբ վանուցս: Դարձեալ յիշեցէք... զտէր Ներսէս, որ ետ գրել զայս Գանձարանս եւ զԱւետարանն եւ զերկու ձեռք ժամու հան-դերձն, զպղնձակուրծ Մախսուտի արտերն, զմահտեսի Մուրատի արտն. եւ արծաթի ակին մի ետ շինել եւ եդ ի դուռն Թնդրակա-տար Ս. Աստուածածնին ոսկի եւ յիշատակ» (Թորոս Աղբար, Բ. 256—257):

Դ. Բաղէշի Յայսմաւուրքի մը յիշատակաբանը յառաջ կը բերէ Գ. Վ. Սրուանձտեանց այսպէս. «Արդ այսպիսում յուսադարդ տառի ցանկացող եղեւ տէր Ներսէս մեծ րաբունապետն... բայց վա՜յ է ինձ... որ ոչ եւեթ կատարեալ զգիրքս, այլ փոխեցաւ առ Աստուած...: Եւ ես յաւարտ հանի զսա յաստուածապահ քաղաքս Բաղէշ, զի սկիզբն գրոցս ի գիւղն Հօրմըզ եղի, ընդ հովանեաւ սուրբ Քրիստափոր զօրավարին, եւ զաւարտ գրին ի գեօղն իմ ի Մարգորդ, ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զօրավարին: Զոր ի նեղել Բայիկցուն ելայ եւ եկի ի քաղաքս Բաղէշ եւ աստ աւարտեցի զգիրքս ծաղկելով եւ կազմելով ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զօրավարին եւ սուրբ Աստուածածնին եւ սուրբ Ստեփանոսին եւ Գէորգեայ զօրավարին. ի հայրապետութեան տէր Գրիգոր կաթողիկոսին եւ մերոյ առաջնորդի Խնդրակատարի Ներսէս րաբունապետի Ամկեցւոյն...: Ի փախչահութեան աշխարհիս ինքնակալ խոնդքարին սուլթան Մուրատին, որ յայսմ ամի... եղեւ նոր փախչահ: Ի Թուականին Հայկազնեան տումարիս յիննհարիւր եւ ի ԿԶ ամին» (Թորոս Աղբար, Բ., 260):

Թուականը «ՋԿԶ» (1517) թէ ի՞նչպէս մուտ գտած է հոս, չեմ կրնար մեկնել. բայց պէտք է կարդալ ՌԻԳ (1574). վասն զի Մուրատ Գ. ա՛յս թուին զահ բարձրացաւ եւ զարձեալ այս թուին Հայոց կաթողիկոսն էր Գրի-

դոր։ Երուսաղէմի Թ. 135 Գանձարանը կ'օրինակուի «ի Հայրապետութեան սուրբ աթոռոյն Էջմիածնին տէր Գրիգոր կաթողիկոսին եւ ի թագաւորութեան Տաճկաց Մուրատ փատշահին... ի թուականութեան հայկազեան տումարիս ՌԻԴ» ի Սողած (Խլաթ)։

Ներսէս Վ. Բաղիշեցւոյ աշակերտներն են ըստ այսմ.

ա. Ներսէս Վ. Ամկեցի.
բ. Հայրապետ Վ. Գումաճենց.
գ. Դաւիթ Վ.
դ. Յովհաննէս Վ.
ե. Գրիգոր աշակերտ։

Հայրապետ վարդապետի գրչէն ունինք հետեւեալ Յիշատակագրութիւնը. «Եւ արդ ես Նուաստս եւ յետինս ի սպասաւորաց բանի, Հայրապետ վարդապետ, ամենայն կարգաւորաց եւ առաջնորդաց եւ վարդապետաց հող եւ փոշի, վասն Աստուծոյ եւ վասն սրբութեանդ ձեր վերստին նորոգեցի եւ կազմեցի զպատուական եւ զվարդափթիթ գիրքս այս Հարանց վարքս եւ կանոնք ամենայն սրբոցն եւ ոգեշահ ընթերցաւղացդ եւ հաւատարիմ ունկնդրաւղացն ի թվին ՋՂԶ. Նորոգեցաք, զի մնացէ ի դուռն Խնդրակատար սուրբ Աստուածածնին ի բարի եւ անջինջ յիշատակ գրաւղացն եւ գնաւղացն եւ աշխատաւորացն ի սմայ եւ մանաւանդ ինձ անարժանիս՝ Հերապետ, մականուն Գումաճենց կոչեցեալ, զի ես մեղուցեալս աղաչեմ զձեր

*սրբութիւնդ, պատուական ընթերցողք, հայրք եւ եղբարք իմ, ուղիղ սրտիւ եւ բոլոր հաւատով մեղաց թողութիւն խնդրեցէք աշխատողացն եւ ինձ եւ ծնողաց իմոց Վարդանին եւ Խ(ո)նդքարին. ամէն: Եւ արդ մի ոք իշխեսցէ որոշել զսայ ի դրանէ Սուրբ Աստուածածնէս. զի թէ ոք յանդգնի, նզովեալ եղիցի, ամէն: Հայր մեր որ յերկինս»: Վենետիկ, Թ. 265 (Ոսկեփորիկ). տես Հ. Բ Սարգիսեան, Ցուցակ, Բ. էջ 860:*

*Ձինքը կը յիշէ նաեւ Վարդան դպիր* 1567*ին.*

## 7. ՆԵՐՍԷՍ Վ. ԱՄԿԵՑԻ (ԳՆՈՒՆԵՑԻ)
## 1574—1586՞

*Խնդրակատարի Դպրոցին ականաւոր դէմքերէն է Ներսէս Ամկեցի, կոչուած նաեւ Գնունցի եւ Հետեւակ (Հետիոտն), որդի Մհերի եւ Քնքուշի. կը յիշուին իր եղբայրներէն Վարդանէս, Յովհաննէս եւ քոյրն Դուրվանդ: Վարդանէս կ'ամուսնանայ Մըրմաթի հետ, եւ կ'ունենայ ուստր մը՝ Յակոբ սարկաւագ:*

*Ներսէս Ամկեցի իր ուսուցչին Ներսէս Վ. Բաղիշեցւոյ մահէն ետքը կը կարգուի Խընդրակատարի առաջնորդ եւ վարդապետ: Կը յիշուէր* 1567*ին (տե՛ս* § 6):

*Յակոբ սարկաւագ, Ներսէս Ամկեցւոյ եղբօրորդին* 1569*ին կ'օրինակէ «ի սուրբ ուխտս Խնդրակատար ի Բաղէշ քաղաքի»*

Ագաթանգեղոս մը, «ի խնդրոյ Ներսէս բարունապետի» եւ «ի յիշատակ հօր Մհերին եւ մօր Քնքուշին եւ եղբօր Վարդանէսին». այլուր կը գրէ. «Ես Յակոբ սարկաւագ որ աշխատեցայ եւ ձեռամբ իմով գրեցի զսուրբ գիրքս յիշատակ հաւրեղբաւր իմոյ Ներսէս բարունապետին». կը խնդրէ յիշել «զուսուցիչն իմոյ գրիս զշնորհազարդ եւ զբանիբուն զԱստուածատուր վարպետն Ամկեցի». «Քրիստոս Աստուած ողորմի... իմ հօրեղբօր Ներսէս քաջ բարունապետ վարդապետին... եւ աշակերտեալ մանկանց տէր Մկրտիչին եւ տէր Յովհաննէսին, որ բազում աշխատութեամբ աշխատեցան ի կարդալ գրոց»: «Յիշեսջիք... զՆերսէս բարունապետն Ամկեցին», «եւ զհոգեւոր հայրն իմ զԱմկեցի Ներսէս քաջ բարունապետն, որ ետ գծագրել յիշատակ իւր» (Էջմիածին, Թ. 1921. հմմտ. Ագաթանգեղոս, քննական հրատ. էջ ԺԳ.—ԺԴ.):

Ներսէսի գործունէութեան պատկերը կը գծէ Վարդան Բաղիշեցի այսպէս. «Ներսէս Ամկեցին, որ եղեւ յոյժ խոհեմ եւ կորովի եւ իմաստուն ի յաստուածաբանութեան հին եւ նոր Կտակարանաց, մինչ զի համբաւ տարածեցաւ ընդ ամենայն տեղիս եւ յօժարեցոյց զբազումս. զոմանս յաշակերտութիւն սուրբ Գրոց եւ զայլս ի լուր խրատական խօսս իւր: Եւ ի վերայ ամենայն բարեգործութեանց, զոր ունէր՝ զխախտեալ տեղիսն, թէ պարիսպն եւ

թէ խցերն նոր նորոգեաց բազում աշխատութեամբ: Այլ եւ զկարմնճի արտն քան ոսկի գնեալ եւ արար ոխփ ի դուռն Ս. Աստուածածնին» (Բանասէր, անդ, էջ 293—294):

Իր գովութիւնը կ՚ընէ Գրիգոր Դարանաղցի հետեւեալ տողերու մէջ. «Հետեւակ մականուն Ներսէս մեծ աւագ վարդապետ... որ հետխոտ շրջէր ամենայն ուրեք, վասն որոյ Հետխոտ անուանեցին տեսողքն. եւ էր ի ժամանակս Մեծ Շիրակին Ամթայ: Եւ սա Ներսէս բազում աշակերտս եհան...: Եւ այսպէս ասէին թէ Ներսէսն ի Շիրակն գրուց գրկելով բանս մեղադրանաց, թէ Այսչափ ժամանակի վարդապետ գոլով դու եւ աշակերտք ընդէ՞ր ոչ հաներ: Եւ նա այլ անդրադարձութեամբ պատասխանի տնելով նմա, թէ Նապաստակն եւ աղուէսն յամենայն ամի հանապազ ծնանելով, ապա ծնեալքն աղուէսք են եւ նապաստակք, անզօրք են եւ տկարք. եւ առիւծն յերկս ամս մի անգամ ծնանելով երկու կամ մին կորիւնս, ապա ծնեալքն առիւծք են եւ հզօրք եւ թագաւոր ամենայն գազանաց: Եւ Շիրակ վարդապետն զայս պարծանաց մեծարանութիւնս ի դէմ Ղուկասին (Կեղեցւոյ) եւ Պետրոսին (Կարկառեցւոյ) եւ Սրապիոնին (Ուռհայեցւոյ) վասն ասէր: Եւ այս Ներսէս Հետխոտս այլ քան զնորին պանծացածն թէ որ յաւելիք չէին, նա պակասք այլ չէին» (Ժամանակագրութիւն, էջ 391):

Լէոնարդոյ Սիդոնի եպիսկոպոսը, որ 1583/84 թուին արեւելք գացած էր եւ Հայոց եկեղեցւոյ մասին տեղեկութիւններ հաւաքած, կը գրէ 1587ին առ Սեքստոս Քահանայապետ ուղղած Տեղեկագրին մէջ[17]. Այս շրջանին Հայոց եկեղեցւոյ «ամէնէն հռչակաւոր վարդապետներն են Ներսէս Վ. Բաղէշի, Ղուկաս Վ. Ամթայ եւ Արիստակէս Վ. Անկիւրիոյ[1]»:

Այս թուին, երբ կը գրէր իր Տեղեկագիրը Սիդոնի արքեպիսկոպոսը, Ներսէս Վ. Ամկեցի վախճանած ըլլալու էր:

Իր մահուամբ կազմալուծուեցաւ Խնդրակատարի Դպրոցը: Պատճառը վերագրելու է Յովհաննէս Վ. Բրոնեցւոյ, որ Ամկեցւոյ յաջորդն եղաւ Խնդրակատարի առաջնորդական աթոռին վրայ: Սա կ՚երեւայ թէ չունէր ատակութիւն շարունակելու Ներսէսի ուսուցչական գործունէութիւնը: Ամկեցւոյ աշակերտները կամաց կամաց հեռացան Բաղէշէն. գացին Ոստան, ուր մերձակայ Ս. Եղիշէ վանքին մէջ նոր Դպրոց բացած էր Յովհաննէս Վ. Բրդութենց, Ներսէսի աշակերտներէն:

Բրդութենցէն գաւազանի իշխանութիւն առին Բարսեղ Վ. Բաղիշեցի (Կարպեյացի) եւ Սիմէոն Վ. Ապարանեցի, որոնք ժամանակ մը աշակերտած էին Ներսէս Ամկեցւոյ: Ասոնցմէ Բարսեղ Բաղիշեցի վերադարձաւ

[1] Revue de l'Orient chretien, 3 (1898), p. 201.

Բաղէշ եւ հաստատուեցաւ Ամիրտօլու վանքը, ուր եւ բացաւ նոր դպրոց: Իսկ Սիմէոն Ապարանեցի իր կարգին ունեցաւ աշակերտներ, որոնցմէ Կարապետ Վ. Փարխնդեցի ապա գործեց Խնդրակատարի մէջ, միւսանգամ ծաղկեցնելով Դպրոցը:

Ի Բաղէշ նոր Դպրոց մ'ալ ծաղկեցաւ Գոմաց վանքին մէջ. հոս կը նստէր Բաղէշ քաղաքի եպիսկոպոսն Մեսրոպ, որ 1640ին Փիլիպպոս կաթողիկոսէն վարդապետական իշխանութիւն առաւ եւ հաւաքեց իր շուրջը աշակերտութիւն:

Նկատի առնելով այս Դպրոցները, կարեւոր կը համարիմ տալ նախ պատկերի մէջ Արեւելեան վարդապետաց կարգը, եւ ապա խօսիլ անոնց մէջ անուանի հանդիսացած դէմքերու վրայ:

Խնդրակատարի առաջնորդական աթոռի վրայ Ներսէս Ամկեցւոյ յաջորդեցին.

1. Յովհաննէս Վ. Բրօնցի.

2. Կարապետ Վ. Բաղիշեցի (Փարխանդեցի).

3. Պետրոս Վ. Գաւաշցի.

4. Յակոբ Վ. Ծերունենց Բաղիշեցի.

5. Դաւիթ Վ. Բաղիշեցի.

6. Աւետիք վարդապետ († 1710). 1693ին նորոգեց Խնդրակատարը:

7. Աբրահամ Վ. Ալամեցի, որդի Սարգսի († 1723):

8. Երեմիա Վ. որդի Ջլկցի Յովհաննէսի.

9. Աբրահամ Վ. որդի տէր Ղուկասի († 1749).

10. Սահակ արքեպ. որդի Փարխանդեցի Գաբրիէլի. ընտրուած 25 դեկտ. 1749:

Այս առաջնորդներու մասին խօսուած է Խնդրակատարի Յիշատակաց Մատենին մէջ:

Տ. ԿԱՐԳ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԱՑ

1. Ներսէս Վ. Ամկեցի (Գնունցի).

ա. Յովհաննէս Վ. Բրդութենց Ոստանցի.

բ. Ազարիա Վ. Շահկերտցի (Ջուղայեցի).

գ. Յովհաննէս Վ. Ծարեցի.

Սա 1588ին ինքզինքը «աշակերտ մեծ րաբունապետին Ներսէսի Գնունեցւոյն» կը կոչէ. Էջմիածին, Թ. 1121:

դ. Յովհաննէս Վ. Յովիկ Բաղիշեցի.

Իր մասին՝ Գր. Դարանաղեցի, էջ 371, 378—380:

ե. Կարապետ Վանեցի, Ձագ կոչուած. † 1604.

Իր մասին՝ Դարանաղեցի, 371—375: Բրդութենց Յովհաննէս վարդապետէն ստացած գաւազանի իշխանութիւնը:

զ. Սիմէոն Ապարանեցի:

Վարդապետական գաւազանը ստացած Յովհ. Բրդութենցէն:

Գր. Դարանաղցի կը գրէ թէ Ամկեցին ունեցաւ «եւ այլ փոքունք եւ աննշանք յաղունք, զոր մեք ոչ լուաք»: Ասոնց թուին մէջ

*ըլլալու է տէր Մկրտիչը. Էջմիածին, Թ. 1920, թղ. 246ր:*

2. Յովհաննէս վ. Բրգուբենց Ոստանցի.

ա. *Բարսեղ Վ. Բաղիշեցի «Մեծն».*

բ. *Սիմէոն Վ. Ապարանեցի «Մեծն».*

գ. *Կարապետ Վ. Վանեցի «Ջաղն»:*

դ. *Հայրապետ Մոկացի.*

ե. *Յովհաննէս Բուժիկ:*

*Վերջին երկուքը Բարսեղ Բաղիշեցիէն առին գաւազանի իշխանութիւնը:*

3. Ազարիա Շահկերտցի (Ջուղայեցի).

ա. *Յովհաննէս Վ. Անթափցի.*

բ. *Յակոբ Վ. Չէյթունցի.*

*Գործեց Կարին, Բաբերդ եւ Ռոդոստոյ,* † 1608: *Իր մասին Գր. Դարանաղցի*, 31, 69, 319—320 *եւ այլն:*

գ. *Մեսրոպ Վ. Տաթեւացի.*

դ. *Մկրտիչ Վ. Խարբերդցի «Խղճուկ».*

*Իր մասին Գր. Դարանաղցի*, 320, 410, 429. *Սիմէոն Լեհացի, էջ ԺԹ—Ի*, 33 *եւն:*

ե. *Դանիէլ:*

*Վերջինս կը յիշէ Յովհ. Անթափցի* 1586*ին: Դարանաղցին, որ յանուանէ թուած է առաջին չորսը, կ՚աւելցնէ. «եւ այլ աշակերտք բազումք»:*

4. Կարապետ վ. Ձագ Վանեցի.

ա. *Մարտիրոս Վ. Արահու Վանեցի:*

*Մուշի Առաքելոց Վանքի Հարանց Վարքի մէջ կ՚ըսուի* 1609*ին. «Ութ վարդապետք էին յԵրուսաղէմ. Մեծն Բարսեղ Ախպակեցին...*

*Մարտիրոս Վանեցին։ Դարձեալ Մարտիրոս Վանեցին, որ աշակերտ էր Կարապետ Ջաղ վարդապետին»։ Կարապետ վարդապետ եօթը տարի կը ճգնի Վարագի վանքին մէջ. 1604ին Պարսիկներէն գերի կը տարուին իր եղբօրորդիք. կ՚երթայ Ասպահան ազատելու զանոնք եւ ժողովուրդը մխիթարելու։ Հոն կը վախճանի նոյն տարւոյն։ Մարտիրոս կ՚երթայ Նոր Ջուղայ եւ կը փոխադրէ մարմինը 1605ին Վան։ Հայապ. Բ. 610։ Հմմտ. նաեւ Գր. Դարանաղցի, 371—375։ Մարտիրոս վարդապետ կը գործէր ի Վարագ։*

բ. Պօղոսի Վ. Մոկացի։

*Հմմտ. Հայապատում, Բ., 611։ Ակինեան, Մովսէս Գ. Տաթեւացի, էջ 174—183։*

Բարսեղ Վ. Բաղիշեցի (Կարպելացի).

ա. *Հայրապետ Վ. Մոկացի (Ասկնջացի).*

*Հայրապետ Ներսէս Մոկացւոյ հօրեղբայրն էր. Ար. Դաւրիժեցի, 394։ Գրիգոր Մոկացի 1602ին կ՚օրինակէ Դիոն. Թրակացւոյ Քերականութիւնն Վասպուրականի Կարմրաւոր վանքը «յիշատակ արի եւ քաջ վարդապետին տէր Հայրապետ րաբունւոյն եւ աշակերտեալ մանկանն իւրոյ տէր Ներսէս Նորաբողբոջ ծաղկին... եւ իւր ուսուցանողին տէր Բարսեղ... անյաղթ փիլիսոփային». Երուսաղէմ, Թ. 1311։*

բ. *Յովսէփ Ոզմեցի.*

գ. *Յովհաննէս Բաղիշեցի «Բուժիկ»,*

դ. *Ներսէս Վ. Մոկացի «Բեղլու».*

ե. *Մատթէոս Անթափցի.*

զ. *Յովհաննէս Կորովամիտ:*

*Մարտիրոս Հիզանցի* 1594*ին կ'օրինակէ Աստուածաշունչ մը Բարսեղ վարդապետի համար, ուր կը խնդրէ յիշել «զտէր Բարսեղ եւ... զհոգեւոր որդիքն զՅօհաննէս եւ զՀայրապետ աշակերտքն». Թորոս Աղբար, Բ.* 263: *Յովհ. Բաղիշեցի եւ Հայրապետ Մոկացի Յովհ. Բրդութենցի աշակերտներն էին. բայց գաւազանի իշխանութիւնը առին Բարսեղէն. Էջմիածին Թ.* 2605: *Իսկ Կիրակոս եւ Անանիա, որոնք աշակերտած էին Բարսղի, գաւազանը առին Սիմէոն Մոկացիէն:*

6. Յովհաննէս Վ. Անթափեցի.

ա. *Ներսէս Վ. Սեբաստացի կաթողիկոս Սիսի* (1648—1654): *Իր մասին Բաբգէն կաթողիկոս, անդ, էջ* 339—358:

բ. *Մինաս Վ. Երզնկացի. Գր. Դարանաղցի, էջ* 333:

գ. *Ղազար Վ. Բաբերդցի* † 1634. *Դարանաղցի, էջ* 409:

դ. *Մինաս Քաջախ, Կաթողիկոս Սիսի* 1621—1632: *Վարդապետական գաւազանը առած Մ. Երզնկացիէն. իր մասին՝ Բաբգէն Կաթողիկոս, անդ, էջ* 299—304:

ե. *Յակոբ Ծգնիկ, որ եւ Թթիկ կոչուած.* † 1615. *Դարանաղցի* 336:

զ. *Մեսրոպ Պուղտանցի* † 1626. *Դարանաղցի* 428:

է. *Աստուածատուր վարդապետ. Բարգէն Կաթողիկոս, անդ, 300:*

7. Ներսէս Վ. Սեբաստացի

ա. *Խաչատուր Վ. Սեբաստացի, առաջնորդ Հալէպի (1657—1660). Հմմտ. Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Պատմութիւն Հալէպի Հայոց. Գ. 1950, էջ 397 եւ շար.:*

8. Ներսէս Վ. Բեղլու Մոկացի.

ա. *Մելքիսէթ Վ. Վժանցի. իր մասին՝ Առ. Դաւրիժեցի, 395—401:*

բ. *Ստեփանոս Վ. Շատախցի.*

9. Սիմէոն Վ. Ապարանեցի «Մեծն».

ա. *Կարապետ Վ. Մոկացի «Կալօենց».*

*Իր մասին՝ Աղաւնունի, Այցելուք, 194—195: Գր. Դարանաղցի 393—397:*

բ. *Կարապետ Վ. Բաղիշեցի (Փարխընդեցի).*

գ. *Կիրակոս Վ. Արարատեցի.*

դ. *Անանիա Նախավկայեցի:*

*Վերջին երկուքը Բարսեղ Բաղիշեցւոյ աշակերտներն էին. բայց գաւազանը առին Սիմէոնէն:*

10. Յովհաննէս Վ. Բուժիկ.

ա. *Խաչատուր Վ. Բաղիշեցի:*

*Իր մասին տես վերը, էջ 11, եւ վարը § 25: 1654ին կ՚այցելէ Երուսաղէմ (Էջմիածին, Թ. 737 եւ Երուսաղէմ, Թ. 354):*

11. Կարապետ Վ. Բաղիշեցի (Փարխընդեցի).

*ա. Ներսէս եպիսկոպոս Բաղիշեցի (Փարխընդեցի)։*

*բ. Սիմէոն Վ. Ապարանեցի «Փոքրն»։*

*գ. Պետրոս Վ. Գաւաշցի.*

*դ. Բարսեղ Վ. Ախախցի։*

12. Ներսէս եպիսկոպոս Բաղիշեցի.

*ա. Հայրապետ Վ. Ղուլթիկցի։*

13. Հայրապետ Վ. Ղուլթիկցի.

*ա. Գրիգոր Վ. Մշեցի, եպ.*

14. Գրիգոր Վ. Մշեցի.

*ա. Յովհաննէս Ա.*

*բ. Յովհաննէս Բ.*

15. Խաչատուր Վ. Բաղիշեցի.

*ա. Վարդան Բաղիշեցի։*

16. Վարդան Վ. Բաղիշեցի։

*Մեծ եղած է իր աշակերտներու թիւը. անուանացանկը տես § 26։ Արգասաւոր հանդիսացան անոնց մէջ մանաւորապէս Մարգարէ Վ. Արգրումցի եւ Գրիգոր Վ. Տիրուանեցի (Բաղիշեցի)։*

17. Մարգարէ Վ. Արզրումցի, առաջնորդ Բասենի Հնձուց վանքի։

*ա. Մխիթար Վ. Սեբաստացի, որ եղաւ դասապետը Մխիթարեան Դպրոցի։*

18. Գրիգոր Վ. Տիրուանցի, Տղթաչակիր պատրիարքն Երուսաղէմի։

*Իրմէ առին գաւազանի իշխանութիւնը Վանդանի աշակերտներէն՝*

ա. *Յովհաննէս Վ. Բաղիշեցի, կոչուած Կոլոտ, պատրիարքն Կ. Պոլսոյ:*

բ. *Աբրահամ Վ. Թեղեցի, կոչուած նաեւ Մշեցի եւ Խօշապեցի, առաջնորդն Մուշի Ս. Կարապետին, ապա կաթողիկոսն Էջմիածնի:*

*Վարդան Բաղիշեցւոյ մահուամբ* († 1704) *մահացաւ Բաղէշի Դպրոցը:*

*Արեւելեան Վարդապետները այս կարգին մէջ պիտի ագուցանեմ ուրիշ Դպրոց մ'ալ որ ծաղկեցաւ ԺԷ. դարու կէսին Բաղէշի Գոմաց վանքին մէջ դասապետութեամբ Մեսրոպ Բաղիշեցւոյ: Սա ստացած էր գաւազանի իշխանութիւնը Էջմիածնի Փիլիպպոս կաթողիկոսէն, որ կ'իջնար Արեւմտեան վարդապետներու գաւազանէն: Դասատունը ապա փոխադրուեցաւ Խնդրակատար Ս. Աստուածածին վանքը, ուր կը դասախօսէր Դաւիթ Վ. Բաղիշեցի, Մեսրոպ Վ.ի աշակերտը:*

*Այս Դպրոցէն են.*

1. Մեսրոպ Վ. Բաղիշեցի.

ա. *Դաւիթ Բաղիշեցի.*

բ. *Ներսէս Հզուեցի.*

գ. *Դաւիթ Ճնճղուկ:*

2. Դաւիթ Վ. Բաղիշեցի.

ա. *Աւետիք Վ. Բաղիշեցի* († 1710):

Այս վարդապետներէն նկատի պիտի առնեմ աշխատութեանս մէջ այն դէմքերը միայն, որոնք ծանօթ են պատմութեան իրենց վարդապետական կամ գրական գործունէութեամբ:

## 9. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ԲՐԴՈՒԹԵՆՑ ՈՍՏԱՆՑԻ
(† 1589)

Յովհաննէս վարդապետ, «որ Բրկութենց[1] կոչի», ինչպէս կը գրէ ինքնին, ծնած է Վառնիչատ[2] գիւղը, որ կը գտնուէր «հանդէպ Ոստան քաղաքի»: Իր ծնողաց անունները են՝ Ղուլիջան եւ Նուրար: Եղբայրներէն կը յիշուին՝ Մուրատ եւ Ոսկեւան, առնցմէ մէկուն զաւակն է Բահլուլ, որ Յովհաննէսի եղբօրորդի կ՚անուանուի:

Յովհաննէս կ՚ընտրէ վանական կեանքը, իբրեւ միաբան Պատրկայ[3] Մենաստանին: Ապա կ՚աշակերտի ի Բաղէշ առ ոտս Ներ—

---

[1] Անունս կը գրուի նաեւ Բրճութ (Էջմ. 2077), Բրգուտ (Ալ. Դաւրիժեցի, 391), Բերկութենց (Էջմ. 2605), Բրգուտենց. Բրգաթենց (Թորոս Աղբար, 263. կարդա Բրգութենց, Էջմ. 1282):

[2] Գիւղս Վառնիչատ կը գրուի նաեւ Վանիչատ (Լալայեանց, Ցուցակ հայ. ձեռ. Վասպուրականի, էջ 912) եւ Վառնրչատ (Ինճիճեան, Նոր Հայաստան, 160), Վառնաչատ (Ալ. Դաւրիժ. 441): Անկէ առեալ կոչուած է Յովհաննէս Վառնիչատցի (Էջմ. 2077). եւ մերձակայ քաղաքի անունով՝ Ոստանցի:

[3] «Դեռ չհասած Հիւրգոմ հայաբնակ գիւղն, նորա սահմանին մէջ, դէպի ծովը, դէպի կղզին Աղթամարայ երկարայած հրուանդանի մէջ տեղում, հեռուից բարձրաբերձ երեւում է մատուռն կամ գերեզմանն Վարդպատրիկ իշխանի». Գ. Շէրենց, Սրբավայրեր, Թիֆլիս 1902, էջ 98:

սէս Վ. Ամկեցւոյ. Հոս 1569ին կ'օրինակէ Յակոբ սարկաւագ Ագաթանգեղոս եւ Եղիշէ. եւ կը խնդրէ ողորմութիւն «իմ հօրեղբօր Ներսէս քաջ րաբունապետ վարդապետին եւ աշակերտեալ մանկանց տէր Մկրտիչին եւ տէր Յովհաննէսին, որ բազում աշխատութեամբ աշխատեցան ի կարդալ գրոց[4]»: Իր աշակերտակիցն էր նաեւ «Ազարիա ի Հայոց Մեծաց, ի գեղջէն Շահկերտոյ, որ է մերձ ի քաղաքն Նախչուանու[5]», այն է Ազարիա կաթողիկոս Ջուղայեցի:

Յովհաննէս Բրգութենց վարդապետական գաւազանը կ'ընդունի իր 1570ին: Յովհաննէս աբեղայ յԱմիրտոլու վանս Բաղիշոյ կ'օրինակէ 1574ին Աւետարան մը[6], որուն ստացիչն է Յովհաննէս վարդապետ, հաւանօրէն Բրգութենց:

1582ին Բրգութենցի աշակերտներէն մին, հաւանօրէն Ներսէս Բաղիշեցի, այսպէս կը գրէ իր ուսուցչի մասին[7].

«Որ եւ լսեաց այնմ բանի,
Փիլիսոփայն քաջ եւ արի,
Զոր Գրիգորի նման լինի,
Նարեկավանից վանականի:
Հայոց յազգէ ծնեալ լինի,
Ի յՈստանս մեծ գաւառի,

[4] Էջմ. 1920, թղ. 246բ:
[5] Առաքել Դաւրիժեցի, էջ 441:
[6] Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 138:
[7] Էջմ. 2077 (Քարոզգիրք Գր. Տաթեւացւոյ, յամէ 1424):

Որ մականուն Բրքուժ ասի,
Եւ Յովհաննէս նա յորջորջի:
Ի բնէ նա աշակերտի,
Ներսեսի քաջ վարժապետի,
Որով բանի հմուտ լինի,
Զնարեկացին յորդ մեզ պատմի.
Եւ հին ու նոր կտակարանի,
Ի վեր է քան զիմաստ բանի.
Ստացաւ զգիրս քարոզի,
Յիշատակ անջնջելի,
Ի յամերամ ժամանակի,
Եւ ծնաւղացն իւրոյն բարի,
Ղուլիջանի եւ Նուրարի,
Եւ եղբարցն հարազատի,
Ոսկեանի եւ Մուրատի,
Եւ եղբաւրորդոյն Բահլուլի,
Անփորձ պահէ Տէր ի յերկրի:
Է նա բնական Վառնիշացի,
Ի Պատրկայ մենաստանի,
Որ է հանդէպ Ոստան քաղքի,
Մաւրն լուսոյ Աստուածածնի,
Եւ Գէորգեա զօրավարի,
Եղիշէի դամբարանիս[8],
Երախտաւոր Հայոց ազգի»:

[8] Հ. Ներսէս Սարգիսեան, Տեղագրութիւն ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ 1864, էջ 255 կը գրէ. «Զաղար Ս. Նշան (կամ Զարահան). Վանք Աստուածածնի առ ի կողաց Արտոս լերին, գեղեցկադիր եւ բարձրահայեաց ի վերայ ձորաբերանոյն Ոստանայ: Չէ ինչ Նշանաւոր մենաստանս փոքր եւ անշուք, այլ ցանկալի ամենայն հայրենասիրաց, զի անդ է գերեզման Եղիշէի վարդապետի սրբոյ. որ նախ յեկեղեցւոջ Վառնիշատ գեղջն թաղեալ է, որ առընթեր նորա կայ եւ արդ ա-

*Բրգութենց Յովհաննէս վարդապետին առաջին անգամ կը հանդիպինք «ի վանս Եղիշէի [7]», 1579ին [9]. հոս էր դեռ 1582ին: Մերձակայ Անգղայ կամ Գարենից Ձիթառուր վանքի եկեղեցւոյն դրան վրայ կը կարդանք արձանագրութիւնս.*

ԶԲՐԳՈՒԹԵՆՑ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ՎԱՐԴԱՊԵՏՆ ՅԻՇԵՑԷՔ Ի ՔՐԻՍՏՈՍ. ԹՎ. (Ռ)ԼԳ (1584) [10]:

*Յովհաննէս Բրգութենց ունէր իր շուրջը աշակերտներ, որոնց մէջ նշանաւոր հանդիսացան Սիմէոն Ապարանցի եւ Բարսեղ Գաւառցի, ինչպէս նաեւ Ներսէս Բաղիշեցի:*

*Կարապետ Բաղիշեցի կը գրէ. «Իսկ աշակերտքն Յովհաննէս Ոստանցւոյն Սիմէոն Ապարանեցի եւ Բարսեղ Գաւառացին» (Ար. Դաւ. 441. ատ, էջ 10):*

*Վերջինս համար կ՚օրինակէր 1594ին ի Հիզան Մարտիրոս Հիզանցի Աստուածաշունչ մը, յիշատակարանին մէջ կը խնդրէ յիշել*

---

*մայի, եւ իբրեւ քառասուն ամօք յառաջ վարդապետ ոմն եհան անտի գնչխարոն եւ բերեալ հանդոյց ի վանս յայս»: Հմմտ. եւ Ինճիճեան, Նոր Հայաստան, Վենետ. 1806, էջ 160. «Վառընշատ: Գիւղ Հայոց յորում են տունք իբր 15 ի դաշտի առ Ոստան գետակաւ. ի քարաշէն եկեղեցւոջ սորա որ է փոքր ի մէջին սահմանի առ որմով կայ գերեզման սրբոյն Եղիշէի վարդապետին, կրով պատեալ գկնի եկելոցն: Առ հիւսիսային ստորոտով Ասնոս լերին է մենաստան սրբոյն Եղիշէի, մեծ եւ համակ քարաշէն, որպէս եւ եկեղեցի նորա որ եւ ունի կաթուղիկէ»:*

[9] *Դիւան Հայոց պատմութեան, Ժ.*, 502:

[10] *Գ. Լեւոնեան, Բիւզանդիոն*, 1907, *Թ.* 1277: *Վանքիս մասին տե՛ս Սարգիսեան, անդ*, 255:

«որբասէր եւ հեզահոգի բանիրուն եւ աստուածաբան երիցս երանեալ քաջ րաբունապետն տէր Բարսեղ եւ զհոգեւոր որդիքն զՅոհաննէս եւ զՀայրապետ աշակերտքն. այլ եւ զհոգեւոր ծնօղն իւր զարի եւ զերջանիկ զԲրդութենց (տպ. զԲրդաթենց) Յովհաննէս րաբունապետն[11]»: Բարսեղ վարդապետ ինքնին կը գրէ 1598ին յԱմիրտօլու վանս օրինակած Գործոց Մեկնութեան մէջ. «Այլ եւ ուսուցչին իմոյ քաջ հռետորին Յովհաննէս րաբունապետին որ մականուն Բրկութենց ասի, եղիցի յիշատակ մատենիս այս. եւս առաւել աշակերտաց եւ հոգեւոր որդւոց մերոց Յովհաննէսին, Հայրապետին եւ այլոցն, որք առին զաւազան եւ ելին: Արդ... յիշեցէք... զնուաստ Բարսեղ վարդապետս... որ եմ... ի նահանգէն Գաւառոյ, ի գեղջէն Կարպելայ[12]»: Կը գրէ նոյն Բարսեղ վարդապետ նաեւ 1604ին օրինակած Ներսէս Կլայեցւոյ Մատթէի Մեկնութեան մէջ. յիշեցէք «նաեւ զուսուցանող վարժապետն իմ զՅովաննէս րաբունապետն որ մականուն Բրդութենց կոչի[13]»:

Իսկ Սիմէոն Ապարանեցի իւր Վիպասանութեան մէջ կը հիւսէ իւր ուսուցչին գովասանքը[14], ուր ի մէջ այլոց կը գրէ.

---

[11] Թորոս Աղբար, Բ., 263:

[12] Էջմ. 2605, Թղ. 211ա: Հայաստան, 1851, Թ. 86:

[13] Էջմ. 1282, Թղ. 256բ—257ա:

[14] Սիմէոն վարդապետի Ապարանեցւոյ Վիպասանութիւն. Վաղարշապատ 1870, էջ 129—133:

Զի հրեշտակացն էր նա սարաս,
Անհամեմատ յերկրաւորաց.
Սրբազանիցըն գերազաս,
Տէր Յովհաննէս Հոգւոյն օծեալս:

Սուրբ վարդապետս աստուածաբան,
Լուսաւորիչ Թորգոմածնաց,
Արդ ի յերկինս է վերելած,
Ի յանդրանկաց խորանս մըտած:

Արեւն ի մայրն վերադարձած,
Արուսեկին պայծառացած.
Զիմանալին անտեսն յաչաց,
Վարձս ընկալեալ աշխատանաց:

Ներշըլք լուսոյն անբաժ մնացած,
Ցեկեղեցեաց Հայաստանեայց.
Իմաստութիւնն արձանացած,
Գանձ, մեղեդի, երգ սրբասաց,

Զհոգեւորն պըտուղ շըրթանց,
Գրով թողեալ աշակերտաց.
Ի յառագաստ սիգաճեմած,
Ընդ երջանկացըն գոլ բերկրած:

Յովհաննէս Բրգութենցի կենաց եւ գործունէութեան վրայ աւելի տեղեկութիւն չեն հաղորդած ժամանակակիցները: Ունինք իր ինքնագիր տողերէն հետեւեալ ծանօթութիւնները.

Էջմիածնի Թ. 2077 ձեռագրին մէջ, որ Գրիգոր Տաթեւացւոյ Քարոզգրքի Ա. հատորն է եւ ժամանակաւ պատկանած Ներսէս Բաղիշեցւոյ, կը գրէ Բրգութենց հետեւեալ նոտրա-

գիր տողերս (թղ. 359բ), հաւանօրէն 1582ին.

«Զվերջացեալս ի շնորհաց զՅոհան տրուպ վարդապետս ծառա գրոցս Քարոզգիրս յիշեցէք ով ընթերցողք»:

Դարձեալ Էջմիածնի Թ. 852 ձեռագրին մէջ, որ Գրիգոր Տաթեւացւոյ Հարցմանց գիրքն է, կը կարդանք.

«Ես Յովաննէս վարդապետս ի յՈստանս, ստացա սուրբ մատեանս ի վայելումն անձին իմում. որք աւգտիք ի սմանէ ո՛վ վարդապետք եւ գրոց աշակերտք, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՅովաննէս վարդապետն. եւ Աստուած ողորմի ասացէք ծնօղքն նորա. հօրն Ղուլիջանին եւ մօրն Նուրարին. եւ եղբարցն Մուրադին եւ Ոսկէվանին եւ եղբօրորդոյն Բահլուլին. եւ Աստուած ողորմի ասացէք նոցա. ամէն» (թղ. 4բ):

«Զվերջին ստացող սուրբ Հարցմանցս զՈստանցի Յովաննէս գրոց ծառայ եւ յետին բանասիրաց յիշեցէք...» (թղ. 65բ):

«Գիրքս Յովաննէս վարդապետին է, որ մականուն Բրկութենց կոչի...» (թղ. 106բ):

«Ես Յովաննէս վարդապետ յՈստանայ, որ սուրբ տառս ստացայ յիշատակ ինձ...: Գիրքս Յովաննէս վարդապետին է յՈստանայ ի սուրբ ուխտէն Պատրկայ որ հանդէպ քաղաքին Ոստանայ» (թղ. 273ա):

Ձեռագրիս գրիչն է Գէորգ, որդի Աստաքել երէցի, որ թղ. 305բ. ունի յիշատակարանս. «Զանարժան ոգիս... զԳէորգ անպի-

*տան էր'' (երէցս) յիշեա յաղաւթս քո, ով ցանկացող սորա եղբայրական կամաւք... նաեւ ստացողի սորին Յովաննէս կրաւնաւորի»:*

*Կ'երեւայ թէ Յովհաննէս Բրգութենց այս ձեռագիրը կտակած է տէր Աստուածատուրին, ինչպէս թղ. 305ր յիշատակագրութիւնս կ'իմացնէ. «Ես Ներսէս աբեղայս, որ գիմ ախրոչն ախաթիկն կատարեցի որ զՀարցմանցս տէր Աստուածատրին տուեր է. այլ մարդ ի մեր ազգականացն իշխանութիւն չունի որ տանի այնէ...»:*

1586*ին այցելած է Բաղէշ եւ հոն գրած Ս. Խաչի Պատմութիւնը (Նիկոսիա, Թ.* 1):

*Մնա՞ց այս տեղ ցմահ. յայտնի չէ:*

*Յովհաննէս Բրգութենց վախճանած է* 1589 *տարւոյն, այս ինքն Սիմէոն Ապարանեցւոյ Վիպասանութեան գրուելէն* (1590) *տարի մը յառաջ, ինչպէս կը գրէ Սիմէոն* (129).

*Հոգւոյ հօրէ որբացելոյ,*
*Միակ ամաց լըրացելոյ:*

ԳՐՈՒԹԻՒՆՔ

*Խաչիկ Լեւոնեան, Բիւզանդիոն,* 1903, *Թ.* 2031 *կը գրէ, թէ Խաչատուր Աղթամարի կաթողիկոսը Նարեկայ վանքէն Աղթամար փոխադրած է նոյն վանքին գրչագիրներն եւ գանձերը. «որոնց մէջ աչքի կը զարնէ մա-*

նուրապէս Գանձագիրք մը, հեղինակուած Բրդութենց մականուանեալ Ոստանցի Յովհաննէս վարդապետէն...: Այս գանձերը կը վերաբերին Աղթամարայ Ս. Խաչին եւ Թովմաս առաքելոյն իբրեւ ներբողականներ, որոնք ձայնաքաղ են եւ բաւական կանոնաւոր ոճ մ'ունին»: Կը գրէ նաեւ Փիրղալէմեան[15], թէ տեսած է յԱղթամար 1602ին գրուած Գանձարան մը. «ի հեղինակս գանձուցն յիշին Յովհաննէս Վ. Պուտկեցի, Յովհ. Վ. Ոստանցի ի զարմէ Բրդութեանց. սորա գանձ ի Ս. Խաչն Աղթամարայ ի թվ. ՌԼԷ (1588)»: Եւ դարձեալ[16] «ՌԻԸ. 1579. Բրդութենց Յովհաննէս գանձատաց բարունին ծաղկի ի վանս Եղիշէի»:

Թէ Բրդութենց յօրինած է Գանձեր եւ Մեղեդիներ, կը վկայէ Սիմէոն Ապարանեցի, կը գրէ.

Գանձ, մեղեդի երգ սըրբասաց,
Ձհօգեւորն պըտուղ շըրթանց,
Գրով թողեալ աշակերտաց:

Իր Գանձերէն եւ Մեղեդի-Տաղերէն ծանօթ են ինձ հետեւեալները միայն.

1. Գանձ Գեւարգեյ սուրբ Նշանին[17], ՚ի Բըրդութենց Յովհաննէս վարդապետէ Ոստանցւոյ:

[15] Պոտուրեան, Յիշատակարանք:
[16] Դիւան Հայոց պատմութեան, Ժ., 502:

Կափայ Գանձիս

*Յիսուս Աստուած, Տէր միակի,*
*Որ արարիչ ես ըրնաւի,*
*Վերելեկաւըդ քո խաչի,*
*Անմահ Քրիստոս Տէր կենդանի,*
*Նըշանաւըդ հըրաշալի,*
*Ի քառաթեւ սուր երկայրի,*
*Սուրբ Գետարգել խաչ պանծալի,*
*Էն Աստըւած ի քեզ բազմի:*

*Յարմարական դրուատ բանական,*
*Քեզ երգեսցուք հայր անզըննական...*

Վ. *Եւ յարմարող գանձիս թերական,*
*ԸզԲըրգուտենց բարունին տարտամ:*

*Տունք՝* ՅՈՎՀԱՆՆԷՍ:
ՁԵՌԱԳԻՐ՝ *Էջմ.* 2672, *թղ.* 404*բ* (1607):

2. Տաղ Գետարգել սուրբ Նշանին ի Յովհաննէս Բրգուտենց վարդապետէ:

*Յորժամ եկեալ մեծ թագուհին*
*Յերուսաղէմ սուրբ քաղաքին...*

ՁԵՌԱԳԻՐ՝ *Էջմ.* 2672, *թղ.* 406*բ* (1607):

3. Պատմութիւն ամենազօր սուրբ խաչին, որ պարգեւեցաւ ի թագաւորացն Յունաց Վասլի եւ Կոստանդեայ. եւ բերեալ եղաւ ի սահմանս Մոկաց: *Քաղուածք մը Գր. Նարեկացւոյ Ապարանից Ս. Խաչի Պատմութենէն: Կ'աւարտի.*

---

[17] *Գետարգել Ս. Նշան եկեղեցին է մին յեօթն եկեղեցեաց Ներքին Վարագի. Հմմտ. Սարգիսեան, անդ,* 257. *Շէրենց, անդ,* 60:

Աստուածընկալ Խաչ Յիսուսի,
  ահեղ նշան Մեսիայի,
Յերկրորդ գալուստ Խաչն երեւի,
  եւ Կարապետ գայ Քրիստոսի.
Յորժամ գայցէ ի հանդիսի,
  լուսով լընու զերկիրս բնաւի:
Արքայ գըթած Տէր համայնի,
  դու ողորմեա ինձ տառապեալ Յովանիսի.
Որ մականուամբ Բըրգութ[18] ասի,
  ի փոքր գեղջէն Վառնիշատի.
Ուր է տապանն Եղիշէի,
  աստուածաբան վարդապետի.
Մերձ ի քաղաքն յՌըշտունի,
  որ այժմ յայտնի Ոստան կոչի,
Կայ առաջի անապատին,
  որ Պատըրկայ վանք անուանի.
Մօրն լուսոյ Աստուածածնի
  եւ Գեւորգայ զօրավարի:
Յարմարեցաւ բանս ի Թըւին
  Հայոց Ռ եւ ԼԵ (1586).
Մայրաքաղաքս (ի) Բաղէշ(ի)
  ի դուռն սուրբ Յովանիսի.
Տէրըն տացէ եւ ձեզ բարի,
  յաւուր մեծի դատաստանի: Ամէն:

Նիկոսիա (Կիպրոս) Թ. 1, Թղ. 321բ—323ա (1684): Երուսաղէմ, Թ. 1428:

⁂

[18] Ձեռ. «բարեգութ»:

## 10. ԱԶԱՐԻԱ Վ. ՇԱՀԿԵՐՏՑԻ (ՋՈՒՂԱՅԵՑԻ) ԿԱԹՈՂԻԿՈՍ ՍԻՍԻ

Ներսէս Ամկեցւոյ երիցագոյն աշակերտներէն էր Ազարիա, որուն համար կը գրէր Կարապետ Փարխնդեցի, թէ էր «ի Հայոց մեծաց, ի գեղջէն Շահկերտոյ, մերձ ի քաղաքն Նախճուանայ»: Շահկերտ գիւղ մը կը յիշուի Երնջակ գաւառի մէջ, ուրիշ մ'ալ ի Նախջուան (Ալիշան, Սիսական, 362, 505). երրորդ մ'ալ, իբրեւ եպիսկոպոսանիստ փոքրիկ քաղաք կը յիշեն ասորի եւ արաբ հեղինակներ Պաղտատէն դէպի Մուսուլ ճանապարհի վրայ, ընդ մէջ Դակուկա եւ Իրբիլ քաղաքներու (Hoffmann, Auszüge, 271) Շհարկերտ, Շահկերտ եւ Շակերտ ուղագրութեամբ: Իսկ Ազարիա կը կոչէ ինքզինքը «Ջուղայեցի», այսինքն հին Ջուղայէն, անշուշտ պարզապէս «Ջուղայի կողմերէն» իմաստով: C օրինակը առանց կանխաւ յիշելու, թէ Ազարիա Ամկեցւոյ աշակերտն է, կը գրէ. «Իսկ Ազարիա մեծ բարունապետն, որ եղեւ կաթողիկոս Սըսայ աթոռոյն. նորին (աշակերտ)՝ Յովհաննէս Անթափցին»: Վերջնոյս համար Փարխնդեցին մասնաւոր կերպով կը շեշտէ, թէ «ի մերոց Ներսիսեանցն է», այսինքն Ներսէս Ամկեցւոյ աշակերտ Ազարիայի գաւազանէն կ'իջնար:

Ազարիա ծնած է 1534ին ի Շահկերտ. իր ծնողներն են Պօղոս եւ Օղլանփաշի, եւ եղ-

բարք Ագուլշի, Փաշա եւ Ալիջան (կենդանի 1600ին) :

Իր կեանքի առաջին 50 տարիներու մասին ոչինչ հաղորդուած է մեզի. ուստի թէ ե՞րբ աշակերտեցաւ Ազարիա Ներսէս Ամկեցւոյ ի Բաղէշ եւ ե՞րբ ստացաւ գաւազանի իշխանութիւնը, ծանօթ չէ: 1584էն յառաջ արդէն, հաւանօրէն, ան Հալէպ կը գտնուէր, վասն զի այս տարւոյն ընտրուեցաւ Սսոյ աթոռին վրայ կաթողիկոս: Սիսի Մաշտոցին մէջ արձանագրած է ինքնագիր. «Ի նուաստ եւ անպիտան Ազարիայ վարդապետ: Ջուղայեցի, շնորհաւքն Աստուծոյ Կաթողիկոս. Նստաւ յաթոռ հայրապետութեան Սըսայ ի թուականիս Հայոց ՌԼԳ (1584), փետրվարի ԻԵ.[1]. աւրն երեքշաբթի. Ղեւոնդեանց տաւնի մեծ բարեկենդանին»[2]:

Ան միաց Հալէպ. եւ բացաւ հոն վարդապետական դպրոց, ուր կը դասախօսէր անձամբ: Իր աշակերտը Յովհաննէս Այնթափցի կը գրէր 1586ին Վարդանի Հնգամատենին Մեկնութիւնը. «Եւ զի այս յուսով յաւժարեցայ գրել եւ ստանալ, եւ վարձկան եթէ յայս քաղցր յայգիս մշակս չար եւ ջերմեռանդ սիրով զսկիզբն արարեալ գրեցի մինչ ի Գ. տետրն, բայց ոչ կարացի պարապել յաղագս տկարութեանս եւ ընթերցման գրոց,

[1] Պէտք է ըլլայ ԻԴ. :

[2] Արտաւազդ արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի եւ Անթիլիասի ու մասնաւորաց, Բ. հատոր, Հալէպ 1936, էջ 31:

որոյ եմ ի ծառայութիւն». այս պատճառաւ կը յանձնարարէ Յովսէփ քահանայի, որ նա յաւարտ հասցնէ օրինակութիւնը: Կը խնդրէ յիշել «զհոգեւոր հայրս մեր եւ զլուսատուն հոգւոց մեր, զվերադիտողս Հայոց զՏեառն Տէր Ազարիայ, որ յայժմս դեգերեալ կամք իմաստս գիտութեան սորայ. զոր տէր Աստուած պահեսցէ պարագայց ամաւք ի պարծանս մեր եւ ի պայծառութիւն սուրբ Եկեղեցւոյ. ամէն»: Կը խնդրէ դարձեալ յիշել «զերեքեան աշակերտեալ եղբարքս իմ զտէր Դանիէլն եւ զտէր Մկրտիչն եւ զիս զյետնեալ հոգիկս Յովհաննէսս յԱնթեփցիս... գրեցաւ ի մայրաքաղաքն ի Սիս» (Բաբգէն Ա. Կաթ. Կիւլէսէրեան, Պատմութիւն Կաթողիկոսաց Կիլիկիոյ. Անթիլիաս 1939, էջ 228—229. հմմտ. նաեւ էջ 237):

Ազարիա 1599ին, կատարելու համար Երուսաղէմի ի նպաստ հանգանակութիւն, կը հասնի մինչեւ Բաղէշ: Մեր նպատակը չէ հոս հետեւիլ Ազարիայի քայլերուն: Ան վախճանեցաւ 1601 յունիս 2ին Հալէպի մէջ: Իր կենսագրութիւնը տուած է Բաբգէն Կաթողիկոս վերոյիշեալ աշխատութեան մէջ, էջ 149—198:

Իր աշակերտներէն կը յիշէ Գրիգոր Դարանաղեցի հետեւեալները (էջ 320).

ա. Մեծ Յովհաննէս վարդապետն Անթափցի, երաժիշտ եւ բարձրաբարբառ քարոզ տիեզերաց. որ յետ վախճանին Ազարիին սա՛

յաջորդեաց գահոռն (1602, դեկտ. 20—1621)։ Իր մասին՝ Բարգէն Կաթողիկոս, անդ, էջ 199—243։

բ. Տէր Յակոբ վարդապետ Ջեյթունցի. որ գործած է Կարին, Բաբերդ եւ Թոդոստոյ. վախճանած է 1608ին։

գ. Մեսրոպ Տաթեւացի, որ վաղամեռիկ եղած է։

դ. Մկրտիչ Վ. Խարբերդցի, կոչուած Խղճուկ։

Իր մասին՝ Գր. Դարանաղցի, 320, 410, 429։ Սիմէոն Լեհացի, էջ ԺԹ.—Ի. եւ 33 եւ այլն։

Դարանաղեցին կ՚աւելցնէ. «Եւ այլ աշակերտք բազումք». անոնց թուին մէջ ըլլալու է Դանիէլը, զոր կը յիշէր Այնթափցին 1586ին։

11. ԲԱՐՍԵՂ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ
(ԱՂԲԱԿԵՑԻ, ԳԱԻԱՌՑԻ, ԿԱՐՊԵԼԱՑԻ)
ԱՌԱՋՆՈՐԴ ԱՄԻՐՏՕԼՈՒ ՎԱՆՔԻՆ † 1615

Բարսեղ ծնած է Վասպուրականի Աղբակ գաւառի Կարպելա գիւղին մէջ։ Իր ծնողքն են Ներսէս երէց եւ Մհերշահ տիկին եւ եղբայրներն՝ տէր Հայրապետ, Սրապիոն, Մուրատ եւ Մովսէս. ունէր միակ քոյր մը Ալամ։ Մանուկ հասակին հեռացած էր Բարսեղ իր ծննդավայրէն՝ «յաՀէ բռնաւորացն Մարաց եւ յանընդունակ լինելոյ յԱղբակու բիրտ եւ բրդաբարոյ տանուտէրացն, մանաւանդ ի ժամանակի մարմնասէր եւ բարեատեաց ա—

առաջնորդացն...: Ոչ եղեւ մեզ բնակութիւն անդ, կը գրէ, եւ մի՛ այսուհետեւ լիցի բնաւ» (Էջմիածին, Թ. 2605):

Թէ ծնողաց եւ եղբա՞րց հետ ի միասին թողուցած է ծննդավայրը, յայտնի չէ: Մենք կը գտնենք զինքը աշակերտած առ ոտս Բըրգուլթենց Յովհաննէս վարդապետի, որ իր դասատունը բացած էր Ոստանի Վարդ Պատրիկի վանքին մէջ: Հոս իրեն աշակերտակից ունէր Բարսեղ՝ Ապարանեցի Սիմէոնը եւ ուրիշներ: Երբ աւարտեց ուսման ընթացքն եւ առաւ վարդապետական իշխանութիւնը, անցաւ Բաղէշ, ուր զետեղուեցաւ Ամիրտօլու վանքին մէջ: Բարսեղ կը ձեռնարկէ նախ «վերստին ի հիմանէ նոր նորոգել զտաճար սուրբ Աստուածածնին եւ զսրբոյն Յովհաննու Մկրտչին եւ զսրբոյն Ստեփաննոսի Նախավկային» (Էջմիածին. Թ. 1480). վասն զի, ինչպէս կը գրէ Առաքել Դաւրիժեցի, «վանքն Ամրդօլու յառաջագոյն խրթին եւ յոռի շինեալ էր. եւ այն եւս խարխալեալ էր ի հնութենէ: Սա զամենայն շինուածսն մխահաղոյն քակեաց. եւ ինքն վերստին հիմնարկեալ շինեաց եւ կատարեաց զրոլանդակն՝ զեկեղեցին եւ զտներն եւ զայլն որ ի նոսա» (էջ «90): Վարդան Բաղիշեցի ժամանակը կը նշանակէ. «Թուին ՌԽԸ (1599) վերստին նորոգեցաւ վանքս Ամիրտօլու վերակացութեամբ Բարսեղ վարդապետին». Դիւան Հայոց Պատմութեան, Ժ., 73:

Իր ծրագիրն էր ծաղկեցնել այս տեղ վարդապետական համալսարան մը, որուն սկիզբը եղած ըլլալու է իրր 1590ին։ Բարսեղ կը գրէ 1598ին, թէ իր աշակերտներէն Յովհաննէս (Բաղիշեցի) եւ Հայրապետ (Ասկնջացի) եւ այլք «առին զաւազան եւ ելին»։ 1602ին Հայրապետ վարդապետի համար կ'ըսուի թէ ունէր ան ձեռքի տակ Ներսէս անուն աշակերտ եւ յանձնարարած է օրինակել իրեն համար Դիոն. Թրակացւոյ Բերականութիւնը։ Այս տեղ կ'ըսուի թէ Հայրապետ աշակերտն էր «Բարսեղ աշխարհալոյս եւ տիեզերալոյր, քաջ եւ արի, անյաղթ փիլիսոփայի» (Երուսաղէմ. թիւ 1311)։ Իսկ 1615ին անոր աշակերտաց թիւը բարձրացած է 8ի.ասոնք են բացի վերոյիշեալ երկուքէ, Յովսէփ Հզուեցի, Կիրակոս, Անանիա, Ներսէս (Մոկացի), միւս Յովհաննէս եւ Մատթէոս Ջուղայեցի։ Գր. Դարանաղցւոյ համաձայն նաեւ Զաքարիա Վանեցի «նախ Մեծ Բարսեղին էր աշակերտեալ եւ ի նմանէ ապա առ Պետրոսն (Կարկառեցի) եկեալ (էջ 364)։

Բարսեղի գովութիւնը արդէն 1598ին կը հիւսէ Յովհաննէս եպիսկոպոս (տես վարը)։

1599ին Բաղէշ եկած էր Սիսի Ազարիա Կաթողիկոս հանգանակութիւն մ'ընելու ի նպաստ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին, որ պարտքերու տակ կը գտնուէր։

Առանց տարակուսի այս առիթով նաեւ Ամիրտօլու վանքին առաջնորդն յորդորեց, նոյն նպատակով Հին Ջուղայ երթալ. 1602ին Գրիգոր Դարանաղցի այս քաղաքի մէջ կը հանդիպի Բարսեղ վարդապետին, որ եկած էր հոս իր ա՛նդրանիկ աշակերտին Յովհաննէսին հետ (էջ 391)։

1608ին կը գտնենք զինքը Երուսաղէմ, ուր գացած էր նոյն խնդրով։ Այս մասին կը գրէ Գրիգոր Դարանաղցի յամի 1608. «Յետ մեր ելանելոյն յԵրուսաղեմայ Մեծն Բարսեղն էր եկալ եւ կացեր մինչ ի միւս զատիկն եւ տեսեր զամենայն տառապանքն վանացն ի պարտուց կողմանէն» (էջ 324)։ Դարանաղցի Երուսաղէմէն մեկնած էր 1607 զատկէն ետքը. իսկ Բարսեղ Երուսաղէմ մեկնեցաւ 1608 փետրուար 23ին։ Յովհաննէս Այնթափցի Կաթողիկոս, որ ձեռնարկած էր գրել Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւնն Պաւղոսի Թղթոց, եւ այս տարւոյն օրինակութեան շարունակութիւնը յանձնած է Յակոբ եւ Մանուկ գրիչներու, Յիշատակարանին մէջ կը պատմէ թէ այս տարւոյն ինքը Հալէպ կը գտնուէր, եւ ուրախ էր, ինքը Պետրոս Կարկառեցւոյ եւ Երուսաղէմի պատրիարք Դաւիթի հետ այն օրինակութեան ի գլուխ ելլելուն վրայ։ Դաւիթ պատրիարք Հալէպ եկած էր Երուսաղէմի պարտքերուն համար։ Այս միջոցին Պետրոս տկարանա-

լով չկրցաւ դէպի Երուսաղէմ մեկնողները ճամբել, որոնց մէջ էր Պարծանք Արեւելեայցս տէր Բարսեղ վարդապետն Հաղբակացի: Պետրոս ոչ ցաւ ունէր, ոչ մարմնոյ տկարութիւն, միայն լեզուն բռնուած էր: Երեքշաբթի օր, ԻԳ փետրուարի, անկողնոյ մէջ նստաւ, գաւազան տուաւ աշակերտաց՝ կարդալով «Իսկ մետասան աշակերտքն» Աւետարանը. եւ յետոյ նորէն անկողին ինկաւ. «ի ԻԴ փետրուարի ի լուսանալ Դշ.ի աւանդեաց զհոգին [1]»:

Երուսաղէմէն «ելեալ գնաց Բարսեղ մեծաւ հոգութեամբ ի յաշխարհն իւր ի Բաղէշ, ի Վան եւ յՈստան գաւառն» յորդորելու ազգայինները, որ գումար մը հանգանակեն Երուսաղէմի համար: Իրեն կը յարի հոն

[1] Վենետիկ, Ոսկ. Պաւղոսի. Բ. օրինակ. քաղուածաբար հանուած Հ. Մ. Պոտուրեանէ: Պետրոս Կարկառեցւոյ մահուան օրը Կարապետ Քօթ Երզնկացի այսպէս կը նշանակէ.

Շարժեցան հիմքն արժանակառոյցք,
Եւ եղեւ կործանումն մեծ ազգիս մեր Լուսաւորչի.
Ի Թվին ՌԾ. եւ Ե. ի Մեհեկի Ե.ի
Գրիգորի (= Սրապիոնի) մահն յիշեցի.
Թվին Ռ.ԾԷ. պահոց սուրբ Քառասնորդի
Քաղոց ամսի Ե.ի վեց համարոյ,
Գիշերի Պետրոսն փոխի:

(Բարդէն Կաթ., Պատմութիւն, էջ 274:)

Այս տեղ ամիսներն եւ օրերը նշանակուած են Հայկական տոմարի համաձայն. բայց Քաղոց Ե. պէտք է կարդալ է. որով միայն կրնայ համապատասխանել 1608, փետր. 24 Դշ. պատկերին, ինչպէս ունին Ցուց. Այնթափցի եւ Վիեննայի Թ. 159. «Թվին ՌԾէ. վախճանեցաւ Պետրոս Կաթողիկոսն փետրվարի ամսոյ ԻԴ. աւրն Դշ.ի» (Տաշեան, Ցուցակ, էջ 465):

*Վարագի առաջնորդն Մարտիրոս Վ. Մոկացի, Արահու կոչուած: Հանգանակութիւնը ի գլուխ կ'ելլէ: «Եւ ամենան տօլվաթաւորօքն յարուցեալ վարդապետքն եկին ի յԱմիթ եւ յՈւռհայ... եւ անտից եկեալ ի Հալապ» (Դարանաղցի, էջ 326), կ'անցնին Երուսաղէմ:*

*Մուշի Առաքելոց Վանքի Հարանց վարքի Յիշատակարանին մէջ կ'ըսուի, թէ 1609ին «ութ վարդապետք էին յԵրուսաղէմ. մեծն Բարսեղ Ախպակեցին, ուր վանքն է Բարդուղիմէոսի, եւ երկու աշակերտք իւր՝ Յովհաննէս Բաղիշեցին եւ Ներսէս Մոկացին. դարձեալ Սիմէոն Ըստպատրկերցի[2] եւ Մարտիրոս Վանեցի»:*

*Բարսեղ վերադարձաւ բարեաւ Բաղէշ. եւ նուիրուեցաւ միւսանգամ դասախօսութեանց: Այս տեղ 1614/15ին «եա ի յարդար վաստակոց իւրոց ինչս բազում. զգիրքս զայս (Լուծմունք Նրրից եւ արտաքնոց) ետ գաղափարել եռափափաք սիրով եւ յօժար կամօք անձինն յիշատակ իւրն եւ իւր հոգեւոր երկանց ծննդոց, որք առ ոտս բազմերջանկին ի ներկրթութիւն» (Էջմիածին, թ. 1480):*

*Բայց տակաւին չէր աւարտած օրհնակութիւնը, երբ «եղեւ զրաւ կենաց աստուա-*

---

*[2] 1388ին գրուած յիշատակագիր մը կը կոչէ «Սպատկերտ գաւառ» (Էջմ. 1144):*

ծարան վարժապետիս մեծին Բարսեղի ի Բաղէշ քաղաքի ի սուրբ մենաստանս որ Ամիրդօլ վանք վերաձայնի», ՌԿԴ (1615) Թուին յունուար 17ին. եւ «ինքն եղեալ կայ առ դրան սուրբ տաճարայս» (Էջմիածին 1480): Ուրիշ մը՝ Կարապետ Մոկացի յամի 1624 կը խնդրէ յիշել «զհոգեւոր ծնաւղն իմ... զՍիմէոն (Ապարանեցի)... մանաւանդ զուսումնակից նորին զԲարսեղ բարունապետն, որ ի միում վարժարանի կացեալք եւ ելեալ քարոզեալք իբրեւ զՊետրոս եւ զՊօղոս ամոլք հոգեւոր անդաստանացս եւ սերմանողք զրան կենաց ի հոգիս բանականաց ի վիճակեալ նահանգս սրբոյն Գրիգորի. եւ ի միում ամի վճարեալ հասին ի կէտ կոչմանն, զնային զճանապարհս ամենայն մարդոյ, փոխեցան առ Քրիստոս: Որոց տացէ Տէր զերկնից արքայութիւն զդասն հարիւրաւորացն. ամէն» (Երուսաղէմ, Թ. 2560, Խաչիկեան): Այսպէս նաեւ Վարդան Բաղիշեցի. «ՌԿԴ (1615) Թվին վախճանեցաւ Բարսեղ վարդապետն Բաղիշեցին, որ յաշակերտաց Տաթեւացւոյն, ի վանքն Ամիրտօլու». Դիւան Հայոց պատմութեան, Ժ., 73:

Շիրմին տապանագիրն ունիմ Էջմիածնի Թ. 2077, Թղ. 2բ (A) եւ Թ. 737, Թղ. 181ա (B) ձեռագիրներու մէջ, հաւանօրէն արտագրուած անծանօթ ձեռքերէ ուղղակի տապանաքարի վրայէն:

ԵՐԿԵԱԿ ՔԱՌԵԱԿ ԹԻՒ ՀԱՐԻՒՐԻ,
ՀՆԳԻՑ ՅԻՍՆԻՑ. Ժ. ԶԿՆԻ [3],
ԱՅԼ ԵՒ. Դ. [4] ԱՄ ՅԱՐԱԲԱՐԴԻ,
ԴԺՆԵԱ [5] ԵՒ ԴԱՌՆ ՅԵՂԱՆԱԿԻ:
Ի ՊԱՐՓԱԿԵԱԼ ԺԱՄԱՆԱԿԻՍ [6],
ԵՒ Ի ԼՐՄԱՆ Ի [7] ՍՈՅՆ ԱՒՐԻ
Ի ՄՈՒՏ ՏՐԷԻ ՀԱՅՈՑ ԱՄՍԻ
Ի Ի. ԺԷ. [8] ՅՈՒՆՈՒԱՐԻ:
ՄԵԾ ՎԱՐԴԱՊԵՏՆ ՀԱՅԿԱԶՆԻ
ԲԱՍԻԼԻՈՍՆ ԱՂԲԱԿԵՑԻ.
ՀԱՆԳԵԱՒ ՄԱՐՄՆՈՎ Ի ՏԱՊԱՆԻ
Ի ԴՈՒՌԸՆ ՍՈՒՐԲ ՅՈՎԱՆԻՍԻ [9]:
ՈՎ ՊԱՏԱՀՈՂՔ [10] ԱՅՍԸՄ ՏԱՌԻ,
ԵՒ ՓԱՓԱՔՈՂՔ [11] ՆՈՐԻՆ ՇԻՐՄԻ
Ի ՅԱՐԱՐՉԷՆ ԱՄԵՆԱՅՆԻ,
ՊԱՐԳԵՒՈՂԷՆ ՄԵԶ ԲԶԲԱՐԻ:
ԽՆԴՐԵՄ Ի ՁԷՆՋ ԵՍ ԵՂԿԵԼԻ,
ՄԱՂԹԵԼ ԵՒ ՋԵԶ ԸՆԴ ԻՄ ԲԱՆԻ
ՆՈՐԻՆ ՀԱՅՑՄԱՄԲՆ [12] ԱՆԴԱՌՆԱԼԻ
ՁԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՏԱԼ Ի ՅԵՐԿՐԻ: ԱՄԷՆ [13]:

*Ամիրտոլու վանքին եկեղեցւոյ մէջ կանգնուած է Բարսեղ վարդապետի յիշատակին նաեւ խաչքար մը, որ ունի արձանագրութիւնս.*

ՈՎ ՔԱՌԱՆԻՇ ԶԷՆ ՅԱՂԹՈՒԹԵԱՆ
ՆԵՐԿԵԱԼ ԱՐԵԱՄԲ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ
ԲԱՐԵԽՕՍԵԱ ԱՌ ԱՆՄԱՀ ԱՐՔԱՅՆ,
ՄԵԾ ԲԱՐՍԵՂԻՆ ՐԱԲՈՒՆ ԱՆՈՒԱՆ.
ԹՎԻՆ ՌԿԴ. ՅԻՇԵՑԷՔ Ի ՔՐԻՍՏՈՍ:

*Կիւլէսէրեան, Կոլոտ*, *էջ* 201.

---

3 B *տասն ըղկնի*: — 4 B *չորս*: — 5 B *դըժնեա*: — 6 B *ժամանակի*: — 7 A չունի *ի*: — 8 B *յեօթն եւ ի տասն ի յունվարի*: — 9 B *Յովաննիսի*: — 10 B *պատահօղք*: — 11 B *փափաքօղք*: — 12 B *հայցմամբ*: — 13 A չունի *ամէն*:

Բարսեղ վարդապետ ժամանակակիցներէն կոչուած է մերթ Աղբակեցի, ծագումով Աղբակ գաւառէն ըլլալուն համար, եւ մերթ Գաւառցի, «Գաւառ երկրէ», այսինքն վիճակէ, ուր էր Աղբակ, Կարպելացի, Կարպելայ գիւղի մէջ ծնած ըլլալուն համար, Բաղիշեցի, որովհետեւ երկար ժամանակ Բաղէշ ապրեցաւ. կը կոչուի նաեւ «Մեծն Բարսեղ», զանազանելու համար ժամանակակից ուրիշ Բարսեղներէ:

Գրիգոր Դարանաղցի, որ տուած է համառօտ «պատմութիւնն մեծ Վարդապետին Բաղիշեցի Բարսեղին, ամենազովելի փիլիսոփային», այսպէս կը գծէ անոր նկարագիրը. «Սա էր ի ժամանակս մեր, որ փայլէր իբրեւ լուսաւորս ի մէջ աշխարհի. եւ էր յոյժ խոնարհամիտ եւ հեզահոգի եւ անխառասէր եւ գծուծ զգեստիւ եւ անցաւումն եւ հանդարտ եւ առաքինասէր, գթած եւ ողորմած առ նեղելոցն եւ կարօտելոց եւ խնամատար որբոց եւ այրեաց» (էջ 390). «եւ բազումք եկին յաշակերտութիւն ի վերայ նորա եւ հասին յարբունս իմաստից եւ առին իշխանութիւն եւ գաւազան եւ գնացին» (էջ 391):

Ընդարձակ խօսած է իր մասին նաեւ Առաքել Դաւրիժեցի (էջ 390—394). կարեւոր կը համարիմ յառաջ բերել հոս քաղուածաբար հետեւեալները. «Այս Բարսեղ վարդապետ յինքենէ իսկ գիտակ էր, թէ գիտու-

թիւն արտաքին իմաստից եւ քերականութեան ոչ գոյ ի մէջ վարդապետացն Հայոց. եւ ինքն մեծաւ տարփանօք ըղձայր թերեւս հասանել այնմ գիտութեան... վասն որոյ յարաժամ առեալ ի ձեռս իւր զԱրտաքին գիրքն. եւ թէպէտ ոչ գիտէր, այլ անյապաղ եւ անձանձիր ընթեռնոյր. էր զի ուրեք հասանէր ի վերայ տեսութեան եւ մտաց բանին, եւ էր զի ոչ. բայց նա ամենայն ջանիւ առանց ձանձրանալոյ միշտ ընթեռնոյր»: Շնորհիւ այս յարատեւ ջանքերուն յաջողեցաւ «խելամուտ լինել բառին եւ ոճոյն եւ շաւղաց արտաքին գրոց, առանց ուրուք առաջնորդելոյ եւ ցուցանելոյ ընաւ»: «Եւ յաւուրս ծերութեան իւրոյ... կոչեաց զամենայն աշակերտս իւր առաջի իւր եւ զոր ինչ եւ գտեալն էր իմաստութիւն յԱրտաքին գրոց, դաս ասաց նոցա. զոր նոքա ամենեքեան ի միտ առին եւ ուսան»:

Իր աշակերտներու մէջէն նշանաւոր հանդիսացաւ իմաստասիրական ուսմանց մէջ Ներսէս Վ. Մոկացի, Բեղլու կոչուած. որուն մասին պիտի խօսինք առանձին:

Բարսեղ Վ. Բաղիշեցի չպարապեցաւ մատենագրութեամբ: Ունինք իր գրչէն հետեւեալ Յիշատակարանները.

1. Փառք համագոյ եւ միասնական սուրբ Երրորդութեանն... որ ետ կարողութիւն տկար անձինս Բարսեղ սոսկանուն բանի սպասաւորիս հասանել ի յաւարտ այսմ աս-

տուածաշունչ տառիս Առաքելոց Պրակիս. զոր մեկնեալ է սա Յովհաննու Ոսկեբերանին եւ սուրբ հաւրն Եփրեմի. եւ թարգմանեալ է ի Յունաց ի հայս Գրիգորի վկայասէրի Պալհաւունւոյ[14]:

Արդ գրեցաւ ի մեծ թվականին Հայոց ՌԽԷ (1598) ի մայրաքաղաքս Բաղէշ ի դուռն սուրբ Յոհաննու Մկրտչին որ Ամիրդոլու վանք վերաձայնի: Եւ գրեցի զսա մեղսամած մատամբ իմով յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց Ներսէսի երիցուն եւ Մըհէրշահ տիկնոջն. այլ եւ եղբարց իմոց տէր Հայրապետին եւ Սրապիոնին. եւ փոխեցելոցն առ Քրիստոս Մուրատին եւ Մովսէսին. եւ քուերն իմոյ Ալամին եւ եղբօրորդւոյն իմոյ Յոհանիսին: Այլ եւ ուսուցչին իմոյ քաջ հռետորին Յովաննէսի բաբունապետին որ մականուն Բրկուէթենց ասի, եղիցի յիշատակ մատենիս այս. եւս առաւել աշակերտաց եւ հոգեւոր որդւոց մերոց Յոհանիսին եւ Հայրապետին եւ այլոցն որք առին զաւազան եւ ելին: Արդ աղաչեմ զձեզ, ով բաբունիք եւ աշակերտեալ մանկունք, յորժամ ընթեռնուք կամ օրինակէք զՄեկնութիւն Գործոց Առաքելոց, յիշեցէք ի սուրբ աղօթս ձեր զնուաստ Բարսեղ վարդապետս եւ զամենայն ազգատոհմն իմ, որ եմ ի սուրբ աթոռոյն Բարդուղի-

---

[14] Խօսքը Գէորգ Լամբրոնացւոյ Գործոց Առաքելոց խմբագիր Մեկնութեան մասին է:

մէոսի առաքելոյն, ի Նահանգէն Գաւառոյ, ի գեղջէն Կարպէլոյ, ծառայ սուրբ Աստուածածնին. բայց անդէն ամենեւին ոչ եմ բնակեալ. ի յահէ բռնաւորացն Մարաց եւ յանընդունակ լինելոյ յԱղբակու բիրտ եւ քըրդարարու տանուտէրացն, մանաւանդ ի ժամանակի մարմնասէր եւ բարխառեաց առաջնորդացն, ոչ եղեւ մեզ բնակութիւն անդ եւ մի այսուհետեւ լիցի բնաւ:

Էջմիածին, Թ. 2605, Թղ. 211ա (Գէորգ Սկեւռացւոյ խմբագիր Մեկնութիւն Գործոց Առաքելոց): Նոյնը հրատարակուած սխալագիր՝ Հայաստան, 1851, Թ. 34 (86):

2. Փառք... Արդ գրեցաւ... ի մեծ թվականութեան Հայոց ՌԾԳ ի յերկիրս Մոկաց ի մեծափառ եւ ի հրեշտակաբնակ անապատս որ Ծպատ վերաձայնի. ի դուռն սուրբ Ամենափրկչիս եւ սուրբ Կարապետիս, ի դառն եւ ի վշտալից ժամանակիս ի սասանման եւ ի վրդովման ներկայիս. որ շուրջանակի սաստկագին երկիւղիւ պաշարեալ կամք ի Պարսից, ի Մարաց եւ յՕսմանականացն: Որ ի սոյն ամի չարժեցաւ արքայն Պարսից Շահ Աբասն յԱսպահանայ եւ եկն ի վերայ Դավրէժ շահաստան քաղաքի որ Ոսկէ քարն կոչի. կոտորեաց զբազում զաւրս քաղաքին եւ առ զնա: Եւ յետ այնորիկ եկն ի Ջուղայ եւ ի Նախջաւան՝ տիրեաց նոցա եւ եհաս ի Մեծ Հայք ի դաշտն Արարատեան ի

քաղաքն Երեւան. պաշարեաց զնա ամիսս ինն. եւ բազում եւ ահագին պատերազմս պատերազմեցան Աբուբաքրիքն եւ Օսմանիքն ընդ զօրացն արեւելից. եւ յետ այնորիկ պարտեալ Օսմանիքն եւ մատնեցան ի ձեռս Պարսից, վասն ոչ լինելոյ նոցա աւժանդակութիւն ի մեծ արքայէն Կոստանդնուպոլսի որ Հոնքարն կոչի: Եւ այսպէս կայ աշխարհս Հայոց ի մէջ երկուց եւ մանաւանդ երից սուսերաց մերկացելոց վերոյասացեալ ազգացն մահմետականաց: Յետ այսքան անցիցս աղէտից զկնի սակաւ աւուրց ել ի Կ. Պօլսէ հրամանաւ Հոնքարին որ Սուլտան Ահմատ վերաձայնեն, մեծ զօրավարն որ Ջղալօղլի կոչի. անհուն եւ անհամար զօրօք. եւ եկն եհաս ի Կարնոյ որ է Արզրում քաղաք: Եւ Պարսիցն լուեալ զօրքանութիւն զօրացն Տաճկաց, իմացեալ թէ ոչ կարէին զդէմ ունել, վասն որոյ գլխակորեալ ամօթով նկուն դարձան, առանց պատերազմելոյ եւ զխմի հարկանելոյ: Բայց զճիրս չարութեան եւ զա՛ռ եւ զաւար գերութեան զոր Պարսիկք ընդ Հայք արարին, առաւել է քան զԹարելացուցն առ Իսրայելացիսն. զոր ոչ ոք կարէ մի ըստ միոջէ պատմել եւ կամ ընդ գրով արկանել. զի սկսեալ ի տանէն Շիրակա մինչեւ ի Ջուղայ եւ տունն Գողթնեաց զՀայք բռնաջինջ արարեալ տարեալ հանին ի խորին Պարսիկս, ի Շօշ եւ յԱսպահան. կաթուղիկոսով եւ եպիսկոպոսօք, քահանայիւք եւ ժողովրդ-

դողք, արամբք եւ կանամբք, ընչիւք եւ գոյիւք: Եւ թողին զԴաշտն արարատեան եւ զՆախջաւան նահանգօքն եւ զփարթամն ճոխութեամբ զՋուղայ շրջակայիւքն ամայի եւ թափուր ի բնակչացն, եւ ինքն չարայուշն Աբաս նստեալ ի Դավրէժ ձմերեցաւ· եւ Ջղալօղլին սարդարն եւ զօրավարն Օսմանցի ազգին դարձաւ ի Վան ի յամուրն Շամիրամակերտին ձմերել· զեռ եւս զապազայն ոչ գիտեմք· Աստուծոյ միայն է գիտելի· որ տէրն է ժամանակաց:

Արդ ի սոյն եւ ի յայս ժամանակի եղեւ սկիզբն գրչութեան սորա· եւ ի սոյն ամի կատարեցաւ ձեռնտըւութեամբ հոգեւոր որդւոց մերոց Յոհաննէս եւ Յովսէփ գրոց աշակերտացն· որ մինչդեռ առ մեզ էին ի վարժս ուսման գեղերեալ· որ մեծաջան երկամբք ընթինուին զներածութիւնն Պորփիւրի եւ զխորին ասացուածս աստուածաբանիցն վարժապետաց· եւ եղեն նպաստք թուխթ կոկելով եւ տետր խազելով: Այլ եւ զհարազատն իմ եւ եղբօր որդին ըստ մարմնոյ Յոհանէս դպիրն եւ ուշիմ ընթերցողն, որ զյոլովս ի թղթոցն նա կոկեաց· եւ աւարտեցաւ սա ձեռամբ իմով մեղսամածի Բարսղի նուաստ վարդապետի, կարողութեամբ ամենազաւրին Աստուծոյ· յաւուրս վաթսուն եւ վեցերորդի:
— Զոր եւ աղաչեմ արտասուագոչ ձայնիւ զընթերցող եւ զրացայայտող սուրբ բարունիքդ, յիշել ի մաքրափայլ եւ ի մշտամատոյց

յաղօթս ձեր զիս զեղկելի անձնս զԲարսեղ տրուպ բանի սպասաւորս. նաեւ զուսուցանող վարժապետն իմ զՅովաննէս բարունապետն որ մականուն Բրդութենց կոչի. այլ եւ զծնօղսն իմ ըստ մարմնոյ զՆերսէս քահանայն եւ զՄըհէրշահն եւ զեղբարսն իմ զՄուրատն եւ զՀայրապետ Էրէցն եւ զՄովսէս զփոխեալսն ի Քրիստոս: Եւ զկենդանի եղբայրն իմ զԱրապիոն. եւ զայլ արեան մերձաւորսն իմ. զի եւ դուք յիշեալ լինիջիք եւ մասն ողորմութեան գտանիցէք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ. ամէն: — Էջմիածին, թիւ 1282, թղ. 256բ (Ներսիսի Շնորհալւոյ Մեկնութիւն Մատթէի):

3. «Եւ եղեւ սկիզբն գծագրութեան սորա ի յաստուածապարհ քաղաքս Բաղէշ ի մենաստանիս Ամիրտօլու, ի դուռն մօրն լուսոյ Աստուածածնին եւ Յովհաննու Կարապետին եւ սուրբ Ստեփաննոս Նախավկային. եւ դարձեալ կամօքն աստուածային ի սոյն ամ եւ ի սմին աստուածարնակ կրօնաստանիս Ամիրտօլու եղեւ աւարտ սորին. ի յիշատակ հոգւոյ իմոյ եւ ծնողաց իմոց, ի մեծ թվին Հայոց ՌԾԶ (1607) ի դառն եւ ի նեղ ժամանակի, յորում սով եւ սուր եւ գերութիւն եւ այլ պէսպէս պատուհաս գոյին ի վերայ աշխարհիս, մանաւանդ ի վերայ ազգիս Հայոց...»: Երուսաղէմ, Թ. 1165 (Մատթէոս Պարթեւի Մեկնութիւն Գործոց Առաքելոց):

4· *«Զվերջին ստացող այսմ... տառխ.. յիշեցէք զիս զյետին ստացողս զԲարսեղ տրուպ վարդապետս, որ տկար անձամբ աշխատեցայ եւ զհնութիւն սորա սակաւ ինչ նորոգեցի կարկատելով եւ զեղծեալն գրելով ի վայելումն աշակերտեալ անձանց...: Արդ նորոգութիւն սորա եղեւ ի Թվին Հայոց Ռ. եւ ԿԳ.երորդի ի Բաղէշ քաղաքի, ի վանս որ Ամիրդօլու վանք ասի, ի դուռն սուրբ Աստուածածնին եւ սուրբ Յոհաննու Մկրտչին եւ սրբոյն Ստեփանոսի Նախավկային»*:

British Museum, Or. 2616 (Conybeare, Catalogue, Nr. 78, p. 196. *Ասացուածք Վարդապետաց*):

5· *Ով ուսումնասէրք... յորժամ որ աշխոյժ մտօք վերծանիք զայս ամէնունակ ըշտեմարանս՝ զլուծմունքս նորից եւ արտաքին գրոց, հմտանաք եւ օգտիք, յիշեցէք ի Քրիստոս Յիսուս զտէր Բարսեղ զերիցս երանեալ մեծ րաբունապետն եւ զհայրն իւր զտէր Ներսէսն եւ զմայրն զՄէհրշէն եւ զեղբարքն զՄուրատն, զտէր Հայրապետն, զՄովսէսն եւ զԱրապիոնն եւ զքոյրն զԱլամն եւ զեղբօր որդին զտէր Յոհանէս նորընծայ քահանայն. ամէն: Դարձեալ կրկին անգամ յիշեցէք զտէր Բարսեղ զերիցս երանեալ մեծ րաբունապետն որ ետ ի յարդար վաստակոց իւրոց ինչս բազում. զգիրքս զայս ետ զաղափարել եռափափագ սիրով եւ յօժար կամօք*

*անջինջ յիշատակ իւրն եւ իւր հոգեւոր երկանց ծննդոց, որք առ ոտս բազմերջանկին ի ներկրթութիւն, եւ նոցա որք են առեալ հրաման իշխանութեան ուսուցանելոյ, այլ եւ որոց որք ընթեռնուն սրտի մտօք, ամէն* (*թղ*. 43*ա*):

*Կրկին անգամ ժտելով հայցեմ... յիշեցէք... զլուսաւոր հայկական տոհմիս զտէր Բարսեղ բազմահանճար զանյաղթ պետիկոսն որ է յերկրէն Գաւառոյ եւ ի սուրբ աթոռոյն Բարդուղիմէոսի որ ի յԱղբակ Նահանգի, մարմնաւոր ծնօղիւքն, այլ եւ հոգեւոր որդին զաշակերտեալ մանկունսն, նախ զտէր Հայրապետն որ տարաժամ մահուամբ փոխեցաւ... եւ զտէր Յովսէփ բազմահանճար հռետորն եւ զտէր Կիրակոս Արաբադեցին եւ զտէր Անանիայ Նախավկայեցին, եւ զտէր Ներսէս գեղբորորդի հանգուցեալ Հայրապետ վարդապետի. եւ զՅոհան տրուպ Բաղիշեցին լուացող նոցին ոտի, այլ եւ որք տակաւին դեռ եւս են ի հրահանգս վարժման՝ տէր Յովանէս կորովամիտն եւ զտէր Մատթէոս Անթափցի եղբօրորդի Յովաննէս Սըսա Կաթողիկոսին. ամէն եղիցի եղիցի* (*թղ*. 48*ա*):

*Տէր Աստուած... ողորմեա ստացողի տառիս տէր Բարսեղ քաջ եւ արի բարունի վարդապետին, որ յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս, թվին ՌԿԴ:...* (*թղ*. 342*ա*):

Փառք… զոր տեսեալ… ցանկացող եղեալ երիցս երանեալ եւ մեծ հռետորն մեծ Բարսեղ րաբունապետն եւ պայծառ քարոզն համուրց հայկազեան տոհմիս․ եւ ես… գծագրել զսա…։ Բայց զի տակաւին չեւ եւս էր եղեալ գրաւ աստուածային տառիս՝ եղեւ գրաւ կենաց աստուածարան վարժապետիս մեծին Բարսեղի ի Բաղէշ քաղաքի, ի սուրբ մենաստանս որ Ամիրդոլու վանք վերաձայնի, զոր եւ ինքս մեծ Բարսեղս վերստին ի հիմանէ նոր նորոգեաց զտաճարն սուրբ Աստուածածնին եւ զսրբոյն Յովհաննու Մկրտչին եւ զսրբոյն Ստեփաննոսի նախավկային․ եւ ինքն եղեալ կայ առ դրան սուրբ տաճարացս։

Եւ գիտելի է, զի մինչ ի Իէ տեսորն որ գրեցաւ, դեռ եւս կենդանի էր․ եւ անտի մինչ ի յաւարտն ես յետնեալ տրուպ ծառայս Յոհան բանի սպասաւորս, աշակերտ եւ ծառայ սմին, ետու յաւարտ ածել զգանձս աստուածային։ Արդ եղեւ գրաւ գրչութեան սորին ի թվին Հայոց Ռ․ ու ԿԶ․ ձեռամբ տէր Վարդան քահանայի Հիզանցոյ։…։ Եւ զմեղապարտ Գրիգորիսս, որ զգիրքս կազմեցի (Թղ․ 593ա)։

Ողորմիս կը խնդրուի նաեւ «եղբօրն իմոյ Վարդանիսին, որ բազում աշխատեցաւ ի կոկել թղթիս․ ամէն (Թղ․ 222ա)։

Էջմիածին, Թ․ 1480 (Պատճառ եւ Լուծմունք լայն եւ նուրբ գրեանց)։

## 12. ԹՈՒՂԹ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ (ԲՐՕՆԵՑԻՈՅ) ԱՌ ԲԱՐՍԵՂ ՎԱՐԴԱՊԵՏ ԲԱՂԻՇԵՑԻ

*Այս թուղթը գտած եմ Էջմիածնի թիւ 610, թղ. 166ա—168ա. ձեռագրին մէջ: Կը բաղկանայ երկու մասէ. Ուղերձ եւ Թուղթ: Ա. մասը դժբախտաբար ամբողջութեամբ չեմ օրինակած. կը ներկայացնեմ Ա—Ք տողերէն միայն Ա—Զ. Իսկ Բ. մասը ամբողջութեամբ:*

*Թէեւ նամակիս հասցէակրին անունը չէ նշանակուած, բայց աշխատութիւն չի պահանջեր այն՝ իմանալու համար թէ ո՛վ է Դիտապետը, որուն գովութիւնը կը հիւսուի: Բ. մասին մէջ յիշուած Դիտապետի աշակերտները Բարսեղ Վ. Բաղիշեցւոյ սաներն են:*

*«Յովհաննէս», որ ինք զինքը «անարժան» կը ներկայացնէ Բ. մասին տողերու սկզբնագիրներու մէջ, հաւանօրէն եպիսկոպոս մ'է, թէեւ ոչ թեմը եւ ոչ հայրենիքը յիշուած են: Ան կը յայտնէ թէ բարեաւ հասած է Ուրհայի վրայէն Հալէպ, անշուշտ իբրեւ ուխտաւոր Երուսաղէմի, եւ հոն գտած է աջակցութիւն Վարդապետին աշակերտներէն, որոնց յանձնարարուած էր Վարդապետին կողմէ. Ուրհայ հանդիպած է Յովհաննէս Հզուեցւոյ եւ Հալէպ Մատթէոս Ջուղայեցւոյ. իսկ Զաքարիա Վանեցին չէ տեսած:*

*Նամակը գրուած է 1598, մարտ 7ին, որ Շաբաթ կ'իյնար։*

*Հալէպէն անցած կ'երեւայ Գահիրէ անկէ Երուսաղէմ հասնելու համար։ Մկրտիչ եպ. Աղաւնունի յառաջ կը բերէ յիշատակագրութիւն մը 1332ին գրուած Աւետարանէ մը, ուր կ'ըսուի թէ Յովհաննէս եպիսկոպոս մը ի Գահիրէ 1599ին նոյն Աւետարանը փրկանաւորած է, նորոգած եւ Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին նուիրած. «...բազում աշխատանաւք ի գերութենէ ազատեցի եւ կազմեցի...։ Դարձեալ Աստուած ողորմի ասացէք մղտեսի Գասպարին եւ ծնողացն, որ բազում աշխատանք եւ չարչարանք քաշեց ի հետս ի յանաւրինաց մինչեւ որ ազատեցաք...։ Եւ դարձեալ ծանիք ամենեսեանդ, ես Յովհաննէս եպիսկոպոսն յիշատակ արի ի յԵրուսաղէմ Ս. Յակոբայ եկեղեցւոյն...։ Ի թուաբերութեան տանս Թորգոմեան Ի յոբելեան, չորրորդ քառի, Ը թիւ աւելի (ՌԽԸ) նորոգեցաւ սուրբ Աւետարանս ի Մսր քաղաք ձեռամբ անարժան Յովհաննէս եպիսկոպոսի եւ յիշատակ եղեւ ի սուրբ Երուսաղէմ քաղաք սուրբ Յակոբ եկեղեցւոյն եւ սուրբ Սարգսին» (Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 358)։*

*Նաեւ այս տեղ Յովհաննէս եպիսկոպոս ակնարկութիւն չէ ըրած իր թեմին եւ հայրենիքին մասին։*

Նկատի առնելով որ նամակագիրը լաւ ծանօթ մըն է Բարսեղ վարդապետին, նա մեկնած է Բաղէշէն Ամիդ — Ուրհա — Հալէպ գծով հասնելու Երուսաղէմ, կրնանք մտածել թէ նա շարունակած է իր ճանապարհը դէպի Աղեքսանդրեա, նաւած է Գահիրէ եւ անկէ ցամաքով գացած է Երուսաղէմ։ Ան Գահիրէ հանդիպած ըլլալու է 1599ին. եւ կրնայ նոյն ըլլալ Յովհաննէս եպիսկոպոսին հետ։ Ասկէ կրնանք հետեւցնել թէ Յովհաննէս Բաղէշի Խնդրակատարի առաջնորդ Յովհաննէս Բրօնցի եպիսկոպոսին հետ նոյն ըլլայ։ Այս Բրօնցի եպիսկոպոսի մասին անդրադոյն տեղեկութիւններ կը պակսին։

«Անարժան Յովհաննէսը», որ փորձ ըրած է տաղաչափութեամբ արտայայտել իր ուղերձները Բարսեղ վարդապետին, կը յիշեցնէ մեզի համանուն տաղաչափ եպիսկոպոս մը, որ յօրինած է Թուչնոց գովքը, այսպիսի սկզբնաւորութեամբ.

Ես Յովհաննէս հոգւով տկար
Եպիսկոպոս (այլք՝ վարդապետ) յերկիր օտար,
Կամիմ գովել գհաւք հաւասար,
Ուրախութիւն մարդկան համար...։

Այս տաղի եւ իր հեղինակի մասին պիտի ունենամ առիթ խօսելու այլ տեղ։

Ստորեւ կը հրատարակեմ «Անարժան Յովհաննէսի» Թուղթը, այն չափի մէջ, զոր ունիմ այժմ ձեռքի տակ.

Աստուածային անուն Հոգւոյն,
Բանին տեղի, տաճար եւ տուն,
Գերակատար եւ բանիբուն,
Դիտապետ վեհ եւ իմաստուն,
Եռամեծ եւ երիցս մի նոյն,
Զարդարեալ իսկ յոյժ գերագոյն...
(այսպէս Ա—Ք տողերով):
Յովանիսէ յախմար հիքոյն,
Ողջոյն ընկալ աջդ իմ լուսոյն,
Վեհ վարդապետ բարուն յուսոյն,
Աստուածաբան քարոզդ գըրոյն,
Նուաստս կարօտ սուրբ քոյդ տեսոյն,
Ներել չեմ կար 'ւ եմ քէն հեռոյն.
Էնն Աստուած քեզ պահ ի փորձոյն,
Սատանայի 'ւ յամէն կրոյն. ամէն:
Առ հազար տաս քառ իօթն նոյն,
Նա թիւ է մեծ ազգիս հայուն.
Ամիսն քաղոց վեց առ տասնոյն.
Բամ Հռոմոց մարտ եւթն յամսոյն.
Ժամն է ի պահոց երկրորդ չարթոյն,
Աւրն երեք շրաթ էր պատկերոյն:

Եւ ընդ դուզնաքեայ սակաւ սուղ չափ ոտից տաղ բանիցս ծանուցումն լիցի վեհիմաստ ծով գիտութեանդ քո որ ի քո աշակերտացն զերկուսն տեսա՝ զՅովսէփ Հզուեցին ի յՈւրահա, եւ զՄաթէոս Ջուղայեցին

ի Հալապ, եւ Զաքարէն Վանեցի չեղէ արժան տեսանելոյ, զի ի յայս տեղիքս չգտաւ․ եւ մեք սուրբ աղօթիւք քո ի Հալապ հասանք եւ յերնելու վրայ ենք․ Զուղեցի Մաթէոսն ի քո գլխաց մեզ լաւութիւն, մարդութիւն ոչ սակաւ երաց։․․․

Էջմիածին, Թ․ 610, Թղ․ 166ա—168ա։

13․ ՆԵՐՍԷՍ Վ․ ԲԵՂԼՈՒ ՄՈԿԱՑԻ

Մոկաց աշխարհի Ասկնջաւս գիւղը եղած է Ներսէսի ծննդավայրը, ասկէ կոչուած «Մոկացի»․ անուանուած է նաեւ «Վանեցի», վասն զի ապրած եւ վախճանած է Վանայ լճին Լիմ կղզւոյն վրայ (Դարանաղցի, էջ 291)։ Ժամանակակիցները յորջորջած են զինքը «Բեղլու Ներսէս», պատճառը կու տայ Առաքել Դաւրիժեցի (էջ 391, 394) «զի մեծ էր Բեղն» (պեխերը)․ իսկ Դաւիթ Բաղիշեցի կը բացատրէ․ «Բեղլու կոչեցեալ վասն ահարկութեան գլխաց» (Դիւան Հայոց Պատմութեան, Ժ․ 48, Թօփճեան, Ցուցակ, Ա․ 98)։

Իր ծողաց անուններր չեն աւանդուած մեզի։ Առաքել Դաւրիժեցի (էջ 394) կը յիշէ անոր հօրեղբայրը Հայրապետ․ «Երեք ոմանք յաշակերտաց սորին (Բարսղի Բաղիշեցւոյ)․․ որք էին ի Մոկաց գաւառէն, միոյն անունն Յովսէփ, ի գեղջէն որում անունն է Ոզմի, եւ միւսոյն՝ Հայրապետ եւ սորին եղբօրորդւոյն՝ Ներսէս (Բեղլու) որք էին ի գեղջէն

որոյ անունն է Անկնջաւս»։ Դաւրիժեցի կ'երեւայ թէ աչքի առաջ ունեցած է Էջմիածնի Թ. 1480, ուր գրիչն Յովհ. Բաղիշեցի 1615ին կը յիշէ Բարսղի աշակերտներէն «նախ զտէր Հայրապետն, որ տարաժամ մահուամբ փոխեցաւ... եւ զտէր Ներսէս գեղքօրորդի համզուցեալ Հայրապետ վարդապետի»։ Զայն կը հաստատէ 1602ին Գրիգոր Մոկացի, որ Քերականութեան Մեկնութիւն մը կ'օրինակէ «յիշատակ արի եւ քաջ վարդապետին տէր Հայրապետ բաբունւոյն եւ աշակերտեալ մանկանն իւրոյ տէր Ներսէս նորաբողբոջ ծաղկին... եւ իւր ուսուցանողին տէր Բարսեղ... անյաղթ փիլիսոփային» (Երուսաղէմ Թ. 1311)։

Այս տեղիքները միաժամանակ կը հաւաստեն, թէ Ներսէս աշակերտած է նախ Հայրապետ վարդապետի եւ ապա Բարսեղ Բաղիշեցւոյ Ամիրտօլու վանքին մէջ։ Ան գաւազանի իշխանութիւնը առած ըլլալու է 1602էն ոչ շատ ուշ։ Յամենայն դէպս 1608ին արդէն վարդապետ էր ան եւ իբրեւ այսպիսի ընկերացած իր ուսուցչին, Բարսեղ վարդապետին, անոր դէպի Հալէպ եւ Երուսաղէմ ուղեւորութեան։ Յիշատակագիր մը կը գրէ, թէ 1609ին հաւաքուած էին Երուսաղէմ 8 վարդապետներ. անոնց թուին մէջ էին «Մեծն Բարսեղ Ախպակեցին ...եւ երկու աշակերտք իւր Յովհաննէս Բաղիշեցին եւ Ներսէս Մոկացին»։ Ստեփանոս Շատախեցի

երկիցս կը յիշէ, թէ Ներսէս իր տաղերն վասն առման Երուսաղէմի եւ ի Փոխումն Աստուածածնին յօրինած է Սուրբ Քաղաքին մէջ։

Բարսեղ Բաղիշեցւոյ նշանաւորագոյն աշակերտն եղաւ Ներսէս. Առաքել Դաւրիժեցի կը վկայէ. «Այս Ներսէսս յոլով աշխատեցաւ եւ առաւելացոյց քան զԲարսեղ վարդապետն եւ քան զընկերս իւր» (էջ 394)։

Սակաւ են մեր տեղեկութիւնները իր կեանքէն մինչեւ 1615։ Այս միջոցին Կիրակոս վարդապետ եւ Սարգիս եպիսկոպոս, որոնց հետ հաւանօրէն ծանօթացած էր Ներսէս 1609ին Երուսաղէմ, հաստատած էին Սիւնեաց աշխարհին մէջ Մեծ Անապատը, ուր կը դիմէին միանձնասէր եւ հոգեսէր անձինք պարապելու տեսական կեանքի։ Համբաւը կը հասնի մինչեւ Բաղէշ։ «Եւ ապա, կը գրէ Դաւրիժեցի, ի միտս իւր եկեալ Ներսէս վարդապետս եւ խոկմամբ ի միտ առեալ զամենայն ունայնութիւն կենցաղոյս... եւ լուեալ զառաքինական ճգնութիւնս միաբանից Մեծ Անապատին, ելեալ գնաց անդ» (էջ 395). «գործնական իմաստութեամբն կատարել միշտ զտեսականն» (Հայապատում, 621)։ Իր ժամանումը սիրով կ՚ողջունուի միանձնաւորներէն։ Ներսէս կը ծանօթանայ հոն իր հայրենակից Մոկացի Պօղոս վարդապետի եւ անոր միջնորդութեամբ Մովսէս Տաթեւացւոյ հետ։ Անապատաւորք

օգտուելով Ներսէսի ներկայութենէն կ'որոշեն երիտասարդ միաբաններուն ուսման ընթացք սահմանել։ Իմաստասիրական ուսմանց դասախօս կը կարգուի Ներսէս. «Ի միաբանից Մեծ Անապատին ոմանք աբեղայք սկսան դաս առնուլ զարտաքին գիրքն ի Ներսէս վարդապետէն»։ Բայց որովհետեւ «գործնական առաքինութիւնն յարգոյ եւ նախապատիւ էր առ նոսա, զի զհոգիս զարդարելոյ փոյթ ունէին եւ ոչ զբան», այս պատճառով ալ «ոմանք ի դաս առնողացն յետս կացին» (Դաւր. 396), աւելի ճիշդ՝ այն ծանր դասախօսութիւններուն խելահաս չկարենալով ըլլալ, հրաժարեցան ունկնդրութենէ։ Միայն մէկը, Վժանեցի Մելքիսեդեկ աբեղայ յարատեւեց առ ոտս վարդապետին, «ոչ թուլացաւ յընթերցմանէ Արտաքին Գրոց եւ ոչ մեկնեցաւ ի Ներսէս վարդապետէն, այլ զորքան ժամանակս եկաց Ներսէս վարդապետն ի Մեծ Անապատն, եկաց անդէն եւ տէր Մելքիսէթն» (Դաւրիժ. 396. Հմմտ. Ակինեան, Մովսէս Գ. Տաթեւացի, էջ 189—192)։

Չորս տարի մնաց Ներսէս Մեծ Անապատին մէջ, 1616—1621 տարիներուն։ «Աստ վարժեալ ուսաւ... զվարս կրօնաւորական»։ 1621ին վախճանեցան Մեծ Անապատի հիմնադիրները՝ Կիրակոս եւ Սարգիս հայրերը։ Ինչպէս ուրիշներ հեռացան Անապատէն եւ բացին զանազան տեղեր նոր անապատներ,

նոյնպէս Ներսէս Մոկացի «ելեալ գնաց ի գաւառն Վասպուրական եւ եմուտ ի կղզին Լմայ ի մէջ ծովուն» (Դաւրիժ. 254) եւ «շի-նեաց անդ անապատ (անդ 396)։ Տարին ոմանք կը նշանակեն ՌՀ եւ այլք՝ ՌՀԱ։ Ուղիղն է վերջինը, ինչպէս երկիցս կը նշա-նակէ Ստեփանոս Շատախեցի, Ներսէսի ա-շակերտը իր Ոտանաւորաց հաւաքածոյքին մէջ, որ կը պահուի Վենետիկ, Մխիթա-րեանց ձեռագրատունը 171 (հին) համարին տակ։ Ձեռագիրս օրինակել սկսած է Ստե-փանոս Շատախեցի Բաղէշ, Ամիրտօլու վան-քին մէջ 1620ին եւ աւարտած է 1624ին ի Լիմ (Հ. Մ. Պոտուրեան, Առաքել Սիւնեցի, էջ ԻԱ)։ Յիշատակարանին մէջ կը գրէ. «Գիտելի է, զի ինքն (Ներսէս) ի Մոկաց է. եւ գնաց յանապատն Տաթեւոյ եւ Դ. տարի եկաց. եւ եկաւ անտի աստ ի Լմայ՝ կղզիս, անապատ հաստատեց... ի թվին ՌՀԱ»։ Այլուր, նոյն ձեռագրին մէջ կ'ըսէ. «Մո-կացի Ներսէս վարդապետն... եկաւ ի Վանայ երկիրս ի Լմայ կղզիս, անապատ հաստատեց ի թվին ՌՀԱ» (Ինճիճեան, Հին Հայաստան, էջ 228)։ Իսկ Հ. Ղ. Ալիշան այլ ձեռագրէ յառաջ կը բերէ տեղիքս. «Այս այն Ներսէսն է, որ Մոկացի է եւ գնաց Տաթեւոյ անա-պատն, եկաց չորս տարի, եւ անտի եկաւ զԼմայ անապատն հաստատեաց ի թվին ՌՀ» (Սիսական, 248, ծ. 3)։ Դժբախտաբար աչքի առաջ չունիմ Թ. 171 ձեռագրի մանր

ցուցակագրութիւնը։ Կը նախընտրեմ ՌՀԱ (1622) տարին, ինչպէս նոյնը ըրած են նաեւ Հ. Մ. Ջամչեան (Պատմ. Գ. 565) եւ Հ. Ղ. Ինճիճեան։

Լմայ Անապատի հաստատութեան մասին հետեւեալ տեղեկութիւնները ձեռք բերած է Դաւիթ Բաղիշեցի, որ 1669ին այցելած էր կղզին. ան կարդացած է հոն Ստեփանոս Շատախցւոյ արձանագրութիւնները (տես վարը), որոնց ազդեցութեան տակ է։ Բաղիշեցին կը գրէ. «Ի թուին ՌՀ հաստատեցաւ Լմայ անապատն ձեռամբ Ներսէս վարդապետի... ժողովելով բազում եղբարս խարազնազգեստս աւելի քան Հ. հոգիս։ Սա հինգ ամ ի Տաթեւու Անապատն կացեալ եւ առեալ ի նոցանէ զկարգս միակեցութեան... եւ վեց եղբարբք ելեալ անտի եւ եկեալ ի Լիմն կոչեցեալ կղզի. եւ արար զնա անապատ ընդ հովանեաւ սրբոյն Գէորգայ զօրավարին, աշակերտ ունելով զՄելքիսեթ վարդապետն եւ Ստեփանոս վարդապետն, որ յետ Դ. ամի փոխման նորա եկաց գլուխ եղբարց» (Դիւան, Ժ. 48—49)։ Կը համաձայնի իրեն Դաւրիժեցի, երբ կը գրէ թէ Ներսէս հաստատուելով Լիմի մէջ «ժողովեցան առ նա բազմութիւնք եղբարց. եւ եղեւ անապատ հաստատուն ամենայն կարգօք եւ կրօնիւք միակեցութեան վարուց» (էջ 254)։

Լիմ կղզւոյն վրայ վանական հաստատութիւն գոյութիւն ունէր արդէն, ԺԴ. դա-

րէն յառաջ (հմմտ. Ոսկեան, Վասպուրականի վանքեր, Ա. էջ 9 եւ շար.)։ Բայց կը պակսէր հոն կազմակերպութիւն, յատկապէս «հաստատուն կարգեր»։ Տաթեւի վանքին հիմնադիրները ուսումնասիրած էին Երուսաղէմի վանական հաստատութիւններն եւ այնտեղ կիրարկուած կարգերն ու կանոնները։ Ներսէս բերած էր իրեն հետ Բարսեղ Կեսարացւոյ Հարցմանց գիրքը եւ այլ փորձառութիւններ։ Թէ նաեւ «վեց եղբայրներ» բերած է, այլուստ կարելի չէ հաստատել։ Յամենայն դէպս Լիմի իր վերակազմած անապատը, արդէն առաջին տարւոյն համբաւ հանեց։ Ասով միայն կարելի է մեկնել 60 կրօնաւորաց թիւը 1625ին։

Ներսէս ունեցաւ հոս իր ձեռքին տակ իբր 60 կրօնաւորներ, որոնց կ՚առաջնորդէր։ Իրեն հետ եկած էին Մեծ Անապատէն Մելքիսեթ Վժանեցի եւ Ամիրտոլու վանքէն Ստեփանոս Շատախեցի. որոնք ստացան վարդապետական իշխանութիւնը Լիմի մէջ։ Հետամուտ եղաւ Ներսէս հայթայթել իր աշակերտներուն կրօնաւորական կեանքի եւ աստուածաբանական ուսմանց համար օգտաշատ գրքեր։ 1625ին Յովհաննէս դրիչ օրինակած է իր յանձնարարութեամբ Առաքինութեանց Գիրքը. որուն յիշատակարանին մէջ կ՚ըսուի.

«Զօր լուեալ քաջ րաբունապետն Ներսէս զՔրիստոսի մարմնաւորիկ տնօրէնու-

*թիւնն... ես գրել զսա ի հալալ յարդեանց իւրոց եւ յարդար վաստակոց... ի յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց... (դատարկ)... գրեցի ի դրան Ս. Յովաննու Մկրտչին եւ սրբոյն Գէորգեայ զօրավարին ի գիւղն որ կոչի Սուրս... ի թուականութեանս Հայոց ՌՀԴ ամի գրեցաւ տառս որ կոչի Առաքինութիւն, յանուն Լմայ անապատին սրբոյն Գէորգայ, քաջ րաբունապետին մերոյ Ներսէսին ի վայելումն անձին իւրոյ*[1]»: Նոյն ձեռագիրը կը բովանդակէ նաեւ Բարսղի Հարցողաց գիրքը, «*զոր ես գրել զսա Ստեփանոս վարդապետն յիշատակ հոգւոյ իւրոյ, նաեւ Ներսէս վարդապետին եւ միաբանիցն: Եւ է սա յիշատակ Լմայ անապատին, ի դուռն Ս. Գէորգայ զօրավարին: Յիշեցէք եւ Աստուած ողորմի ասացէք ստացողի գրոցս Ստեփանոս վարդապետին եւ ողորմութիւն տուողացն եւ միաբանիցն որ կան այժմ Կ եղբայր միակեց, հաստատ կարգօք ի փառս Աստուծոյ*» (*անդ*, *թղ*. 406*բ*):

Երկար չդիմացաւ Ներսէս վարդապետ խստակեաց կեանքի, թերեւս նաեւ կղզւոյն կլիմայի: Վախճանեցաւ 1625ին: Առաքել Դաւրիժեցի կը գրէ. «Եւ ինքն Ներսէս վարդապետն անդէն կացեալ կրօնաւորական ժուժկալութեամբ՝ կատարեաց զընթացս իւր առաքինի վարուք. անդէն վախճանեցաւ եւ

---

[1] Հռոմ, Regia Biblioteca Casatanense, թիւ 2053, թղ. 310ա:

*անդէն թաղեցաւ։ Եւ վախճան նորա եղեւ ի թուին մերում ՌՀԶ· (1627) ամին» (էջ 254)։ Ստեփանոս Շատախեցի մահուան տարին ՌՀԴ (1625) կը նշանակէ, զոր ուղղագոյնը կը համարիմ։*

*Գերեզմանին վրայ զետեղուած է «ահագին» գերեզմանաքար մը, որուն վրայ կը կարդացուին այժմ պակասաւոր տողերս*[2]*.*

ԱՍՏՈՒԱԾԱԶԱՒՐ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԿԱՌՈՒՑԵԱԼ Է
Ի ԲԱՐԵԽԱՒՍ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ՀՈԳՒՈՅ...
ՆԵՐՍ... ՎՐԴ ՀՈԳՒՈՅ... ՊՐՏ...
ՈՐ Ժ ԱՄԻ... ԵՒ ՆԵՐՍԷՍ ՌԿԷ
ԹՎԿԻՆ ԳՆԱՑ Ի ՏԱԹԵՒԻ ՅԱՆԱՊԱՏՆ
Դ ԱՄ ԿԱՑԼ... ԵՒ ԵԿԻ... ԱՏԻՑ
ԱՍՏ... ԵՒ... Դ·ԻՆ ՏԵՍ ԱՄԱՑ
...ԵՒ ԱՅՍ Ե· ԱՄ...
ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԷՔ ՏՈՒՔ ԶՈՂՈՐՄԻՆ

*Արձանագրութիւնս բաղկացած է 9 տողերէ. մէն մի տող ունի 24—26 գիր։ Դժբախտաբար հնարաւորութիւն չունինք վերստուգելու Լալայեանի տուած թերակատար ընթերցուածը։ Ինձ կը թուի, թէ տապանագիրս լրացնելու է մօտաւորապէս այսպէս.*

*Աստուածազօր սուրբ խաչս կառուցեալ է*
*Ի բարեխաւս առ Աստուած հոգւոյ (հաւրն)*
*Ներս(էս) վարդապետ(ի) (հանգուցելոյ ի*
*Քրիստոս)*
*Ի Ծ ամի (կենաց իւրոց)։*

---

[2] *Ե. Լալայեանց, Վասպուրականի Նշանաւոր վանքեր. Լիմ անապատ. Ազգագրական Հանդէս. ԻԲ* (1912) 85—100, *արձանագրութիւնս՝ էջ* 92—93։

Եւ Ներսէս (ի) ՌԿԷ
Թվականին գնաց ի Տաթեւի յանապատն.
Դ. ամ կացեալ անդ. եւ եկեալ հաստատեաց
Սատ (զանապատս)։ Եւ յետ Գ եւ կէս ամաց[3]
(հանգեաւ ի Տէր ի ՌՀԴ)։ Եւ այս. Ե. ամ է։
Որք երկրպագէք, տուք զողորմին։

Այս արձանագրութիւնը յօրինած է առանց տարակուսի Ստեփանոս Շատախցի, որ ուրիշ արձանագրութեան մը մէջ ունի տողերս.

Յետ Ներսէսի հօր սրբազան,
Որ մեզ յանձնեաց զայս միաբան,
Ինքն հանգեաւ ի գերեզման
Մեզ սուգ եթող անանցական.
Ի թվին ՌՀ (հազար եօթանասնեան)
Դ ընդ նմին եղեւ վախճան։

Ներսէս Վ. Մոկացի երկու աշակերտի միայն բաշխած է վարդապետական իշխանութիւն. անոնցմէ առաջինն է Մելքիսեթ Վժանեցին, որուն մասին Առ. Դաւրիժեցի երկար խօսած է (էջ 395—401). վախճանած է 1631ին։ Երկրորդն է Ստեփանոս Վ. Շատախցի, որ եւ ուսուցչին մահէն ետքը անոր յաջորդն եղաւ Լիմի անապատին վերակացութեան։ Իր մասին պիտի խօսիմ առանձին։

---

[3] Եթէ ՌՀԱ (1621) տարւոյն հաշւէ Լիմ, ՌՀԴ (1625) տարւոյն կ'ըլլար երեք ու կէս տարի։

## ՆԿԱՐԱԳԻՐԸ

*Ներսէս, ժամանակակիցներէն «քաջ բաբունապետ» յորջորջուած, հանդիսացաւ Բարսեղ Բաղիշեցւոյ նշանաւորագոյն աշակերտը, եւ վայելեց համբաւ իբրեւ տեղեակ արտաքին ուսմանց: Հմտութիւնը չհպարտացուց զինքը: Կը սիրէր մեկուսացած աշխարհէ պարապիլ ներանձնական կեանքով. այս պատճառաւ ալ երբ լսեց թէ Սիւնեաց աշխարհի մէջ բացուած է Մեծ Անապատը եւ աստուածապաշտ հոգիք նուիրուած են հոն լուռ ճգնաւորական առանձնութեան եւ կ'ապրին աստուածամերձ կեանք, ինքն ալ կերպափոխելով զինքը «մտաւ ի կարգ կրօնաւորացն ծածկարար» (Գր. Կամախեցի, 291): Հոն, ուր միանգամայն Հայոց եկեղեցւոյ համար կիրթ եկեղեցականներ պիտի դաստիարակուէին, ընծայեց Ներսէս ինք զինքը պատրաստ, բաժին հանելու իր հմտութենէն ուսումնասէր կղերականներուն: Թէպէտ շատեր թուլացան յարատեւութեան մէջ. բայց ինքը չդանդաղեցաւ բաւականութիւն տալ այն փոքրաթիւ ուսանողներուն, որոնք յարատեւեցին իրենց ուսումնասէր ջանքերու մէջ: Մեծ Անապատը ներշնչեց իրեն նոյն կազմակերպութիւնը տնկել հարաւային Հայաստանի մէջ. եւ Ներսէս առած իր հետ 6 ճգնասուն միանձունքներ, կը փոխադրուի Լիմ կղզին եւ կը հաստատէ հոն իր առաջնորդութեան տակ Նոր Անապատ:*

Ապրեցաւ հոն «կրօնաւորական ժուժկալութեամբ» եւ կատարեց «ընթացս իւր առաքինի վարուք»: Հաւաքուած էին հոգեւոր առաջնորդին թեւերուն տակ 60 կրօնաւորներ. որոնք կը սնանէին անոր կենդանարար խօսքերով:

Նուրբ հոգի մը կը խօսէր իր մէջ, որ օժտուած էր բանաստեղծական աւիւնով, եւ գիտէր արտայայտուիլ քնքոյշ եւ հաճելի ոճով, կորովի գրչով եւ ճոխ լեզուով: Իր արտադրութիւնները, թէեւ աղքատ են թուով, բայց գերազանց են որակով. անոնք կու տան իրեն եզական դիրք ժամանակակիցներու քով, թէ արտայայտութեան ուժեղ ոճովն եւ թէ մտքի բարձրական թռիչքովը: «Ի դպրութեան մերում եթող յիշատակս տաղաչափութեամբ՝ ոչ խոտելիս, այլ եւ գովելիս ըստ այնր ժամանակի» կը գրէ Հ. Ալիշան (Սիսական 248). իր գրուածներն են, կ'ըսեն Նոր Հայկազեան Բառգրքի հեղինակները (Ա. 16), «պարզ եւ վայելուչ բանիւ քան զյետնեալ ոճ ժամանակին»: Իսկ Quadroի հեղինակը կ'անուանէ զինքը celebre poeta: uomo però fu egli, che all' estro poetico accompiava eziandio lo studio delle scienze sacre e profane. Անոր Ողբն ի վերայ առման Երուսաղէմի riesce assai più bella, e meravigliosa, perchè venuta alla luce in una epoca, in cui era totalmente sparito da ben tre secoli il buon gusto non solo di poetare,

ma di favellare persino il puro linguaggio letterale. *Նոյնպէս ի փոխումն Աստուածածնի ոտանաւորը գրուած է* con uno stile molto elegante e superiore di assai a quello, che si costumava al suo tempo (Quadro 152):

ՆԵՐՍԷՍ Վ. ՄՈԿԱՑԻՈՅ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Մոկացւոյս մասին առաջին անգամ խօսած է Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ (Վենետիկ* 1786), *էջ* 565, *ուր յիշած է նաեւ իր գրութիւններէն երկուքը. «Այս Ներսէս Մոկացի գոլով վարժ ի շարագրութիւնս բանից՝ արար ճառս ինչ եւ յօրինեաց ոտանաւոր բանիւ զՊատմութիւն փոխման Աստուածածնին հանդերձ գովեստիւք. եւ զՊատմութիւն պատկերի նորա. եւս եւ զՊատմութիւն առմանն Երուսաղէմի ի Սալահադինայ. զի թէպէտ եւ այսոքիկ կային շարագրեալ յազգին մերում, բայց սա արար ոտանաւոր. եւ մի յաշակերտաց նորա Ստեփաննոս անուն՝ յաւել ի Պատմութիւն պատկերի Աստուածածնին երքհարիւր տուն եւս»:*

*Այս գրութիւնները իրեն ծանօթ եղած են Մխիթարեան Մատենադարանի Թ.* 171 *ձեռագրէն: Նոյն ձեռագիրը աչքի առաջ ունեցած են նաեւ Նոր Հայկազնեան Լեզուի Բառգրքի հեղինակները, երբ կը գրեն. «Ներսէս Մոկացի՝ նորոգիչ Լիմն անապատի ի սկզբան ժէ. դարու, որոյ են ոտանաւոր ողբ ի վերայ Երուսաղէմի, եւ ոտանաւոր ի*

Վերափոխումն կուսին, պարզ եւ վայելուչ բանիւ քան գյետնեալ ոճ ժամանակին» (Նախադուռն, էջ 16բ): Աւելի ընդարձակ նկատի առած է գրութիւններս Quadro della storia letteraria di Armenia գործին հեղինակը Գերապայծառ Placido Sukias Somal, Վենետիկ 1829, էջ 152—153:

Զարմանալի է արդարեւ, որ անտեսելով այս հեղինակներու գնահատութիւնները՝ Հ. Գ. Զարբանալեան իր գործին մէջ Պատմութիւն հայերէն դպրութեան, Բ. Նոր մատենագրութիւն. Բ, տպ. Վենետիկ 1905, Ներսէս Մոկացւոյ անունը միայն յիշած է (էջ 197), առանց գրութիւններու վրայ խօսք ընելու:

Նորագոյն շրջանին ուշադրութիւն դարձուց հայ միջնադարեան տաղասացիս Նորայր Վ. Ծովական, Միջնադարեան տաղասացներ. Ներսէս Վ. Մոկացի. Էջմիածին ամսագիր Վաղարշապատ 1944, Թ. 11—12, էջ 32—35: Հեղինակը, որ Մոկացւոյ կենսագրութեան մասին իր տեղեկութիւնները քաղած է Առաքել Դաւրիժեցիէն, ժէ. դարուն միակ Ներսէս մը, եւ այն Մոկացին, տաղասաց կը ճանչնայ. այս պատճառով ալ իրեն վերագրած է տաղեր ալ, որոնց հեղինակը ձեռագիրներու մէջ Ներսէս Բաղիշեցի կը ներկայանայ: Այս Բաղիշեցի Ներսէսի մասին, որ Մոխրաբերդցի ալ կը կոչուի, պիտի խօսիմ առանձին գլխով: Վերագոյն դանա-

ղանած էի ուրիշ երեք Ներսէսներ ալ, որոնց առաջինը, Մատաղ յորջորջուած, հայրենեօք Մոկացի համարած էի, ԺԶ. դարու առաջին քառորդին: Ծովական վարդապետի աշխատանքը գնահատելի է մանաւորապէս այնու, որ նա նկատի առած է Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի ձեռագիրները:

Այս տեղ քննութեան պիտի առնեմ Ներսէս Բեղլու Մոկացւոյ գրուածքները, որքան անոնք ծանօթ են ինձ: Վենետիկի Թ. 171 ձեռագիրը, զոր վերագոյն առիթ ունեցանք քանիցս յիշելու, տակաւին չէ ցուցակագրուած. յիշեալ համարը Մատենադարանին հին կարգին համաձայն է, ուստի պէտք չէ շփոթել Հ. Բ. Սարգիսեանի Յուցակին թիւ 171 ձեռագրին հետ:

1. Ողբ վասն առման Երուսաղէմի:
Ի հոլովել ժամանակին
եւ ի մերձելն աւուրց վերջին,
Յորում սպառաւ փոքր այն բարին,
զոր առաջինքը գործեցին...

Վ. Յարմարողիս բանիս ողբան,
ողորմիս տուք ի յի բերան:
Ներսէս բարունեան,
հաստատողի Լմոյս անապատեան:

Ի կատարածին կայ ծանօթութիւնս.
«Այս ողբոց բանս Երուսաղէմի վաղուց հետէ չինեալ էր. բայց դեղջուկ բառիւ էր. ապա Աստուած լուսաւորէ զՆերսէս վարդա-

*պետի ծնօղաց հոգին, որ մեր աղաչանացն
լսեց եւ նոր շարագրեաց, համեղացոյց զբանս
եւ յինքենէ այլ ասաց ի վերայ: Այլ եւ ա-
ռաջի[ս]կայ Աստուածածնի պատմութիւնս
այլ նա արարեր է, յԵրուսաղէմ չինել ոտա-
նաւոր: Նաեւ գիտելի է զի ինքն ի Մոկաց է.
եւ գնաց յանապատն Տաթեւոյ. Դ տարի
եկաց եւ եկաւ անտի աստ ի Լըմայ կղզին՝
հաստատեաց անապատ, որով բազում մար-
դիկք Աստուծոյ հաճոյացան նորա պատճա-
ռաւն. ի թվ. ՌՀԱ: Փառք Քրիստոսի Աս-
տուծոյ:*

*Ձեռագիրք՝ Էջմիածին, Թ.* 2079, *Թղ.* 191*ա*—194*բ* (1672): *Վենետիկ, Թ.* 171. *էջ* 340 (*յամէ* 1624):

*Առ այս կը գրէ* Quadro, *էջ* 152.

A richiesta de' suoi confratelli una bellissima Elegia sulla presa di Gerusaleme fatta da Saladino nel 1117, la quale riesce assai più bella, e meravigliosa, perché venuta alla luce in una epoca, in cui era totalmente sparito da ben tre secoli il buon gusto non solo di poetare, ma di favellare persino il puro linguaggio letterale. *Թարգմանութիւնն է.*
*«Այս շատ գեղեցիկ Ողբը գրած է իր եղբայ-
րակիցներու խնդրանքով Երուսաղէմի* 1117*ին
Սալահատինէն առումին վրայ: Ողբս յօրի-
նուած է շատ սիրուն եւ հիանալի, վասն զի
լոյս տեսած է ժամանակ մը, երբ բոլորովին
նուաղած էր, երեք դարէ ի վեր, գեղեցիկ*

*ճաշակը, ոչ միայն բանաստեղծելու, այլ եւ թոթովելու մինչեւ իսկ պարզ գրական լեզուն»:*

*Ինչպէս վերագոյն տրուած ծանօթագրութիւնը կը հաղորդէր, Տաղիս սկզբնագիրը գրուած էր Երուսաղէմ 1608/9ին, ռամկօրէն բարբառով, եւ հեղինակը յետոյ միայն հետեւելով իր աշակերտաց խնդրուածքին վերածած է զայն գրաբարի, աւելի ճոխացնելով եւ ընդարձակելով: Յանկալի էր վեր հանել սկզբնագիրը, եւ լսել հեղինակին ռամկաբարբառ հարազատ հնչիւնները:*

2. Ներբողեան վիպասանական ի Փոխումն Աստուածածնին Կուսին եւ յաղագս Պատկերին սրբոյ, որ բերեալ հանգուցաւ տեսչութեամբ հոգւոյն ի սահմանս Անձեւացեաց, ի տեղին կոչեցեալ Հոգւոց վանք:

*Աստուած եւ Տէրն ամենայնի,*
*Եւ արարիչն արարածի,*
*Որ էրն եւ է եւ եղիցի,*
*Եւ յանրաւիցս ոչ պարագրի...*

Վերջին Ճ. տունն է.

*Իսկ դու ծնող Հօր Միածին,*
*Մեք հրովարտակք գոլով նմին.*
*Դու հարսն ամբիծ Երրորդութեան,*
*Մեք փողք հնչողք զծնունդ քոյին:*

*Այս տեղ ընդհատած է Ներսէս Մոկացի իր Երգը. զոր շարունակած է ապա իր աշակերտը Ստեփանոս Շատախեցի այսպէս.*

*Որպէս Տէրն եւ զմահուն իւր փայտ,*
*Առ յինքենէ ասաէն պատանդ...*

*Վերջին* 340—357 *տուները կը կապէն*.
ՍՏԵՓԱՆՈՍ ՄԵՂԱՒՈՐ: *Տուն* 3Ծ.

*Երես ի վայր կամ ի յանկման,*
*Թըւով լցեալ եօթն յորեւեան.*
*Ըստ այսմ ճառիս որ գըրացան,*
*Հոլով յաւարտ կատարեցան...*

*Այս ինքն մինչեւ հոս գրուեցաւ* 350 *տուն: Կը յաջորդէ*.

*Այժմ դարձեալ ընդ նոյն շաւղին,*
*Երգս երգեցից Մորդ անեղին.*
*Քեզ պատմարանս ըստ այբուբենին,*
*Ինձ ողբ եւ ձայնըս լալագին:*

*Աստուած հանուրց գոյականին,*
*Հայր անըսկիզբն եւ անքնին...:*

*Այս յաւելուածական մասը կը կապէ* Ս.—Ք. ՈՂՈՐՄԵԱՑ: *Ընդամէնն* Ն, *այն է* 400 *տուն: Կ'աւարտի*.

*Ես փանաքի գոլով անձին,*
*Ձեմ արժանի այսր մասին.*
*Թ'էպէտ անուննս* բոլոր *կոչին,*
Պըսակ *եւ* տեար *Ստեփանոսին:*
*Այլ այս թըւիս որ յառաջեալ,*
*Եւ բան գրան գոլով ծնեալ,*
*Նախ* մեն հայիւր Ներսէս ոգեալ,
*Որ պըւէտ Մոկաց*[1] *մակ ձայնացեալ:*

---

[1] *Ձեռ. մըկեաց:*

Յետ այսմ եւ մեր վստահացեալ,
Բան ի բանից գոլ կըցկըցեալ.
Երից հարեւրց մակագրեցեալ,
Համայն չորիւք բովանդակեալ...։

Ով հանդիպողք այսմ խունիմաստ սոփերի, յիշեսջիք յաղօթս ձեր զիս յետինս ի կրօնաւորաց, որ եւ անուանս չեմ արժանի (3 տող դատարկ). որ յԱստուծոյ նախախնամութիւն։ զի Մոկաց Ներսէս վարդապետն ի վերին Տաթեւոյ անապատն կացեր էր. Դ. տարի. եկաւ ի Վանայ երկիրս ի Լմայ կղզիս անապատ հաստատեաց ի թվին ՌՀԱ (1622). եւ մեք այլ նորա միաբանեալ բնակեցաք աստ։ Եւ զայս պատմութիւնս նա ոտանաւոր յԵրուսաղէմ չիներ էր ձ տուն, ի սուրբ Աստուածածնին գերեզմանէն խնդրեալ։ Որ եւ մեք այլ ի վերայ հիման չինածին սակաւ յաւելեցաք, տունս երեքհարիւր, ոչ ի մերոց մտաց գիտութեանց, այլ նիւթ զՊատմութիւնս առեալ. թէպէտ որ ժպրհութիւն էր մերս. այլ ոչ թէ ինքնայօժար կամօք, զի շատ աղաչեցի զՎարդապետն, թէ զՊատմութեանս աւելորդ բաներս այլ ոտանաւոր չինէ. զինչ որ չհանդիպեցաւ դէպ առեն չինելոյ։ Վասն որոյ մեր յօժարեալ խնդրեցի ի սուրբ Աստուածածնէն. եւ առեալ չարագրեցի զսակաւամանեայ տաղաչափութիւնս, որ եւ մին այրուբենիւ ընդ նոյն համարոյն չինեցաւ. եւ ընծայեցի զիւրն ինքեան...։ Ամէն։

Ձեռագիրք՝ Էջմիածին, 2079, թղ. 196ա—

210*բ* (1672)։ *Վենետիկ*, *Թ*. 171, *էջ* 349։ *Ասկէ հանած եւ հրատարակած է Հոգեաց վանքի պատմութեան վերաբերեալ բաժնէն* 20 *տուն Հ. Ղ. Ալիշան*, *Բազմավէպ* 1862, *էջ* 232 = *Յուշիկք Ա*. 308—310, *որ կը սկսի այսպէս. «Նշխար փայտին որ չնորհեցաւ, Բարդուղիմեայ նըշանեցաւ...»*։ *Նոյնը քանի մը տուն աւելի եւ պակաս Հ ա յ ա պ ա տ ո ւ մ*, *էջ* 51—53։

3. Ներբողեան գովեստից չորեքցունց արանցն, որք եղեն սկիզբն անապատի կարգել յազգս մեր. ի Ներսիսէ ճգնազգեաց վարդապետէ ասացեալ Մոկացւոյ, ի Փիլիպպոս դպրէ խնդրեալ։

*Օրհնեալ տէր Յիսուս փրկիչ նորոգող*
*ազգի մարդկան.*
*Որ միշտ զբարին կամի եւ սպասէ մերոյս*
*փրկութեան*։
*Յայսմ յետնեալ ժամանակիս յիշատակ ա–*
*րար նորոգման*,
*Բացեալ մեծ դուռըն բարւոյ եւ եհեղ ձիր*
*ողորմութեան*...։
*Վ. Առ ձեզ պաղատիմ եղբարք*, *ես Ներսէս*
*յոյժ թշուառական*,
*Փոքրիկ Փիլիպպոս դպիր փափագող բա–*
*նիս տաղական.*
*Զայս խնդիր արար*, *թէ Ասա յիշատակ*
*որ ողորմիս տան*։
*Հայցեցէք ընդ իմ առ Հարքս*, *յիշել զիս*
*առ անմահ արքայն*։

Ձեռագիրք՝ էջմ. 45, 14բ (1642)։ 642, 115ա (1671)։ 1721, 115ա (1696)։ 1754, 343ա (1644)։ Երեւան, Պետ. Թանգարան, 408, 36ա[1]։ Երուսաղէմ, Թ. 1895։

Հրատարակեց Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Բ. 618—623։ Հատուածներ՝ Սիսական, էջ 248—249։

Ներսէս Մոկացի յօրինած է զովեստից ներբողեանս առանց տարակուսի 1621ին, երբ կը գտնուէր ի Մեծ Անապատին. կը յիշէ Սարգիս եւ Կիրակոս հայրերու մահը 1621ին։ Խնդրողն՝ Փիլիպպոս դպիր պէտք է ըլլայ Աղբակեցին, որ յետոյ աշակերտեցաւ Մովսէս Կաթողիկոսին եւ անոր յաջորդն եղաւ էջմիածնի հայրապետական գահին վրայ։

4. Նորին Ներսիսի Մոկացւոյ ասացեալ Ողբերգական։

Մանուկ մատաղարժ էի եւ ոգւոյ բարւոյ դիպեցայ.

Նոյն ոգւով հաստատեալ զիս Տէր, մինչ իմաստս հաստատեցայ։

Հոգւոյն այն ուրախ եղէ, վայելուչ մտօք ծաղկեցայ...

Ձեռագիրք՝ էջմիածին, Թ. 45, թղ. 19բ—23ա (1642)։ Վենետիկ, Մխիթ. Մատ. Ոսկեփորիկ Աւետիք Պաղտասարեանի. հմմտ.

---

[1] Խորագիր ունի. Ներբողեան յաղագս շինման եւ հաստատութեան Լմայ ծովապատ անապատին սուրբ Գէորգայ։

*Բազմավէպ* 1897, *էջ* 424։ *Երուսաղէմ*, *թիւ* 1895։

*Խորագիրը Պաղտասարեանի օրինակն ունի. Ներսէս վարդապետի ասացեալ զՈղբս վասն անձին եւ յորդ վերայ յարմարի։ Այս այն Ներսէս է, որ Մոկացի է. եւ գնաց ի Տաթեւոյ յանապատն, եկաց չորս տարի. եւ անտի եկաւ զԼմայ անապատն հաստատեաց. ի թվին ՌՀ*[2]*։ Աստուած լուսաւորէ զիւր հոգին. ամէն։ Թէ կամիս գունով ալ սաս»*։

7. Աղօթք առանձնակի, սրտահառաչ ձայնիւ պաղատանք. արարեալ Ներսէս վարդապետի ի Լիմ անապատն (*Արճակ*)։

*Բարերար Աստուած, մարդասէր, ողորմեա ինձ բազմամեղիս...*

*Ձեռագիրք՝ Էջմիածին*, *Թ*. 11, *թղ*. 95*ր* (1736)։ *Սեւան*, *Թ*. 80 (*յամէ* 1793. *Ն*. *Մառ*, *Ցուցակ*, *էջ* 37)։ *Երուսաղէմ*, *թիւ* 1449։

5. Այլ տաղ Մոկացուն։

*Գերահրաշ Աստուած գոլով, ծաղեալ անմեռ մեծ խորհրդով,*

*Երեւեցար յերկրի մարմնով, զմեղս Ադամայ լուանալով...*

*վ. Զորդի կուսին տէր միական, դաւանելով Հօր էական,*

*Որում եւ մեք ասա միարան, փառս տացուք միշտ յաւիտեան։*

---

[2] *Ասկէ է Հ. Ղ. Ալիշանի կոչումը Սիսական*, *էջ* 248, *ծան*.։

=Երուսաղէմ 1249: Հմմտ. Էջմիածին ամս. 1944, Թ. 11—12, էջ 32. սկ. եւ վջ. Հաղորդեց Ն. Վ. Պողարեան 1 Յուլիս 1945:

6. Ներսէս Մոկացւոյ Գանձ ի նոր նահատակն տէր Անդրէաս Նախիջեւանցի:

*Հատդ. անմահական...:*

=*Երուսաղէմ*, Թ. 1397 (*ըստ Սաւալանեանի Յուցակին*): *Անդրէաս քահանայի* († 18 *Նոյեմբեր* 1617) *Վկայաբանութիւնը ունինք Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութեան մէջ, տակէ Հայոց Նոր Վկայք*, էջ 423—430: *Ներսէս Մոկացւոյ այս Գանձը գրուած ըլլալու է* 1617—1618 *տարիներուն, երբ ան կը գտնուէր Տաթեւի անապատը: Այս պատճառաւ ալ կարեւորութիւն կը ստանայ Գանձս եւ արժանի է հրատարակութեան:*

8. Տաղ ազնիւ եւ գեղեցիկ Երկնուց եւ Գետնուց ասացեալ:

*Երկինք ու գետինք, եղբարք,*
*աճափ ո՛րն քան զորն աւելի,*
*Ձերկնից բարձրութիւն ասեմ,*
*նա գետնին պըտուղն աւելի...*
*վջ. Քան զերկինքն ի՛նչ բարձր կայ,*
*որ գլուխ եդիր ի գետնի.*
*Այսօր վրան կու քայլենք,*
*վաղն մտնունք ի ներքեւ գետնի:*

=*Էջմիածին*, Թ. 2394, 32*ա* եւ 53*ա* (*ժէ*): *Երեւան*, 395, 100*ա* (1620): *Զմմառ*,

328, 1ա (ԺԷ)[1]: Մոռոզեան Տղ. էջ 247—251: Յ. Քիւրտեանի Տաղարան յամէ 1678:

Հրտ. Բազմավէպ, 1847, էջ 331—332: Արարատ 1898, էջ 548—549: Վ. Փափազեան, Պատմութիւն Հայոց գրականութեան, Թիֆլիս 1910, էջ 140—142:

Ինձ ծանօթ բոլոր վերոյիշեալ ձեռագիրները տաղիս հեղինակի մասին կը լռեն: Բազմավէպի հրատարակիչը (Հ. Ղ. Ալիշա՞ն) կը կցէ դիտողութիւնս. «Այս խմաստագուարճ երգոյս հեղինակն է Ներսէս անուամբ վարդապետ մը, որուն ժամանակը կ'երեւայ թէ ասկէ երկու դար մը առաջ պիտի ըլլայ», այսինքն ԺԷ. դար: Գարեգին Վ. Յովսէփեան, որ տաղէս երկու օրինակ ունեցած է աչքի առաջ, անանուն գիտէ զայն. բայց կը գրէ, թէ «այս տաղն եւս երգում են Մոկացիք, ինչպէս յայտնել է մեզ... Մոկացի Յեռվանը: Տարաբաղդաբար ինքն անգիր չգիտէր, թէեւ յաճախ լսել էր այդ երգն իւր հայրենիքում» (Արարատ, էջ 546): Թերեւս այս երկու հրատարակիչներու նկատողութիւնները յորդոր եղած են Վ. Փափազեանի տաղիս հեղինակը «Ներսէս Վ. Մոկացի» յայտարարելու:

⁂

[1] Վերջին տունը կ'աւարտի՝
Ի քեզ կայ եկեղեցի
որ Քրիստոս կու պատարագի.
Ամէն տօնի եւ զատկի
դու ունիս հազար քահանայ ի լի:

14. ՍՏԵՓԱՆՈՍ Վ. ՇԱՏԱԽՑԻ

Հ. Ղ. Ալիշան, Յուշիկք, Բ., 126, կ'անուանէ զինքը Շատախցի, հաւանօրէն յեցած Վենետիկի Մխիթարեանց Թ. 171 (հին) Տաղարանին յիշատակագրութիւններու վրայ: Ա. Տեւկանց, Հայերգ, ԺԱ., գիտէ զանիկա Ստ. Մոկացի: Շատախ քաղաքն եւ վիճակը Մոկաց գաւառի մասն էր ի հնումն:

Ստեփանոսի կը հանդիպինք առաջին անգամ 1620ին ի Բաղէշ, ուր Ամիրտօլու վանքին մէջ կը սկսէր օրինակել վերոյիշեալ Թ. 171 Տաղարանը, զոր կ'աւարտէ 1624ին ի Լիմ: Ասկէ կրնանք հետեւցնել, թէ Ստեփանոս Շատախէն գացած էր Բաղէշ աշակերտելու Ներսէս Մոկացւոյ առ ոտս: Երբ Ներսէս 1616/17ին անցաւ Տաթեւի Անապատը, Ստեփանոս շարունակեց իր ուսման ընթացքը Ամիրտօլու վանքին մէջ: Բայց երբ լսեց Ստեփանոս, որ Ներսէս փոխադրուած է Լիմ եւ հոն անապատ հաստատած, ինքն ալ յարեցաւ անոր 1622 տարւոյն: Այստեղ հաւանօրէն ստացան Ներսէսէն վարդապետական իշխանութիւնը Ստեփանոս եւ Մելքիսեթ Վժանցի:

Ներսէս վախճանեցաւ 1625ին: Միաբանական ժողովը առաջնորդ եւ վերակացու ընտրեց Անապատին Ստեփանոս վարդապետը: Այս պաշտօնի մէջ մնաց ան մինչեւ

1647: Այս տարւոյն Լիմի առաջնորդ կը յիշուի Ղուկաս վարդապետ: Յովհաննէս արեգայ 1647ին ի Լիմ նորոգել կու տայ 1303ին գրուած Թուղթքն Պաւղոսի եւ Եսայեայ Մարգարէութիւնն. եւ կը խնդրէ յիշել «զառաջնորդ սուրբ ուխտիս Ստեփաննոս վարդապետն եւ այժմուս Ղուկաս հեզահոգի վարդապետն եւ զայլ միաբանս սուրբ ուխտիս» (Լալայեանց, Ցուցակ Վասպուրականի, էջ 64—65. Հմմտ. Ոսկեան, Վասպուրական-Վանի վանքեր, Ա., 27): Այնպէս կը տեսնուի, որ Ստեփանոս այս տարւոյն քաշուած էր առաջնորդութենէն, աթոռը թողլով Ղուկասին:

Իր առաջնորդութեան տարիներուն Լիմի անապատը ծաղկած է մեծապէս: Արդէն 1628ին երբ առաջնորդութիւնն առաւ, միաբանութեան անդամներու թիւը հասած էր 60ի («յիշեցէք եւ Աստուած ողորմի ասացէք ստացողի գրոցս Ստեփանոս վարդապետին, եւ ... միաբանիցն որ կան այժմ. Կ. եղբայր միակեցական հաստատ կարգօք ի փառս Աստուծոյ» (Հռոմ, R. B. Casanatense 2053, թղ. 106բ. ասկէ Զմմառ, Քէչիչեան, թ. 312, թղ. 128ա (1829էն): Նոյնը կը կրկնէ Ստեփանոս 1629ին իր արձանագրութեան մէջ:

Իսկ Oxfordի թ. 96 հայերէն ձեռագիրը, որ հաւաքածոյ մըն է Դատաստանագրոց, անոնց թիւը 1638ին 70 կը ներկայացնէ (Conybeare, Catalogue, p. 218): 1636ին Աւե-

տարան մը կը գրուի ի Լիմ (եւ մասամբ ի Վան), «ի խնդրոյ սրբասնունդ եւ մաքրամիտ, հեզահոգի, քաջ եւ արի Ստեփաննոս վարդապետի եւ միաբանութեանս ամենայնի, որ են յանապատս Լիմ ԲԺ կարգաւորօք եւ Ծ միակեցօք ի սէր Քրիստոսի եւ ի յաղաչխարութիւն ճգնութեան աշխատեալք, անհանգիստ տքնութեամբ, մշտական առաքինութեամբ» (Լալայեանց, անդ, 889)։ Իսկ ինքը Ստեփաննոս կ՚աւելցնէ․

«Արդ անպիտանս եւ ապիկարս ի գործս կրօնաւորութեան, որ զանուն վարդապետի եւ զառաջնորդութեան առեալ՝ վասն հոգեւոր եղբարցս անապատիս եւ ի գործոց ճգնութեան եւ յառաքինութեան վերջացեալ եմ․ որ զեղբարցս պէտս հոգոյ եւ մարմնոյ յանձն եմ առեալ եւ լիապէս չեմ կատարեալ, այլ պարտապէր եմ ինձ եւ սոցա։ Բայց յոյս զՔրիստոս ունիմ, որ ի յեղբարց աղօթից մասն պարգեւէ մեզ․ եւ որպէս աստ միաբանն՝ յեկեղեցի եւ ի սեղան եւ յայլ ամենայն գործ․ նոյնպէս եւ ի դատաստանին՝ ի միմեանց մի անջատեսցէ․ ամէն»։ Միաբաններու թիւն է 1647ին «Ծ․ աւելի եւ ոչ-պակաս» (անդ, էջ 64—65)։

Առաքել Դաւրիժեցի կը գրէ «աճեցին միաբանք Լմայ անապատիս, վասն որոյ ելեալ ի Լմայ՝ գնացին ի տեղին, որ անուանի Կտուց... եւ անդ եւս շինեցին անապատ եւ եղբայրանոց» (էջ 254)։

*Ստեփանոսի օրով կար ի Լիմ փութաջան գրիչ մը Աւետիս, որուն համար կը գրէր Ստեփանոս վարդապետ, թէ «Զայս սուրբ Աւետարանս յատոյգ յօրինակէ ետու գրել վասն անապատիս հաստատութեան ի Սըսայ յօրինակէն, զոր ընտրեաց տէր Աւետիս ծերն եւ գրեաց Ա. իւրն, որ տարան ի Թացու. եւ Ա. Նորշինոյ՝ Յոհանէսին*[1]*. եւ մինս այս, ի տկարութեան ժամանակին, որ մինչ ի մեռանելոյ յօրն կու գրէր· զոր Տէր Աստուած ողորմեսցի իւրն ամէն» (Լալայեանց, անդ,* 889):

*Ստեփանոս Շատախեցի իբրեւ գրական աշխատանք ունի միակ գրութիւն մը,* 350 *տունէ, ի Ննջումն Աստուածածնի, զոր կցած է իր ուսուցչին՝ Ներսէս Մոկացւոյ «Աստուած եւ տէր ամենայնի» տաղին, իբրեւ ի լրումն, վասն զի Մոկացին թերակատար թողուցած էր այդ տաղը· տես այս մասին Մոկացւոյ նոյն տաղին առթիւ գրածներս:* Quadro *այս յաւելուածը «աննման» կը գտնէ այն ոճին, զոր ծաղկեցուցած էր Ներսէս իր տաղին մէջ:*

*Նորայր Բիւզանդացի իր անտիպ մէկ գրուածքին մէջ կը գրէ թէ Ստեփանոսի այս յաւելուածական մասը ինչ ինչ ձեռագիրներու մէջ վերնագիր կը կրէ «Ստեփանոսի Շա-*

---

[1] *Այս Աւետարանն է Թ.* 380 *ձեռագիրը,* 1635*էն.* (*Լալայեանց, անդ* 885—887):

*տախեցւոյ»: Ես չեմ հանդիպած այդպիսի ձեռագրի:*

*Ի կատարածին կը զետեղեմ արձանագրութիւն մը, զոր Ստեփանոս վարդապետ փորագրել տուած է խաչքարի մը վրայ ի Լիմ: Արտագրութիւնը կատարած է Ե. Լալայեանց, Ազգագրական Հանդէս, ԻԲ* (1912), *էջ* 92—93:

Առաջին երեսին վրայ:

ԿԱՆԳՆԵՑԻ ԶԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ՀՈԳՒՈՑ ԻՄՈՑ· ԵՍ ՄԵՂԱՒՈՐ ՍՏԵՓԱՆՈՍ ԲԱՆԻ ՍՊԱՍԱՒՈՐ· Ի ԼԻՄԱՅ ԱՆԱՊԱՏՍ ԸՆԴ ՀՈՎԱՆԵԱՒ ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳԱՅ ԶԱՒՐԱՎԱՐԻՆ Ի ԹՎ· ՌՀԸ· ՈՐՔ ԵՐԿՐՊԱԳԷՔ ՅԻՇԵՑԷՔ ԶԻՍ ԵՒ ԶՄԻԱԲԱՆ(Ս) ԱՆԱՊԱՏԻՍ Ի ՔՐԻՍՏՈՍ:

Երկրորդ երեսի վրայ:

ՈՎ ՔԱՌԱՆԻՇ ԶԷՆ ՅԱՂԹՈՒԹԵԱՆ
ՆԵՐԿԵԱԼ ԱՐԵԱՄԲ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ
ՅՈՐՈՒՄ ՀԱՆԳՉԻ Ի ՔԵԶ ԲՆԱԿԱՆ
ՊԱՏՃԱՌ ԵՂԵՐ ՄԵՐ ՓՐԿՈՒԹԵԱՆ
Ի ՅԱՆԻԾԻՑՆ ՀԻՆՆ ԱԴԱՄԵԱՆ
ՅՈՐԺԱՄ ԾԱԳԻՍ ՓԱՅԼԱՆՄԱՆ

ԼՆՈՒՍ ԼՈՒՍՈՎ ԶԵՐԿԻՐ ԼԸՄԱՆ
ՓԱՌՕՔ ԿԱՆԳՆԻՍ Ի ԳՈՂԳՈԹԱՅՆ
ԵՐԿՐՊԱԳԻՍ ՅԱԶԳԷ ՄԱՐԴԿԱՆ
ՊԱՅԾԱՌ ԾԱԳԻՍ ԼՈՅՍ ՔՈ ՓԱՅԼՄԱՆ
ՅՈԳԻՍ ՄԵՂՕՔ ՄԵՌԵԱԼ ԲՆԱԿԱՆ·
ՍՏԵՓԱՆՈՍԻՍ ԹՇՈՒԱՌԱԿԱՆ
ՀՈԳՈՎ ԹԱԽԾԵԱԼ ԵՒ ԱՆՊԻՏԱՆ·
ՈՐ ՍՊԱՍԱՒՈՐ ԵՄ ՅԱՅՍ ՄԵՆԱՍՏԱՆ
ԼԻՄ ԿՈՉԵՑԵԱԼ ԱՆԱՊԱՏԵԱՆ,
Կ· ԱՆՋԻՆՔ ՃԳՆՈՂԱԿԱՆ,
ՓԱՌԱԲԱՆՈՂԱՑ ԱՍՏՈՒԱԾՈՒԹԵԱՆ·

ՅԵՏ ՆԵՐՍԷՍԻ ՀՕՐ ՍՐԲԱԶԱՆ
ՈՐ ՄԵԶ ՅԱՆՁՆԵԱՑ ԶԱՅՍ ՄԻԱԲԱՆ,
ԻՆՔՆ ՀԱՆԳԵԱՒ Ի ԳԵՐԵԶՄԱՆ
ՄԵԶ ՍՈՒԳ ԵԹՈՂ ԱՆԱՆՑԱԿԱՆ
Ի ԹՎԻՆ ՌՀ = հազար եօթանասուն,
Գ ԸՆԴ ՆՄԻՆ ԵՂԵՒ ՎԱԽՃԱՆ
ԵՒ ՄԵՔ ՄՆԱՑԱՔ Ի ՏԱՏԱՆՄԱՆ
Ի ՆԵՐՀԱԿԱՑՆ ԲՆԱԿԱՆ
ԶՈՐ ԵՒ ՀԱՅՑԵՄՔ ԵՐԿՐՊԱԳՈՒԱՑԴ
ԽԱԶԻՍ ՏԵԱՌՆ ԻՒՐ ՅԱՆԴԻՄԱՆ
ՍԻՐՈՎ ԽՆԴՐԵԼ ՄԵԶ ԹՈՂՈՒԹԵԱՆ [2]
ՔՐԻՍՏՈՍԷ ՄԻՇՏ ՅԱՒԻՏԵԱՆ.
ԹՎԻՆ ՌՀԸ ԳՐԵՑԱՒ:

*Ստեփանոս կանգնած է մահարձան մ'ալ 1647ին, ուր արձանագրած է 1621—1647 տարիներուն, այսինքն Ներսէս Մոկացւոյ եւ իր առաջնորդութեան տարիներուն ի Լիմ վախճանած կրօնաւորներու անունները: Ասոնցմէ առաջին ութը քահանայական դասէ են, իսկ երեսունը եղբայրներ:*

*Յառաջ կը բերեմ առաջին ութի անուններն միայն եւ անուանացանկիս կցուած վերջաբանականը:*

ԹՎ. ՌՀ. ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԻ ԱՍԱՑԷՔ.
ՆԵՐՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ.
ՏԷՐ ԱՒԵՏԻՍԻՆ [3].

---

*[2] Տպ. Թողութիւն:*

*[3] Ի Մոկս 1628ին գրուած Աւետարանի մը գրիչը Զաքարիա կը յայտնէ, թէ ձեռագրին ստացողն է մահտեսի տէր Աւետիս որդի Շաղարաթի եւ Ներգիշանի, եղբայր Վարդանէսի «որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս յանապատն ի Լիմ» (Պոտուրեան):*

ՏԷՐ ՊԵՏՐՈՍԻՆ[4].
ՏԷՐ ՍԱՐԳԻՍ[5].
ՏԷՐ ՅՈՎԱՆԷՍ·
ՏԷՐ ՄԵԼՔԻՍԵԹ·
ՏԷՐ ԴԱՒԻԹ·
ՏԷՐ ՆԵՐՍԷՍ ՍՐԲԱԿԱՆՑ···:

ԱՅՍ ԵՆ ԱՌԱՋՆՈՐԴՔՆ[6] ՅԻՇԵՑԷՔ ԱՆԱՊԱՏԻՍ ԱՄԵՆԱՅՆ· ՌՀ ԹՎԷՆ ՄԻՆՋԵՒ ՌՂԵ ԹՎԻՆ· Դ ԱՄ ՆԵՐՍԷՍ ՎԱՐԴԱՊԵՏՆ ԿԵՑԱՒ, ՎԱԽՃԱՆԵՑԱՒ· ԵՒ ԱՆՏԻ ՄԻՆՋԵՒ ՅԱՅԺՄ[7] ԵՍ ՍՏԵՓԱՆՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ՍՊԱՍԱՒՈՐԵՄ ԱՆԱՊԱՏԻՍ· ԵՒ Թ· ԱԹՈՒԼ (°) ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՆ· ԵՒ ԱՅԺՄ ԿԱՄՔ Հ· ԵՂԲԱՅՐ ՀԱՍՏԱՏ· ՈՎ ՈՐ ՎԱԽՃԱՆԻ ԳԱՅՑԷՔ ՈՂՈՐՄԻ ՏԱՅՑԷՔ:

### 15· ՍԻՄԷՈՆ Վ· ԱՊԱՐԱՆԵՑԻ «ՄԵԾՆ»
### († 1615)

*Գրիգոր Կամախեցի իր ժամանակագրութեան մէջ նուիրած է առանձին գլուխ մը «վասն Սիմէոն մեծաւագ վարդապետին[1]», որ է Սիմէոն Վ. Ապարանեցի. բայց շատ աղքատ են իր տեղեկութիւնները ի մասին Սիմէոնի կենսագրութեան: Ունինք բարեբախտաբար կենսագրական գիծեր իր կեանքի մասին իր իսկ գրուածներու մէջ. ինչ ինչ նաեւ ժամանակակից յիշատակարաններու մէջ:*

[4] *Կը յիշուի* 1635*ին Աւետիս երէցի կողմէ «առաջնորդի սուրբ ուխտիս (Լիմայ) Ստեփաննոս վարդապետի, վերակացութեան (տպ. վերակացութեամբ) հաւրեղբարցս եւ Պետրոս արհիեպիսկոպոսին». Լալայեանց, Ցուցակ, էջ* 886:

[5] *Հմմտ. անդ, էջ* 888:

[6] *Տպ. առջնդն:*

[7] *Տպ. ցայժն:*

[1] *Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ, Երուսաղէմ* 1915, *էջ* 376—378:

Սիմէոնի ծննդավայրն եղած է Աղձնեաց երբեմնի համբաւեալ Ապարանք գիւղը, որ այնպէս անուանի դարձաւ Գրիգոր Նարեկացւոյ Ապարանից Ս. Խաչի նուիրած Ներբողեանով: Սիմէոնի ծննունդը կ՚իյնայ ԺԶ. դարու կէսին: Իր ծնողաց անունները են Խաչատուր եւ Նարինջ, ինչպէս ինքնին կ՚իմացնէ մեզի իր 1585ին գրած Յիշատակարանին մէջ[2]. «ԶՍիմէոն վարդապետն Ապարանեցին յիշեցէք ի Քրիստոս, որ ետ կազմել զգիրքս յիշատակ իւրն եւ ծնաւղացն իւրոց՝ հաւր Խաչատուրին եւ մաւրն Նարինջին. Թվ. ՌԼԴ» (1585): Մայրը վախճանած է 1588ին, այս ինքն Վիպասանութեան յօրինուելէն (1590) երկու տարի յառաջ, ինչպէս կը գրէ[3].

Ի յանջատման մարմնոյս ծնողէ
Երկուց ամաց աւարտելոյ:

Իր ծնողքը «դառն, դժուար եւ անբարի» ժամանակին բռնամբ կը հարկադրուի գաղթել Ապարանք գիւղէն եւ ամուր ապաւէն փնտռել յԱղիովիտ, այն է ի Մեծոփ Քաջբերունեաց. այս նկատմամբ կը գրէ Սիմէոն[4], առանց ժամանակը մատնանշելու.

[2] Էջմիածին, Գէորգեան Ցուցակ Թ. 102. հմմտ. Ն. Տէր Մկրտչեան, Անանիա Շիրակացի, Արարատ 1896, էջ 96: Ունի անթուական Յիշատակագրութիւն մ՚ալ. «ԺԶ. դարու սկիզբը գրուած Կիլիկիոյ Տարեգրի մը լուսանցքին վրայ». «Ես Սիմէոն վարդապետս Ապարանեցի զայս գիրս գրեցի». Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա., 128, ծ. 4:

[3] Վիպասանութիւն, էջ 129:

[4] Անդ, 135—136:

Արդ յայսպիսում ժամանակի...
Զմեզ բնակեցոյց յայսկոյս ծովի (Վանայ)
Հանդերձ ծնողօք յԱղիովտի:
Ի սեփական երկրէն ելեալ,
Ըստ հին կոչման անուն Աղձնի,
Որ մերձաձայ է ի Կորդիս,
Եւ Կորճէից տանըն դրացի...
Եւ ընիկ գիւղն իմ Ասպարանց,
Ի յԱրծրունի զարմէն շինած...
Արդ յայսպիսի պայծառ ուխտէ...
Նըւաստ ոգիս ի նմանէ է,
Վերջին ծընունդս յԱղձնեաց տանէ:

Կը յիշուի ժամանակակիցներէն Սիմէոնի եղբայրն Կարապետ, որ ամուսնացած է Ծովինարի հետ: Այս ամուսնութենէն ծնած է զաւակ մը, որ կրած է հօրեղբօր անունը՝ Սիմէոն Վ. Ասպարանեցի: Այս երկու Սիմէոն-ները զանազանելու համար յորջորջուած են «Մեծ» եւ «Փոքր» Սիմէոն[5]:

Այս միջոցներուն Յովհաննէս Բրդութենց վարդապետն իր Դպրոցն հաստատած էր յՈստան Բզնունեաց: Սիմէոն կ՛աշակերտի անոր՝ Բարսեղ Բաղիշեցւոյ հետ. իրենց ուս-

[5] Լալայեանց, Ցուցակ հայերէն ձեռագրաց Վասպուրականի, էջ 600—602: Կարապետ Մոկացի Կալօն կը յիշէ զինքը իր աշակերտներուն թուին մէջ յամի 1624. «Եւ զտէր Սիմէոն Ասպարանցին՝ զեղբօրորդին հոգեւոր հօրն իմոյ», Երուսաղէմ, Թ. 2560: Ինքն Փոքր Սիմէոն 1647ին օրինակել կու տայ Աւետարան մը ի յիշատակ իր ծնողաց եւ «հօրեղբօրս Սիմէոնի վարդապետին» (Լալայեան, Ցուց. Վասպուր., Թ. 252, էջ 600/602:

ման ընթացքը կը պսակուի վարդապետական իշխանութեամբ։ Կարապետ Կալօենց Մոկացի, Սիմէոնի աշակերտը, կը խնդրէ 1624ին յիշել «զհոգեւոր ծնաւղն իմ զերիցս երանեալ քաջ րաբունապետն զՍիմէոն կոչեցեալ պըւետիկոսն, որ ծնաւ զմեզ ըստ բանի բազմաջան երկօք, կրթեալ ի մամուլս վարժարանիս ի յոյսն կենդանի. մանաւանդ զուսումնակից նորին զԲարսեղ րաբունապետն, որ ի միում վարժարանի կացեալք եւ եղեալ քարոզեալք իբրեւ զՊետրոս եւ զՊօղոս ամոլք հոգեւոր անդաստանացս եւ սերմանողք զբան կենաց ի հոգիս բանականաց ի վիճակեալ նահանգս սրբոյն Գրիգորի. եւ ի միում ամի վճարեալ հասին ի կէտ կոչմանն գնացին զճանապարհս ամենայն մարդոյ փոխեցան առ Քրիստոս» (Երուսաղէմ, Թ. 2560)։

Սիմէոն կը հանդիսանայ Բրդութենցի աշակերտներուն մէջ ամէնէն անուանին։ Հանդէպ իր վարդապետին ունեցած է Սիմէոն երախտագէտ զգածումներ։ Իր Վիպասանութեան մէջ նուիրած է անոր յիշատակին Թանկագին տողեր, զոր յառաջ բերենք վերը։ Կը գրէ ի մէջ այլոց[6].

Յորմէ պատճառն իմոյս բարւոյ,
Վարժեցուցողն իմաստ գրոյ.
Թագազարդողն մըտացս գըլխոյ,
Եւ լուսատուն ճրագիս մարմնոյ։

[6] Վիպասանութիւն, 129—131։

Գրիգոր Կամախեցի կը գրէ թէ Սիմէոն «էր յաշակերտացն Հետեւակ Ներսէսին[7]: Այս մասին այլուստ յիշատակութիւն կը պակսի:

Տեսանք վերագոյն իր ինքնագիր Յիշատակագրութիւնը 1585էն: Նա հետամուտ էր գրքեր հաւաքելու:

Սիմէոնի գործունէութեան ասպարէզն եղաւ ի սկզբան Մեծոփայ վանքը: Հոս էր 1590ին, երբ կը գրէր Վիպասանութիւնը, որուն Յիշատակարանին մէջ կ՚արձանագրէ տողերս խնդրելով իր մեծ ուսուցչին Յովհ. Բրդութենցի բարեխօսութիւնը[8].

Ինձ մեղապարտ աշակերտի պիտակ անուն
Սիմէոնի...
Մանաւանդ ըղնըշղեհացեալս ի դառնացեալ
ժամանակի,
Յորում բնակիմք յայս ամրոցի ի նահանգիս
Բաջբերունի.
Յաստուածաբնակ մենաստանի, յորմէ Մե-
ծոփ վերաձայնի.
Որով Փրկիչըն մեր բարի տեղ պատրաս-
տեաց ապաւինի.

---

[7] Գր. Կամախեցի, Ժամանակագրութիւն, էջ 376 եւ 371:

[8] Վիպասանութիւն, 134: Յաջորդ խօսքերս.
Այլ եւ գործոյս ձեռքն տացէ հատահեղոյս այս
պարըպի,
Հատուցանէ յաւարտ ըղկերտս ամրափակել շուր-
ջանակի.
Հաւանօրէն Վիպասանութեան կերտուածքին կը հային եւ ոչ Մեծոփայ մէջ ձեռնարկուած որ եւ է շինուածքի, ինչպէս իմանալ կը միտի Հ. Ալիշան, Հայապատում, Ա., 128:

Տողերուս ձայնակից է նաեւ Մեծոփայ վանքին նուիրած Ողբը[9]։ Այս թուին Սիմէոնի մայրը վախճանած էր արդէն. բայց հօն էին հաւանօրէն հայրն եւ եղբայրը։

Երկար չմնաց Սիմէոն ի Մեծոփ։ Եղաւ քարոզութեան։ 1593ին կը գտնենք զինքն ի Գառնի, ուր ի խնդրոյ Սարգիս «մեծ երէցի» կը յօրինէ Ողբանքն ի վերայ Թախտին Տրդատայ[10]»։ Թէ որքան ժամանակ դեգերեցաւ Երեւանի կողմերը, չգիտենք։ Վերադարձին կ'երեւայ թէ դադար առած է Կարին եւ յորդորուած հօն դասախօսելու ժամանակ մը։ Իր մասին կ'իմանամ յետագայ յիշատակարանին Սիմէոն վարդապետի մասին բռուած տողերս.

«Արդ գրեցաւ սուրբ Սաղմոսարանս ի թուաբերութիւնս հայկազանց սեռի ՌԽԸ (1599). ի հայրապետութիւնն Հայոց ազգիս տէր Դաւիթ կաթողիկոսին, որ նստի աթոռն սուրբ Լուսաւորչին եւ այլ դասակից եւ ընկերակից սորա[11]։

---

[9] Վիպասանութիւն, 142—156։ Ն. Լեւոնեան, Բիւզանդիոն, 1904, Թ. 2383, կը ներկայացնէ զինքը «Ապարանից վանուց առաջնորդ եւ վարժապետ», անշուշտ հիմնուած պարզապէս Սիմէոնի «Ապարանեցի» յորջորջանքի վրայ. վասն զի Սիմէոն ինքնին կը վկայէ, թէ Ապարանից եկեղեցին ու վանքն իր օրով թողեալ լքեալ էր (Վիպ. 142), ուստի եւ վարդապետարան չէր կարելի ենթադրել հօն։

[10] Հայերդ Տեւկանցի, էջ 163։ Հմմտ. եւ Գր. Կամախեցի, անդ, 376 եւ Христ. Вост. I, 349:

[11] Կ'ակնարկէ անշուշտ Մելքիսեդեկ կաթողիկոսը։

*«Գրեցաւ սուրբ տառս... յերկիրս Կարնոյ, որ կոչի Առզրում. ի գեաւղս Թըլվանձ. ի դուռս Գանձկա սուրբ Գէորգա. եւ նորաշէն տիրամայր սուրբ Աստուածածնին եւ առենահաս սուրբ Սարգըսին...: Եւ առաջնորդ տեղւոյ տէր Սահակ արհիեպիսկոպոս եւ Ղուկաս եպիսկոպոս.* Եւ միաբանից *սորա քաջ եւ Փլիսոփա րաբունապետս մեր զՍիմէոն յանաղթս. որ եկաւ ի մայրաքաղաքս Առզրում. որ նստի աթոռ եւ աւէ դասս Հին եւ Նոր Կտակարանաց: ...եւ զՄինաս վարդա* ||||[12] *(թուղթ ինկած): Էջմիածին, Թ. 2660, Սաղմոսարան:*

*Սիմէոն շրջեցաւ քարոզութեամբ, բայց ունէր իր ձեռքին տակ աշակերտներու խումբ մ'ալ: Ո՞ւր էր հաստատած իր վարժարանը: Հաւանօրէն ի Մեծոփ: 1590ին, երբ կը գրէր հոս իր Վիպասանութիւնը, կը յայտնէր թէ յորդորուած է առ այս «ի խնդրոյ երկուց աշակերտացն՝ Կիրակոսի Այրարատեցւոյ եւ Անանիայի Նախավկայեցւոյ» (Վիպաս. Դ.). որոնց համար կը մաղթէ նոյն գրոց Յիշատակարանին մէջ Նախախնամութեան հովանին, որպէս զի բարեաւ ժամանեն իրենց իղձերու կատարման (անդ, 154): Կը գրէ.*

---

[12] *Խօսքը առանց տարակուսի Կարնեցի Մինաս վարդապետի մասին է, որ Ղուկաս Կեղեցւոյ աշակերտներէն է: Ասլան դպիր «գծագրեցի, կ'ըսէ, զսա քաջ եւ արի Թէոդուպօլսեցի Մինաս վարդապետին, զի յոյժ փափագանօք զսա գրել երետ վասն զինքն յիշելոյ յաղօթս ձեր» (Վիեննա, Թ. 386, Հաւաքածոյ. Յուց., էջ 840: Գրութեան տարին չէ յիշուած):*

Յորմէ գըթայ Տէրըն տերանց
Սիմէոնի որ գայս ոգեաց.
Նաեւ երկուցըն խընդրողաց
ուսումնասէր հանճարեղաց,
Կիրակոսի պետին պատուած,
Անանիայի շնորհօք օծած.
ՅԱյրարատեան տանէն եկած,
յուսմունս տարից կան դեգերած:
Ողորմեսցի անեղն Աստուած
արժան լինել աստիճանաց.
Առնուլ հրաման քարոզելոյ
եւ գաւազան իշխանութեանց:

Անշուշտ Սիմէոնի համբաւը մոգած հրապուրած էր այդ երկու աշակերտներն յԱյրարատեան տանէ, որոնք յետ աւարտման իրենց ուսումնական ընթացքին առին տարին իրենց հետ հիւր իրենց ուսուցիչն Այրարատ. եւ այս առթիւ է, որ Սիմէոն այցելած է Գառնի:

Կը յիշուին Սիմէոնի աշակերտներու թուին մէջ նաեւ «Կարապետ Կալօն Մոկացի» եւ Կարապետ Փարխնդեցի:

Ի մասին առաջնոյն կը գրէ Գրիգոր Կամախեցի. «Եւ այս Կարապետ վարդապետ Մոկացի, որ տակաւին կենդանի է, յաշակերտաց երանելի Սիմէոն վարդապետին լինելով» (էջ 397):

1609ին կ՚ըսուի թէ «ութ վարդապետք էին յԵրուսաղէմ. մեծն Բարսեղ Ախպակեցին... եւ երկու աշակերտքն իւր՝ Յովհան-

նէս Բաղիշեցին եւ Ներսէս Մոկացին, դարձեալ Սիմէոն Ըստպատրկերցին (Սպատկերտցին) եւ Մարտիրոս Վանեցի» (Հարանց Վարք Մշոյ)։

Այս Սիմէոն առանց տարակուսի Սիմէոն Ապարանեցին է։

Սիմէոն Ապարանեցւոյ մահուան պարագաները մանրապատում աւանդած է Գրիգոր Կամախեցի. «Այս Սիմէոն վարդապետս... յերկար ժամանակս եկաց բարի համբաւով. եւ եղեւ վախճան նորա այսպիսի օրինակաւ։ Եւ եղեւ իբրեւ օր մի գի յանուրջս ազդ լինելով գալուստ օր մահուան իւրոյ. եւ ի լուսանալ առաւօտին պատարագ մատուցանել ետուր եւ բարի խոստովանութեամբ եւ ամենեցուն ողջոյն հրաժարական մատուցանելով եւ արժանաւորելով սուրբ մարմնոյ եւ արեան Տեառն. եւ ապա նստելով յաթոռ՝ ասելով դաս ըստ պատշաճին. եւ ընդ վճար բանին, յորժամ սկսեալ աղօթախառն օրհնութիւն առնել ի վերայ ժողովրդոցն եկեղեցւոյն, նա՛ ցաւ մահուն, որ տաթար քամի ասեն, որ ի վաղուց կու չարժի երբեմն, որ անթիւ եւ այլ մեծատանջ վաստակօք եւ զանազան սպեղանովք եւ օծելովք հագիւ յետս կու նհանջի եւ կու չիջանի... նա՛ ի ժամ դասին կու ըմբռնէ եւ ի յամօթոյ ամբոխին ոչ իշխելով յայտնել դժուարութիւն մահաբեր ցաւոյն եւ առ խստութեան վշտին՝ եհան զսուրբ հոգին ի վերայ աթոռին առաջի ամե-

նայն սառենին. եւ եղեւ սուգ եւ կոծ մեծ ամենեցուն» (էջ 377—378):

Ի լրոյ քաղած է Կամախեցի այս տեղեկութիւնները, որուն Ապարանեցւոյ ինչպէս ծննդավայրը, նոյնպէս մահուան տեղն ու տարին անծանօթ մնացած է:

Սիմէոն Ապարանեցւոյ մահուան տարին կը նշանակէր Կարապետ Մոկացի, իր աշակերտն. «ի միում ամի վճարեալ» այսինքն այն տարւոյն, երբ վախճանած է Բարսեղ Վ. Բաղիշեցի, առաջնորդն Ամիրտոլու վանաց, այն է 1615 (Երուսաղէմ, Թ. 2560, տե՛ս վերը):

ՆԿԱՐԱԳԻՐ

Սիմէոն Ապարանեցի ճանչցուած ժամանակակիցներէն «շնորհալի» եւ «մեծաւագ վարդապետ»՝ իր տաղաչափուած գրուածքները մէջ կը ներկայանայ ազգասէր, զօրաւոր խօսքի տէր անձ եւ զգայուն ողբերգակ: Իր զգածումները արտայայտելու համար ունի անկաւոր գրիչ: Մեծոփայ Ողբն եւ «Ողբանքն ի վերայ Թախտին Տրդատայ» իր գլուխ գործոցներն կրնան համարուիլ: Հայրենի աշխարհին աւերակներուն ի տես յուզուած, օտարին լուծին ծանրութեան տակ ընկճած՝ վրէժխնդրութիւն կ'աղաղակէ, լծընկէց ըլլալ կը ձգտի. իր բուռն զայրոյթը ատրաշէկ շանթեր կը ժայթքէ օտարադէն, այլազգի թշնամիներու դէմ: Հայրենի դիւցազները կ'ոգէկոչէ, անոնց օրինակով շրջակայքը

*հրդեհել կ'ուզէ, հայրենիքի ազատութեան համար միջոցներ կը խորհի։ Անճարութեան մէջ բարձրացուցած աչքերն Երկինք, Բարձրեալէն զուարթ ապագայ մը կ'ուղերձէ իր հայրենիքին համար։ Եզական ուշադրութեան արժանի է Երգիչս իր այս զգացումներով։*

*Սիմէոն ունէր զարգացած միտք մը եւ բեղմնաւոր գրիչ։ Ոճը կը սիրէ թռիչքներ․ բայց թերութիւններ երեւան կը բերէ լեզուն։*

ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Սիմէոն Ապարանեցի ծանօթ է մեզի իր տաղաչափուած գրութիւններով, որոնք են․*

1․ Ողբ ի վերայ առմանն Թաւրիզու, որ առաւ ի յՕսմանէ եւ այլ ողբ ի վերայ տառապեալ ազգիս Հայոց․ ասացեալ ի Սիմէոնն վարդապետէ (1585)։

*Արդ թվին հազար եւ երեսուն,*
*Զօրս ընդ նըմին գըծէ անհուն․*
*Պաճարամիտ ազգ Հագարուն*
*Զօրաժողով եղեւ անհուն...*

=*Էջմիածին*, *Թ*․ 1896, *թղ*․ 276*ա*։ *Լազ*․ *ձեռ*․ 48, *թղ*․ 168*ա*։

*Օսմանցիք* 1585*ին գրաւեցին Դաւրէժը Պարսից ձեռքէն։ Այս առթիւ կ'ողբայ Սիմէոն Հայոց կրած նեղութիւններն ու տառապանքները, որոնց տպաւորութեան տակ կը վերյիշէ անցեալին եւ մօտաւոր ներկայիս մէջ Ազգին հասած աղիտաբեր հարուածները այլազգիներու բռնակալութեան տակ։*

*Հրատարակուած Վիպասանութեան կից*, *էջ* 158—162 (*տես վարը*)։

2. Ողբանք, զոր ասացեալ է Սիմէոն վարդապետի Ապարանեցւոյ ի վերայ Թախտին Տրդատայ թագաւորին (1593)։

*Ողբացէք անլոյծ սրտով*  
*եկեղեցիք Հայաստանեայց.*  
*Ոցբացէք անմխիթար*  
*հանուրց հիւսիս բնակիչք ազանց.*  
*Ողբացէք անլուռ լալով*  
*յաբեթածին կղզիք ազանց.*  
*Ողբացէք ամենեքեան,*  
*ձայն ամբարձէք աշխարհանաց։*

*Վ. Յիշումն սկիզբն է չար սրտոյ.*  
*վայ ի վերայ վայի գրելոյ.*  
*Սակայն կարճի ի ձըկտելոյ,*  
*յաղագս ծուլից ձանձրանալոյ։*  
*Յոբելինի քըսան թըւոյ,*  
*քառասուն երկու մուտըն միւսոյ։*  
*Ողբըս գրեցաւ յաւանս Գառնւոյ,*  
*ի խնդրոյ Սարգսի մեծ երիցոյ.*  
*Մեղօք մեռեալ աւաղելոյ,*  
*ամուլ բարեաց ծնող այսմ երգոյ.*  
*Տես անցաւորս կեանքս ի փորձոյ,*  
*ծիւրեալ ծաղիկ, ստուեր հովանւոյ։*

*Հրատարակուած՝ Հայ Երգ*, *էջ* 151—163։ *Քաղուածաբար՝ Հ. Ղ. Ալիշան*, *Այրարատ*, *էջ* 368—369։

Սիմէոն Ապարանեցի 1593ին այցելած է Գառնի աւանը, ուր Ազատ գետին իշխող բլուրի մը վրայ կառուցուած է հոռմէական շինարուեստի չքնաղ կերտուածք մը՝ հաստաղեհիւս քարերով քանդականկար տաճար մը, զոր աւանդութիւնը «Տրդատայ Թախտ» կը ներկայացնէ։ Գիւղաւանիս երէցն Սարգիս կը խնդրէ Սիմէոնէն նուիրել ողբ մը տաճարիս։ Սիմէոն կ՚ողբայ ի տես շինուածքիս գգայուն սրտով, համարձակ ոգւով եւ կորովի գրչով հայրենիքի չիջած փառքն եւ ժամանակակից տառապանքը․ աչքերն ապագային ուղղած կը մաղթէ Ազգին համար վերածնունդ հին փառքին։

Ողբին ծանօթ եղած է Գրիգոր Կամախեցի, որ կը գրէ իր ժամանակագրութեան մէջ գնահատական տողերս․

«Եւ էր (Սիմէոն) բանիբուն եւ իմաստասէր եւ բանաստեղծ եւ տաղասաց․ որ զՄեծին Տրդատայ զարմանալի սարաւոյթն, այս ինքն ղպաղատն, որ է ի գիւղաքաղաքին Գառնի, նա՛ գեղեցկայարմար ոճով յոյժ վայելչապէս զովասանական երգով ողբերգախառն դրուատեալ է․ որպէս եւ մեք այլ արժանացաք սուրբ տեղւոյ տեսութեանն․ որ Մաշտոց վարդապետին եւ մեծ վարդապետին Գէորգայ գերեզմանատուն եկեղեցին կից եւ հուպ է սարաւոյթին» (376)։

3. Խրախուսանք Սիմէոն վարդապետի ասացեալ:

*Ուսումնատենչ համակ անձին...*

= *Պարիս, Ազգ. Մատ. Թ.* 241, *Թղ.* 159*ա*—160*բ*:

4. Վիպասանութիւն, *որ խորագրուած է.* «Շարադրութիւն հոմերական վիպասանութեամբ սակս Պալհաւունեացն զարմի եւ Մամիկոնեանցն սեռի ի սկզբանէ մինչեւ ցվախճանն որդի զհարսն փոխանակելով. ասացեալ բանիւ բարառնական նուախայօրէն պիտակ անուն Սիմէոն վարդապետի Ապարանեցւոյ ի վիպասանութենէն Ղազարու Փարպեցւոյն ի խնդրոյ երկուց աշակերտացն՝ Կիրակոսի Այրարատեցւոյ եւ Անանիայի Նախավկայեցւոյ:

*Կը սկսի.*

*Ի սկզբանէ Բանըն բարձրեալ*
*Ի յոչէից զգոյս հաստատեալ,*
*Նախ ըզհրեշտակըս ներգործեալ,*
*Լոյս ի լուսոյ ստեղծուած սկսեալ...*

*Ընդ ամէնը* 640 *տուն. որուն կը յաջորդէ.*

«Յիշատակարան շարադրութեանս եւ Պատմութիւն Ապարանից սուրբ Նշանին. ընդ սոսա ողբ ցաւագին հեծեծանաց ի վերայ Մեծոփայ սուրբ ուխտին. զոր ամենայն հասակի պարտ է վերառնուլ եւ հանապազ երգել:

*Ի թիւ հազար եւ հարիւրոց*[1]
*Կատարեցաւ բանս պատմագրոց,*
*Ի Թուականիս ազգիս Հայոց,*
*Հազար՝ւ երեսուն՝ւ ինն ընդ սոցունց...:*

Վջ. *Յորմէ գըթայ Տէրըն տերանց,*
*Սիմէոնի, որ գայս ոգեաց,*
*Նաեւ երկուցըն խընդրողաց,*
*Ուսումնասէր հանճարեղաց,*
*Կիրակոսի պետին պատուած,*
*Անանիայի շնորհօք օծած,*
*ՅԱյրարատեան տանէն եկած,*
*Յուսմունս տառից կան դեգերած...:*

*Վերջաւորութեան ունի ուղերձ մը «ըստ անուան երգողին».*

*Սուրբ երջանիկ կաթուղիկէ*
*Երկնահանգէտ խորան յերկրէ...*

*որուն ութեակ տողերու սկզբնակապ գրերը կը յօդեն «Սիմէոնէս»:*

Ձեռագիրք. *Էջմիածին, Թ.* 1896, *Թղ.* 251*ա*—276*ա* (1689*էն*): *Լազ. Ճեմարան, Թ.* 48, *Թղ.* 157*ա* (*ԺԷ. դար*):

*«Յիշատակարանը» առանձին ունին Վիեննայի Թ.* 784, *Թղ.* 106*ա*—116*բ. եւ Վենետիկի մէկ ձեռագիրը* (*հմմտ. Բազմավէպ,* 1915, *էջ* 5, *ծան.* 2):

---

[1] *Հայոց Թուականն է ՌԼԹ* (1590/91)*. ուստի* 1300 *տարին որ եւ է Թուականի հետ չի կրնար համեմատուիլ: Ինձ կը թուի, թէ Սիմէոն նկատի ունի «ի թիւ հազար* Հազարացւոց», *այն է հիճրէի հազարերորդ տարին, որ կը սկսի* 1591*ին, Հոկտ.* 19*ին*:

Հրտ. Սիմէօն վարդապետի Ապարանեցւոյ Վիպասանութիւն սակս Պալհաւունեացն զարմի եւ Մամիկոնեանցն սեռի. Վաղարշապատ, 1870, էջ 1—157:

Ամբողջ գրուածքս տաղաչափուած է 4—4 հատուածով, նմանութեամբ Ներսէս Շնորհալւոյ Վիպասանութեան, 640 + 160 տուն կամ 3200 տող:

Սիմէոն ձեռնարկած է Վիպասանութեանս ի խնդրոյ իր երկու աշակերտներու՝ Կիրակոսի եւ Անանիայի, որոնք «յԱյրարատեան տանէ» էին: Անոնք խնդրած են իրմէ «ի յոտք հանել» կամ տաղաչափել այն Պատմագիրքն, որ Ղազար Փարպեցւոյ անուամբ ծանօթ էր իրենց: Այս Պատմագիրքը կը բովանդակէր իր ծոցը ա. Ղազար Փարպեցւոյ Պատմութիւնն եւ Թուղթը. բ. Սեբէոսի Պատմութիւնն ի Հերակլ իր նախապատմական եւ պատմական մասերով: Արդեամբք ալ Սիմէոնի Վիպասանութիւնը կ՚ընդգրկէ այս երկու պատմական գրքերու բովանդակածը գոնէ էական կէտերու մէջ:

Չորս մասի բաժնած է Սիմէոն իր Վիպասանութիւնը.

ա. Նախաճառ. բ. Ա. կարգ՝ սակս Պահլաւունեացն տոհմի. գ. Բ. կարգ՝ սակս Մամիկոնեանցն սեռի. եւ դ. Յիշատակարան:

Պատմական տեսարանը կը բացուի Նախաճառով, ուր Նախամարդոյն ստեղծման եւ մարդկութեան տարածման, Հայկի սպա-

րէզ գալու եւ անոր յաջորդներու հարեւանցի պատմութիւնը կը գծուի։ Հայկազնեան շրջանէն կը փոխադրէ զմեզ Սիմէոն մեծ ոստումով մը՝ Պահլաւունեաց (Արշակունեաց) դարը, ուսկից յատկապէս պիտի սկսէր իր Վիպասանութիւնը։ Նաեւ այս մասը կարճառօտ բռնուած է. ըստ որում ջանացած է յայտնի իրողութիւնները չերկրորդել, որոնք Ներսէս Շնորհալւոյ գրչով այնպէս ճարտար ներկայացուած էին արդէն։ Աւելի մանրապատում է Երրորդ բաժինը. երկար զբաղուած են զինքը Մամիկոնեանք՝ Վարդանանց եւ Վահանանց պատերազմներն եւ ապա Զ.—Է. դարերու դէմքերը, ուր ըստ ինքեան Մամիկոնեանները մեծ դեր չունին։ Այս մասը կ՚աւարտի Ներսէս Տինող կաթողիկոսի գործունէութեան նկարագրութեամբ, մինչեւ հոն, ուր կը դադրի Սեբէոսի պատմագիրքը (661ին)։

Յիշատակարանը կարելի է արդէն Վիպասանութենէն անկախ գրուածք նկատել։ Սիմէոն հոս համառօտիւ իր անձին եւ վիպասանութեան գրութեան ժամանակի նկատմամբ բացատրութիւն տալէ ետքը՝ կը հիւսէ իր ուսուցչին՝ Յովհաննէս Բրդութենց վարդապետի դրուատիքը. կը փոխադրուի մտքով իր ծննդավայրն Ապարանք, կու տայ տեղւոյն Ս. Նշանի պատմութիւնն, անոր անցելոյն փառքը կ՚երգէ եւ կ՚ողբայ տեղւոյն ներկայ անշքութիւնն. անշուշտ Հայրենեաց

երբեմնի փառքը պիտի ճառագայթէր նշոյլներ նաեւ իր յորջորջանքին՝ Ապարանեցւոյն։ Սիմէոն կը վերադառնայ կրկին Մեծոփ եւ ասոր ալ ողբը կը յօրինէ (էջ 142).

Առ քեզ են բանքս սըրտատըրոփ,
Ով հրաշալի սուրբըդ Մեծոփ...։

Իբրեւ պատմական գրուածք զուրկ է վիպասանութիւնս ամէն արժէքէ. ի բաց հանելով Թերեւս Յիշատակարանը, որ կ'ամփոփէ իր մէջ կարեւոր տեղեկութիւններ Սիմէոնի անձին, Յովհաննէս Բրդութենց վարդապետի եւ Ապարանից եւ Մեծոփայ վանքերու մասին։ Բանասիրութեան համար սակայն ուշագրաւ է այն պարագան, որ Սիմէոն նկատողութեան առած է Ղազար Փարպեցւոյ եւ Սեբէոսի պատմագրքերը. իսկ այս կուսան կ'ընծայէ մեզի բնորոշելու բովանդակութիւնն եւ որպիսութիւնը այն ձեռագրին, զոր աչքի առաջ ունեցած է Սիմէոն։

Հայրենեաց պատմութեամբ ողեւորութիւն չի տեսնուիր ամբողջ երկին մէջ։ Արտաքոյ կարգի պաղարիւնութեամբ գրուած են մանաւանդ առաջին 50 էջերը. միջին դարու շրջանին մատենագիրներուն յատուկ ոճը նաեւ Սիմէոնի գրչին տակ երեւան կու գայ։ Պատմական դէպքերու անպաճոյճ նկարագրութիւն, պարզապէս տաղաչափեալ ձեւի մէջ, մերկ սահուն եւ խնամեալ ոճէ։ Հայոց պատմութեան գեղեցկագոյն գրուածները,

զոր օրինակ Հայկի եւ Բելի ընդհարումը, Աւարայրի ճակատը (էջ 41) են, չեն ոգեւորած զինքը: Աւելի սիրով կանգ կ՚առնէ այնպիսի տեղեր, ուր կրնայ վարդապետել, ողբ հիւսել, գ. օր. Վասակ Սիւնի իբրեւ մատնիչ երկար զբաղցուցած է զինքը անգոյն յարասութիւններով: Թէեւ ամբողջ գրուածքին մէջ աչքի առջեւ ունեցած է Ներսէս Շնորհալւոյ Վիպասանութիւնը, որուն խորագրովը, չափովն ու յանգով ջանացած է զգեստաւորել իր երկն ալ, բայց անհամեմատօրէն ետ կը մնայ իր արտադրութիւնն առաջնոյն հետ բաղդատելով: Աւելի կենդանութիւն կ՚առնէ իր գրիչն, երբ Ղեւոնդեանց եւ Նախարարաց նահատակութիւնն ի Պարս կը վիպասանէ (45—47):

Առաջին մասին այս անխանդավառ ոճն իր պատճառն ունի հաւանօրէն միապաղաղ, անհաճոյ եւ գրիչն կաշկանդող -եալ վերջայանգին մէջ: Անկէ յառաջացած թմրութենէն յանկարծ կը սթափի երգիչը, երբ կը ձեռնարկէ երգել նոր գրուագ մը Վահանանց շրջանէն: Այժմ կ՚ընտրէ -իճ վերջայանգը, որ աւելի քաղցրահնչիւն է եւ գրչին կու տայ որոշ չափով աշխոյժ նաեւ ազատութիւն. մանաւանդ երբ յանգերն շատ անգամ զիրկընդխառն համաձայնութեամբ կը կիրարկուին (—, -ին, —, -ին): Սիմէոնի ոգին ասկէ սկսեալ կ՚արծարծուի. ան ունի զայրոյթ, ճախրանք, սրախոսութիւն, առակաբանութիւն:

Գեղեցիկ նկարագրութիւններէն են Գիւտ կաթողիկոսի հարցաքննութիւնն Պարսից արքունիքի մէջ. թէպէտ ինկած իր թշնամիներու թակարդը, բայց գիտէ ջատագովել աներկիւղ իր ուղիղ ընթացքը, որով ափ ի բերան կ'ընէ հակառակորդները: Սիմէոն կը գրէ այս առթիւ (55).

Մանուկ մատաղ ի ծակ իժին
Ոչ մեղանչեաց իժըն նըմին:

Նկարագրական է նաեւ Վահանի ապստամբութիւնն արդարացնող տողերս, զորոնք նկատի ունին թշնամիներու սադրանքները (56).

Այնքան ըղհուըրըն փըքեցին,
Մինչ զղալարին տոչորեցին:

Վահան իր սակաւաթիւ զօրքով անթիւ թշնամիներ կը կոտորէ (65).

Որպէս ղամբար ի չոր խըռիւս,
Դէմ եւ թիկունքըն խանձէին:

Այսպէս նաեւ յաջող են (էջ 67) Պերոզի մահուան եւ Վահանի յաղթական վերադարձի նկարագրութիւնները:

Սիմէոն ուր առիթը կը պատահի, կ'անդրադառնայ նաեւ ժամանակակից պատմութեան, ողբալու համար աղէտին սաստկութիւնը (էջ 100—102, 103—104 եւն):

Իբրեւ պատմագէտ շատ աղքատ է իր հմտութիւնը ժամանակագրութեան: Խօսելով Մահմետի վրայ (124) նոյն կը համարի զա-

նիկա Մրուանի Մահմետ զօրավարին հետ, որ Հայաստան կ'արշաւէ: Յովհաննէս Բագարանեցի կաթողիկոսը († 611) կը նոյնացնէ Մանդակունւոյ հետ (105): Շատ յաճախ են շեղումները նիւթէն. երբ առանց միտ դնելու ժամանակագրութեան կը խոտացնէ այլ եւ այլ աղբիւրներէ գիտցածներն ի մի. այսպէս երբ կը խօսի Կ. Պոլսոյ պաշարման վրայ (124) կը յիշէ մինչեւ անգամ Կիր Մանուէլի օրով Ստամբոլի (իմացի՛ր Սպանիայի) գրաւումը (հմմտ. Սամուէլ Անեցի, 132): Այս կարգի շեղումներ են նաեւ ժամանակակից աղէտներու անդրադարձումները (102—104):

Ունի ձեռքին տակ այլ եւ այլ աղբիւրներ որոնցմէ կ'օգտուի: Նախաճառին եւ Ա. Կարգին մէջ իր աղբիւրներն են Սեբէոսի Պատմութեան առաջին մասն եւ Մ. Խորենացի: Բ. Կարգին համար առաջնորդ ծառայած են իրեն Ղ. Փարպեցի եւ Սեբէոս. եւ արդէն իր աշակերտներուն փափաքն էր, որ «յոտք հանէ այս երկու պատմագրքերը, որոնք մէկ հատորի մէջ ամփոփուած էին եւ կը նկատուէին մէկ ամբողջութիւն. էջ 88 Սեբէոսի Պատմութիւնն ակնարկելով կ'ըսուի.

Մանաւանդ ի յայս հարկիմ,
Զի զՊատմագիրս տաղել կամիմ,
Եւ թէ անտես առնեմ ըզկարգն,
Ի յիմաստնոցն ըղդէտ հեգնիմ:

Սիմէոն Ղազար Փարպեցւոյ Պատմութիւնն եւ Սեբէոսի Պատմութիւնն մէկ հա-

տորի մէջ ունէր իր տրամադրութեան տակ. եւ որովհետեւ այդ ձեռագրին Բ. մասին խորագրին մէջ կը պակսէր Սեբէոսի անունը, այնպէս համարուած է, թէ երկու մասերն ալ մէկ հեղինակի, այն է Ղազար Փարպեցւոյ գործն ըլլան: Ժամանակագրութեան անհամաութիւնը մթագնած է իր տեսութիւնը չտեսնելու ժամանակի անջրպետին երկարութիւնն ու լայնութիւնը: Այս է պատճառը, որ Յովհ. Մանդակունի եւ Յովհ. Բագարանեցի նոյնացուած են:

Իրօք ալ Ղազար Փարպեցւոյ եւ Սեբէոսի պատմագրքերու մեզ ծանօթ հնագոյն օրինակն էջմիածնի Կարենեան ցուցակի 2463, որ օրինակուած է ի Բագէշ Վարդան Բաղիշեցւոյ հրամանով, կը պարունակէ ի մէջ այլոց Ղ. Փարպեցւոյ Պատմութիւնն եւ Թուղթը կից ունենալով անխորագիր Սեբէոսի Պատմութիւնը[13]: Օրինակողը կը յայտնէ թէ այս երկու պատմագիրքը ընդօրինակած է հին փտասուած ձեռագրէ մը: Այդ ձեռագիրը առանց տարակուսի եղած է Սիմէոն Ապարանեցւոյ գործածած օրինակը, որ հաւանօրէն միջին մեսրոպեան երկաթագրով գրուած էր եւ կրած էր թղթերու ետեւառաջութիւն, նաեւ թղթերու անկում:

Այս երկու աղբիւրները կը յիշէ Սիմէոն այլ եւ այլ անգամներ, լսելով միայն Սեբէոսի

[13] Հմմտ. Գ. Տէր-Մկրտչեան, Ղազար Փարպեցու ձեռագրերը. Արարատ, 1901, էջ 542—549: Ղազար Փարպեցի, Տփղիս 1904, էջ Ե:

անունը: Այսպէս երբ կը պատմէ Ազգաց բաժանումն եւ մինչեւ Աբրահամ տեղի ունեցած դէպքերը (էջ 7—8)·

Աստանօր բանս ըզկայ առեալ,
Եւ չարագրողս[14] ի յուշ եկեալ,
Զհակառակողսըն մըտածեալ,
Զորումնացանսըն խոկացեալ[15]:
ԸզՓարպեցւոյն ճառն ընթերցեալ,
Այն որ Ղազարըն կոչեցեալ...

<Որ> զկամս հայցմանըն[16] կատարեալ
Եւ պատմագիր Հայոց եղեալ:
Ի Մովսէսին[17] կարգն ըսկսեալ,
Եւ ըզմնացեալսն վիպասանեալ,
Ի Մարաբայ մատեանս մըտեալ,
ԶՄըծբունացւոյնըն վերծանեալ[18].
Եւ զվաղընջուցըն թարքմանեալ,
Հելլէն գըրով նուրբըս գըտեալ,
ՅԱգաթանգեղոսէ դրոշմեալ,
Ի վերնագրէն զայս իմացեալ[19]:

Դարձեալ էջ 20—21, երբ կ'աւարտէ Հայկազանց շրջանը՝ գիտէ թէ իր աղբիւրն հոս կը տկարանայ·

---

14 Այս ինքն Սիմէոն Ապարանեցի:
15 Սիմէոն ի'ւր հակառակորդները կ'ակնարկէ:
16 Կ'ակնարկուի Վահան Մամիկոնեան, որուն խնդրանքով գրեց Ղազար իր Պատմութիւնը:
17 Խօսքը Մովսէս Խորենացւոյ մասին է:
18 Սեբէոսի Պատմութեան սկիզբը յիշուած Մարաբա Մծուրնացին կ'ակնարկուի:
19 Խօսքը Ագաթանգեղոսի գրած յունարէն Արձանագրութեան մասին է, որ կը յիշուի Սեբէոսէն:

Զի պատմութիւնս է վերջնոտեալ,
Ըզհայկազանցն անգիտացեալ,
Եւ նորագոյն իմն ըսկըսեալ՝
Զքետուրածին ազգաբանեալ[20]:

Այսպէս նաեւ Արշակունեաց–Պահլաւունեաց ծագումն ըստ Սեբէոսի պատմելէն եօթը կը դրէ (33).

Արդ զառաջին ճառն աւարտեալ
Եւ զհարկաւորըն գըծագրեալ,
Յօլով տոհմիք զանց արարեալ՝
Զոր Քերթողին[21] է շարագրեալ:
Եւ երկրորդին առընթերեալ
Սոյն իմ Ղազարըս սիրեցեալ,
Ըզփաւստոսի գիրըն յուշեալ,
Զբուզանդացւոյն[22] սատար առեալ,
Ի սըմանէ աղբերացեալ
Եւ զշահաւէտս շարաշարեալ.
Ի Թագաւորս ըզհիմն եդեալ,
Յըսպարապետս գըլխաւորեալ:

Այս տողերով Սիմէոն կ՚ուզէ ըսել, թէ ինքը յեցած Ղազարի Պատմութեան վրայ պիտի վիպասանէ Վարդանի եւ Վահանի գործերը եւ ապա ձեռք պիտի առնէ Մարաբայ մատեանն (առ Սեբէոսի), որ «ի Մովսէսին

20 Կ՚ակնարկուի Սեբէոսի Պատմութեան առաջին մասը:

21 Այս ինքն այն ամէնը, ինչ որ Մ. Խորենացի պատմած է Հայկազեանց շրջանէն:

22 Այսպէս նաեւ Ղ. Փարպեցւոյ Ա. Դրուագին մէջ «Փաւստոս Բիւզանդացի»:

կարգն» կը սկսի եւ «զմնացեալսն» կը պատմէ, այն է Հայկէն մինչեւ Արշակ Մեծ Պարթեւ (17—20)։ Այս մասն ալ կը նկատէ Սիմէոն նիւթն Նախաձառին եւ կը խոստանայ շուտով Առաջին կարգին դառնալ, այս ինքն պատմել «սակս Պահլաւունեացն զարմի» եւ ապա անցնիլ Բ. Կարգին՝ «սակս Մամիկոնեանցն սեռի», որոնք իր Վիպասանութեան առանցքը կը կազմեն։

Ղազարի Պատմագիրքը իրեն նիւթ մատակարարած է 385—484 շրջանի համար (էջ 33—73)։ Բայց որովհետեւ Սիմէոն այն համոզմունքի մէջ է, թէ նաեւ Սեբէոսի Պատմութիւնը Ղազարի գործն է, Փարպեցւոյ աշխատութիւնը աւարտած կը համարի «յլսպարապետս», այսինքն ի Թէոդորոս Ռշտունի եւ ի Գրիգոր Մամիկոնեան։ Արդեամբք ալ այս շրջանին (էջ 73—128) համար իրեն առաջնորդ եղած է գլխաւորաբար Սեբէոս, որուն Պատմութիւնը պարզապէս տաղաչափած է դուն ուրեք շեղելով կարգէն, երբ երկրորդական աղբիւրներ ալ նկատի կ՚առնուին։

Այս աշխատութեանս համար ձեռքի տակ ունեցած է Սիմէոն.

ա. Ներսէս Շնորհալւոյ Վիպասանութիւնը, զոր յանուանէ ալ կը յիշէ (22).

Եւ Ներսէսի թէպէտ վիպեալ,
Բայց խիս ներհակ չեղեալ.
Ոչ ի հեռին տարաձայնեալ,

Եւ ոչ զօրրոյն բանն երկրորդեալ.
Այլ ըզմիջինըն համբուրեալ,
Որ յաստանօրըն չէ գրեալ:

բ. «Սրբոյ վարդապետացն Հայոց Մով-սէսի եւ Դաւթի հարցմունք ընդ երկարնակս» գրութիւնը (էջ 36):

գ. Յովհաննէս Կաթողիկոսի Պատմու-թիւնը (52, 55 էն):

դ. Մովսէս Խորենացւոյ ընծայուած Աշ-խարհագրութիւնը (30—31):

ե. Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրու-թիւնը (124):

զ. Հաւանօրէն նաեւ Ղեւոնդ երէցի Պատ-մութիւնն (էջ 31—32) եւ Պատմութիւնն Հա-ցունեաց Խաչի էն:

է. Թովմաս Արծրունի:

ը. Գրիգոր Նարեկացւոյ Պատմութիւնն Ապարանից Ս. Խաչին:

Վերջին երկու աղբիւրները նկատի ա-նուած են յատկապէս Յիշատակարանին մէջ, ուր նաեւ աւանդութիւնը օգտագործուած է: Զայս կը խոստովանի Սիմէոն (139):

Ի Թումայի գրոց պատմութեանց
Ճշմարտութեամբ է քաղուած.
Ի Գրիգորէ Նարեկացւոյ
Կըրկին ըզճառըս հաստատած.
Ի հընագէտ նախնի արանց
Աւանդութեամբ առ մեզ հասած:

Ապարանից պատմութեան համար իր յենարանն եղած է մանաւորապէս Նարեկացի, «այն որ գրեաց զպատմութիւնն», յորմէ եւ իմ հետեւելով «ի յոտ հանի ըստ իմ կարեաց» կ՚ըսէ:

*

Զհեռացած Ապարանեցւոյ Վիպասանութենէս յիշեմ այս տեղ խնդիր մը, որ զուր տեղ զբաղցուցած է բանասէրները այնքան երկար:

Այն պարագայէն, որ Սիմէոն Ապարանեցի Ղազար Փարպեցւոյ եւ Սեբէոսի պատմագիրքերը մէկ հատորի մէջ գտած է եւ մէկ հեղինակի գործ համարած է երկու ուրոյն ուրոյն աշխատութիւնները, Հ. Բ. Սարգիսեան, Հ. Ղ. Ալիշան եւ Գրիգոր Տէր-Պօղոսեան, առանց միտ դնելու տեղի ունեցած թիւր ըմբռնումին, հետեւցուցած եւ թէ Սեբէոսի Պատմութեան առաջին մասը նախնաբար Ղ. Փարպեցւոյ Պատմութեան կից կը գտնուէր, ուստի եւ Ղ. Փարպեցի է անոր հեղինակը: Սեբէոսի Պատմութեան այս առաջին մասը այսպէս անջատելով Սեբէոսէն սովորութիւն եղաւ կոչել «Անանունի» գործ, նաեւ «Կեղծ-Սեբէոս», «Կեղծ-Ագաթանգեղոս» նաեւ «Մար Աբասի Պատմութիւն» եւն:

Բայց յիշեալ բանասէրները այս ծանրակշիռ եզրակացութեան յանգելէ յառաջ պէտք է անդրադառնային թիւրիմացութեանս

*եւ աւելի լրջօրէն խելամուտ ըլլային Սիմէոնի տողերուն իմաստին։ Հ. Սարգիսեան թէեւ ուշ՝ անդրադարձաւ սխալին* (*ԲԶՄ*. 1915, *էջ* 33)։

*Իրողութիւնն այս է, ինչպէս բացատրեցինք արդէն վերագոյն.*

ա. *Ապարանեցին Թիւրիմացութեամբ Ղ. Փարպեցւոյ Պատմութեան մաս համարած է Սեբէոսի Պատմութիւնը։*

բ. *Սեբէոսի Պատմութեան Ա. Մասը, զոր այլք «Անանուն» եւ այլն կը կոչեն, Պատմութեան հարազատ մասն է. ուստի եւ ո՛չ Ղ. Փարպեցւոյ է եւ ոչ ուրիշ անծանօթի մը։*

գ. *Այս խնդրի մէջ Սիմէոն Ապարանեցի որ եւ է նպաստ չի կրնար մատուցանել։*

*Այս հարցի մասին լոյս տեսած են աշխատութիւններս.*

1. *Հ. Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, Վենետիկ* 1890, *էջ* 277—279։

2. *Հ. Բ. Սարգիսեան, Սիմէոն Ապարանեցին եւ կեղծ Սեբէոսի առեղծուածը. Բազմավէպ*, 1915, *էջ* 1—9, 33—39։

3. *Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա.*, 62—63. *համմտ. եւ* 17—18։

4. *Գր. Տէր-Պօղոսեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ. Հանդէս Ամսօրեայ*, 1916, *էջ* 149—170, *համմտ.*

նաեւ անդ, 1914, էջ 489—500 = արտատպ. նոյն խորագրով. Մասն Բ., Վիեննա 1919, էջ 90—126:

*Սիմէոն Ապարանեցւոյ մասին գրուածքներ.*

1. Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա., § 120, էջ 127—128:

2. Հ. Ն. Ակինեան, Սիմէոն Վ. Ապարանեցի, Հանդ. Ամս., 33 (1919), 79—96:

## 16. ԿԱՐԱՊԵՏ Վ. ԿԱՂՕԵՆՑ ՄՈԿԱՑԻ
## († 1637)

Կարապետ ինք զինքը այսպէս կը ներկայացնէ 1624ին. «Ես մեղաւք լցեալ Մոկացի Կարապետ պիտակ եւեթ անուամբ վարդապետս եղէ ցանկացող Աստուածաշունչ Գրոցս եւ ետու գրել զսա... Աստուած ողորմի ասացէք ինձ... Կարապետիս եւ ծնաւղաց մեր ըստ մարմնոյ Մեսրոպին եւ Աղամին եւ եղբարց իմոց Խաչատուրին եւ Հայրապետին եւ քուերցն իմոց Յինախին եւ Վարդին եւ Մարիամին. եւ Հօրեղբաւրն իմոյ Սրապիոնին եւ որդւոց նորա Աւագին, Մխիթարին...: Դարձեալ... յիշեցէք... զհոգեւոր ծնաւղն իմ զերկիցս երանեալ քաջ րաբունապետն զՍիմէոն կոչեցեալ պուետիկոսն որ ծնաւ զմեզ ըստ բանի բազմաջան երկօք, կրթեալ ի մամուլս վարժարանիս ի յոյսն կենդանի: Մանաւանդ զուսումնակից նորին զԲարսեղ րա-

*բունապետն... (որք) ի մխում ամի վճարեալ հասին ի կէտ կոչմանն...: Դարձեալ... յիշեսջիք... զհոգեւոր եւ զհլու հպատակեալ որդեակսն մեր որ կան յօժարութեամբ ի յընթերցումն աստուածային տառից՝ զՄելքիսէթ եպիսկոպոս եւ սպասաւոր բանից աստուածականաց, եւ զտէր Սիմէոն Ապարանցին, զեղբօրորդի հոգեւոր հօրն իմոյ, եւ զտէր Ստեփանոս նորընծայ կրօնաւորն եւ զՄեսրոպիկ (այլուր Բարիկ սարկաւագ) եղբօր որդեակն իմ. եւս առաւել զտէր Գրիգոր հերպետն Սուրեցի, որ է մեզ ընդունող եւ ասպնջական յամենայն ժամանակս մեր»: Յիշատակարանս կը գտնուի Երուսաղէմի Թ. 2560 (Աստուածաշունչ) ձեռագրին վերջը, զոր յանձն առած է Կիրակոս քահանայ գրել, ծաղկել եւ կազել: Այս ձեռագիրը ապա նուիրած է ի Դուռն Ս. Յակոբայ Գրիգոր պատրիարքի օրով:*

*Մեզի չէ հաղորդուած, թէ Մոկաց աշխարհի ո՞ր գիւղին մէջ տեսած է Կարապետ իր առաջին լոյսը: Երուսաղէմի Թ. 308 ձեռագրին գրիչը Գրիգոր կ՚անուանէ զինքը Կալօենց. իսկ Կարապետ Բաղիշեցի՝ պարզապէս «Կալօ»: Իր ուսումը առած է Կարապետ Սիմէոն Ապարանեցւոյ (†1615) դպրոցին մէջ:*

1616*ին իր յանձնարարութեամբ Գրիգոր գրիչ, որդի Ամիրաղիզայ կ՚օրինակէ Մովսէս Խորենացւոյ, Մեսրոպ Երէցի եւ Եղիշէի պատմագիրքերը (այժմ Երուսաղէմ, Թ.* 308*),*

*իսկ 1624ին Միքայէլ Ասորւոյ եւ Փաւստոսի Բիւզանդեայ պատմագրքերը (Երուսաղէմ, Թ.* 307) *եւ Ագաթանգեղոսը (անդ, Թ.* 309)։

*Գրիգոր Դարանաղցի կը գրէ* 1629*ին, թէ Կարապետ «բազում ժամանակ է որ Երուսաղէմայ սպասաւորութիւն կ՚առնէ, յամենայն երկիր ընթանալով շրջեալ ողորմութիւն խնդրելով վասն սուրբ Երուսաղէմայ կարեացն եւ պիտոյիցն եւ ծանր հարկապահանջութեան աղագաւ։ Մէկ երկու ամ մի շուրջ գալով եւ մէն ամ նստելով, այսպէս ուխտ արարեալ»* (394)*։ Այս պաշտօնով առաջին անգամ կը հանդիպինք իրեն ի Կաֆայ։ Երեւանի Թ.* 222 *(Աւետարան, գրուած* 1320*ին Սեբաստացի Ստեփաննոս եպիսկոպոսի համար) ունի յիշատակագրութիւնս Կարապետ վարդապետի գրչէն. «ի թվականիս Հայկազեան մեծ ումարին քան եւ մին յոբելէնին, եւ բարդեալ յաւելորդն առ նմա՝ երկտասնեակ եւ մակ եռակ համարին* (21 × 50 + 20 + 3 = 1073, *այն է փրկչական* 1624)*։ Ես նուաստ Կարապետ պիտակ եւեթ անուամբ վարդապետս, սպասաւոր սուրբ Երուսաղեմայ, եկի նուիրակ վասն պիտոյիցն սուրբ Երուսաղեմայ ի կողմանս հիւսիսոյ՝ ի նահանգս Հոնաց, ի նուաճեալս յազգէն Նետողաց եւ Թուրքաց, ի ծովահայեաց քաղաքս Կաֆայ կոչեցեալ։ Եւ տեսի զսուրբ Աւետարանս անկեալ ի յուղմունս խաւսից այլայլմանց, ի յանդուուն բերան մարդկանց, որ ի*

բերան առեալ զյիշատակս այլոց՝ կամին կլանել, եւ վայ ի վերայ անձանցն բերել, եւ յաւիտենից տանջանացն զինքեանս մատնել: Զոր խափանեցաք զնոցին չար կամքն: Ապա, եթէ ոք այսուհետեւ թէ կարգաւոր, թէ աշխարհական զայս սուրբ Աւետարանս ի բերան բերէ, դաւի առնէ եւ տէր կանգնի եւ հակառակի նա ընդ վաճառողին Յիսուսի Յուդայի պատիժ կրեսցէ, եւ ընդ գողոյն Աքարա՝ նզովեալ եղիցի ամենայն ընտանեաւքն իւրովք. ամէն:

«Այլ կացցէ սա անջինջ յիշատակ ի քաղաքս Կաֆայ, մինչեւ յաւիտեան: Եւ լաւ պահողն եւ խնամ տանողն աւրհնեալ եղիցի յԱստուծոյ. եւ ի սուրբ Երուսաղեմայ. եւ ի սուրբ Աւետարանէս, եւ ամենայն ընտրելոցն. նաեւ ի մէնջ. ամէն»:

Հաւանօրէն ուղիղ չէ ըստ այսմ Աղաւնունի Մկրտիչ եպիսկոպոսի հաւաստումը, թէ Կարապետ «1629ին ուխտաւորութեամբ կ՚այցելէ Ս. Յակոբի վանքը (ՄՁ. Թ. 295). Գրիգոր Պարոնտէր պատրիարքէն նուիրակ կը կարգուի (ՄՁ. Թ. 1919)» (Միաբանք եւ այցելուք..., էջ 194):

Գրիգոր Դարանաղեցւոյ համաձայն Կարապետ «ի թվին ՌՀԸ (1629) յԸստամբօլ այլ երեկ նուիրակութեան աղաղաւ... եւ մէկ ամ եկաց յԸստամբօլ եւ յԱտրանայ եւ մեր յԸռատօզս. եւ այլ ուրեք ոչ կամեցաւ գնալ վասն խառնափնդոր չփոթմանցն... վասն

որոյ չուտ ելաւ գնաց ի հետ ուխտաւորացն ծովով յԵրուսաղէմ» (394—395):

Այն միջոցին, որ մեկնեցաւ Կ. Պոլսէն, ժողովուրդը աժգոհ Զաքարիա պատրիարքէն՝ վար կ՚առնէ զանիկա պատրիարքական աթոռէն եւ յանուն Կարապետ վարդապետի «յամի ու պարաթ» կը հանէ: Բայց ան հակառակ բազմաթիւ գրաւոր դիմումներու՝ յանձն չ՚առներ որ եւ է կերպ գալ Կ. Պոլիս եւ նստիլ պատրիարքական աթոռին վրայ, նկատի առնելով մայրաքաղաքի Հայոց ներքին երկպառակութիւնները: Այսպէս, կ՚ըսէ Դարանաղցի, պատրիարքութիւնը երկու ամբողջ տարի իր անուան վրայ մնաց, մինչեւ որ Գրիգոր Կեսարացի Կ. Պոլիս հասաւ եւ յինքն կորզեց աթոռը (անդ, էջ 397):

1634ին Ծոազատիկ պատահեցաւ. այս առթիւ Կարապետ վարդապետ «անհուն ծախս արար» կը գրէ Դարանաղցի:

Երուսաղէմ գտնուած միջոցին Կարապետ կը պարապէր ուսուցչութեամբ, ինչպէս կարելի է գտնել Երուսաղէմի Թ. 2560 ձեռագրին յիշատակագրութենէն, գրուած հաւանօրէն 1631ին իր իսկ գրչէն. Գրիգոր Պարոնտէր «բազում երախտիք եւ աշխատանք ունի ի վերայ վիճակիս Հայոց, եւս առաւել ի վերայ մեզ եւ ի վերայ աշակերտաց մերոց»: Նոյնը կը վկայէ Դարանաղցի, երբ կը գրէ, Կարապետ «հանապազ աշակերտաց դասասաց է, որ երեք չորս աշակերտ հաներ է

մինչեւ ցայսօր՝ անուանի կատարեալ փիլիսոփայք եւ այլք ընտիր վարդապետք են կեցեր յիւրեանց Մոկաց աշխարհն եւ այլ Ոստանայք, զորոց անուանքն ոչ գիտելով մեր» (էջ 397)։ Կարապետ վերագոյն, 1624ի յիշատակարանին մէջ յիշած էր այն շրջանի աշակերտներու անունները։

Կարապետ վարդապետ վախճանեցաւ 1637ին Երուսաղէմ (Դարանաղցի, էջ 397)։ Անոր գերեզմանը Երուսաղէմ ցոյց կու տայ նաեւ իր աշակերտն Սիմէոն Փոքր Ապարանեցի, որ Ս. Յակոբեանց Աւետարան մը կը նուիրէ ի յիշատակ ի մէջ այլոց «նաեւ հօրն իւրոյ հոգեւորի Կարապետ գիտնական րաբունապետի, որ հանգուցեալ է առ Քրիստոս եւ եդեալ կայ յԵրուսաղէմ ի սուրբ Փրկչի եկեղեցին» (Երուսաղէմ, Թ. 12·670)։

Արդէն 1631ին նուիրած էր իր գրքերը Ս. Յակոբեանց Մատենադարանին, Երուսաղէմի Թ. 2560 Աստուածաշունչի սկիզբը (Թղ·4ա) արձանագրած է. «Ի թվին Հայոց Ռ եւ Ձ (1631), ի ժամանակս, յորում էր հայրապետ սուրբ Երուսաղէմի Գանձակեցի տէր Գրիգոր սրբազան... ես նուաստ Մոկացի պիտականուն վարդապետ ·Ե· պատուական գիրք տուի յիշատակ Ս. Երուսաղիմայ ի դուռն սուրբ Յակոբայ՝

Նախ Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանք· ի մի տուփ։

Երկրորդ գիրքն՝ ·Ե· պատմագիրքն եւ

մեծ Հարանց Վարքն, ի մի տուփ (սոնք են՝ Ագաթանգեղոս, Թուղթ Դաշանց, Պատմութիւն գիւտի Նշխարաց. Մ. Խորենացի, Փաւստոս, Եւսեբեայ Եկեղ. պատմութիւն):

Երրորդ գիրքն .Է. արտաքին եւ Սահմանք Դաւթի. բովանդակ Բնարանքն եւ Մեկնիչքն եւ Լուծմունքն է, ի մի տուփ:

Չորրորդ գիրքն՝ Տաթեւացւոյ շինած նոյն արտաքին .Է. գրոց Լուծմունքն. ի մի տուփ:

Հինգերորդ գիրքն՝ Կանոնագիրքն եւ Դատաստանագիրքն եւ Տաւն ասացուածքն. ի մի տուփ» (Ագաթանգեղոս, Տփղիս 1909, էջ ԻԴ. Ադաւնունի, 195):

Ասոնցմէ զատ նուիրած է նոյն 1631ին Երուսաղէմի Թ. 308 (Մովսէս Խորենացի, Մեսրոպ երէց եւ Եղիշէ), Թ. 307 (Միքայէլ Ասորի, Փաւստոս). եւ Թ. 309 (Ագաթանգեղոս):

Կարապետ վարդապետի նկարագիրը գեղեցիկ գծած է Գրիգոր Դարանաղցի, որ անձամբ կը ճանչնար զանիկա:

«Եւ այս Կարապետ վարդապետս Մոկացի... յաշակերտաց Սիմէոն վարդապետին լինելով, սորին համճարեղութիւնն եւ զլխով առատ իմաստութիւնն, զներկուս կըրթութիւնն, թէ՛ զԱստուածաշունչ Գրոց վարժումն, որ չառն ի բերան առեալ իբր զՍաղմոս ի քաղ ունել անմոռաց պահելով,

զոր ոչ ոք կարող է այսպէս առնել, եւ զարտաքին հանճարս փիլիսոփայից վարժեալ, մանաւանդ զՔերականի արհեստն... Հանդերձ մեկնութեամբքն եւ լմանցովքն ի բերան առեալ ի մտի ունելով որպէս զՍաղմոսն Դաւթի: Եւ զամենայն վիպասանական չարագրութիւն եւ պատմութիւնք ժամանակաց անցելոց ամենայն ազգաց, մանաւանդ Հայկազանց պատմութեանց հնոց եւ նորոց առ ինքն հաւաքելով եւ վերծանելով զամենայն» (էջ 393—394):

Կարապետ Վ. Կալօենց Մոկացի թէպէտ գրասէր էր եւ գիտնական, բայց կ'երեւայ թէ չէ սիրած պարապիլ մատենագրութեամբ: Իր անուամբ ծանօթ է ինծ գրուածք մը միայն, տաղաչափեալ, առանց խորագրի, որ է տաղ ի վերայ երեւելի արանցն Յունաց եւ Եբրայեցւոց, այսպիսի սկզբնաւորութեամբ.

Արդ Հոմերոս է առաջին,
Լիկոյարգէս զկնի նորին...
Գողոնիէլ զարմն Յունային,
Եւ քաջն Աւովդ Թոռն Եփրեմին...
Ադամ, Սէթ Ենովս Կայնան...:

Վերջաւորութեան յիշած է Կարապետ Մոկացի իր անունը: Դժբախտաբար շատ համառօտ խօսած են գրութեանս մասին ցուցակագրողները:

Տիւբինգէն, Թ. 97, թղ. 118բ—119բ (ընդ մէջ 118 եւ 119 թղթերու թղթեր ինկած են).

հմմտ. F. N. Finck und L. Gjandschezian, Verzeichnis der armenischen Handschriften der Königlichen Universitätsbibliothek. Tübingen 1907, S. 151—152.

*Կարապետ Մոկացւոյ մասին տե՛ս Գրիգոր Դարանաղցի, Ժամանակագրութիւն, էջ* 393—397. *եւ Մկրտիչ եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք հայ Երուսաղէմի, էջ* 194—195:

## 17. ՍԻՄԷՈՆ Վ. ԱՊԱՐԱՆՑԻ ՓՈՔՐ
(† 1650°)

*Սիմէոն Ապարանցի որդին է Կարապետի եւ Ծովինարի. իր հօրեղբայրն էր մեծն Սիմէոն Վ. Ապարանցի: Ունէր եղբայր մը Թաժդին անուն, որուն որդին էր Պարսամ:*

*Սիմէոն աշակերտած է Կալօենց Կարապետ վարդապետի: Իսկ ինքը ունեցած է աշակերտ տէր Աւետիս Բաղիշեցին:* 1643*ին այցելած Երուսաղէմ:*

*Զինքը կը ներկայացնէ առաջին անգամ Կիրակոս գրիչ* 1629*ին, որ օրինակած է այս տարւոյն նկարազարդ Շարակնոց մը «ի յերկիրս Մայեկաց, ի գեօղս որ կոչի Աւնդոց» որ է յանդիման Ապարանից Ս. Խաչի վանքին: Կիրակոս կը գրէ. «Տէր Սիմէօն վարդապետն այրն պատուական, վարիւք փայլեալ հրեշտակական, վարժեալ ի վարս ճգնողական, խոնարհ հոգւով եւ հեզաբան, եւ խրատիչ որդւոց մարդկան, ... ետ գծագրել զսա զանազան եւ զարդարել ետ հրաշազան»:*

Ձեռագրէս կից յիշատակագրութիւն մը կը ծանուցանէ, թէ Ապարանից Սիմէօն վարդապետն «առաքեաց զՃարակնոց ի սուրբ Երուսաղէմ ընդ Մոկացի տէր Դաւթին յիշատակ ի Դուռն Ս. Յակոբայ, զոր... հասոյց ի թվին Հայոց ՌՃԼԷ (1688) ի Ս. Երուսաղէմ... յառաջնորդութեան Ս. Երուսաղեմայ Յովհաննէս վարդապետին» (Երուսաղէմ, Թ. 2358. հմմտ. Ազաւնունի, էջ 473):

Նոյն Կիրակոս գրիչ 1640ին գրած է նոյնպէս նկարազարդ Աւետարան մը. յիշատակարանին մէջ կը յայտարարէ, թէ «ոմն ի լուսածնեալ զարմից սրբոյ Սիոնի Սիմէոն քաջ բարունապետն... ետ գրել զսուրբ Աւետարանս եւ զարդարել ետ ոսկւով եւ երանգ երանգ ծաղկով յիշատակ իւրն եւ իւր ծնողացն... նաեւ սուրբ հօրն իւրոյ հոգեւորի Կարապետ գլխնական բարունապետի, որ հանգուցեալ է առ Քրիստոս եւ եղեալ կայ յԵրուսաղէմ ի սուրբ Փրկչի եկեղեցին»: Իսկ ստացիչն կը գրէ. «Ես Սիմէոնս վարդապետս Ապարանցի, որ ստացայ զսա մեծ կարօտիւ եւ առեալ զսուրբ Աւետարանս եւ եկի ի սուրբ քաղաքս յԵրուսաղէմ եւ եղի յիշատակ ի դուռն սուրբ Յակոբայ ի թվին Հայոց ՌՂԲ» (1643) (Երուսաղէմ Թ. 2670. հմմտ. Ազաւնունի, անդ, 473):

Հաւանօրէն ասկէ ոչ շատ վերջը գրել տուած է Երուսաղէմի Թ. 2557 Աստուածաշունչը, նոյն Կիրակոս գրչին, զոր նոյնպէս

նուիրած է Ս. Յակոբի, Գրիգոր Պարոնտէր պատրիարքի († 1645) օրով, յամենայն դէպս 1637էն ետքը:

Սիմէոնի մասին մեզի վերջին տեղեկութիւնը կը հաղորդէ Վասպուրականի ձեռագիրներու Թ. 252, որ Աւետարան մըն է գրուած 1647. ոչ գրիչն եւ ոչ գրչութեան տեղը ծանօթ: Յիշատակարանին Ա. մասը գրչէն է, Բ. մասը ստացիչէն, որ Սիմէոն ինքնին է: Յառաջ կը բերեմ տեղիքներս.

«Ուստի եւ տեսեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ ոմն ի լուսածնեալ զարմից սրբոյ Սիոնի սրբասնեալ վարդապետն Սիմէոնն Ապարանից. զոր ի վաղուց հետէ ցանկայր աստուածախաւս այսմ մարգարտաշար լուսափթիթ սուրբ Աւետարանիս եւ ետ գրել յիշատակ բարի հոգւոյ իւրոյ եւ ծնողաց իւրոց. ի մէտ առեալ զբանն Եսայեայ որ ասէ. Երանի որ ունի զաւակ ի Սիոն եւ ընտանեակ յԵրուսաղէմ: Վասն այն յուսոյն ետ գրել զսուրբ Աւետարանս եւ զարդարել ետ ոսկւով եւ երանգ երանգ ծաղկով յիշատակ իւրն եւ իւր ծնողացն՝ հաւրն Կարապետին եւ մօրն Ծովինարին եւ հօրեղբօրն Սիմէոնին վարդապետին եւ տէր Գրիգորին եւ հոգեւոր հօրն Կարապետ վարդապետին: Արդ որք հանդիպիք սուրբ Աւետարանիս յիշեցէք զՍիմէոն քաջ բարունապետն Ապարանից, որ ստացաւ զսա յիշատակ բարի հոգւոյ իւրոյ....:

*Արդ ես Սիմէոն վարդապետս ստացայ զսուրբ Աւետարանս ի թվին Հայոց. ՌՂԶ. ամին եւ ետու զսա զարմանալի տնօրինականօք յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց՝ Կարապետին եւ Ծովինարին եւ հօրեղբօրս Սիմէոնի վարդապետին եւ տէր Գրիգոր(ի) եւ եղբօրս Թաժդինին եւ որդոյն Պարսամին. եւ ուսուցիչ հօր իմոյ հոգեւոր Կարապետ վարդապետին եւ սիրանունդ որդոյ իմոյ տէր Աւետիս գրոց աշակերտի եւ բանի սպասաւորի»* (*Լալայեանց, Ցուց. Վասպուր., էջ* 600—602):

*Ուստի կ՚երեւայ թէ սխալ ենթադրութեան վրայ յեցած է Լեւոնեան, երբ Բիւզանդիոն* 1904, *Թ.* 2294 *կը հաւաստէ թէ Սիմէոն «յամի* 1664—1665 *կը յիշուի յԱպարանս Մոկաց», եթէ տպագրութեան վրիպակ մը չէ սպրդած, այսինքն* 1664 *պէտք չէ կարդալ* 1646:

### 18. ԿԱՐԱՊԵՏ Վ. ՓԱՐԽԱՆԴԵՑԻ (ԲԱՂԻՇԵՑԻ)
### († 1623)

*Բաղէշի Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին Յիշատակաց Մատեանին մէջ կ՚ըսուի, թէ յետ Յովհաննէս Բրոնեցւոյ նոյն վանքին առաջնորդ կարգուեցաւ «Կարապետ Փարխանդցի, որ է աշակերտ Ապարանցի Սիմէօն վարդապետի: Եւ յետ նորա աշակերտն իւր Պետրոս Գաւաչցին»: Քիչ յետոյ ալ կ՚ըսուի. «Աստուած լուսաւորէ զՓարխանդցի Կարապետ վարդապետի հոգին, որ լաւ պտղաբեր Աստուածաշունչ մի եդ յիշատակ.*

*եւ այլ բազում երախտիս ունի ի վերայ վանիցս»* (*Բանասէր*, 1905, *էջ* 293—294)։

*Թէ ինքը ստուգիւ Սիմէոն Ապարանեցւոյ աշակերտն է, աշակերտակիցը Կարապետ Կալօենցի, կը հաստատէ նա ինքն իր Վարդապետաց Կարգի մէջ այսպէս. «Սիմէոնի աշակերտքն Կարապետ Կալօ(ենց)ն եւ (Կարապետ) Փարխնդեցին»։ Նոյն գրութեան վերջն ալ ստորագրած է. «Ես Նուաստ Կարապետ բանի սպասաւոր Բաղիշեցի, ի գեղջէն Փարխընդոյ, զոր լուայ ի պատմագրաց եւ զոր աչօք մեր տեսաք» գրեցի։*

*Փարխանդ գիւղը Բաղէշի հարաւակողմը կը գտնուի, Ծնդրակատարէն ոչ շատ հեռու։*

*Կարապետ վարդապետին աշակերտներն են.*

*Ներսէս եպիսկոպոս Բաղիշեցի, Պետրոս Վ. Գաւաշցի, Բարսեղ Վ. Աթախցի։*

*Վերջինս կը գրէ. «Դարձեալ յիշեցէք զանարժանս Բարսեղ անուամբ վարդապետս ...եւ զուսուցանող վարդապետն իմ զտէր Կարապետ վարդապետն Բաղիշեցի, որ ի* (Ռ)ՀԲ (1623)[1] *վաղջանեցաւ եւ սուգ էած ինձ անհնարին»* (*Էջմիածին, Թ.* 1299, *Թղ.* 200*բ*)։ *«Կարապետի Փարխէնդցւոյ» դամբանարանը ցոյց կու տայ Դուիթ Բաղիշեցի Ծնդրակատար վանքի գերեզմանոցի մէջ* (*Թոփճեան, Ցուցակ, Ա., էջ* 99)։

---

[1] *Այս տարւոյն վախճանած է նաեւ Կարապետ Վ. Բաթ Երզնկացի ի Կ. Պոլիս։*

*Կարապետ Բաղիշեցւոյ Ներբողը յօրինած է Ներսէս Բաղիշեցի (տե՛ս)։*

*Իր գրական վաստակներէն ծանօթ են ինձի հետեւեալները միայն։*

1. Կարգք Վարդապետաց. *զոր հրատարակեցի վերագոյն։*

2. Ողբ ի վերայ մեղաց եւ պաղատանք առ Աստուած ի Կարապետ վարդապետէ Բաղիշեցւոյ։ *Տունք Ա—Ք* 2—5—3—5 *չափով։*

*Աստուած իմ Յիսուս Քրիստոս, կենդանի*
*եւ կենդանարար,*
*Զիս կենդանացս հոգւով մեռեալ եմ մե-*
*ղօք չարաչար...*
*վՋ. Քեզ փառք Աստուծոյ Բանին, պատիւ*
*տամ քեզ յաւէրժարար,*
*Տուր ինձ բնութիւն բարի, զի օրհնեմք*
*ըղքեզ մեղմարար։*

=*Երեւան, Թ.* 359, *թղ.* 445*բ*։ 385, 40*բ. նաեւ* 361, 364, 365։ *Վիեննա*, 63, 16*ա* (*Ա—Ն*). 745, *թղ.* 293*ա*—296*ա*։ *Պարիս*, 283, 102*բ*։ *Էջմիածին, հին* 282, *թղ.* 68*ա* (1627. *Ա—Ն. Արարատ*, 1895, *էջ* 124)։

*Էջմիածնի Թ.* 282 *վերնագիր ունի. «Տաղ Կարապետ վարդապետի Բաղիշեցւոյ»։ Վիեննայի Թ.* 63 *եւ* 745 *խորագիր չունին։ Իսկ միւսները՝ լոկ «Կարապետ վարդապետի»։*

3. (Կափա) ի տէր Կարապետ վարդապետէ Բաղիշեցւոյ։

Թէ ձայն ունիս քաղցր եւ բարակ,
Զգանձերս ասա դու համարձակ,
Ապա թէ հաստ է եւ խառնակ,
Յայսկից ի զատ կացիր յերակ...

Վեցերորդ տունն է.
Այսպէս եւ դու, ով ժիր, մըշակ,
Եթէ ունիս զերկուսն յըստակ,
Երգեա վըստահ անխաթերակ,
Եւ ըզգըծուղս յիշեա յերակ:

Իսկ տունք Է—ԺԳ (խրատ Գանձարանը խնամով պահելու մասին).

ԶՄարտիրոս անուն պետակ,
Որ իմ եղեր յոյժ աղտեղակ:

Վջ. Զեղկելի Մարտիրոս գրիչս յիշես,
Եւ ողորմի դու ինձ ասես:

= Էջմիածին, հ. 282, թղ. 72ա—73ա (1627, գրիչ՝ Ղուկաս, յԵղերդուտի վանս):

Հրտ. Ն. Քարամեան, Արարատ, 28 (1895), էջ 130:

Ինչպէս Ն. Քարամեան, որ ցուցակագրած է Տաղարանս, կը համարի, այս Է—ԺԳ տուները Մարտիրոս գրչին յաւելուածներն են: Բայց աւելի ճիշդ պիտի ըլլայ ենթադրել թէ ուրիշ գրչէ մը Մարտիրոսի մը մէկ տաղը նախորդին կցուած ըլլայ: Կայ այս անուամբ գրիչ մը, որ 1460ին (ի Կաֆա՞) օրինակած է Երեւանի Պետ. Թանգ. Թ. 269

*(Սաղմոսարան—Գանձարան)։ Իսկ Կարապետի տաղը կայ ինքնակաց, բայց անանուն Երեւանի Թ.* 359, *Թղ.* 3*բ*—4*ա* (1623, *Կաֆա, գրիչ՝ Զաքարիա*) *եւ* 361 (*Կաֆա, գրիչ Յովհ. Արզուման, գրուած ընդ մէջ* 1623—1355)։

4. *Գանձ Գրիգորի Աստուածաբանին, ի գծողէ այսմ Գանձարանիս՝ յանմիտ Կարապետէ Բաղիշեցւոյ։*

*Կենդանարար Որդիդ միածին,*
*Առեր մարմին յարգանդի Կուսին,*
*Վասն Ադամայ քո նախաստեղծին,*
*Որ մերկացաւ գփառս առաջին...։*

*Տուներուն սկզբնատառերը կը կազմեն «Կարապետ Բաղիշեցի ասէ»։*

= *Վենետիկ, Ա. Գանձարան, էջ* 209։ *Դաւրէժ, Թ.* 43, *Թղ.* 122*բ*—124*բ* (*Աճառեան, Ցուցակ, էջ* 36. *գրիչն է Մկրտիչ, տարին անծանօթ*)։ *Ասկէ արտագրուած Աճառեան, Գանձարան, Թղ.* 168։

*Դաւրէժի Թ.* 43 *խորագիր ունի. «... ի Կարապետ Բաղիշեցւոյ»։ Վենետիկի օրինակին խորագիրը յառաջ բերուած է Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի, Ա., էջ* 529 *դ. «Գանձարան» բառին տակ։ Դժբախտաբար ինձ ծանօթ չէ այս բոլորգիր Գանձարանին գրութեան տարին, ինչպէս եւ տեղը։*

5. Կարապետ Վ. Բաղիշեցի Փերթկաբենց, Տաղ ի Մատնութիւնն Յուդայի։

*Մինչ նստէին ի վերնատանն...*

= Երուսաղէմ, Թ. 1249: 1521 ըստ ցուցակին Տ. Սաւալանեանցի:

Փեթկարենց մականունով Կարապետ Բաղիշեցի մը ծանօթ չէ ինձ: Չգիտեմ նաեւ յիշեալ ձեռագիրին գրչութեան տարին ու տեղը: Պէտք է ի մերձուստ քննել տաղս եւ տաղասացի անձն եւ ժամանակը. ունի՞ որ եւ է կապ Փարխանդցի–Բաղիշեցի Կարապետին հետ:

Հ. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 1100ը, իրեն ընծայած է «Եկայք Ադամայ որդիք» տաղը, որ ԺԶ. դարուն ծաղկած Կարապետ Բաղիշեցւոյն է[2]:

## 19. ՆԵՐՍԷՍ Վ. ՄԱՆՈՒԿԵՆՑ ՄՈԽՐԱԲԵՐԴՑԻ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱՂԷՇԻ

Իր տաղերուն մէջ կը ներկայանէ ինք զինքը «Ներսէս եպիսկոպոս» եւ «վարդապետ». իսկ տաղերուն խորագիրներու մէջ կոչուած է «Ներսէս Վ. Բաղիշեցի», անգամ մ՚ալ «Մանուկենց Ներսէս վարդապետ»: Բայց Վարդան Բաղիշեցի կը կոչէ զանիկա «Մոխրաբերդցի»: Մոխրաբերդ գիւղ մըն է Վանի լիճին հարաւակողմն եւ Աղթամար կղզւոյն հանդիպակաց[3]: Մխարանելու համար այս

[2] Հ. Ն. Ակինեան, Կարապետ Վ. Բաղիշեցի, Հանդ. Ամս. 1937, էջ 320—343 = Մատենագրական հետազօտութիւններ, Դ. (Վիեննա 1938), էջ 311—350:

[3] Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ 1864, էջ 252: Դիւան Հայոց Պատմութեան, Ժ., 11, 549: Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 354:

երկուութիւնը, հարկ է ընդունիլ թէ Ներսէս ծննդեամբ Մոխրաբերդցի էր եւ բնակութեամբ Բաղիշեցի։ Նկատի առնելով, որ ան մականուն կը կրէր Մանուկենց, կրնանք հետեւցնել, թէ որդին էր Մոխրաբերդցի Մանուկին։ Ծնողաց մասին աւելի տեղեկութիւն չունինք։ Ծնած է հաւանօրէն 1580ին[4]։

Ներսէս 1610ին կ'անուանէ ինք զինքը «Ներսէս եպիսկոպոս, գրոց աշակերտ»։ Իր ուսուցիչ վարդապետն է «Տէր Կարապետ Բաղիշեցին», որմէ զաւազանի իշխանութիւնը առած է նոյն յիշեալ տարւոյն։ Եթէ Ներսէս իբրեւ եպիսկոպոս աշակերտած է Կարապետ վարդապետի, որ կը դասախօսէր Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին մէջ, կը հետեւի թէ այս թուականէն տարիներ յառաջ ընդունած էր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը։ Այս թուականէն յառաջ եւ վերջը ձեռնարկած է գրել Ներսէս եպ. Բաղիշեցի Էջմիածնի Թ. 519 ժողովածու ձեռագիրը, որ կը բովանդակէ ի մէջ այլոց իր 1610ին գրած տաղաչափեալ դաւանանքը Կարապետ վարդապետի։ Իսկ իր տաղերը, որոնք մեզի հասած են, կը կրեն 1610—1617 տարիները։ Թէ անոնք ո՞ւր յօրինուած են, չէ նշանակուած։ Հաւանօրէն ի Բաղէշ։ Գիտենք միայն, որ Ներսէս 1610էն ետքը պարապեցաւ դասաւանդութեամբ։ Իր աշակերտներէն մին է Հայրապետ Ղուլթիկցի, որուն նուիրած է իր

---

[4] 1623ին 42 տարեկան էր. տե՛ս վարը։

«Աստուած անհաս անեզրաբար» տաղը 1617էն։ Դժբախտաբար հայ աղբիւրները չեն յիշեր, թէ ո՛ր թեմին թեմակալ եպիսկոպոսն էր Ներսէս։ Իր Բաղիշեցի յորջորջանքը կը թելադրէ կարծել, թէ Բաղէշ քաղաքի եպիսկոպոսն եղած ըլլայ։ Բայց այս 1610 տարւոյն նոյն քաղաքի եպիսկոպոսն էր Կարապետ վարդապետ, իր ուսուցիչը։ Կ'երեւայ թէ Ներսէս երիտասարդ հասակին ձեռնադրուած էր եպիսկոպոս, եւ ապա հրաժարելով իր աթոռէն ի նպաստ Կարապետ վարդապետի՝ մտած է անոր դպրոցը ստանալու համար վարդապետական գաւազանը։ Կարապետ վարդապետ վախճանեցաւ 1623ին։

Ճիշդ այս տարւոյն կը հանդիպինք ի Վենետիկ Բաղէշի Ներսէս անուն եպիսկոպոսի մը, որ կ'երեւայ թէ նոյն է Մանուկենց Ներսէս եպիսկոպոսի հետ։

Թէ Ներսէս հեռացած է Բաղէշէն, կը վկայեն հայ աղբիւրներն ալ։ Այսպէս Խնդրակատար վանքի պատմութեան յաւ ծանօթ Վարդան Բաղիշեցի կը գրէ. «Ներսէս Վ. Մոխրաբերդցի, աշակերտ Կարապետ վարդապետին, առեալ իշխանութիւն վարդապետական եւ գնացեալ մինչ ի Քաֆայ քարոզութեամբ. եւ անդ լինի վախճան նորա տարաշխարհիկ։ Բայց յաւ պատուական սկիհ մի արծաթի եւ ոսկեզօծ ակամբ եւ մարգարտաշար շինել տուել է անդ եւ ձեռամբ աշակերտին իւրոյ Ղուլթիկցի Հայրապետ վար-

դապետին առաքեալ յիշատակ հոգւոյ իւրոյ Խնդրակատար սուրբ Աստուածածնին» (Բանասէր, 1905, էջ 293)։

Երեւանի Թ. 395 Տաղարանի համաձայն Ներսէս եպիսկոպոս վախճանած է Խրիմ եւ թաղուած տեղւոյն Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ։ Տաղարանին գրիչն է Խաչերես քահանայ, գրուած 1608—1656 տարիներուն. հոս Ներսէս եպիսկոպոսի «Ղարիպն յորժամ արար խորհուրդ գնալոյ» տաղը խորագիր ունի· «Տաղ Ներսէս վարդապետէ, որ հանգուցեալ է ի Խրիմ Աստուածածին»։ Մահուան ինչպէս նաեւ Բաղէշէն մեկնելու տարիները ճշգրիտ չենք կրնար նշանակել։ Զարմանալի է որ նոյն Խաչերես քահանան, որ գրած է Խրիմի 1608—1656 տարիներու ժամանակագրութիւնը, Ներսէսի մասին որ եւ է բան չէ արձանագրած այդ տեղ։ Հայրապետ Ղուլթիկցի վերադարձած է Բաղէշ։ Ան քաղաքին մէջ էր 1627/8ին, երբ եկաւ Գրիգոր Երէց Մշեցի աշակերտելու իրեն։ Գրիգոր դաւագանի իշխանութիւնը ստանալէ ետքը իր Հայրապետ վարդապետին հետ գացած է Էջմիածին, Փիլիպպոս կաթողիկոսի (1634—1655) եւ անկէ եպիսկոպոս ձեռնադրուած, ինքն եւ ուսուցիչը (Էջմիածին, Թ. 146)։

Կ'երեւայ թէ Ներսէս եպիսկոպոս Բաղէշէն ուղղակի գացած է Իտալիա. ան 1623ին գտնուած է Վենետիկ եւ 1624ին Հռոմ։ Այս մասին մեր տեղեկութիւններն են.

ա. 1623, նոյեմբեր 10ին ի Վենետիկ Գէորգ Գոքիլլիոյ վաճառականն եւ սանսէրը թարգման կ'ըլլայ քանի մը վկաներուն, որոնց երկուքը Երզնկացիներ են, խօճայ Սէֆէր որդի Գէորգի եւ Աբրահամ որդի Յովհաննէսի Emiliti կոչուած, որոնք Վենետիկի նոտարին կը ներկայանան, ներկայացնելու Մեծ Հայաստանէն եկած արքեպիսկոպոս մը, Ներսէս անունով, որուն թեմն է Բաղէշի (Buchis) Խնդրակատար Ս. Աստուածածին (S. Maria della Grazie) վանքը: Այդ եպիսկոպոսը երբ 42 տարեկան էր, միջակ հասակով, սեւ եւ բոլորակ մօրուքով, քիթը քիչ մը տափակցած (ha il naso aliqanto fracato): Վկաները երդմամբ կը հաստատեն, թէ ան հաւատքով ուղղափառ է:

Այսպէս ըստ դիւանական վաւերագրոց, զորոնք քաղուածօրէն տուած է Հ. Ղ. Ալիշան[5]:

Վենետիկէն անցած է Ներսէս Հռոմ: Հ. Գրիգորիս Գալէմքեարեան գտած է Հռոմի Տարածման հաւատոյ ժողովի Նիստերուն արձանագրութիւններու մէջ տեղիքս. «31 մայիս 1624. Ներսէս Բեթղեհեմի (իմացիր՝ Բաղէշի) արքեպիսկոպոսը խնդրագիր մը ներկայացուցած էր Ս. Ժողովին: Կ'որոշէ ժողովը, որ շնորհուի անոր ապրուստի համար 50 սկուտ»:

---

5 Հայ Վենետ, Վենետիկ 1896, էջ 341—342:

*Հոս 1624ին տուած է հետեւեալ վկայութիւնը, նոյն քաղաքին մէջ նոյն տարին լոյս տեսած «Առաւել պարզաբանութիւն քրիստոնէական» գրքին համար, այսպէս.*

Ես տէր Ներսէս արքեպիսկոյպոս Բաղէշոյ քաղաքին տեսի զայս գիրքս որ է պարզաբանութիւն քրիստոնէականյն տրնօրինականացն, թարքըմանեալ ի լաթին լեզուէ ի Հայոց բառըս ի տէր Պետրոս Պողոս քահանայ կըրօնաւորէն: Արդ վասն ըստոգութեան սորայ վըկայեմ եւ կամակից եղէ կազմութեան սորին զի ճըշմարիտ եւ ըստուք է բանք սորայ. ի թվ. Հոց. ՌՀԳ եւ փրանգաց ՌՈԻԳ:

Ես տէր Ներսէս արքէպիսկոպոս Բաղէշո՛յ քաղաքին ձեռօք իմօք գըրեցի զայս վկայութիւնս:

*Ուղղագրական անճշդութիւնները անշուշտ անխնամ տպագրութեան վերագրելու է:*

*Ներսէս արքեպիսկոպոսի մէկ իւղանկար պատկերը ունինք Հռոմ, Ս. Վլաս Հայոց Հիւրանոցի մէջ, բերուած հոն նոյն քաղաքի Ս. Մարիամ Եգիպտացի Հայոց Հիւրանոցէն: Պատկերին տակ կը կարդացուի հետեւեալ արձանագրութիւնը.*

D. ARCHIEP. PAILENSIS EX ARMENIA MIN. AD INNOCEN. X. PEDES CATH. FIDEM PROFESSUS. IN HOC PRIMUM ARMENORÙ HOSPO.

DEINDE PONTIFICIO MUNIFICĒTISSIME RECEPTUS, EXIMIO PIETATIS EXĒMPLO PLURA IN TEMPLO S. M. AEGIP. FRECŪECI. CARD. AC PRINCIPŪ CORONA SOLEÑIA SACRA CELEBRAVIT. A. IUB. MDCL.

*Այս ինքն՝*

ՏԷՐ < ՆԵՐՍԷՍ > ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱՂԻՇԵՑԻ Ի ՓՈՔՈՒՆ ՀԱՅՈՑ, ԱՌ ՈՏՍ ԻՆՆՈՎԿԵՆՏԻՈՍԻ Ժ· ՋԿԱԹՈՂԻԿԷ ՀԱՒԱՏՍ ԴԱՒԱՆԵԱԼ, ՆԱԽ Ի ՍՄԻՆ ՀԻՒՐԱՆՈՑԻ ՀԱՅՈՑ, ԱՊԱ Ի ՔԱՀԱՆԱՅԱՊԱՏԷՆ (°) ՇՔՈՎ (°) ԸՆԿԱԼԵԱԼ· ԱՆՍՈՎՈՐ ՕՐԻՆԱԿԱՒ ԲԱՐԵՊԱՇՏՈՒԹԵԱՆ ՅԱՃԱԽԱԳՈՅՆ ՊՍԱԿԱՒ ԿԱՐԴԻՆԱԼԱՑ ԵՒ ԻՇԽԱՆԱՑ ՅԱՃԱԽԵԼՈՑ Ի ՏԱՃԱՐ Ս· ՄԱՐԻԱՄ ԵԳԻՊՏԱՑԻՈՑ, ՀԱՆԴԻՍՈՒԹԻՒՆՍ ՆՈՒԻՐԱԿԱՆՍ ԿԱՏԱՐԵԱՑ: ԱՄ ՅՈԲԵԼԵԱՆ 1650:

*Այս տեղեկութիւնները պատկերի չուրջ եւ պատկերը կը պարտիմ Հ. Գ. Գալէմքեարեանի, որ գտայ անոր անտիպ ձեռագիրներու մէջ: Թուականը պատկերահանէն է, յետ ժամանակի աւելցուած:*

*Արտաքին եւ ներքին աղբիւրները համաձայնցնելու համար հարկ է ենթադրել, թէ Ներսէս՝ Կարապետ եպիսկոպոսի ինչպէս նախորդը նոյնպէս յաջորդն եղած է* (1623): *Ապա մեկնած է Վենետիկ, Հռոմ եւ Կաֆա. ուր եւ վախճանած է* (1634°):

ՆԵՐՍԷՍ ԲԱՂԻՇԵՑԻՈՑ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Կը կանխեմ ըսել, թէ տարբեր անձ է Ղարիպն Ներսէս, որ 1475ին գտնուած է Կաֆա: Ունինք իրմէ տաղս.*

Ողբ մայրաքաղաքիս Կաֆայու։

*Ինն հարիւր Հայոց թըվին*
*Քըսան եւ չորսն էր աւելին* (1475)
*Ի յաղդմանէ մեղաց չարին,*
*Միաբանեցան այն Տաճկընին...*
Վջ. *Ով գիս յիշէ պահ մ'ի բարին,*
*ԶՂարիպ Ներսէսս ի սեղանին։*

=*Երեւան, Պետ. Թանգ. Թ.* 395, *թղ.* 35*ա*—36*ա* (1620)։ *Վիեննա, Թ.* 1002, *թղ.* 74*ա*—76*ա* (1654)։

*Ներսէս Վ. Բաղիշեցւոյ են.*

1. Առ երջանիկ եռամեծ եւ արդիւնաքան տէր Կարապետ րաբունապետն գրեալ բան գովեստից ոտանաւոր տաղիւ չափեալ ի տրուպ եւ ի ներգեւեալ անձնէ ի Ներսէս եպիսկոպոսէ գրոց աշակերտէ, ի պատճառ աւուրն գաւազան առնելոյ։

*Անեղն Աստուած ամենակալ,*
*Էիցս բնաւից պատճառ եղեալ...*

Վ. *Առ վարդապետն իմ րաբունին,*
*Տէր Կարապետ Բաղիշեցին.*
*Ես վերջացեալս առ ի բա՛րին,*
*Ներսէս անուն ծառայ նըմին.*
*Շարադրեցի գրանս դըրուատին,*
*Ի մերս Հայոց թուականին,*
*Հազար 'ւ յիսուն իններորդին* (1610),
*Ի խըռովեալ ժամանակին.*
*Որ եղեւ մեզ նա վարժարան,*
*Շնորհօք Հոգւոյն իմաստութեան.*

*Յորմէ առաք մեք զաւազան,*
*՚Ի ուսուցելոյ ետ մեզ հրաման…:*

*Ձեռագիր՝ Էջմ.* 519, *թղ.* 104*ա*—108*բ* (*ԺԷ.*):

2. Նորին Ներսէս Բաղիշեցոյ ասացեալ. *Յիսուս որդոյ գոյն*:

*Անեղն Աստուած անճառական,*
*Անհուն, անհաս եւ անսահման,*
*Անուր, աներր, անսկզբնական,*
*Սկիզբն եւ պատճառ էից համայն…:*
Վ. *Ի թուին Հայոց հազար լրման,*
*Վաթսուն եւ վեց ի յաւելման* (1617),
*Ոգեալ եղեւ բանս օրհնութեան,*
*Վարդապետէ Ներսէս անուան:*

*Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ.* 278, *թղ.* 59*ա*—60*բ* (*յամէ* 1655. *Հմմտ. Սարգսեան, Ցուցակ, Բ., էջ* 944): *Երուսաղէմ*, 1455:

3. Ողբ զղջական, խօսք ընդ Աստուծոյ, տաղիւ չափեալ ի նուաստ ոգւոյ Ներսէս վարդապետէ Բաղիշեցւոյ:

*Անսկիզբն անճառ Աստուած,*
*արարող էից ամենայն,*
*Արարեր զմարդն ի հողոյ,*
*եւ ետուր հոգի բանական…:*
Վ. *Ոգեալ բանս ողբերգական,*
*ի թվին սեռիս Հայկազեան,*
*Հազար վաթսուն 'ւ եւթն ամին* (1618),
*Ժամանակս զառն եւ նեղութեան:*

*Ողբալով ի ձէնջ հայցեմ*
*Հոգեւոր եղբարք ամենայն,*
*Յիշեցէք ի Տէր Քրիստոս*
*զմեղուցեալ Ներսէսս անարժան:*

*Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգարան,* *Թ.* 395, *թղ.* 106*բ* (*սկիզբը պակաս*)։ *Էջմ.* *Գեւ.* 281, *թղ.* 1*բ*—2*ա* = *Աճառեան, Տաղարան, թղ.* 470*ա*—471*բ* (A)։ *Սիւրմէեան, Յուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի, Բ.,* *Թ.* 15, 129*ա* (*ԺԸ. դար, Յուց., էջ* 63: B)։ *Երուսաղէմ,* 976, 108*բ*—110*ա* (*ԺԷ*: C)։ 1455։

*Հրա. էջմիածին ամսագիր*, 1944, *Թ.* 11—12, *էջ* 34—35:

4. Նորին Ներսէսի ի խնդրոյ Հայրապետ աշակերտին իւրոյ:

*Աստուած անհաս անեղբարար,*
*Ողորմութեամբ գէակս արար,*
*Նախ զերկնային զօրս կամարար,*
*Օրհնաբանող միշտ անդադար...։*

Վ. *Ի թուականիս մերոյ հազար,*
*Վաթսուն եւ վեց այլ յաւել կայր* (1617).
*Ոգեալ եղեւ բանքս յարմար,*
*Ի Ներսէսէ առն ապիկար...։*

*Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Մատ.,* *Թ.* 278, *թղ.* 60*բ*—62*ա* (1655: *Սարգիսեան, Յուցակ, Բ., էջ* 944)։ *Երուսաղէմ*, 1455:

5. Տաղ ի Ներսէս վարդապետէ, որ հանգուցեալ է ի խրիմ, Աստուածածին:

*Ղարիպն յորժամ արար խորհուրդ գընա-*
*լոյ,*
*Տըրտմեցաւ լալագին վասն ելանելոյ:*
*Տընէն ելաւ լալով հառաչմամբ ողբոյ,*
*Բաժանեցաւ եղբարց եւ շատ սիրելոյ...:*

Վ· *Ի Թվականիս մերոյ սեռիս հայկազան,*
*Հազար վաթսուն եւ հինգ ամին ի լըման*
(1616),
*Տաղս շարադրեցաւ բան ողբերգական,*
*Կենաց ղարիպին եւ վասըն մահուան:*
*Երգող տաղիս այսմիկ, եղբարք պատուա-*
*կան,*
*Այլ եւ աստուածասէրք լսողք միաբան,*
*Յառաջ ի ձէնջ հայցեմ վասն զիս յիշման,*
*Զներսէս անուն նուաստ ոգիս անարժան:*

*Ձեռագիրք՝ Երեւան, Պետ. Թանգարան, Թ.* 395, *Թղ.* 28*ա*: *Վենետիկ, Մխիթ. Մատ. Թ.* 277, *Թղ.* 79*ա*—80 (*Ժէ. դարէ. սկիզբը Թերի. Սարգիսեան, Ցուց., Բ., էջ* 936—937): 278, *Թղ.* 58*բ*—59*ա*[6] (*յամէ* 1655. *Ցուց., էջ* 944): *Տաղարան Սահակեան Ծաւարչ վարդապետի, Թ.* 2, *էջ* 123—128: *Եջմ.* 976, 110*ա* (*Ժէ.*)[7]: 744: 1455:

*Հրտ. էջմիածին ամսագիր*, 1944, *Թ.* 11—12, *էջ* 33—34 (*Ծովական*):

---

[6] *Խորագիրը՝ Ոտանաւոր եւ տաղս ի Ներսէս Բաղիշեցի վարդապետէ ասացեալ է. Յովասափու գրչն:*

[7] *Խորագիրը՝ Տաղ Ղարիպի Մանուկենց Ներսէս վարդապետէ:*

*Ներսէս եպ. Բաղիշեցի հետեւող մըն է գրական պարզ ոճի։ Իր տաղերը թէպէտ չունին բանաստեղծական թռիչք, բայց բղխած են բարի սրտէ եւ են մտածող մտքի եւ զգայուն հոգւոյ արտադրութիւններ։*

*Ճաշակի համար կը ներկայացնեմ Զղջական Ողբը, որ յօրինուած է 2—5—3—5 հայբեններու չափով։*

Ողբ զղջական, խօսք ընդ Աստուծոյ, տաղիւ չափեալ ի նուաստ ոգւոյ Ներսէս վարդապետէ Բաղիշեցւոյ:

*Անըսկիզբն անճառ Աստուած,*
*արարող էից ամենայն,*
*Արարէր զմարդն ի հողոյ*
*եւ ետուր հոգի բանական։*

*Աստուած նորոգող մարդկան*
*ի մեղացըն մեր նախնական,*
*Սրբեցեր զմեզ ի մեղաց*
*եւ լըցեր շնորհօք աւազան։*

*Քանզի չարն անդընդական,*
*որ արար վընաս բազմազան,*
*Մարտեաւ ընդ յիմար հոգւոյս*
*եւ արար զիս մեղաց կոխան։*

Խորագիրը՝ A *Ողբ ի Ներսէս Վ․է առ Աստուած:* BC *Ողբ զղջական խօսք ընդ Աստուծոյ, տաղիւ չափեալ ի (նուաստ ոգւոյ* C) *Ներսէս Վ․է Բաղիշեցւոյ:* 5 *նորոգօղ:* — 11 *հոգոյս:* — 23 *հոգւոյդ:*

*Իմ մեղքն զիս խելաց թափեաց.*
*եւ զրկեաց հոգիս բանական,*
*Լըցաւ յիս Գըրոցըն բան՝*
*մեղքն հանէ զիմաստըս մարդկան:*

*Իմ մեղքն զիս շնորհաց զըրկեաց*
*եւ արար թափուր եւ ունայն.*
*Կորուսի ըզմեծութիւն*
*զհոգեւոր զանձն անապական:*

*Զքանքարն որ ի քէն առի,*
*ի շնորհաց Հոգւոյդ սիրական,*
*Ոչ շահեցուցի ըզնա,*
*կորուսի ընդ վայր զամենայն:*

*Մաքուր եւ պայծառ եղէ,*
*երբ առի ըզշնորհս աւազան.*
*Այժմ աղտեղութեամբ լըցայ,*
*եղկելի եղէ 'ւ անպիտան:*

*Ես մարդ ի պատուի էի*
*եւ լըցեալ փառօք հրաշական,*
*Մեղաւք հանց թափուր եղէ,*
*զերդ յիմար անասուն անբան:*

*Պայծառ ի վառ աստղ էի,*
*լի լուսով էի ի ծագման,*
*Մեղօք իմ նուաղեցայ,*
*չիջաւ լոյս հոգոյս բանական:*

35 չունի *ի*:

Ես ծառ պտղաբեր էի,
 զոր տընկեաց աջդ անեղական,
Յանկարծ չորացայ մեղաւք,
 կու այրէ հուրն անշիջական:

Ես ծաղիկ պայծառ էի՝
 առոգեալ ցօղովդ վերնական,
Յետոյ խորշակաւ հարայ,
 եւ եղէ յոյժ ոտից կոխան:

Անուշ հոտով լի էի,
 որպէս խունկ եւ իւղ օծութեան,
Մեղաւք վերացաւ յինէն,
 եւ եղէ դատարկ եւ ունայն:

Լուսափայլ ոսկի էի,
 եւ պատկեր սուրբ արքայական,
Թաղեցայ ի յաղբ մեղաց,
 ժանկեցայ եւ եղէ խոտան:

Իմ մեղքըն հողմոյ նըման,
 զիս վարեաց յոյժ մոլորական,
Տարաւ քարէ քար երետ,
 որպէս խոխ ի յաւուր աշնան:

Իմ մեղքն թանձր ամպոյն նըման
 չար կարկուտ եբեր ինձ սպանման,
Եհար եւ տանջեաց զհոգիս,
 եւ արար զամէնն խոց եւ զան:

55 երէտ:

Իմ մեղքըն ծովու նըման,
ծաւալէր խիստ արձակ եւ լայն,
Քաշեր զիս ի մէջ առեր
միշտ շարժի պահէ յերերման:

Իմ մեղքըն հըրոյ նըման,
բարկացեր բոցով բորբոքմամբ,
Եւ եկեալ պատեալ է զիս
կու այրէ սաստիկ տոչորմամբ:

Իմ մեղքն ինձ որդունք ծընան,
առաւել քան ըզչար գազան,
Անքուն անմահ են նոքա,
միշտ տանջեն անվըճարական:

Իմ մեղքն ինձ խաւար է ած,
զիս պատեաց մութն ըստուերական,
Զըրկեաց ի յանեղ լուսոյն,
վայ հոգոյս ի յահեղ յատեան:

Եղուկ ինձ հազար բերան,
եմ լըցեալ մեղաւք ամենայն,
Վախեմ սեւերես լինիմ,
յորժամ գաս, Տէր, ի դատաստան:

Յայնժամ նախատինք կըրեմ
առաջի մեծի բազմութեան,
Ծառայ չար եւ վատ լըսեմ,
երբ տանջիմ անեզր յաւիտեան:

73 յամենայն:

Իմ Տէր, քեզ մեղայ գոչեմ,
Հառաչեմ սրտիւ գըղջական,
Աչացս արտասուք թափեմ,
Եւ լալով գամ քեզ յանդիման:

Ի քէն թողութիւն խնդրեմ,
ողորմած Աստուած յաւիտեան.
Յայլ ումեքէ ճար չունիմ
բայց ի քեզ յուսամ անխափան:

Փրկեա զիս նախատանաց,
յանիծից դատապարտութեան,
Եւ ի դըժոխոց չարեաց,
տանջանաց յաւիտենական:

Ի խաւարային բանտէն
լալ աչաց կըրճել ատամանց,
Յանշիջանելի հըրոյն
Թիւնաւոր եւ անքուն որդան:

Յանլուծանելի կապէն
ծըծըմբոյ զարշահոտութեան,
Եւ այլ բազում տանջանաց,
բարեխօս քեզ սուրբք ամենայն:

Ծընող Աստուծոյդ մերոյ
Մարիամ կոյս անապական.
Ընդ նըմին կըցորդելով,
Կարապետըն քո բանին ձայն:

87 Հառաջեմ:

Գըլուխըն մարտիրոսաց
Ստեփաննոս մեծ Նախավըկայն,
Լուսատուն ազգիս Հայոց,
Սուրբ Գրիգոր պետըն պարթեւեան:

Դասք առաքելոց սըրբոց,
Մարտիրոսքըն համանգամայն,
Հայրապետք հանուրց ազգաց,
վարդապետք սուրբք աստուածածան:

Մարտիրոսք բազմաչարչար,
ճըգնաւորք սուրբ հարք ամենայն,
Մաքուր եւ անբիծ կուսանք,
այլ եւ դասք սըրբոց վերնական:

Փառք քեզ մարդասէր Աստուած,
Թագաւոր անեղ անվախճան,
Համագոյ Երրորդութեանդ,
միշտ երկըրպագեմք յաւիտեան:

Ոգեալ բանս ողբերգական
ի Թըվին սեռիս հայկազեան,
Հազար վաթսուն եւթն ամին,
ժամանակս դառն եւ նեղութեան:

Ողբալով ի ձէնջ հայցեմք,
հոգեւոր եղբարք ամենայն,
Յիշեցէք ի Տէր Քրիստոս,
զմեղուցեալ Ներսէս անարժան:

118 հայրք: — 130 եղբայրք:

6· Տարեգրութիւն 1604—1607 տարիներու, ի մասին Հայոց տեղահանութեան:

*Էջմիածնի Թ. 519 ժողովածոյ մըն է այլեւայլ գրուածքներու, որուն բուն գրիչն է Ներսէս եպիսկոպոս Բաղիշեցի: Այստեղ կայ իր մէկ տաղը, գրուած 1610ին: Տարեգրութիւնս զետեղուած է ձեռագրին մէջտեղը, Յիշատակարաններու յատուկ սկզբնաւորութեամբ՝ «Փառք..»: Վերջաւորութեան կ՚ըսուի թէ Յիշատակարանս կը վերաբերի 1607/8 տարւոյն գրուած Աստուածաշունչի մը: Ուստի կամ հանուած է ուրիշ ձեռագրէ մը եւ այստեղ ագուցուած է եւ կամ անկէ արտագրուած է: Ամէն նշան ցոյց կու տայ, թէ գրիչն եւ հեղինակը մէկ են, որ տեղ տեղ սրբագրութիւններ եւ յաւելուածներ ալ ըրած է: Վերջին հատուածը 1608 տարւոյ մասին ուրիշ գրով եւ ուրիշ թանաքով է. թերեւս նոյն գրչէ յետ ժամանակաց աւելցուած: Դժբախտաբար չունիմ այժմ ձեռքիս տակ ձեռագրին մանր յիշատակարանները, որոնք կրնային Ներսէս եպիսկոպոսի կեանքի պարագաներու նկատմամբ տեղեկութիւններ բովանդակել:*

*Շատ հետաքրքրական են հոս աւանդուած տեղեկութիւնները Հայոց տարագրութեան մասին, որոնք ականջալուր գրի առնուած են: Թէ հեղինակը Բաղիշեցի մըն է, կը տեսնուի 1607 տարւոյ հաղորդագրութիւններէն:*

*Արտագրութիւնս կատարուած է 1925ին*

էջմիածին: Օրինակութեանս մէջ մանր յապաւումներ կատարած եմ երեք տեղ, ողբախառն տողեր:

## Տարեգրութիւն:

Փառք... Արդ ի թվականութեան տումարիս Հայկազան ցեղիս ՌԾԳ. թագաւորն Պարսից Աբաս անուն զօրացեալ եւ յառաջ եկեալ էառ զԴավրէժ քաղաքն որ ի վաղուց հետէ հանեալ էր ի նոցանէ ոմն ոստիկան Օսման անուն հրամանաւ սուլտան Մուրատ թագաւորին Տաճկաց: Եւ անդէն չու արարեալ մեծ եւ լայն բանակաւ եւ բազում զօրօք եկեալ յամենազօր երկիրն Այրարատեան պաշարեաց զդղեակն նոցա, ութ ամիս. եւ էառ զնաց, քանզի ոչ ոք եկն ի յօգնականութիւն խասբելոցն. վասն երկպառակութեան եւ անմիաբանութեան զօրաց սուլտանին Տաճկաց: Վասն չարութեան նոցա յարոյց Տէր սատան նոցա. ընդ ամենայն տեղիս եղուզակ էին եղեալ իշխանքն եւ զաշխարհն աւերէին. սովն եւ նեղութիւն ի յիւրեանց երկիրն էին ձգեալ: Իբրեւ յաջողեցաւ գործ թագաւորին Պարսից՝ նստաւ անդէն մինչեւ ի զարնանային եղանակն եւ ի շնչել հողմոյն հարաւոյ. եւ ապա ելեալ ի հովանոց լերինք Գեղամայ եւ Գանձակայ որ է Գանջայոյ՝ զամառնային եղանակն անդէն անցոյց:

Իսկ ի մերձենալ աշնանային աւուրց զաւրավարն Տաճկաց Ջղալ օղլի անուն որ էր ի

զարմէ Թագաւորաց Փռանկաց, հրամանաւ Ահմատ սուլտանին, որ էր հասակաւ յոյժ մանուկ եւ տղայ, գումարեաց զօրս բազում եւ դիմեաց առիւծաբար ի վերայ Շահ Աբասին ի յԱյրարատ գաւառն։ Իբրեւ ետես նա թէ ոչ կարէ զդէմ ունել նորա պատերազմաւ, հանդրուանէ ի հանդրուանս փախչէր. եւ զվայրքն հրձիգ առնէր, զի մի օթեւան լիցի զօրացն Տաճկաց, կամ զրաստուց նոցա կերակուր եւ դարման։

Այլ եւ հրաման ետ (Շահն) անօրէն զօրաց իւրոց թէ զազգն Հայոց վարեցէք յերկիր Պարսից. որպէս ի հնումն Նաբուգոդոնոսոր զհրէսն Իսրայէլ ի Բաբելոն։ Որք սկսան զառն հարուածով եւ սաստիկ ճեպով ի յերկրէն Շիրակուանից եւ Կարսայ մինչեւ ի Գողթան գաւառն զայնքան միջոցն ամայի դարձուցին ի բնակչաց։ Ի ձրմրոնային աւուրքն հանէին ի տանց եւ ի բնակութեանց. զգեօղ եւ զքաղաք, զվանք եւ զանապատ, զվարդապետ եւ զեպիսկոպոս, զքահանայ եւ զժողովուրդ, զազատորդի եւ զգռեհիկ, արկեալ առաջի երիվարաց մեծաւ տագնապաւ սուր ի վերայ շողացուցեալ սաստիկ ստիպով ճեպէին զի թշնամին զկնի էր նոցա, այս ինքն զօրքն Տաճկաց։ Աւա՛ղ աղէտիս, ո՛հ տառապանացս, եղուկ դառնութեանս, զի յորժամ ի տանէն ի դուրս վարէին զմարդիկ, հուր լուցեալ այրէին զտունն լի ստացուածով. իսկ տերանց յետս հայեցեալ զբոցն բարձրացեալ

տեսանէին. յայնժամ ճիչ բարձեալ լային զո-ւոյին եւ հող զգլխով արկանէին, օգնել ինչ ոչ կարէին, զի սաստիկ էր հրաման Թագաւորին: Այլ եւ ի ճանապարհին զոմանս սպանանէին, զոմանս ջլատէին, ի գրկաց մարց առեալ զմանկունս զքարի հարկանէին զի թեթեւ լիցի գնալն: Դարձեալ որպէս պատմեաց մեզ ոմն քրիստոնեայ մշակ գոլով ի բանակէն Տաճկաց այնր ճանապարհին հետեւող, թէ Հանդիպեցանք ի հովիտ մի. բազում կանայք սպանեալ էին անօրէն զօրքն Պարսից. մանուկ մի անդեայ անդանէր ի վերայ մեռեալ մօրն, առեալ ի բերան զստինս դիէր եւ յետս դառնայր եւ լայր. ի յաճախ ծծելոյն կաթն յարիւն էր փոխեալ. զոր տեսեալ ամենայն բանակին աղիողորմ արտասուեցին. եւ զմանուկն բերեալ ապրեցուցի եւ, ասէր:

Այսպէս դառն տանջանօք հասուցին ի Ջուղայ: Եւ ապա զբնակիչս Ջուղայոյ հանին ի գեղեցկաշէն եւ ի բազմածախ յարկաց իւրեանց մեծաւ հառաչանօք, վայ եւ եղուկ կարդալով. անդ էր տեսանել զողբս եւ զարտասուս նոցա. զի ի յանկարծ եւ յեղակարծ ժամու եղեն անտուն եւ անտեղ, անյարկ եւ անօթեւան, օտար եւ պանդուխտ, նժդեհ եւ տնանկ, մանաւանդ զի առաջի աչաց իւրեանց տեսին զբազում ծախիւք շինեալ եւ զարդարեալ ապարանս իւրեանց այրեցեալ եւ հրդեհեալ, ըստ մարգարէին թէ «Քաղաք ձեր

հրձիգ, երկիր ձեր աւերակ. զաշխարհ ձեր առաջի ձեր օտարք կերիցեն». դարձեալ թէ «Շինեսցեն տունս եւ մի բնակեսցեն ի նմա. տնկեսցեն այգիս եւ մի կերիցեն զպտուղ նորա եւ մի ուրախասցին գինով նորա»: Այլ եւ ղասք քահանայից ողբալով ընթանային ի դրունս եկեղեցեաց եւ տային զհրաժարական ողջոյնն եւ արտասուօք թանային զսեմս սանլով. Կացիր ի բարի եւ ի խաղաղութիւն, մայր մեր սուրբ եկեղեցի, ծնօղ հոգեւոր. զի որդիքն Եղամայ եւ Քետուրայ գայլքն գիշախանձ ցրուեցին եւ քայքայեցին զգառինս քո. դժուարին է բաժանել մանկանց ի ծնողաց. այլ բուռն է հարկն բռնաւորաց: Այսպիսի զրկախառնեալ ողբային, մինչ ի ձայնէ նոցա քարանձաւքն հնչէին եւ որոտային. եւ իբր բարառնարար բերանացեալ մօրն լուսոյ, որպէս երբեմն հինն Սիոն, տայր պատասխանի եւ ասէր. Գնացէք, որդեակք իմ, գնացէք, զի ես մնացի աւերակ:

Եւ ապա զինուորացն զամենեսեան ժողովեցին ի յափն Երասխայ, եւ զի սակաւ էր նաւն ի յանցուցանելն, քեցեցին զամբոխն աշխարհաժողով եւ ի գետն մղեցին. եւ սակաւ ջուրն լինէր նոցա գերեզման եւ յուղարկաւոր: Իսկ զինուորացն տեսեալ թէ ի զուր մեռանին, իբր թէ մարդասիրութիւն ցուցեալ առեալ զգեղեցկատես տղայս քրիստոնէից յերիվարս իւրեանց՝ խաբելով զծնօղս թէ զգետն անցուցանենք, գնային յո եւ գնային

եւ ի յետս ոչ հայէին. զոր տեսեալ ծնողացն ուշաթափեալ եւ յերկիր անկեալ թաւալէին, զգլուխն զգետնի հարկանէին, սաստիկ կսկծմամբ աղաղակէին եւ ոչ լինէր օգուտ զի գետն ի միջի էր: Եւ էր որ ծնողքն մեծաաշխատութեամբ ի գետն անցուցանէին զորդայն եւ ի վերայ այլոցն դարձեալ եւ միջագէտ եղեալ, զինուորացն որ յայնկոյս՝ իբրեւ զգայլ ի վերայ յարձակեալ յափշտակեալ ի ձիս իւրեանց փախչէին, ոչ կրելով երկիւղ ի թագաւորէն. զի չփոթումն մեծ էր ի մէջ նոցա ի յահէ թշնամեաց, յորմէ փախչէին դառնացեալ ոգով: Ապա յուսահատեալ հարց եւ մարց մանկանց «ասէին լերանց թէ անկերուք ի վերայ մեր եւ բլրոց թէ ծածկեցէք զմեզ». դարձեալ «երանէին որովայնին որ ոչ յղացան եւ ստեանց որ ոչ դիեցոյց»:

Եւ մինչ զանցանելն վճարեցին, զրեթէ ի հարիւրէն եւ ի հազարէն մինն հազիւ կիսահեղձս ապրեցաւ. զնոսա առաջի արկեալ փութանակի խաղացուցին ի Շոշ քաղաք որ է Ասպահան յերկիրն Իրանայ. որք արտասուօք ոռոգանէին զճանապարհն եւ գնային. ծերքն հիւանդաքայլ ոտիւք, տարակոյս տկարութեամբ ի հնութենէ ժամանակին, երիտասարդք փոխանակ ուրախութեան եւ ձայնիւ երգոյն ի մռնչիւն լալոյ հեծեծէին. Նորասէր առագաստի հարսն եւ փեսայն փոխանակ ցնծութեան եւ խրախութեան զգուժիւ զգածեալ եւ ծանրացեալ, ծարրաէր [ի լուս.

սընդորակէր] եւ ծնկակէր, ամբածածուկ քողածիգ պարկեշտ կուսանքն եւ օրիորդքն հոլանի եղեալ գիւղաթո(ւ)րմ [ի] ցցունս եւ վարսս յանդգնաբար մերկացեալ եւ խայտառակեալ, հոլանունդ եւ փափկասուն գեղ ամօթղած եւ ողջախոհ կանանց առաջի անօրինացն բացեալ եւ ծանակեալ, տապով արեւուն եւ արեգական սեւացեալ եւ ի փոշոյ [յ]ուղոյն այլադունեալ. լեզու դիեցիկ մանկանց ի քիմս կցեալ եւ շրթունք պապանձեկայց ի քաղցոյ եւ ի ծարաւոյ երիթամածեալ...:

Իբրեւ այս այսպէս եղեւ եւ ազգն Հայոց ցրուեցան ի մէջ Պարսից, ոմանք փախստեայ լեալ յամուր տեղիս Թաքչէին: Յորմէ ծանուցեալ անօրինաց հետամուտ եղեն նոցա, խաբկանօք ի վայր բերեալ եւ անողորմ կոտորեցին. յորոց միջի նոցա էր Մանուէլ եպիսկոպոս Հայոց Թառոյ եւ Աստուածատուր ի Գեղարդեան վանից եւ տէր Եղիայ ի յԵրեւան քաղաքէ այր բարի եւ առաքինի. եւ այլ բազումք ընդ նոսա, զոր մեր ոչ գիտելով ի յանուանէ ոչ գրեցաք. բայց միայն տեառն Աստուծոյ են գիտելի եւ ի գիրս նորա ամենեքեան գրեցան:

Դարձեալ պատմեմ ձեզ եւ այլ բան աղէտի եւ ողբերգութեան: Ի յամուր լերինք Գառնոյ եւ Այրիվանից եւ Վանստանայ բազում ժողովուրդ դաւղեալ եւ թաքուցեալ էին. մինչդեռ ի միում բարձրաբնակ այրի ամրացեալ յապահով եւ անհոգ նստէր մասն

ինչ ի ժողովրդենէն, յանկարծ տեսին որ անօրէն զօրքն Պարսից սուսերամերկ ի մէջ նոցա թափեցան եւ սկսան զպարսկական սուրն ի գործ ածել: Իսկ քրիստոնէիցն ի յահէ սրոյն կամաւ զինքեանս ի վայր արկին յանհուն բարձրութենէն արք եւ կանայք, ծերք եւ տղայք: Յայնժամ մի ոմն ի միջի նոցա, երաժիշտ եւ քաջ փողահար, աղաչեաց զգլխաւորքն դադարել ի կոտորելոյն. եւ ինքն եղեալ ի բերան ըզգուռնան ողորմ ձայնիւ երգեաց զդամբանական եւ զգերեզմանական ողբն ի վերայ նոր մեռելոցն. որ ի յատակ բարանձաւին ոմանք մեռեալք եւ ոմանք ի յելս հոգւոյն ի յարեան ճապաղիս թաւալեալք ջուր խնդրէին եւ ոչ ոք էր որ արբուցանէր նոցա: Զոր տեսեալ անօրինաց ձեռն ի ծնօտի եղեալ աղի ողորմ լացին, մանաւանդ զի ձայն փողոյն զնոսա ի յարտասուս շարժեաց. եղեւ ի նոսա զղջումն մեծ յոյժ, սորջացան ի միտս իւրեանց եւ ասացին. Թէ Զինչ բարութիւն գործենք որ ի յայս խղճէս եւ յարենէս ապաւէ զմեզ աստուած: Իսկ քրիստոնեայք մարտիրոսական մահուամբ ի Քրիստոս կատարեցան. եւ պսակակից եղեն սրբոց մարտիրոսաց:

Դարձեալ յորժամ Այրարատեան երկիրն անտիրացաւ, զունդ մի ելուզակ, զոր Ջալալի ասեն, ի Տաճկաց կողմանէն եկեալ բնակեցան անդ եւ բազում ոճիրս չարեաց գործեցին ի սակաւ ժմացեալս. գիշերազնաց եղեալ գնէին

*եւ որոնէին, եթէ ո՞ւր ուրեք գտանի մարդ. ի վերայ հասեալ կոտորէին եւ զտղայս գերէին, զտունս եւ զեկեղեցիս աւար հարկանէին մինչեւ զամն ի յերկիր ձգեցին: Ապա եղեն մարդակեր. կալեալ եպիսկոպոս մի ի Մօղնոյ վանից՝ խորովեցին եւ կերան: Դարձեալ զօրքն Տաճկաց որ ի յԱյրարատ կամեցան գիշերագնաց լինել եւ յաւարի առնուլ զերկիրն Գեղամայ եւ կոտորել զորդիս Մելիք Շահնազարին. զոր իմացեալ ծերն Շահնազար առաքեաց զորդին իւր Զաւրիրէկն քրիստոնեայ զօրօք ի վերայ նոցա եւ կոտորեաց զնոսա մեծաւ քաջութեամբ: Եւ տարեալ զգլուխս նոցա եդ առաջի Պարսից արքային. յորմէ ուրախացաւ արքայն. եւ ետ նմա իշխանութիւն տիրել ի վերայ զաւառին իւրոյ: Իսկ Տաճկաց կրկին զրոհ տուեալ գնացին ի վերայ Գեղամայ. յորմէ ոչ զանգիտեալ քրիստոնէից՝ ետուն պատերազմ ընդ նոսա. բայց յաղթեցան եւ փախեան վասն ծովացեալ մեղաց մերոց: Եւ մտին Տաճիկքն ի յերկիրն բազում անմեղ արիւն հեղին. եւ ո՞վ կարէ պատմել զչարիք զոր նոքա գործեցին. ի յողն կանանց դնէին ծանր չալակ. եւ յոչ տանել ջլատէին եւ սպանէին:*

*Այլ եւ ոմանք ի Պարսից կողմանէն աւարառու դարձան ի նոյն երկիրն Այրարատեան եւ ոչ զերծաւ ի նոցանէ դարանք վանօրէից. քանզի ի ձեռս ածեալ զքրիստոնեայս չարչարէին եւ նոքայ ցուցանէին, որպէս զդարան*

Աղջոց վանից յայտնեցին, ուստի հանեին զաջն սրբոյն Արիստակեսի հայրապետին, եւ տարան ի չահաստան Թուրքէզ․ յորմէ հանդիպեալ ումն վաճառական Բաղիշեցի, այր մեծահարուստ, ետ գինս եւ թափեաց ի յանօրինաց եւ եբեր ի քաղաքն իւր ի Բաղէշ, յորմէ տուաւ աշխարհին մերոյ գանձ անկողոպտելի։ Եւ թէպէտ այս միոյս արժանացան քրիստոնեայք, այլ բազում այն ինչ էր որ կորեաւ ի սրբութեանց․․․։ Այս գործ առաջին ամին զոր սակաւ մի համառօտ գրեցաք։ Այսուհետեւ եկեսցուք ի յերկրորդ ամ։

Դարձեալ ի գալ երկրորդ ամին, զօրավարն Տաճկաց իբրեւ ետես եթէ հալածեաց զԹագաւորն Պարսից, սրտապնդեալ կրկին զօրս ժողովեաց գնալ յինքն կորզել զՊարսկաստան․ իբրեւ եհաս ի սահմանս Ատրպատականի, ընդ առաջ եղեւ նմա Արտա Թագաւորն Պարսից անհուն բանակաւ․ եւ հարին զմիմեանս զօրքն Պարսից եւ Տաճկաց ահաւոր պատերազմաւ ի դաշտն Թաւրիզոյ։ Ուստի պարտեցաւ Ջղալօղլին եւ եղեւ փախստական ի գիշերի, թողեալ զբանակն հանդերձ կահիւք եւ կարասիւք, մազապուրծ ամօթալի ի յետս դարձաւ լքեալ եւ թողեալ ի խնամոցն Աստուծոյ, փոխանակ զի յիւրեանց երկիրն ոչ խնայեցին, այլ քանդեցին եւ աւերեցին ի գնալն եւ ի դառնալն։ Վա՜յ այն աշխարհին որ նոցա ոտն կոխեաց։ Զի զտառապեալ քրիստոնեայս յորսայս արկանէին եւ գերանս

ծամէին, թէ Մեզ ինչք եւ ապրանք ցուցէք. եւ այնպէս զառն մահուամբ սպանանէին: Եւ զայլ ազգի ազգի զժնդակ տանջանս զոր նոքայ ընդ քրիստոնեայս անցուցին, ո՞վ կարէ պատմել կամ ընդ գրով արկանել. զի ըստ հրամանին Յիսուսի, թէ «Թագաւորութիւն բաժանեալ յանձն աւերի». այնպէս եղեւ թագաւորութեան Տաճկաց: Որք անապատ արարին զաշխարհս ամենայն. եւ եղեւ սով սաստիկ ընդ ամենայն տեղիս, մինչ զի զմեռեալս ի գերեզմանաց հանեալ ուտէին. ծնօղք զծնունդս իւրեանց ուտէին. ըստ մարգարէին թէ «Ձեռք կանանց ողորմածաց եփեցին զմանկունս իւրեանց եւ կերան». զշուն եւ զկատու եւ զամենայն պիղծ կենդանի ուտէին յաւուրս պահոց. մոլութիւն եւ կատաղութիւն որովայնին ետ մոռանալ զբանականութիւն. եւ եղեն որպէս զգազան ի դարան մտեալ զմիմեանս ուտային. յորժամ մայրն ի տանէն ելանէր ընդանիքն զտղայն զենէին. եկեալ մայրն՝ զեփեալ միսն առաջի դնէին. եւ նա ուտէր յանգէտս. եւ ապա իլեալ զտղայն որոնէր եւ խնդրէր. ի կարի տագնապիլ՝ ասէին ընդանիք. Ոչ ապաքէն այն էր որ զ(մ)իս կերար: Զփտեալ ոսկր գտեալ ի փողոցի չփէին ընդ ափ եւ ուտէին. եւ ապա մեռանէին: Սուգ ա՛ռ երկին եւ ողբա՛ երկիր, ճիչ բարձէք լերինք եւ բլուրք հանդերձ գազանօք եւ անասնօք եւ ամենայն թռչնաւք, զի ոչ է լեալ այսպիսի սով զոր մեք տեսաք.

քանզի լիտր ալիւր երեք դռօշ է ի յԱրզրում քաղաք: Զմարդոյ միս եւ զիւղ վաճառէին. մինչեւ իմացաւ իշխան քաղաքին՝ խեղդեաց զարսն, որ զայս առնէին. բայց ոչ կարաց խափանել:

Եւ ապա յետ այնորիկ ցրուեցաւ ազգս Հայոց յերեսաց սովուն ի Պարսկաստան, ի յԱսորեստան, ի Գուրջըստան, մինչեւ հասին ի Ծորճէն, ի յԱփխազ, ի Կաֆայ: Արհամարհեաց հայր զորդի, մայր զդուստր, եղբայր զեղբայր, Թողին արք զկանայս. կանայք մոռացան զաղէտ ծննդոց իւրեանց. ոչ թէ մասնաւոր մի երկիր, կամ երկու, այլ ընդհանրական, սկսեալ ի Դրանէն Հոնաց եւ Ալանաց եւ ի լեռնէն Կովկասու մինչեւ ի Պոնտոս եւ յԵփեսոս եւ ի Կապպադովկիայ եւ մինչեւ ի Դամասկոս եւ ի Սիս եւ ի Միջագետս: Բոլոր Հայաստան ամենայն ցիր եւ ցան եղեն. ոմանք բըքահեղձ, ոմանք գետատար, ոմանք սովամահ, ոմանք գազանակեր, ոմանք սրով փողոտեալ, օրինօք ոչ խնկեալ եւ պատանեալ, քահանայիւք եւ սարկաւագօք ոչ հաղորդեալ եւ ամփոփեալ, այլ զթաղումն իշոյ առին. իբրեւ զգէշ գազանաց ի փողոցի անկեալ ըստ մարգարէին. «Եւ տեսցեն զոսկերս արանցն յանցուցելոցն առ իս». Ասորեստան եւ Պարսկաստան եւ երկիրն այլազգեաց եղեն Հայոց գերեզման...: Այս գործ երկրորդ ամին:

Դարձեալ ի գալ երրորդ ամին իբրեւ

եւս թագաւորն Պարսից թէ ջախջախեալ եղէգն է թագաւորութիւն Տաճկաց, զօրք ժողովեաց պաշարեաց զԳանձակ եւ էառ զնա եւ կոտորեաց զզօրս Սուլտանին. եւ անտի չուեալ եմուտ ի Վրաց տուն. էառ զՓայտակարան քաղաք, որ է Տփղիս, եւ զԴումանիս եւ զԼօռի եւ ոչ կոտորեաց զնոսա, զի կամաւ հնազանդեցան: Եւ յոյժ ուրախացաւ թագաւորն Վրաց Գօրգի, զի կարի նեղութիւն էր ի ձեռս Տաճկաց. քանզի զծերացեալ հայրն նորա ըմբռնեցին եւ տարան ի Կոստանդնուպօլիս եւ այլ ոչ եկ անտի: Արին եւ յաղթող Շահ Աբաս քինախնդիր եղեւ աներոյն իւրոյ, զի էր փեսայ Սիմոնի արքային Վրաց:

Դարձեալ ի գալ չորրորդ ամին անցաւ զԿուր գետն թագաւորն Պարսից անհուն զօրօք եւ եմուտ ի յերկիրն Ալանից եւ Գուգարաց եւ Ուտէացւոց եւ խսարեաց զամուր զղեակն Շամախոյ եւ էառ զնայ եւ կոտորեաց զզօրս որ անդ էին թիւով մետասան հազար, զՄուղրիան էարկ առաջի մարդակեր շանց եւ լափեցին[1]. զիշխան բերդին ետ ի ձեռս մարդակեր արանց, զոր Ջիկլիան ձայնեն, եւ ցտեալ ատամօք կրծեցին զոսկերս նորա. վասն զի զբազումս սպանեալ էր ի զօրացն արքունի. զորոց ունէր զխէթն ի մտի եւ յոյժ զայրացեալ էր արքայն: Եւ աւերեաց բոլոր աշխարհին մինչեւ ի Դարբանդ

---

[1] Լուսանցքի վրայ. «Իւրաքանչիւր զիւրք ի զիրկ իւր»:

քաղաքն եւ ի ծոցն Կարից, զոր ի վաղուց հետէ հանեալ էր ի նոցանէ զօրավարն Տաճկաց Լալա փաշայ անուն, հրամանաւ սուլտան Մուրատին, զոր վերոյ գրեցաք: Բայց ի յայս խռովս եւ աղմկիս բազում քրիստոնեայք մեռան ի յաշխարհին այնմիկ սրովն անօրինաց, որոց յիշատակն օրհնութեամբ եղիցի:

Դարձեալ ի ՌԾԷ թվականին Հայոց արքայնեակն սատանայի Ամիրգունա խան առաքեաց զօրս զաղտագողի ի վերայ ծովու բոլորիս եւ գերեցոյց զԹզնունիս եւ զբազումս կոտորեաց զքահանայս եւ զժողովուրդս: Աւաղ...: Այժմ ամենայնի պատճառ եղեւ մեղքն մեր եւ Թագաւորն Պարսից եւ ելուզակքն Տաճկաց: Այլ եւ անաւրէն իշխանն Շարաֆ, որ է ազգաւ մար, տէրն Ճըզիրայու, որ սրով եւ հրով եւ աւարառութեամբ աւերեաց զԲրդրատան եւ զքրիստոնեայս արար ընչաթափ եւ սովալլուկ:

Արդ ի յայս բազմավրդով սասանութեան դառն եւ դժար եւ անբարի ժամանակիս եղեւ գրաւ աստուածաշունչ հին եւ նոր Կտակարանիս:

## 20. ՀԱՅՐԱՊԵՏ ՂՈՒԼԹԻԿՑԻ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ԵՊԻՍԿՈՊՈՍ

## ԳՐԻԳՈՐ ՄՇԵՑԻ, ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ԵՊԻՍԿՈՊՈՍ

Ղուլթիկ Բաղէշի գիւղերէն մէկն է: Այս տեղ ծնած է Հայրապետ: Հայրը կը կոչուէր

Պարիշախ եւ մայրը Շաղբէկ. եղբայրներէն կը յիշուին տէր Աբրահամ եւ Սահակ։

Հայրապետ աշակերտած է Խնդրակատարի դպրոցի մէջ Ներսէս Բաղիշեցւոյ։ Իր տաղն՝ Աստուած անհաս գրած է Ներսէս 1617ին Հայրապետի խնդրանքով։

Իսկ 1623ին երբ Ներսէս եպիսկոպոս մեկնեցաւ Բաղէշէն, իրեն ընկերացաւ Հայրապետ, հաւանօրէն տակաւին աշակերտ։ Այս միջոցին ստացած ըլլալու է Հայրապետ գաւազանի իշխանութիւնը։ Ներսէս վախճանեցաւ Կաֆայ. Հայրապետ վերադարձաւ (1628էն յառաջ) Բաղէշ, բերելով իրեն հետ եպիսկոպոսին կողմէ արծաթեայ սկիհ մը նուէր Խնդրակատար Ս. Աստուածածնի։

Հոս ի Բաղէշ կ'աշակերտի իրեն Մշեցի Գրիգոր երէց (1628—1634°)։ Սա վարդապետական գաւազանը առնելէ ետքը, իր ուսուցչին հետ կը մեկնի Էջմիածին, ուր Փիլիպպոս կաթողիկոս երկուքն ալ եպիսկոպոս կը ձեռնադրէ. Գրիգոր՝ կ'օծուի Տարօնի Եղրդուտ վանքին եպիսկոպոս. Հայրապետ, հաւանօրէն Խնդրակատարի։ Յիշատակագիրը կը գրէ պարզապէս, թէ Փիլիպպոս կաթողիկոս (1634—1655) «ձեռնադրեաց զերկուսին եպիսկոպոս։ Եկեալ նոցա ի Ղուլթիկ, Հայրապետ եպիսկոպոս փոխեցաւ առ Քրիստոս»։

Հայրապետ եպիսկոպոս մը կը յիշուի 1634ին. նո՞յն է սա Ղուլթիկեցւոյ հետ.

«Վերստին նորոգեցաւ Սաղմոսարանս եւ Աղօթամատոյցս ձեռամբ Հերապետ եպիսկոպոսին ի վայելումն տէր Խաչատուրին, իւր որդւոյն տէր Աբրահամին, թվին ՌՁԳ. աւգոստոսի ԻԶ. նորոգեցաւ...» (Ա. արքեպ. Սիւրմէեան, Ցուցակ հայերէն ձեռագրաց Եւրոպայի..., էջ 3ր):

Գրիգոր եպիսկոպոս գնաց Եղրդուտի վանքը իբրեւ առաջնորդ: Բացաւ այն տեղ դպրոց եւ ունեցաւ աշակերտներ: Ինքը կը յիշէ անոնցմէ երկու Յովհաննէսներ: 1648ին այցելած է Բաղէշ եւ հոն ծաղկել եւ կազմել տուած է Աստուածաշունչ մը, որ գրուած էր իր յանձնարարութեամբ: Յառաջ կը բերեմ իր գրչէն երկու Յիշատակարաններ: Առաջինը գրուած ըլլալու է 1633ին ի Բաղէշ: Երկուքին մէջ ալ երախտագիտական խօսքեր կան Հայրապետ Ղուլթիկեցւոյ յիշատակին:

«Արդ ես Գրիգոր բանի սպասաւորս նուաստս եւ յետինս ի վարդապետաց, յերկրէն Տարօնոյ, ի քաղաքէն Մշոյ, ամուսնացեալ ըստ կարգի աշխարհի եւ կոչեցեալ ի կարգ քահանայութեան: Ի ՌՀԶ (1627) թվին փոխեցաւ կին իմ երկու որդովք առ Քրիստոս: Եւ իմ ապաւինեալ առ սուրբ Հոգին՝ հետեւեցայ ընթերցման գրոց եւ եկեալ աշակերտեցայ սուրբ եւ երջանիկ րաբունապետին Հայրապետ վարդապետին Ղուլթըկեցոյ, կացեալ առ ոտս նորա եւ ի նմանէ ընկալայ զաւազան եւ աստիճան վարդապետու–

թեան․ եւ մինչդեռ յաշակերտութեան էի, ցանկացող եղէ այսմ գրոց եւ եառ գրել զսա ի հալալ արդեանց իմոց ի վայելումն անձին իմոյ»: Կը խնդրէ յիշել «զիս զԳրիգոր բանի ըսպասաւորս եւ զծնաւղս իմ զԹաթուլն եւ զԽանումն, եւ զկողակիցն իմ զըԹէհանն եւ զորդիքն զԹաթուլն եւ զՊարսամն, եւ զեղբայրն իմ զՄիրզէն...»:

«Դարձեալ զհոգեւոր հայրն իմ եւ զուսուցիչն զտէր Հայրապետ րաբունապետն եւ զհայրն իւր զմահդասի Պարիշախն եւ զմայրն իւր զՇաղրէկն եւ զեղբարքն իւր զտէր Աբրահամ կրօնաւորն եւ զՍահակն եւ զկողակիցն իւր հանգուցեալ զԴաւգալն եւ զԽանազէն եւ զորդիքն զՆազարն, զՅովանէսն, զՍարգիսն եւ զՄարտիրոսն, եւ զամենն իմ զԳրիգորն... նաեւ զհոգեւոր եղբայրն իմ զԴիլաքն... որ գրոցս գրելոյն եղեւ աւժանդակ»: Գրիչն է Մեսրոպ դպիր, որդին Աւետիսի եւ Ազամաթի․ կը յիշէ նաեւ «զհոգեւոր հայրն իմ զտէր Սահակ վարդպետն» (Էջմիածին, Թ․ 146․ Մաշտոց Աստուածաշունչի):

Գրիգոր վարդապետ գրել տուած է Խաչատուր սարկաւագի, որ էր «տեղեաւ Տիգրանաւ, որ ասի Համիթ», Աստուածաշունչ մը, զոր 1649ին կը ծախէ Մեսրոպ Վ․ Բաղիշեցի: Յիշատակարանին մէջ տալով համառօտ Գրիգոր վարդապետի կենսագրութիւնը, կը գրէ ի մէջ այլոց․ կնոջ մեռնելէն ետքը «ինքն հետեւեալ ընթերցման սուրբ գրոց եւ եկեալ

աշակերտեցաւ սուրբ եւ երջանիկ րաբունւոյ Հայրապետ վարդապետի Ղուլթիկցւոյ, կացեալ առ ոտս նորա եւ ի նմանէ ընկալեալ զգաւազան: Եւ նորա տարեալ զնա ի մայրն լուսոյ Ս. Էջմիածին առ խստակրօն եւ ձգնազգեաց կաթողիկոսն Փիլիպպոս, որ ձեռնադրեաց զերկոսինն եպիսկոպոս: Եկեալ նոցա ի Ղուլթիկ, Հայրապետ եպիսկոպոս փոխեցաւ առ Քրիստոս. եւ Գրիգորին գնացեալ ի վանքն Յովհաննու, որ եւ կոչեցաւ առաջնորդ նմին, որ եւ հովուէր զհօտն բարիոք եւ առաքինի վարուք: Նորոգեաց զվանքն որ էր հնացեալ, զԳումբէթն, զՍադերն, զամենայն տաղաւարսն, զխցերն, զսուրբ Նշանն Արձուաբեր, զԱջն Յովսէփայ Արիմաթացւոյն արծաթապատ զարդարեաց եւ այլ բազում արդիւնս. Պօղոս գիրք մի եւ Սողոմոն եւ Տեսիլն ընդ նմա ոսկւով զարդարեալ. նաեւ զգեստ պատարագի զերագոյն եմիփորոնաւ եւ այլ բազում յիշատակս եւ զԱստուածաշունչ գիրքս նոքօք հանդերձ ստացաւ ի հալալ արդեանց, եդ յիշատակ անջինջ ի Դուռն Ս. Յովհաննու որ ի Տարօն գաւառի ի թվին ՌՂԵ (1646) ի հայրապետութեան Տ. Տ. Փիլիպպոս կաթողիկոսի...»:

«Յիշեցէք եւ ողորմի ասացէք ինձ անարժան Գրիգոր բանի սպասաւորի, առաջնորդի Եղրդուտայ վանիցն: Յիշեցէք զմիաբանք սուրբ ուխտիս զտէր Մարտիրոս վարդապետ, զտէր Սուքիաս եպիսկոպոս, զտէր Գրիգոր

հերապետն, պաշակերտն իմ զերկու տէր Յովհաննէսեանք, եւ զսարկաւագունս Կատուրիկն… (կը յիշուին եւ այլ անուանք աշխարհականաց) նաեւ զԱպուկ աշխատաւորն վանիցս» (Գեղամ Տէր–Կարապետեան, Ձեռագիրք Տարօնոյ․ անտիպ)։

21․ ԲԱՐՍԵՂ Վ․ ԱԹԱԽՑԻ
ԱՌԱՋՆՈՐԴ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԻՆ ՅԱԹԱԽ

Աթախ քաղաքն եւ գաւառը Դիարբեքիրի նահանգին մէջ, ծննդավայրն եղած է Բարսեղի․ որուն ծնողք եղած են Պետրոս քահանայ եւ Վարդ–սուլտան․ կը յիշուին եղբայրներէն Խաչատուր եւ Յովհաննէս։ Աշակերտած է Բաղիշեցի Կարապետ վարդապետին հաւանօրէն Բաղէշի Խնդրակատարի մէջ։ Վարդապետական իշխանութիւնը առնելէն ետքը վերադարձած է Աթախ եւ կարգուած առաջնորդ գաւառին։

Ունինք իր մասին հետեւեալ յիշատակարանները։

1․ «Արդ գրեցաւ, ծաղկեցաւ ոսկենկար մատեանս Աստուածաշնչոյ համառօտ տաոմաթիւք, Թվ․ ՌԿԸ (1611) եղեւ չարժ ի կողմանս Համիթ քաղաքին։ Գրեցաւ ընդ հովանեաւ Ս․ Կիրակոսի եւ Յուղիտայի ձեռամբ գրչի Մինասայ։ Յիշեցէք զտէր Յովհաննէս գրչապետ եւ զհոգեւոր հայրն Աթխայ գաւառին զԲարսեղ բաբունապետն․ ամէն» (Գե–

դամ Տէր–Կարապետեան, Ձեռագիրք Տարօ–նոյ)։

2. «Արդ գրեցաւ եւ ծաղկեցաւ ոսկենկար մատեանս Աստուածաշունչ համառօտ տաղ–մաթուխք ի թվ. ՌԿ (1611) ի դառն ժամա–նակի, յորում նեղիմք ի հարկապահանջու–թենէ, յԱմիթ, ընդ հովանեաւ Ս. Կիրակոսի, ձեռամբ Մինաս գրչի աշակերտի՝ Յովհան–նէս գրչապետի։ Ստացող՝ Բարսեղ Վ. Աթ–խեցի, որդի Պետրոսի եւ Վարդի, եղբայր Խաչատուրոյ եւ Յովհաննէսի. որ դնէ զգիրս ի դուռն Ս. Առաքելոց մօտ յԱթախ, ուր են նշխարք Նահատակացն Մակարայեցւոց, որոյ առաջնորդն է ինքն Բարսեղ րաբունի» (Հ. Մ. Պոտուրեան, Յիշատակարանք, քաղած Զէն–ոփեան վարդապետի Ցուցակէն)։

3. 1617. Կարապետ սարկաւագ, որդի Գասպարի, «ի դրանէն սուրբ Յովհաննու Կա–րապետին, սպասաւորէն Մարտիրոս վարդա–պետէն ուստ գայս գիրս». կ'օրինակէ Շա–րակնոց մը «ի յերկիրն յԱմթա ի գիւղաքա–ղաք յԱկել կոչի, ի դուռն սուրբ Նշանին, յառաջնորդութեան Բարսեղ եպիսկոպոսին եւ հայրապետն մեր Ղազար եպիսկոպոսին Աստուածածնին» (Վիեննա, Թ. 347. Ցու–ցակ, 800)։

Այս տեղիքը հաւանօրէն Բարսեղ Աթախցւոյ կը հայի։

4. «Զստացող սուրբ տառիս զտէր Բար–սեղ աստուածաբան վարդապետն յիշեսջիք ի

Քրիստոս... որ ստացաւ զսուրբ գիրքս եւ եդ յիշատակ... ի հայրենի եւ ի սեփհական երկիրն իւր աստուածապահ գաւառն յԱթախ ի դուռն սուրբ Առաքելոց. որ են անդ նշխարք սուրբ Մակարայեցւոցն...: Նա եւ զիս մեղօք տառապեալ Մինաս գրիչս, որ ետու գրել զսա աշակերտին իմոյ Եղիա սարկաւագի, որ առ մեզ է ի տառատպութիւն արհեստիս գրչութեան...:

Արդ գրեցաւ սա ի թուականութեանս հայկազնեայս ՌԿԹ (1620) ի մայրաքաղաքս Համիթ ընդ հովանեաւ սուրբ Կիրակոսայ ի յառաջնորդութեան տէր Բարսեղ աստուածաբան վարդապետին Արծրունւոյ: Դարձեալ յիշեսջիք... զստացող սուրբ գրոցս զտէր Բարսեղ աստուածաբան վարդապետն եւ զծնօղսն իւր զՊետրոս քահանայն եւ զմայրն զՎարդ սուլտանն»:

Բարսեղ վարդապետ կ՚աւելցնէ իւր գրչով. «Դարձեալ յիշեցէք... զանարժան Բարսեղ անուամբ վարդապետս... եւ զուսուցանող վարդապետն իմ զտէր Կարապետ վարդապետ Բաղիշեցի, որ ի (Ռ)ՀԲ (1623) թվին վաղջանեցաւ եւ սուղ էած ինձ անհնարին»: Կը յիշէ իւր ազգատոհմին անունները եւ կը նուիրէ ձեռագիրս իւր եղբօրորդի եւ որդեգիր Յովհաննէսին:

Էջմիածին, Թ. 1299 (Մեկնութիւն Մատթէի, Լուծմունք Սողոմոնի գրոց ի Տաթեւացւոյ):

## 22. ՄԵՍՐՈՊ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ
## ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱՂԷՇԻ
## 1615 (?)—1689

*Մեսրոպ ծնած է Բաղէշի Գոմաց գիւղը, իբր 1610ին։ Իր ծնողք են Աւետիս եւ Ազամաթ։ Աշակերտած է Գոմաց վանք։ Գրչութեան ուսուցիչը եղած է տէր Սահակ վարպետը։ 1630—1635 էր ան տակաւին դպիր։ Իբր 1630—1633 տարիներու մէջ օրինակած է էջմիածնի Թ. 146 (Մասունք Ս. Գրոց) Մշեցի Գրիգոր քահանայի համար, մինչ ան տակաւին կ'ուսանէր առ ոտս Հայրապետ Վ. Ղուլթիկցւոյ։ Ձեռագիրը անթուական է. թղ. 229բ կը գրէ գրիչը. «...Նաեւ զյետնեալ... գրիչս զՄեսրոպ դպիրս աղաչեմ յիշել ի Տէր... այլ եւ զծնօղսն իմ զԱւետիսն եւ զԱզամաթն։ Նաեւ զհոգեւոր հայրն իմ զտէր Սահակ վարպետն»։ Ան գրած է Աւետարան մ'ալ 1635ին տէր Սիմոնի որդւոյն Պետրոս կրօնաւորի համար, որ սակայն վախճանած է նոյն տարւոյն։ Յիշատակարանը կարգ մը կրճատումներով յառաջ բերած է Սրուանձտեանց, Թորոս Աղբար, Բ., էջ 414—415։ Կը բերեմ հոս տողերս. «Գրեալ ի քաղաքն Բաղէշ, ընդ հովանեաւ սուրբ Սարգիս զօրավարին... ի թվականութեանս Հայոց ՌՁԴ. ի հայրապետութեան տեառն Փիլիպպոս սրբազան կաթողիկոսի յիշատակ տէր Պետրոս կրաւնաւորի... ձեռամբ Մեսրովբ դպրի ...յիշեցէք... Ազամաթ... եւ զԹաթուլն միակեաց եւ զՆասըրն... զարդարեցաք*

զուրբ Աւետարանս տնաւրինականաւք եւ համաբարբառով եւ լաճվարդաւք եւ ոսկւով զեղեցկացուցաք»։ Ասկէ կը տեսնուի, թէ Մեսրոպ դպիր ոչ միայն գրչութեան արուեստը, այլ եւ մանրանկարչութիւնը սորված էր։ Իր աշակերտն Դաւիթ Բաղիշեցի 1649ին կը գրէ, թէ Մեսրոպ էր «ոչ միայն յարհեստ գրչութեան եւ ծաղկարարութեան, այլ ճոխ ամենայնիւ լցեալ գիտնականութեամբ» (Երուսաղէմ, 1553)։

## ՍԱՀԱԿ ՎԱՐԴԵՏ ԲԱՂԻՇԵՑԻ

Այս Սահակ վարդետ Բաղիշեցի էր ծննդեամբ, վախճանած 1643ին։ 1643ին Մեսրոպ կը գրէ եւ կը ծաղկէ Աւետարան մը. եւ «Թողութիւն մեղաց խնդրեցէք, կ՚ըսէ, ինձ եւ ծնօղաց իմոց... եւ հոգեւոր հօր իմոյ տէր Սահակ քահանային» (Երուսաղէմ, Թ. 1966)։ Նոյն տարւոյն երկրորդ աւետարան մ՚ալ «գրեցի ես, կ՚ըսէ, եւ տէր Սահակ վարդետն. ծաղկեալ ոսկով եւ տնօրինականօք զարդարեցի ըստ կարի իմում եւ բերեալ ի սուրբ քաղաքս Երուսաղէմ եւ եդի յիշատակ զսա ի դուռն սուրբ Յակոբայ ինձ եւ ծնողացս եւ տէր Սահակին որ հանգուցեալ է առ Քրիս- եւ բազում աշխատեալ ընդ մեզ։ ...աղաչեմ յիշել ի Տէր զտէր Սահակ վարդետն եւ զանարժան Մեսրոպս յետնեալս, որ եմք Բաղիշեցի. եւ սկսեալ զսուրբ Աւետարանս ի միասին՝ գրեցաք եւ ծաղկով զարդարեցաք. եւ Նա փոխեցաւ առ Քրիստոս. ոչ ժամանեաց

գալ. վասն որոյ բերեալ իմ զսա ի սուրբ յԵրուսաղէմ եդի յիշատակ ի դուռն սուրբ Յակոբայ վասն ոգոց մերոց փրկութեան. ամէն» (Երուսաղէմ, 2655. Հմմտ. Աղանունի, Միաբանք..., 283): Սահակ՝ վարպետն եղած է նաեւ Գրիգոր գրչին, որ 1644ին օրինակելով Մեսրոպ եպիսկոպոսին համար Հարանց Վարք մը, կը գրէ. «ես առաւել յիշեսջիք... եւ զտէր Սահակն, որ բազում աշխատութեամբ ուսոյց զարուեստս» (Վիեննա, Թ. 66, Ցուցակ, 304): Այս Գրիգորն էր հաւանօրէն այն համանունն, զոր Մեսրոպ դպիր 1633ին իր «սան»ը կը կոչէր: Մուրատ որ եւ Մարտիրոս սարկաւագ 1652ին կ՚օրինակէ Համառօտ Կանոնագիրք մը ի Բաղէշ եւ կը խնդրէ յիշել իր հոգեւոր հայրն տէր Սահակ, որ «վարպետաց վարպետն» է (էջմ. 835). չգիտեմ ա՞յս Սահակի մասին է ակնարկութիւնը, թէ Մկրտիչ քահանայի եւ Շահումաղէի որդի Սահակ երէցի մասին, որ 1645ին Մաշտոց մը օրինակած է ի Բաղէշ (Գալեան, Ցուցակ Մաղնիսայի ձեռագրաց, էջ 3):

1639ին Փիլիպպոս կաթողիկոս Բաղէշ կ՚այցելէ. եւ քաղաքին եպիսկոպոս կ՚օծէ զՄեսրոպ «քարտուղարն» եւ կը բաշխէ «ի նմին աւուր» նաեւ վարդապետական գաւազանը (Դաւիթ Բաղիշեցի, Թօփճեան, Ցուցակ, 99 եւ Դիւան, Ժ., էջ 51). «Մեսրոպ վարդապետ քաջ քարտուղարն եւ լցեալ (ի) Հոգ-

ւոյն սրբոյ, Բաղիշեցի, որ Թուին ՌՁԸ (1639) օծեալ եղեւ եպիսկոպոս եւ ի նոյն աւուր ընկալեալ զաւազան վարդապետութեան ձեռամբ այս Փիլիպպոս սրբազան կաթողիկոսի, եւ շնորհեալ առաջնորդ մայրաքաղաքին Բաղիշու»: Առաջնորդարան կ՚ընտրուի Գոմաց վանքը:

Մեզի անծանօթ կը մնայ, թէ որո՞ւն քով առաւ Մեսրոպ իր աստուածաբանական ուսումը: Բայց գիտենք որ նա բացաւ Գոմաց վանքին մէջ Դպրոց եւ դասախօսեց անձամբ: Կը յիշուին իր աշակերտներէն Դաւիթ Բաղիշեցի, Ներսէս, Դաւիթ Ճնճղուկ եւ Գրիգոր Երէց: Իբր 55 տարի հովուապետեց իր թեմը: 1660ին կը վերաշինէ Գոմաց Ս. Աստուածածնի եկեղեցին. որուն աւագ դրան վրայ կը կարդացուի արձանագրութիւնս.

ՏԷՐ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ ԱՍՏՈՒԱԾ: ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲ ԱՍՏՈՒԾՈՅ ՎԵՐԱՇԻՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ԵԿԵՂԵՑԻՔՍ Ի ՀԻՄԱՆԷ ՍՐԲԱՏԱԾ ՎԻՄՕՔ ՁՈՐԵՔԱՆԿԵԱՆ. ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՆ ՄԵՍՐՈՊ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ, ՕԳՆԱԿԱՆ ԵՒ ԲԱՐԵԽՕՍ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ. Ի ԹՎԻՆ ՌՃԹ. ԱՄԷՆ:

Տրդատ եպ. Պալեան, Բիւզանդիոն, 1907, Թ. 3340:

Կ՚ըսուի թէ Մեսրոպ եպիսկոպոս օգնութեամբ Դաւիթ Վ. Բաղիշեցւոյ ի դերեւ հանած է Աղթամարի Մարտիրոս Փշրուկ կաթողիկոսի հետապնդումները, որ կ՚աշխատէր 1662ին Բաղէշը հանելով էջմիածնի իրաւա-

ութիւնէն կցել Աղթամարի կաթողիկոսի թեմին (Արարատ, 1898, էջ 123. Ակինեան, Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ, էջ 131—136)։

Այցելած է 1643ին Երուսաղէմ, 1669ին եւ 1673ին Դաւիթ Բաղիշեցւոյ հետ Լիմ ուխտաւորութեամբ։

Դաւիթ Բաղիշեցի, աշակերտն Մեսրոպի, կ՚անուանէր իր ուսուցիչը «քաջ քարտուղար»։ Ան ոչ միայն անձամբ կ՚օրինակէր, կը ծաղկէր եւ կը կազմէր ձեռագիրներ, այլ եւ օրինակել կու տար իրեն համար կարեւոր ձեռագիրներ։ Յիշեցի վերագոյն իր օրինակած ձեռագիրնէն մէկ քանին, գրուած 1630—1648 տարիներուն։ Կը յիշեմ նաեւ հետեւեալները.

1644ին Գրիգոր երէց կ՚օրինակէ ի Բաղէշ Հարանց Վարք մը «ի վայելումն հոգեւոր հօր իմոյ Մեսրոպ վարդապետի, որ է այժմ տեսուչ քաղաքիս Բաղիշու, որ ետ գրել...։ Յիշեցէք դարձեալ եւ զհոգեւոր հայրն իմ եւ զքաջ բարունապետն զՄեսրոպ վարդապետն» (Վիեննա, Թ. 66, Ցուցակ, էջ 303—304)։

1649ին Գրիգոր Եղրդուտի վանքին եպիսկոպոսը Խաչատուր սարկաւագին յԱմիդ օրինակել կու տայ Աստուածաշունչ մը, զոր ապա կը բերէ Բաղէշի առաջնորդին, որպէս զի ծաղկազարդէ եւ կազմէ։ «Արդ ես նուաստ ծառայս Յիսուսի... Մեսրոպ անուամբ եւեթ

կոչեցեալ բանի սպասաւոր... տեղեաւ Բաղիշեցի, զմեծ գիրքս ծաղկեցի... յիշեցէք ի Քրիստոս զնուաստ Մեսրոպ տրուպ անուամբ կոչեցեալ բանի սպասաւոր, վերակացու քաղաքիս Բաղիշոյ, որ կատարեցի զփափագ հոգեւոր հօր մերոյ Գրիգոր վարդապետին, որ երեր զսուրբ Գիրքս առ մեզ վասն կազմելոյ եւ ծաղկելոյ. եւ ծաղկեցի զսա ոսկեով եւ կազմեցի ի թուին ՌՂԸ. յիշեցէք զծնողս իմ զմղտսի Աւետիս, զմայրն իմ Ազամաթ, զուսուցիչն իմ, զհոգեւոր որդին տէր Դաւիթ եւ զամենայն արեանառու մերձաւորսն» եւ այլն (Գեղամ Տէր-Կարապետեան, Ձեռագիրք Տարօնոյ):

1649ին Միքայէլ Ասորւոյ, Փաւստոսի եւ այլոց պատմագիրները կ'օրինակուին. «Արդ ծրեցի զսա ի թուին Հայոց ՌՂԸ. դեկտ. Թ. յառաջնորդութեան Բաղիշու նահանգին Մեսրոպ հայրապետի եւ աստուածաբան վարդապետի, քաջ հռետորի եւ անյաղթ փիլիսոփայի ոչ միայն յարհեստ դպրութեան եւ ծաղկարարութեան, այլ ճոխ ամենայնի՝ լցեալ գիտնականութեամբ, ճշմարիտ քարոզող եւ դասատուաց, հեզ եւ հանդարտ, սրբասնունդ եւ մաքրամիտ, օրհնեալ ձեռամբ տէր Փիլիպպոս կաթողիկոսի եւ շնորհեալ եպիսկոպոս Բաղիշու. եւ տուեալ զաւազան իշխանութեան վարդապետական. եւ եկեալ նստեալ յաթոռ իւր հովուել զհօտ Տեառն: Եւ ես հէգս եւ թշուառականս (Դաւիթ արեղայս)

տուի ձեռնադրութիւն ի նմանէ։ Եւ ԺԲ ամ է որ տեսուչ է մեզ որդիացելոց. խնդրեմք յապէնիաց Տեառնէ զի յերկարակեաց արասցէ...։ Գրեցի ի դուռն սուրբ Աստուածածնին եւ սուրբ Գէորգայ զօրավարին (ի Գոմաց վանս)։ Արդ... աղաչեմ յիշել... զտառապեալ անձն իմ Դաւիթ» եւ այլն (Երուսաղէմ, Թ. 1558)։

1655ին Յովհաննէս երէց կ'օրինակէ «Յիսուս Որդի» «ի տեսչութեան այս քաղաքին, (որ) Բաղէշ անուն վերաձայնի, Մեսրոպ զովեալ վարդապետին՝ օծեալ ձեռամբ մեծի հովուին» (Փիլիպպոսի. Երեւան, Պետ. Թանգարան, Թ. 378)։

1666ին Թովմա երէց ԺԲ. Մարգարէից Մեկնութիւնը կը նորոգէ «ի խնդրոյ բարեմտոյ եւ հեզահոգի, երջանիկ եւ քաջ հռետորին Մեսրոպայ, որ է վերատեսուչ եւ քաջ առաջնորդ քաղաքիս մերոյ Բաղէշու, ի վայելումն անձին իւրոյ եւ աշակերտին տէր Ներսէս սրբակրօն աբեղային, որ է այժմ գրոց աշակերտ առ ինքն սնեալ հարազատապէս որդի» (Սիւրմէեան, Ցուցակ Հալէպի, Բ., էջ 97)։

1669ին կ'օրինակէ Դաւիթ Ճնճղիկ, որդի Սուքիասի եւ Խաթխաշէի Աւետարան մը «ի Բաղէշ, ընդ հովանեաւ Ս. Կիրակոսի եւ Կարմրակ Ս. Նշանի» ի խնդրոյ «քաղաքիս մերոյ առաջնորդ Մեսրոպի րաբունապետի», որ է ուսուցիչն գրչին եւ հարազատ Դա-

ւիթ եւ Վարդան բանասիրաց (Ձեռագիրք յԱխալցխա. Պատուրեան):

1674ին կ'օրինակուին Գր. Նարեկացւոյ Ողբերգութիւնք «ի մայրաքաղաքն Բաղէշ, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի (ի Մոգաց վանս)...յառաջնորդութեան երիցս երանեալ Մեսրոպայ քաջ եւ արի րաբունւոյ, որ այս Լէ ամ է, որ է վերատեսուչ եւ աշակերտ Փիլիպպոս կաթողիկոսին»: Գրիչն է «Ներսէս եւեթ անուամբ բանի սպասաւորող, աշակերտ հոգեւոր հօրն իմոյ Մեսրոպայ...» (Երուսաղէմ, Թ. 2351): Ներսէսի ծնողքն են Նուրիճան եւ Փարխան, եղբարք՝ Յովհաննէս եւ Զիրաք:

1675ին Յովհաննէս երէց կ'օրինակէ Աւետարան մը ի Բաղէշ «յառաջնորդութեան քաղաքիս Մեսրովպ ճգնազգեաց վարդապետին» (Էջմիածին, Թ. 317):

1677. «ի թվականիս մերում ՌՃԻԶ. ամի ես Իսահակ վարդապետս Մակուեցի, աշակերտ տեառն Յակոբայ կաթողիկոսի, որոյ հրամանաւ գնացի ի Բաղէշ քաղաք վասն նուիրակութեան սուրբ Էջմիածնի: Յայնմ ժամանակի Ներսէս վարդապետ ոմն Հզուեցի, աշակերտ հեզահոգի Մեսրոպ վարդապետի Բաղիշեցւոյ, գետամոյն եղեալ վաղճանեցաւ: Իսկ եղբայր նորա բարեպաշտօն մահդասի Յովհաննէսն եւ Մեսրոպ վարդապետն ընծայեցին զսուրբ Աստուածաշունչս ի ձեռն մեր ի Դուռն սուրբ Առաքելոյն Թադէոսի ա–

թուոյն մնայ անդ յիշատակ յաւիտենական» են (Էջմիածին, Թ. 187, թղ. 453բ. Աստուածաշունչ 1640էն):

Բաղէշի Յիշատակաց Մատեանին մէջ կ'արձանագրուի. «Դարձեալ Աստուած լուսաւորէ զՄեսրոպ վարդապետի հոգին, առաջնորդի Բաղէշու քաղաքիս, որ երկու լաւ խաչ եղեալ է ի վանքս յիշատակ հոգոյ իւրոյ եւ այլ բազում աշխատանք եւ երախտիք ի վերայ վանիցս ունի եւ ի վերայ մխարանից սորին. Աստուած զինքն ընդ երկոտասան վարդապետացն դասակից եւ պսակակից արասցէ» (Բանասէր, 1905, էջ 294):

Այս տեղ կը կորսնցնենք Մեսրոպ եպիսկոպոսի հետքը պատմութեան մէջ: Նա այժմ կը գտնուէր արդէն բարձր տարիքի մէջ: Վախճանած ըլլալու է 1689ին, իբր 90ամեայ:

1690. Տարեգիր մը կը գրէ, թէ «ի սոյն (1690) թուին եղեւ անհաշտ խռովութիւն եւ աղմուկ ի քաղաք(ի)ն Բաղէշի ի մէջ վարդապետացն. որ լու եղեւ ընդ ամենայն կողմն տիեզերաց: Եւ քաղաքն ամենայն (յ)երկուս բաժանեցան. եւ (Նոհ) խանն եղեւ ի կողմն Վարդան վարդապետին եւ մասն ինչ քաղաքին եղին ի կողմանէ Մեսրոփայ վարդապետին: Եւ բազում եւ անասելի եւ անթիւ գանձս հաւաքեցաւ ի տունս աշխարհականին այն: Եւ զկնի եկեալ գնացին յէջմիածին ի գանգատ առ կաթողիկոսն Եղիազար. եւ յետ բազում ինչս տանելոյ յերկուցն կողմանէ՝

զՄեսրովպ վարդապետն օրհնեաց եպիսկոպոս եւ թագաւորեցոյց ի վերայ աշխարհին» (Դիւան, Ժ., 114)։

Այս յուզումը ծագած ըլլալու է Մեսրոպ եպիսկոպոսի մահէն ետքը։ Վէճը յաջորդի ընտրութեան շուրջը եղած ըլլալու է։

1691°. Յովհաննէս գրիչ ի Բաղէշ կ'օրինակէ ճաշոց մը «յառաջնորդութեան Աւետիք եւ Մեսրոպ վարդապետաց, ի կաթողիկոսութեան տեառն Նահապետի (1691, օգ. 10—1705, յունիս 13), յիշխանութեան քաղաքիս Նոհ Խանին» (Գեղամ Տէր-Կարապետեան, Ձեռագիրք Տարօնոյ)։

Մեսրոպ եպիսկոպոս ունեցաւ երեք աշակերտ. 1. Դաւիթ Վ. Բաղիշեցի († 1673), 2. Դաւիթ Վ. Ճնճղիկ եւ 3. Ներսէս Վ. Հզուեցի († 1677)։

Չէ հաստատ իրմէ որ եւ է գրական երկասիրութիւն։

## 23. ԴԱՒԻԹ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ

Դաւիթ բնիկ Բաղիշեցի էր, որդի Ալեքսանի եւ Խանազէի. իր եղբայրն էր Մելքիսէթ, որուն որդին Իսահակ էր «գրոց աշակերտ»։

Մանուկ հասակէն աշակերտած է Գոմաց վանքին մէջ առ ոտս Մեսրոպ վարդապետին։ Պարծանքով կը յիշէ ինքնին, թէ սնած է «ի մանկութենէ առ ոտս երջանիկ եւ երիցս երանեալ հօրս մերոյ Մեսրոպ վարդապետի

*անյաղթ փիլիսոփայի եւ քաջ քարտուղարի»*: 1641*ին կը ստանայ իր ուսուցչէն քահանայական օծում եւ* 1647*ին դաւազանի իշխանութիւնը* (*Դիւան, Ժ.*, 54):

1649, *դեկտ.* 9*ին ի Գոմաց վանս կ'օրինակէ Պատմագիրներու հաւաքածոյ մը* (*Միք. Ասորի, Փաւստոս եւն*). *«Գրեցի ի դուռն սուրբ Աստուածածնին եւ սուրբ Գէորգայ զօրավարին: Արդ վասն սիրոյն Քրիստոսի աղաչեմ յիշել ի Տէր զտառապեալ անձն իմ Դաւիթ, որ աշխատութեամբ գրեցի... նոտր եւ փութով գրեցի»* (*Երուսաղէմ, Թ.* 1553):

1651*ին կը կարգուի Բաղէշի Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին վանահայր* (*Դիւան*, 54): *Յակոբ Բաղիշեցի, «եւ յետ նորա Դաւիթ Բաղիշեցին»* (*էջ* 293). *եւ դարձեալ «Յիշեցէք ի Քրիստոս զԴաւիթ վարդապետն, զաշակերտ Մեսրոպ վարդապետին, որ Արարածոց Մեկնիչ մի եւ Առաքու Կարմնճի ջրաղացն եւ զՁիթխացն ի հիմանէ նորոգեաց եւ վարդապետական գրքերն, զոր ստացեալ եւ զոր ինքն գրեալ եւ յիշատակ բարի հոգոյ ի վանքս թողեալ»* (*Բանասէր*, 1905, *էջ* 294):

1653*ին Թոմաս քահանայ կ'օրինակէ Դաւիթ Վ.ի յանձնարարութեամբ Պաւղոսի ԺԴ. թուղթերու խմբագիր Մեկնութիւնը. «Արդ տեսեալ զսորին անչափ քաղցրութիւն եւ զանուրկ մեծութիւնն սրբազան եւ քաջ փիլիսոփային, անյաղթ իմաստունն եւ երանաշնորհ*

հռետորն եւ աստուածաբան վարդապետն Դաւիթ սիրող սրբութեան եւ մեկնող ամենայն խրթնածածուկ գրոց Հին եւ Նոր Կտակարանացն, եւ եռափափագ սրտիւ եւ յօժար կամօք ետ գրել զսա յարդար վաստակոց իւրոց...: Արդ գրեցաւ սա ի Թուականիս Հայոց ՌՃԲ (1653) ի Բաղէշ քաղաքի, ընդ հովանեաւ սրբոյն Սարգսի զաւրավարի, ի կաթուղիկոսութեան Ս. Էջմիածնի տեառն Յակոբայ եւ ի հայրապետութեան Բաղէշ քաղաքի տէր Մեսրովբ քաջ րաբունւոյն» (Սեւան, Թ. 99, Ն. Մառ, Յուցակ, էջ 45: Աչքի առաջ ունեցած եմ նաեւ Մանկունւոյ օրինակութիւնը):

1664ին գրել կու տայ Յոբի գրոց Մեկնութիւնը եւ 1667ին Պետրոս Կուրկցի երիցուն՝ Աւետարան մը (Դիւան, 56):

1669ին այցելած է Լիմ կղզին եւ նուիրած է վանքի եկեղեցւոյն թանկագին սկիհ մը: Այս առիթով յիշատակագրած է վանքին Հարանց Վարքի մէջ տողերս.

«Ես նուաստ Դաւիթ բանի սպասաւորս ի քաղաքէն Բաղիշու՝ եկի ի Լմայ սուրբ անապատս: Եւ տեսեալ զպայծառութիւն սուրբ եկեղեցւոյ եւ զմշտամատոյց աղօթս միեղէն եղբարց սրբակրօնից, վասն որոյ ջերմեռանդ սիրով լցեալ եւ յօժար սրտիւ ետու պատուական սկիհ մի ոսկեզօծ եւ ականակուռ ընդելուզեալ յօրինուածով...: Եւ արդ եղիցի սա անջինջ յիշատակ ի դուռն Լմայ անապատին

սրբոյն Գէորգայ զօրավարին, ի մաքրումն մեղաց իմոց եւ ծնողացս՝ Ալէքսանին եւ Խանազին եւ եղբօրս մհսի Մելքիսէթին եւ նորա որդոյն համբակատիպ Իսահակ գրոց աշակերտի...: Յիշեցէք ի Քրիստոս զՄեսրոբ վարդապետն, որ լաւ հարցմունք մի ետ յիշատակ Լմայ սուրբ անապատին...: Դարձեալ յիշեցէք զՄեսրովպ վարդապետն եւ զիս զմեղաւորս Դաւիթ տրուպս, եւ զՎարդան վարդապետն[1], որ ի միասին եկինք ի Լմայ սուրբ անապատս ուխտ. թվին ՌՃԺԸ» (1669) (Դիւան, Ժ., 56):

Նոյն 1669 տարւոյն օրինակած է Դաւիթ Ղուկասի Մեկնութիւնը. «Եւ ես հէգս եւ թշուառականս եւ թափուրս ամենայն գործոց բարեաց, տրուպ Դաւիթ բանասէրս տեսի զանկողոպտելի գանձս, զանշիջանելի ճրագս. եւ յանկեալ աւարտեցաք ի թուաբերութեան Յաբեթական տումարի ՌՃԺԸ (1669) ի հայրապետութեան էջմիածնի Յակոբ սրբազան կաթողիկոսի եւ յառաջնորդութեան մայրաքաղաքիս Բաղիշու Մեսրոպ աստուածաբան վարդապետի...: Ես Դաւիթ բանասէր ծառայ Խնդրակատար սուրբ Աստուածածնին աջողութեամբ Քրիստոսի սկսայ եւ կատարեցի» (Դիւան, 57):

[1] Վերագոյն տեսանք Դաւիթ ծնճղուկի 1669ին գրած Աւետարանին Յիշատակարանը, ուր կ'ըսուէր «քաղաքիս մերոյ առաջնորդի Մեսրոպ րաբունապետի, որ է ուսուցիչ դրչիս եւ հարազատ Դաւիթ եւ Վարդան բանասիրաց». այս Վարդանն է համանուն Բաղիշեցին:

1671ին օրինակել կու տայ Թումաս գրչի Մեծին Վարդանի Սաղմոսաց Մեկնութիւնն ի Բաղէշ եւ Գրիգոր երէցին ի Վան Կաթողիկեայց Մեկնութիւնը․ որոնք ապա մէկ հատորի մէջ կը կազմուին։ Գարեգին Վ․ Սրուանձտեանց տեսած է ձեռագիրս Խնդրակատար Ս․ Աստուածածնի վանքին մէջ։ Երկու մասերն ալ ունեցած են իրենց Յիշատակարանները «նոյնիմաստ այլ տարբեր ոճով»։ Յառաջ բերուած է առաջինը կրճատումներով․ որ է հետեւեալը․

«Գրեցաւ Մեկնութիւնս հոգենուագ Սաղմոսի Դաւթի աստուածահօրն ի մեծ թուականին Հայկազնեան տոմարի ՌՃԻ (1671) ի մայրաքաղաքս Բաղէշ, ընդ հովանեաւ Ս․ Սարգսի զօրավարին եւ այլ սուրբ եւ աստուածարնակ տաճարացն, որք կան հաստատ ի միասին․ ի հայրապետութեան սուրբ էջմիածնի տեառն Յակոբայ։ Եւ զստացող լուսազարդ տառիս եւ զփափագող աստուածաբան մատենիս զԴաւիթ երիցս երանեալ հոետորն եւ զանյաղթ փիլիսոփայն… որ զամենայն աստուածաշունչ գիրսն առ ինքն հաւաքեաց, որպէս մեղուն զնիւթս ծաղկանց, զորս ինքն գրեաց ձեռամբն իւրով եւ զորս ետ գրել այլոց․ եւ զպէտս գրչացն լիապէս հոգայր․ եւ միշտ հանապազ կայ յընթերցումն աստուածաբան մատենից եւ անձանձիր ի խրատել եւ յուսուցանել…»։ Կ՚աւելցնէ գրիչս նաեւ ցաւալից տողերս․ «Հանգուցէ Տէր

*զհոգի... զհարազատ եղբօրորդւոյն իւրոյ զՎստահակ դպրին, որ մինչ դեռ ի վարժս ուսման կայր՝ յանկարծ եհաս մրրիկ դառնութեան սուրն աստուածատաք եւ եբարձ զնա տարաժամ մահուամբ յաշխարհէս որպէս զծաղիկ նոննենեաց հարեալ ի կարկտէ, եւ եթող զատն կսկիծ Վարդապետին, զի սնուցեալ էր զնա իբրեւ զվարդ ի մէջ կոկոնի...:*

*«Դարձեալ զայս եւս ծանիք, սիրելի հայրք եւ եղբարք մեր ըստ հոգոյ, որ Բ գիրք է ի միում տփի. առաջին գիրքն որ է Մեկնութիւն Սաղմոսին Դաւթի՝ այն Թումայի է գրեալ. եւ միւսն որ է Մեկնութիւն Կաթողիկէից՝ այն ի քաղաքն Վան է գրեալ ձեռամբ Գրիգորի երիցու...» (Թորոս Աղբար, Բ., էջ* 260—261):

*Այս տարւոյն Տարօնի Առաքելոց վանքի միաբանները Բաղէշ կը դիմեն, խնդրելու օգնութիւն վանքին համար, որ կը գտնուէր պարտքի տակ: Կ'որոշուի որ Դաւիթ եւ Վարդան վարդապետները նոյն Վանքը երթան եւ կարգադրեն թէ պարտքերու խնդիրն եւ թէ այլ պիտոյքները: Դաւիթ կը կարգուի Վանքին առաջնորդ եւ Վարդանի կը յանձնուի պարտքերը ջնջել եւ Եկեղեցիներու վերանորոգութիւնը տեսնել: Կը յաջողին հատուցանել պարտքերը, ետ ստանալ գրաւ դրուած անօթները եւ նորոգել եկեղեցիները* (1671—1673): *Բայց ոչ առանց փորձանքներու: Դաւիթ վարդապետ կը բանտարկուի*

այլազգիներէն եւ Վարդան հալածանքի կ'են-
թարկուի: Այս մասին պիտի անդրադառնամ
յետոյ § 25ի մէջ միւսանգամ. այս տեղ կը
յիշեմ տեղիքներս. Յիշատակագիր մը կը գրէ
1671ին ի մասին Վարդան Վ. Բաղիշեցւոյ.
Սա «կարգեալ հաստատեաց առաջնորդ եւ
ապասաւոր ԺԲ. Առաքելոց (վանաց) զԴաւիթ
վարդապետ զհոգեւոր հարազատն իւր եւ
ինքն վերակացու եւ խնամատար գոլով ամե-
նեցուն՝ որ ըստ օրէ յաւելու ի շինուածս Ս.
Եկեղեցւոյ եւ ի բարեձեւութիւն սուրբ Մե-
նաստանիս» (Գեղամ Տէր Կարապետեան,
Ձեռագիրք Տարօնոյ): Նոյն տարւոյն ուրիշ
մը կը գրէ. «Կազմեցաւ Մեկնիչս Ղուկա-
սու... ի վանս Ղազարու... յառաջնորդու-
թեան սուրբ ուխտիս տէր Դաւիթ ճգնազգեաց
վարդապետի եւ տէր Ստեփաննոս կրօնաւոր
հերապետի» (Երեւակ 1858, էջ 202—203):
1673ին Աւետարան մը կը գրուի «ի վանս
Ս. Եղիազարու Մշոյ յառաջնորդութեան տէր
Յովհաննու եւ Դաւիթ վարդապետի» (Տէր-
Կարապետեան, անդ): Սարգիս երէց 1671ին
գրած է յիշատակագրութիւնս. «Դաւիթ վար-
դապետն, Ըստեփաննոս վարդապետն, որ
մանուկ եւ տղայ էր. չահ Սուլէյմանն եւ Շխալի
խանն բռնեցին մեր առաջնորդ Դաւիթ վար-
դապետն, Ըստեփաննոս վարդապետն որ
բռնեցին» (Բրիտ. Թանգարան, Ցուցակ հայե-
րէն Ձեռագրաց Կ. Կոնիբիրի, էջ 297):
Թէպէտ գրութեան տեղը չէ նշանակուած,
բայց յիշեալ երկու վարդապետներու անուն-

*ները դժուարին չէ նոյնացնել Առաքելոց վանքի համանուն վարդապետներու հետ: Դաւիթ վերադարձաւ Բաղէշ հաւանօրէն* 1673 *տարւոյն երկրորդ կէսին:*

1673*ին Դաւիթ վարդապետ իր ուսուցչին Մեսրոպ եպիսկոպոսի եւ իր աշակերտին Աւետիք վարդապետին հետ ուխտի կ՚երթայ Լիմ եւ նոյն տարւոյն Որոտմանց Որդւոց տօնին* (31 *դեկտեմբեր*) *կը վախճանի եւ կը թաղուի նոյն անապատին մէջ: Այս առիթով կ՚արձանագրուին յիշեալ Ղուկասու Մեկնութեան մէջ տողերս.*

*«Ես Բաղիշու քաղաքի վերատեսուչ տառապեալ որուպ Մեսրոպ վարդապետս ի թվին ՌՃԻԲ* (1673) *եկի ի ծովաշուրջ անապատն Լմայ հանդերձ հոգեւոր որդւովք իմովք Դաւիթ վարդապետաւ եւ Աւետիք բանասիրաւ: Դաւիթ վարդապետն վախճանեցաւ զկեանս իւր եւ գնաց առ Քրիստոս յոյսն ամենայնի Որդւոց Որոտման տօնին. մինչ զ«էր ընդ եղբայրս» կարդային. եւ մարմին եդեալ եղեւ ընդ հովանեաւ Գէորգայ զօրավարին: Եւ այս աւետարանչացս Մեկնիչս Ղուկասուն եւ Մատթէոսին Դաւիթ վարդապետին էր իւր ձեռաց գրածն. եդաք յիշատակ բարի ի դուռն սորայն Գէորգայ զօրավարին ի վերայ իւր գերեզմանին փակեալ»* (*Դիւան*, 57/58):

*Կանգնուած է խաչարձան մը, որուն վրայ կը կարդացուի*[2].

[2] *Փիրղալէմեան, Նօտարք, էջ* 86. *ծ.* 2. *Արարատ* 1898, *էջ* 122: *Դիւան, Ժ., էջ* 58 *եւն:*

ԿԱՆԳՆԵՑԱՒ ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽՕՍ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ԲԱՂԻՇԵՑԻ ԴԱՒԻԹ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԱՇԽԱՏՈՂԱՑՆ. ՅԻՇԵՑԷՔ Ի ՔՐԻՍՏՈՍ։
Թվ. ՌՃԻԲ (1673)։

*Դաւիթ Բաղիշեցւոյ գործունէութիւնը հիւսեցին վերագոյն յիշատակագիրները։ Այս տեղ կը յիշեմ միայն Աւետիք Բաղիշեցւոյ տողերը Խնդրակատարի Յիշատակաց Մատեանին մէջ. «Այլ եւ էր (սա Դաւիթ վարդապետ) սրբակեաց, բանաստեղծ եւ ճոռոմաբան, արի եւ քաջ եւ անձանձիր ի քարոզութիւն եւ յընթերցմունս գրոց։ Աստուած զինքն ընդ սուրբ վարդապետաց դասուն դասակից եւ պսակակից արասցէ յաւուրն դատաստանի» (Բանասէր, 1905, էջ 294)։*

*Դաւիթ վարդապետի աշակերտներէն կը յիշուի Աւետիք, որ ուսուցչին մահէն ետքը Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին առաջնորդն եղաւ (Բանասէր, անդ, էջ 296)։*

ԾԱՂԿԱՔԱՂ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*Դաւիթ Բաղիշեցիէն ունինք մէկ գրութիւն միայն, որ վերնագիր կը կրէ.*

Դաւթի բանասիրի Բաղիշեցւոյ Ծաղկաքաղ արարեալ ի բազում պատմագրաց զազգն Յաբեթի եւ սուղ ինչ զՍեմայ եւ զՔամայ առոյգ գտակաւ, *բազում աշխատութեամբ ընտրելով զլաւն եւ զգլխաւորն անսխալապէս շնորհօք Քրիստոսի Աստուծոյ մերոյ։*

*Թղ. 1ա—16բ Հայկազեան շրջանի պատմութիւնը, գրեթէ քաղուածք մը Մ. Խորենա–*

ցիէն: — Թղ. 17ա—24բ. Տրդատէն մինչեւ Ե. դար:

Թղ. 24բ—25ա. Արդ կամիմ համառօտաբար բացայայտել զթագաւորս Պարսից, որ Սասանեան կոչի մինչեւ ցայժմ:

Թղ. 25բ—31ա. «Այլ մեք դարձցուք յառաջին ուստի թողաք ի Հայոց բանն». այսինքն Ե. դարէն մինչեւ ԺԱ. դար:

Թղ. 31բ. Յայսմ վայրի եղեւ թագաւորութիւն ցեղիցն Ռուբինեանցն, որ յԱրծրունեաց եւ Հայկազանց խառնեալք խնամութեամբ: Որոց նախ թագաւորեաց Լեւոն (թերթ 33բ—34ա):

Թղ. 34բ—41ա. Համառօտ պատմութիւն ազգացն Տաճկաց Օսմանցւոց, որ բնակալեցին միահեծան ի ծայրին Եւրոպիոյ բովանդակ հիւսիսի եւ Բաբելոնիւ ընդ հարաւ: Արդ ի թվ. ՈՀԱ (1122) այր ոմն անուն Օսման, այր չինական...:

Թղ. 41բ. Այսուհետեւ կամիմ բացայայտ առնել զկարգ սրբազան կաթուղիկոսաց: Թվին ՌՀԳ. նստաւ կաթողիկոս ի սուրբ էջմիածին Մովսէս Տաթեւացին...:

Կ՚ատարի թղ. 44բ. «Արդ եղեւ գրաւ սորա ի թուին ՌՃԺԲ (1663) ի հայրապետութեան սուրբ էջմիածնի տէր Յակոբ Կաթողիկոսին եւ յառաջնորդութեան Բաղէշ քաղաքի տէր Մեսրոբ վարդապետի, ձեռամբ յոգնամեղ փծուն եւ անարժան (Դաւիթ) բանաւորի. ծաղկաքաղ եւ համառօտ արարի ի պատմագրաց բազում աշխատութեամբ, Աղա—

մայ մինչեւ ցարդ, զկարգս նահապետաց եւ մարգարէից եւ թագաւորաց եւ հայրապետաց: Եւ ի յերկու հատորս բաժանեցի. առաջինն յԱդամայ մինչեւ յԱբէթ մեր նախնին, եւ ի յԱբեթէ ցթագաւորս Հայկազանց եւ զԱրշակունեաց եւ զԲագրատունեաց եւ զԱրծրունեաց. եւ զայլ (°) Օսմանեանց, զզալ Թաթարին եւ Լանկ Թամուրին...:

(Բ. հատոր) թղ. 45ա—68բ. Արդ կամիմ ծաղկաքաղ առնել յԱբրահամէ մինչեւ Քրիստոսի ծնունդն եւ անտի կարգաւ մինչեւ ի Կոստանդիանոս եւ ի Նմանէ մինչեւ ի թվ. Չ (1251) զկարգս նահապետաց եւ զԱռաքելոցն համառօտաբար»: Կը հասնի մինչեւ «Նիկեփոռ». վերջէն իրր 1 թուղթ պակաս:

Պատմութեանս սկզբնագիրը հեղինակին հրամանով օրինակած էր Գրիգոր երէց Մխիթար Գօշի Երեմիայի մարգարէութեան Մեկնութեան հետ: Այս օրինակը կը գտնուէր Լիմի վանքին մէջ, ուր բերած էր հեղինակը 1673ին: Իր մահէն ետքը մնացած էր հոն: Ղեւոնդ Վ. Փիրղալէմեան տեսած էր զայն եւ կատարած անկէ քաղուածքներ (Թ. 79 ձեռագրին թղ. 32ա—45ա). զոր հրատարակեց Գիւտ ա. քահանայ Աղանեանց, Դիւան, Ժ., էջ 41—56 (հմմտ. էջ ԼԱ—ԼԳ): Տես նաեւ Փիրղալէմեան, Նօտարք, էջ 86, 122—123, 148 եւ 209:

Այս ձեռագրէն, կամ անոր նախնական օրինակէ մը ծագած է Դալեան Խաչիկ Վ.ի

*Ձեռագրաց Հաւաքածոյքի Թ. 79, անթուական եւ առանց յիշատակարանի (Մեծութիւն 21,2×6,3 Հմ., 68 թուղթ, երկսիւն, բոլորգիր): Ձեռագիրս ցուցակագրած է Յ. Թօփճեան, Ցուցակ, Ա., էջ 96—99, ընդարձակ մէջբերումներով, բայց շատ անբաւական ցուցմունքներով ի մասին գլխոց կամ հատուածներու բաժանմանց: Նոյն հեղինակը կանխած էր տալ տեղեկութիւններ գրուածքիս մասին* Կիլիկեցի *ստորագրութեամբ եւ* Դաւիթ Բաղիշեցի *վերնագրի տակ՝ Արարատ* 31 (1898), 120—124:

*Յ. Թօփճեան կը հաղորդէ, թէ աչքի առաջ ունեցած է թղ. 34բ—41ա մասը արտագրութեամբ Առաքել վարդապետ Կոստանեան Տոգեցիի (ԺԹ. դար), որ բնագրին կցած է ծանօթութիւններ, քաղելով ձեռագիրներու յիշատակարաններէ:*

*Քաղուածաբար կու տամ այստեղ Յ. Թօփճեանի («Կիլիկեցի»ի) գնահատանքը Դաւիթ Բաղիշեցւոյ այս Ծայրաքաղ Պատմութեան մասին.*

*«Դաւիթ Բաղիշեցւու պատմական երկը կարելի է երկու որոշ մասի բաժանել. անցեալ պատմութիւն եւ ժամանակակից պատմութիւն: Ա. մասը կազմելիս օգտուել է ծանօթ հայ պատմագիրներից, յանուանէ Մ. Խորենացի եւ Փաւստոս: Իսկ ժամանակի պատմութիւնը* 6—7 *թուղթ տեղ է բռնում ձեռագրիս մէջ, որն եւ ներկայանում է*

*իբր փոքրադիր հանրապատկեր (պանորամա) իր ժամանակի քաղաքական եւ կրօնական կեանքի: Իբրեւ տարեգիր Դաւիթ Բաղիշեցին ունի շատ գովելի յատկութիւններ: Ամենից առաջ նա լակոնական ոճի սիրահար է. լեզուն քաղուածոյ մասերում իսկական աղբիւրների ոճերը օղակ օղակ ցոյց է տալիս. իսկ ինքնուրոյն մասերում իր ժամանակի գրաբարն է հնչում: Բազմապիսի պատմական տեղեկութիւնները գիտէ Դաւիթ այնպէս հաշտեցնել զուգորդել. որ նոյնպէս հազուագիւտ է, մանաւանդ մեր միջնադարեան աղբիւրների համար: Մեր պատմագրի համար մեծ նշանակութիւն ունի սորա ժամանակագրութիւնը. այսուհետեւ կամիմ թուականաւն զամենայն բան, զի Վարդանէ հետէ չփոթեալ տեսանեմք զիշխանութիւն Հայաստանեայց... այլ մեք թուականաւ զկարգն ցուցաք: Նշանաւոր անձանց եւ դէպքերի մասին եղած գրաւոր եւ բերանացի աւանդութիւնները նոյնպէս նիւթ են տալիս մեր պատմագրին»:*

## 24. ԱՒԵՏԻՔ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ

*Աւետիք աշակերտն էր Դաւիթ Բաղիշեցւոյ Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին մէջ: 1673ին, երբ Մեսրոպ եպիսկոպոս եւ Դաւիթ վարդապետ ուխտագնացութեամբ Լիմ կղզի կ՚երթան, ինչպէս կը գրէր Մեսրոպ եպիսկոպոս, իրենց հետ էր նաեւ «Աւե-*

տիք բանասէր», այս ինքն վարդապետ։ Նոյն տարւոյն դեկտ. 31ին կը վախճանի ի Լիմ Դաւիթ Բաղիշեցի (§ 23)։ Անոր յաջորդը կ՚ըլլայ Խնդրակատարի առաջնորդութեան՝ Աւետիք վարդապետ, «որ ի մանկութենէ ի վանքս սնեալ եւ վարժեալ եւ յետոյ առաջնորդ եւ հովիւ կարգեալ սուրբ ուխտիս» (1674)։ Կը յիշուի 1691ին իբրեւ «առաջնորդ» (§ 22)։

Շատ արդիւնաւոր եղաւ Աւետիք իր շինարարական եւ տնտեսական գործունէութեամբ նոյն վանքին։ Յիշատակաց Մատեանին մէջ կ՚արձանագրուի իրեն համար. «Եւ բազում աշխատանք եւ երախտիք ունի ի վերայ վանիցս յամէն կողմանց»։ 1693ին ի հիմանց նոր կը շինէ Խնդրակատար Ս. Աստուածածին եկեղեցին. «որ յոյժ հնացեալ էր, փոքր եւ մթին»։ Կը նպաստէ շինութեան Բաղէշի ժողովուրդը, իսկ իրեն ձեռնտու կ՚ըլլան իր աշակերտն Աբրահամ եւ տէր Ներսէս եւ տէր Նահապետ. «ձեռնարկեալ շինեցաւ ի հիմանէ սրբատաշ քարիւ, ներքոյ եւ արտաքոյ, կմբեթաւոր երկնանման եւ գեղեցիկ յօրինուածովք, շրջապատ եւ բարձրաձեւ պարսպաւ եւ խցերօք»։ Կը շինէ հաստաթարեր խանութներ, կը ստանայ վանքին համար նպաստներ բարերարներէ, կը նուիրէ վանքին սպասներ եւ այլն։

Աւետիք կը վախճանի 1710ին, ունենալով իրեն յաջորդ իր աշակերտն Աբրահամ Վ. Ալամեցի (Բանասէր, 1905, էջ 296)։

## Խնդրակատար Ս. Աստուածածնի վանքին Յիշատակաց Մատեանը

Frédéric Macler գտած է գրուածքս անխորագիր Պարիսի Ազգային Մատենադարանի Թ. 195 (Supplément arménien 41) ձեռագրին մէջ, ընդ ամէնը 8 թուղթ, 2·30 × 1·65 հմ. մեծութեամբ, եւ հրատարակած է Notre-Dame de B'tlis վերնագրի տակ Բանասէր ամսաթերթին մէջ 1905, էջ 289—303· տե՛ս վերը էջ 28, ծան. 2:

Կը սկսի «Գոհութիւն, պատիւ եւ փառք էութեան ինքնագոյի... օրհնութիւն Հօր... սփռեալ զեղանիցի... ի վերայ աստուածաբնակ սուրբ Ուխտիս, եպիսկոպոսաց, քահանայից, սարկաւագաց եւ միաբան եղբարցն ամենեցուն որ աստ կան հաւաքեալ...: Եւ ընդ աստուածապարգեւ օրհնութեանս գիտութիւն լիցի ձեզ... զի այս Սուրբ Աստուածածին անուն եկեղեցիս... ի թվին ՋԿԳ. (1514) ոմն բռնաւոր Սօֆ անուն... աւերելով, թալանելով եւ կողոպտելով երեք ամ ամայի եւ աւեր մնաց քաղաքս այս, վանքին եկեղեցիք» (էջ 291—293):

Օրհնութիւն հայցելով վանքին եւ անոր բարերարներուն, Բաղէշի եւ անոր գիւղերու ժողովուրդին համար, կ'անցնի 1518էն ի վեր վանքին առաջնորդներու շինարարական գործունէութիւնը եւ բարերարներու նուիրատուութիւնները յիշատակել (էջ 293—303):

Մատեանիս հինական մասը գրուած է

1703ին, ինչպէս կ՚իմացուի ակնարկութենէս․ «դարձեալ այսօրիկ են կացեալ առաջնորդք եւ տեսուչք սուրբ ուխտիս, զորս կարացաք գիտել ի ՋԿԳ (1514) թուականէն մինչեւ եկեալ հասեալ առ մեզ, որ է թուական ՌՃԾԲ (1703)։ Նոյնպէս կ՚ըսուի․ «Յետ նորա (Դաւիթ Բաղիշեցւոյ) Աւետիք վարդապետն, որ է այժմ առաջնորդ եւ վերատեսուչ սուրբ ուխտիս, որ Խնդրակատար սուրբ Աստուածածին վերաձայնի» (էջ 293)։ Այս տեղիքները յայտնապէս ցոյց կու տայ, թէ 289—293 էջերը գրուած են Աւետիք վարդապետի առաջնորդութեան ժամանակ կա՛մ ուղղակի իրմէ եւ կամ անոր աշակերտ Ալամեցի Աբրահամէն։ Ինձի կը թուի թէ այս մասը կազմուած է Աւետիքէն․ եւ իրեն հայող տեղիքները երկրորդի մը ձեռքով բարեփոխուած են։

Յիշատակաց Մատեանս շարունակուած է այնուհետեւ Աւետիքի յաջորդներէն մինչեւ 1760 (էջ 294—299)։ Այս 1760 տարւոյն կը վախճանի Սահակ վարդապետ եւ կը յաջորդէ Վարդան, «որ է աշակերտ Երեմիա վարդապետին, ի մանկութենէ սնեալ եւ վարժեալ ի նոյն վանքն Խնդրակատար սուրբ Աստուածածնին»․ ինչպէս կը գրէ ինքնին․ «Ես տրուպ եւ ամենից ծառայ Վարդան վարդապետս հրամանաւ Աստուծոյ, կամեցողութեամբ սուրբ Գէորգայ իշխանացն նստայ ի վանքն առաջնորդ ի թուոյն ՌՄԹ» (1760)։ Իրմէ գրուած են էջ 299—303, ուր կը յիշուին իր օրով եղած նուիրատուութիւնները։



Բաղիշեցի վարդան սուրբ վարդապետն է

## 25. ՎԱՐԴԱՆ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ

### ԱՌԱՋՆՈՐԴ ԱՄԻՐՏՈԼԻ ՎԱՆՔԻՆ

Բաղէշի Դպրոցին նշանաւորագոյն ներկայացուցիչն ու անոր վերջին փառքն եղաւ Վարդան Բաղիշեցի։ Իր երեք աշակերտները, Գրիգոր Վ. Շիրուանցի (Շղթայակիր), Յովհաննէս Վ. Կոլոտ Բաղիշեցի եւ Աբրահամ Վ. Քեղեցի, թէեւ հանդիսացան անուանի, գրեցան կարեւոր պաշտօններ, բայց գործեցին Բաղէշէն դուրս։

### Ա. ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆԸ

Վարդան ծննդեամբ Խոզց գիւղաքաղաքէն է։ Իր ծնողքն են Եղիա եւ Ղարիպ, եւ եղբայրները՝ Ղարիպջան, Խաչատուր եւ Խոջխապար։ Սնած եւ վարժած է Ամիրտոլի վանքին մէջ ի մանկութենէ, առ ոտս Խաչատուր վարդապետի, որ առաջնորդն էր վանքին։ «Եւս բազում աշխատութիւն ունի ի վերայ նորա ի գրոց սերտցուլն (ա՛յսպէս) Բարունենց Յովհաննէս վարդապետ» (Պօղոս Գաւառցի 1672)։ Օծուած է կուսակրօն քահանայ Բաղէշի Մեսրոպ եպիսկոպոսի ձեռքով (1650°), իսկ գաւազանի իշխանութիւնը ստացած է Խաչատուր վարդապետէն (Դաւիթ Բաղիշեցի, Դիւան, Ժ., 34)։ Որովհետեւ նաեւ ինքն Դաւիթ Բաղիշեցի (Խնդրակատարէն) ձեռնադրուած էր նոյն Մեսրոպ եպիսկոպոսէն, այս պատճառով կ'անուանէ զանիկա «հոգեւոր եղբայր մեր Վարդան վար-

դապետ, ճարտասան եւ բանիբուն» (անդ)։ Այս երեքը, Մեսրոպ, Դաւիթ եւ Վարդան կը նկատեն իրենք զիրենք «երեք հարազատներ», եղած են յաճախ ի միասին, եւ ապրած միասիրտ եւ միաբան։

Խաչատուր Վ. Բաղիշեցի, որ առաջնորդն էր Ամիրտոլի վանքին, աշակերտն էր Յովհաննէս Բուժիկ Բաղիշեցւոյ. վախճանած է 1662ին եւ թաղուած նոյն վանքին մէջ (Դիւան, Ժ., 54)։ Կը յիշուի 1654ին «Խաչատուր րաբուն մեծ Բաղիշեցի» (Երուսաղէմ 354)։ Վարդան երախտագէտ գտնուած է միշտ հանդէպ իր ուսուցչին, կը պարծի անոր աշակերտած ըլլալուն վրայ, «աշակերտ մեծ րաբունւոյն Խաչատուր Բաղիշեցւոյ», կ՚անուանէ զանիկա «ըստ հոգւոյ ծնօղն իմ Խաչատուր անյաղթ պուէտոս եւ փիլիսոփոս Հայոց, հայր իմ, որ բազում երկամբք ծնաւ զիս վերստին ի յոյսն իմ կենդանի Քրիստոս» (1659)։

Պատմութեան մէջ առաջին անգամ կը յիշուի Վարդան 1651ին. երբ կը նորոգէ Յովհաննէս սարկաւագ Վիեննայի Թ. 571 ձեռագիրը եւ Վարդան ձեռագրին պակասները կը լրացնէ 1651 եւ 1656 տարիներուն. այս առթիւ գրած է Յիշատակարանները. 1. «Զանծինս բարեաց եւ զծնօղս յոլովակի չարեաց, տիպ ողմաւրի խոզոյ բազմապաւակի զՎարդան վարդապետս Բաղիշեցի աղաչեմ յիշել ի Տէր. Թվին Ռ·Ճի (տպ. Ռ·ՃԻ) գրեցաւ» (Թղ. 248ա)։

2․ «Վերստին նորոգեալ եղեւ սուրբ գիրքս որ է Մեկնիչ Տեսլեան սրբոյն Յովհաննու Աւետարանչի եւ Լուծմունք դժուարիմաց բանիցն Եւագրեա հօրն անապատի, ձեռամբ Յովանէս սարկաւագի, ի յիշատակ հոգւոյ իւրոյ եւ ծնօղացն Թանէսին եւ Նղաշին (տպ․ Նիազին) եւ հանգուցեալ եղբաւր Թըլաթին, ի դուռն Ամիրդօլու սուրբ Յովանէսին։ Այլ եւ յիշել աղաչեմ զեղկելի Վարդանս, որ բազում աշխատութիւն ցուցի, զի աշակերտ իմ էր․ ...Թվին ՌՃԵ (1656) յամին, յորում բազում անցք անցին ընդ մեզ յազգէն Մարաց, զի ռազմ եղեալ ընդ իրեարս՝ զմիմեանս սպանանէին եւ զմեզ յաւարի առնուին...» (Թղ․ 335ա)։

3․ «Գրեցաւ սակաւ այս բան Թվին ՌՃԺԸ (1669) ձեռամբ Վարդանայ լոկոյ եւ տրպի (տպ․ դպրի) վարդապետի Բաղիշեցւոյ...։ Յիշատակ է այս Ամիրտօլու սուրբ Յովհաննէսին ի Բաղէշ ի ձեռս մեր» (Թղ․ 334ա։ Վիեննա, Թ․ 571, Ցուցակ, էջ 1039)։ Վարդանի գրչէն են Թղ․ 247ա—249բ, 333բ—334ա լրացումները։ Յովհաննէս կազմած է լոկ եւ կիսով պատռած թուղթերը անգիր թուղթով կարկատած․ Ձեռագրին Ա․ մասը կը կազմէր (Թղ․ 1ա—22ա) Եփրեմի Գործք Առաքելոցի Մեկնութիւնը, սկիզբէն պակաս․ Վարդան չէ անդրադարձած այս կէտին (հմմտ․ Թղ․ 335ա)։

Այս շրջանին է, որ Սարգիս Ամթեցի Ամիրտոլի վանքը կու գայ ուսանելու։ Սա

տակաւին ջահընկալ՝ կ'օրինակէ 1651ին Վարդանի համար Խորհրդատետր մը, որուն վերջը կը զետեղէ իբր 5 էջ ոտանաւոր ընծայական մը (Թղ. 22ա—26բ)։ Վարդան եւս ունի հոն երկու Յիշատակագրութիւն (Թղ. 18բ եւ 21բ). վերջինը, ինչպէս կը տեսնուի, տարիներ վերջը գրուած, որ հետեւեալն է. «Յիշեցէք... զՎարդան չարամիտ աբեղայս... այլ եւ յիշել զգրող սորա զՍարգիս Յամթեցին, որ յորժամ գրեաց՝ սարկաւագ եւ այժմ... կրօնաւոր եւ վարպետ Հայաստանեայց». եւ կը յայտնէ թէ ձեռագիրս իր մահէն ետքը պէտք է ուղարկուի Երուսաղէմ Ս. Յակոբեանց վանքը (Երուսաղէմ, Թ. 2274)։

Աւելի կանուխ ժամանակ մը կ'ենթադրէ Մխիթար Գօշի Երեմիայի Մեկնութեան վերանորոգութիւնը, որուն Յիշատակարանը Վարդանի ձեռքէն է։ «Նորոգեցաւ տառս եւ սոփեստս եւ մատեանս աստուածախօս մարգարէին Երեմիայի, մեկնեալ քաջ փաղերային եւ երախտաւորին Հայոց Գօշին Մխիթարայ համառօտ եւ քաղցր բանիւ, յօգուտ ընթերցողաց. զոր եւ գրեսցէ զնա Տէր ի գիրն անջնջելի կենացն յաւիտենից. եւ սուրբ աղօթիւք նորին եւ ընդ մեզ հաշտեսցի անոխակալութեամբ։

«Եւ զի էր տառս այս յանհոգութենէ աշխարհասիրաց այրեալ եւ փտեալ եւ կարկամեալ դիւրաեղծ նիւթն սորա, զաւրէն տառապեալ տնանկի. զոր եւ տեսեալ զսորայս փարթամութիւն անկեալ ի գետնի, սիրելի

եղբայրն մեր Սարգիս, որ ի կարգի է աստիճանաց սրբոյն Ստեփաննոսի, եւ հասեալ ի վերայ՝ կորզեաց զսոսա ի ժանդահոտ վայրէն եւ վերստեալ զսա իբր զմարգարիտ ի տղմէ, եւ ուրախամիտ մտօք կարկատեալ զսորայս հնութիւն բազմաշխատ եւ վշտակիր ջանիւ, եւ զկնի աշխատեալ ի խոյզս աւրինակի եւ հազիւ գտեալ յաջողմամբ Տեառն: Եւ ապա քաջալերեալ զտկարութիւնս մեր առ ի յ(ը)նկերել ինքեան ի գրել զպակասն եւ զեղծեալսն: Եւ մեր վշտացուցեալ զնա մեր անհամբերութեամբս բազմադիմի. եւ կարողութեամբ հաստչին Յիսուսի այժմ աւարտեցաք ի փառս նմայ, ի թուականիս Հայոց ՌՃԲ (1653) ի քաղաքս Բաղէշ, ի մենաստանս Ամիրդօլու սուրբ Յոհաննու Մկրտչին եւ այլոցն: Զոր եւ կողկողագին պաղատանօք հայցեմ ի հանդիպողացդ հայցել յաննախանձ գթոյն Քրիստոսի փրկանս ողորմութեան մեզ մուրողացս ի ձէնջ. եւ յիշել յաղօթս զՍարգիս քաջ երաժիշտն եւ զարդագիր գրչապետն եւ նկարողն. եւ ախորժ մտաւք Աստուած ողորմի ասել նորին եւ ծնօղացն իւրոց: Որ է սա ի Միջագետաց, ի քաղաքէն յԱմթայ, եկեալ աստ վասն տքնութեան սուրբ գրոց ընթերցման. որ եւ խակ ունի զցայգաջան աշխատութիւնն՝ զեզերեալ ի դրունս իմաստից միշտ. զոր եւ լցուսցէ Տէր զանձկութիւն ըղձից փափագանաց սորա. որ աննախանձն է ի տուրս շնորհաց. եւ յիշեսցէ անմոռացութեամբ զձեզ յիշողքդ եւ զյու-

սողքս եւ զծնօղսն մեր. եւ զիս զսակաւ տաժանողս Վարդան ի միաանգամ զալուստն. ամէն: Առաջին գրողին յիշատակարանն անկ էր. յիշեցէք զնա եւս Տէր ողորմութեամբ իւրով. ամէն,

«Կազմեցաւ սուրբ գիրքս ձեռամբ Վարդան անարժան սարկի: Յիշեցէք զվայելող սորայ զՍարգիս եւ զծնօղսն զՍուրահին եւ զՎարդան զհայրն եւ Աստուած ողորմի ասացէք. ամէն»:

Այս վերջին հատուածը Վարդանի գրչով գրուած է (Զմմառ, Թ. 349, հ. 63):

1658ին նորոգուած է Միքայէլ Ասորւոյ ժամանակագրութիւնը «ձեռամբ իմ մեղապարտ Վարդան պիտականուն բանասիրի» (Դիւան, Ժ., էջ ԼԹ):

1659ին նորոգած է Աստուածաշունչ մը, զոր նուիրած է Լիմի անապատին. իր գրչէն է Յիշատակարանս.

«Յիշել աղաչեմ զեղկելի անձս Վարդան ի յոյսն իմ Քրիստոս, որ զԱստուածաշունչս նորոգեցի բազմամեայ տաժանմամբ. ամէն:

«Վերջին ստացող եւ զկրկին նորոգող սուրբ կտակիս, որ Աստուծոյ շունչ վերաձայնի՝ յիրէն ընկալեալ զանուանակոչութիւնն, որ է Հին Կտակարանքն ԻԴ գիրք պատմագրական եւ պիտանի[ն]. ձեռամբ իմ մեղապարտ Վարդան յոյժ եղկելւոյ եւ թշուառի, պիտակ բանասիրի...: Որ եղեւ սա գրեալ ի դուռն Ամիրզօլու սուրբ Յովհաննիսին եւ սուրբ Ստեփանոսին եւ սրբուհոյ ամենօրհնեալ

*Աստուածածնին. որ ընդ հովանեաւ սոցա նորոգեցաւ ի ժամանակս յոյժ նեղութեանց եւ վշտաց անթիվելեաց...: Այլ եւ զըստ հոգւոյ ծնօղն իմ զԽաչատուր անյաղթ պուետոսն եւ փիլիսոփոսն Հայոց՝ զհայրն իմ, բազում երկամբք ծնաւ զիս վերստին ի յոյսն իմ կենդանի Քրիստոս» յիշեցէք. «ըստ սոյն եւ զծնօղսն իմ ըստ մարմնոյ՝ զհայրն իմ զՇզիա եւ զմայրն զՂարիպ. եւ զեղբարսն իմ զՂարիպջան հանգուցեալն եւ զԽաչատուրն եւ զԽօջխապարն»: «Նորոգեցաւ ի մայրաքաղաքս Բաղէշ, ի վանքս Ամիրդոլոյ: Եւ կէս գրեցաւ ձեռամբ տէր Գրիգոր քահանայի... եւ այլն ձեռամբս իմով աւարտեցաւ բազում տաժանմամբ ի թվին ՌԺԸ, ի հայրապետութեան տեառն Յակոբայ...»:*

*«Ես Վարդան վարդապետս Բաղիշեցի, աշակերտ տեառն Խաչատուր վարդապետի, ետու զսուրբ Աստուածաշունչս, որ է ԻԴ գիրք բովանդակ... այլ եւ ընդ նմին խաչ մի ոսկէզօծ եւ ականակուռ՝ ձեռամբ իմով ի դուռն Լմայ անապատին Ս. Գէորգայ զօրավարին յիշատակ հոգւոյ իմոյ... նաեւ աշակերտին իմոյ Աբրահամ վարդապետին» (Լալայեան, Ցուց., Թ. 4, էջ 26—28):*

*Կ՚երեւայ սակէ, թէ Վարդան* 1658/59 *տարւոյն գտնուած է Լիմ:*

1663*ին ի Բաղէշ կը նորոգէ* 1533*ին օրինակուած Գրիգոր Տաթեւացւոյ Յովհաննու Քաղուածոյն, որ կը պատկանէր Մեծոփի վանքին. «Զվերջին նորոգող լուսազարդ աւե-*

տարանչաց քաղուածուխ զՎարդան լոկ սպի–տակ անուն բանի սպասաւորս աղաչեմ յիշել ի Տէր… որ բազում տաժանմամբ եւ յոլով աշխատութեամբ սրբաքերեալ եւ զթերին լցեալ՝ յանկ եւ յաւարտ հանի…:

Դարձեալ եւ զայս աղերսալի
Ժամեմք ի ձէնջ, եղբարք բարի,
Որք ընթեռնոյք յօժար սրտիւ,
Յիշման առնէք զիս արժանի,
ԶՎարդան վարդապետս Բաղիշեցի,
Որ յոյժ երկօք զայս նորոգեցի.
Այլ եւ ծնողաց իմոց զարմի,
Եղիայի եւ Ղարիպի,
Այլ եւ եղբարց իմոց Ղարիպջանի,
Խաչատրի եւ Խօչխապարի:
Ով մանկունք Նոր Սիոնի
Մի յապաղէք[1] զուք զՈղորմին,
Զի եւ ձեզ մասն կրկին
Ի Տեառնէ ընձեռեսցի. ամէն:

Գրեցաւ վերջոյ գիծս ի Թուականիս Հայոց ՌՃԺԲ (1663), ի հայրապետութեան Տեառն Յակոբայ էջմիածնի, ի Բաղէշ քաղաքի, ընդ հովանեաւ սուրբ ուխտիս որ Ամիրդօլու վանք վերաձայնի. օրհնեալ է Աստուած» (Դիւան, Ժ., էջ Լէ եւ Պօտուրեան, Յիշատակարանք):

Վարդան առաջնորդ Ամիրտոլի վանքին:
Խաչատուր վարդապետ վախճանեցաւ 1662/63

---

[1] Տպ. յաչաղէք:

*տարւոյն: Անոր աթոռին վրայ յաջորդ անուանուեցաւ Վարդան: Ժամանակի մասին կը գրէ Վարդան 1672ին. «յայսմ ամի որ գծիրս եսու ծրել, Ժ. ամաւ յառաջ փոխեալ է առ Տէր» իր հոգեւոր հայրն Խաչատուր: Դաւիթ Բաղիշեցի, որ 1663ին կ'աւարտէ իր Պատմութիւնը, կը գրէր. «Ամիրդօլու վանք... դամբարան եւ դասատուն Բարսեղ վարդապետի, Յոհաննէս (Բուժիկ) վարդապետի, Խաչատուր վարդապետի հանգուցելոյ ի Քրիստոս. եւ այժմ տեսուչ եւ գլուխ ի նմա հոգեւոր եղբայրն մեր Վարդան վարդապետ, ճարտասան եւ բանիբուն» (Դիւան, Ժ., էջ 54): 1663—1670 տարիներուն լռած են Յիշատակագիրները. Դաւիթ Բաղիշեցի խօսելով 1662/63 տարւոյ մասին՝ կը գրէ. «եւ այժմ... ի ներքոյ բազում եւ անտանելի հարկի եւ նեղութեան եմք ամէնքս, զոր Տէր Աստուած այց արասցէ» (անդ, 54): 1669ին կենդանութեան նշան մը կու տար Վարդան վերագոյն բերուած Յիշատակագրութեան մէջ, որով կը յայտարարէր թէ Վիեննայի Թ. 571 ձեռագիրը Ամիրտոլի վանքին կը նուիրէ:*

Ուխտագնացութիւն ի Լիմ: *1669ին Վարդան իր երկու հարազատներու՝ Մեսրոպ եպիսկոպոսի եւ Դաւիթ վարդապետի հետ ուխտի կ'երթայ ի Լիմ, ինչպէս կը գրէ Դաւիթ Բաղիշեցի. «Յիշեցէք զՄեսրոպ վարդապետն եւ զիս զմեղաւորս զԴաւիթ տրուպս եւ զՎարդան վարդապետն, որ ի միասին եկինք*

*ի Լմայ սուրբ անապատս յուխտ Թվին ՌՃԺԸ»* (*Դիւան, Ժ.*, 56):

Վարդան ի Տարօն: *Այն ինչ վերադարձած Լիմէն՝ պատգամաւորութիւն կը հասնի Տարօնի Առաքելոց Վանքէն Բաղէշ, խնդրելու օգնութիւն տեղւոյն առաջնորդարանէն վանքին համար, որ կը գտնուէր պարտքերու տակ: Վարդան առած հետը Դաւիթ վարդապետն եւ Աբրահամ Վ. Ամթեցին, իր աշակերտը, «չու արարեալ ի տեղւոյն իւրմէ սակս աղաչանաց Եղբարցն», կ'աճապարէ Տարօն: Վանքին առաջնորդն էր այս ժամանակ Ստեփանոս վարդապետ «որ մանուկ եւ տղայ» էր: Վարդան վանքի առաջնորդութիւնը կը յանձնէ Դաւիթ վարդապետին, պահելով անոր աթոռակից Ստեփանոսը: Կը ջնջէ վանքին պարտքերը. եւ կ'առնէ գրաւի դրուած առարկաները, կը նորոգէ Եկեղեցւոյն գմբեթն եւ սալերը, իսկ Ս. Ստեփանոսի տաճարը որ Լանկթամուրի օրով կործանած էր, վերստին կը շինէ եւ այսպէս «հաստատեաց եւ պայծառացոյց զՄենաստանն ժամակարգութեամբ եւ սաղմոսերգութեամբ»: Գրասէր Վարդապետը աչքի կ'անցնէ նաեւ վանքին Մատենադարանը, զոր կը գտնէ լքուած: Կը հրաւիրէ Վանեցի Սահակ վարդապետը, որպէս զի նորոգէ եւ կազմէ քայքայուած գրքերը:*

*Խօսքը կու տամ այս տեղ Յիշատակագրի մը, որ շատ ցայտուն նկարագրութեամբ մը կը պատմէ Վարդան վարդապետի կատարած գործերը:*

1671. «Արդ ով բարեգութ հարք իմ... յիշել աղաչեմ զերեքերանեան եւ զբազմերախտիս քրտնաջան աշխատողն զՎարդան Բաղիշեցի բաբունապետն, զկրկին լուսաւորիչն, որ յերեկոյացեալ ժամուս ի վերջին դարուս սա միայնակ գոլով փայլէ ի մէջ համայնից իւրովք գործովք եւ վարուք՝ որպէս արեգակն ի պարս աստեղաց: Եւ սա ամենայն առաքինութեամբ զարդարեալ ի ներքուստ եւ արտաքուստ, մանաւանդ անաչառ քարոզող, կարկիչ անզգամաց եւ ստահակաց: Որ յանբարի ժամանակիս յաւել եւ զբարեգործութիւնս զայս ի վերայ ամենայնի, զոր ունէրն. եւ չու արարեալ ի տեղւոյն իւրմէ սակս աղաչանաց եղբարցն եւ եկեալ ի մենաստանս սուրբ Առաքելոցն որ յանուն Եղիազարու առձայնի, որ անկեալ էր ի ծանր պարտուց ի ներքոյ. որ եւ իսկ եւ իսկ զձեռն արկեալ Աստուծոյ ամենակարող զօրութեամբ՝ վճարեաց զանտանելի պարտս մինչ զրեթէ լինել երկու հազարաց եւ աւելի:

Եւ զամենայն գրեանս եւ զարդիւնս վանաց զերծոյց եւ երեսուն գիրք վերստին նորոգեալ կազմեաց ի ձեռն Սահակի կազմարարի վանեցւոյ:

Եւ զեկեղեցւոյ սագերն նորոգեաց ի հարաւոյ կուսէ. զեկեղեցին սրբոյն Ստեփանոսի, որ ի Լէնկթիմուր բռնաւորէն քակեալ՝ վերստին շինեալ հաստատեաց. եւ պայծառացոյց զմենաստանս ժամակարգութեամբ եւ սաղմոսերգութեամբ: Կարգեալ հաստատեաց

*առաջնորդ եւ սպասաւոր ԺԲ. Առաքելոց՝ զԴաւիթ վարդապետ զհոգեւոր հարազատն իւր. եւ ինքն վերակացու եւ խնամատար գոլով ամենեցուն՝ որ ըստ օրէ յաւելու ի շինուածս սուրբ Եկեղեցւոյ, ի բարեձեւութիւն սուրբ մենաստանիս: Զոր մաղթեմ եղբարցդ հարազատաց յիշել ի պաղատանս զՎարդան բարունապետն, զի անսայթաք կենօք անցուցէ զկեանս իւր եւ յետ ատեացս ելանելոյ ընդ սուրբ վարդապետաց դասուն պսակակից եւ դասակից արասցէ զնա. ամէն: Թվին ՌՃԻ:*

**Կազմեցաւ Մեկնիչս Ղուկասու Աւետարանչի ի Թուաբերութեան հայկազեան տումարիս ՌՃԻ ի վանս Ղազարու, ի հայրապետութեան սրբոյ աթոռոյն Էջմիածնի Յակոբայ... եւ յառաջնորդութեան սուրբ ուխտիս տէր Դաւիթ ճգնազգեաց վարդապետի եւ տէր Ստեփաննոս կրօնաւոր հերապետի»:*

*Յիշատակարանս կը գտնուի Առաքելոց վանքի սեպհական Գրիգոր Տաթեւացւոյ Յովհաննու Աւետարանի Քաղուածոյին մէջ, ուսկից արտագրած է Գեղամ Տէր-Կարապետեան. նոյնը կայ գրեթէ բառ առ բառ, Էջմիածին, Գէորգեան Բաժին, Թ.* 174 (*Իղնատիոսի Ղուկասու Մեկնութեան վերջը, ի բաց առեալ վերջին աստղանիշ հատուածը: Թ.* 174*ի Յիշատակարանը քաղուածաբար տես Երեւակ Դ.* (1858), 202—203:

*Այս տնտեսական, շինարարական եւ մշակութական աշխոյժ գործունէութիւնը տեղի*

կ'ունենայ 1670/71 տարիներուն: 1671 օգոստոս 2ին եւ 9ին երկրաշարժ մը կը ցնցէ Տարօնը: Թէ նորակառոյց շինուածքները որ եւ է վնաս կրեցին, յայտնի չէ: Բայց ուրիշ շարժում մը մեծապէս կը տուժէ Վարդանի ձեռնարկութիւնը: Սարգիս երէցի յիշատակագրութեան համաձայն 1671 ամառը «շահ Սուլէմանն[3] եւ Ջխայի խանն բռնեցին մեր առաջնորդ Դաւիթ վարդապետն (եւ) Ստեբաննոս վարդայպետն»: Այս շատ հակիրճ ակնարկութենէն կը տեսնուի թէ մերազգիները եւ այլազգիները, շահաղէտները եւ պարտատէրները յայտնի եւ ընդյատակեայ դժուարութիւններ եւ թշնամութիւններ յարուցած են վանքին եւ անոր վերանորոգիչներու դէմ, որոնք կրկնուեցան նաեւ 1705—1710 տարիներուն, ինչպէս պիտի տեսնենք: Վարդան, որ գլխաւոր պատասխանատուն էր, խոհեմական կը համարի խոյս տալ. կ'իջնայ Միջագետք. կը կալանաւորուին Դաւիթ վարդապետ եւ Ստեփաննոս հերպէտ: Այս իմաստով միայն կարելի է հասկնալ Պօղոս Գառնեցւոյ տողերը, գրուած 1672ին. «որ (Վարդան) յայսմ ամի ի հալածանս է յանիծեալ ազգէն Մահմետականաց յերկիրն Սուրացւոց, որ այժմ Հազու վերաձայնի. որ յայսմ հալածանաց միջի ետ գրել զգիրս (պատմագրաց) յիշատակ իւրն» (Արարատ, 1891, էջ 150):

Դաւիթ վարդապետ հաւանօրէն կ'ար-

---

[3] Շահ Սէֆի Բ. Սուլէյման, 1666—1694:

տաքսուի Տարօնէն. ան 1673ին Բաղէշ է: Ստեփանոս մանկահասակ վարդապետի փոխանակ առաջնորդ կ'ընտրուի Յովհաննէս: Նոյնպէս Վարդան բարեաւ կը վերադառնայ Բաղէշ:

**Ուխտագնացութիւն ի Լիմ:** 1673ին երկրորդ անգամ կը միաբանին երեք հարազատ երթալու Լիմ անապատ: Հազիւ ոտք դրած կղզւոյն վրայ՝ կը վախճանի Դաւիթ վարդապետ (31 դեկտ. 1673) եւ կը թաղուի այն տեղ:

**Սահակ Վանեցի**, որդի Ամիրջանի եւ Ջինարի, ծաղկած էր Վանի շրջանին մէջ իբրեւ քաջագիր գրիչ, վարպետ մանրանկարիչ եւ ճարտար կազմարար: Ունինք իրմէ նկարազարդուած Շարակնոց մը, գրուած 1662ին ի Սուրբ Մոկաց, Վարդան գրիչէն, զոր ստացիչը տէր Մեսրոպ յանձնած է Սահակի «զծագրել զսա զանազան»: Նկարիչը առաջին նկարին տակ ստորագրած է. «Զատառապեալ Վանեցի Սահակ ծաղկող յիշեա» (Մխինխէն, Թ. 22. Գալէմքեարեան, Ցուցակ, էջ 32—33): Ան համբաւուած էր արդէն: 1671ին զինքը Առաքելոց վանքը կը կանչէ Վարդան, նորոգելու մաշուած, կազմալուծուած ձեռագիրները: Կը հետեւի հրաւէրին. կ'երթայ Առաքելոց վանքը կը մնայ երկու տարի եւ կը նորոգէ աւելի քան 45 գիրք: Ապա, Վարդանի խնդրանքով, կը փոխադրուի Բաղէշ, նորոգելու Ամիրտոլի վանքի ձեռագիրներն եւ ուսուցանելու գրչութեան, մանրանկարչութեան եւ կազմարարութեան արհեստները:

Իրեն կ՚աշակերտին Յովհաննէս Երէց եւ Գրիգոր դպիր: Կը նորոգէ 75 ձեռագիր, ինչ ինչ ձեռագիրներ ալ կը նկարազարդէ: Երկու տարի կը դեգերի Բաղէշ. ուխտ կ՚ունենայ հոն մանուկներու համար ալ օրինակելու եւ ծաղկելու ձեռագիրներ (1674—1676): Վերջացնելով իրեն եղած յանձնարարութիւնները կը վերադառնայ Վան:

Ըստ վաղեմի սովորութեան, երբ կը նորոգուի ձեռագիր մը, նորոգողն եւ կամ ուրիշ մը անոր կողմէ՝ կը կցէ յիշատակագրութիւն մը: Այսպէս նաեւ Սահակի նորոգած յիշեալ իրր 120 ձեռագիրներն ունին նման յիշատակագրութիւններ, գրուած առաւելապէս Աբրահամ Վ. Ամթեցիէն: Այս ձեռագիրներէն ոմանք հասած են մեզի, ուրիշներ տեսնուած են ԺԹ. դարուն եւ ցուցակագրուած: Ունիմ աչքի առաջ այդ յիշատակագրութիւններէն մէկ քանին: Անոնք ընդհանրապէս միակերպ են: Յառաջ կը բերեմ քաղուածաբար այն տեղիքները, որոնք ժամանակակից անձինքներու եւ դէպքերու մասին ակնարկութիւններ կը բովանդակեն:

1671. «Զգերահրաշացեալն հոգւով եւ զպերճացեալն բանիւ իմաստութեան զԲաղիշեցի Վարդան բարունապետս յիշեսջիք առ յոյսն ամենեցուն Քրիստոս հանդերձ Հարազատաւն իւրով Դաւիթ վարդապետիւ: Նաեւ ...զԱբրահամ բանի սպասաւորս եւ աշակերտ տեառն Վարդանայ յիշել ի Տէր աղաչեմ...: Կազմեցաւ սուրբ տառս ի Թուակա–

նութեան... ՌՃԻ. ի վանս Եղիազարու... յառաջնորդութեան սրբոյ ուխտիս տէր Դաւիթ ծղնազգեաց վարդապետին եւ տէր Ստեփանոս հայրպետին ձեռամբ անարհեստ Սահակայ Վանեցւոյ եւ Կարապետի» (Տօնապատճառ Առաքելոց վանքի. Գ. Տէր–Կարապետեան, Ձեռագիրք Տարօնի: Դիւան, Ժ., էջ ԼԹ):

1671. «Բաղիշեցի Վարդան վարդապետ ՌՃԻ թուին Առաքելոց վանքի գրքերը նորոգել եւ կազմել կու տայ Սահակ Վանեցի վարպետին «օգնականութեամբ համշիրակ եղբօր մերոյ Դաւիթ վարդապետին», որ ներկայապէս Ղազարու վանքին առաջնորդն է: Վարդանի աշակերտներէն կը յիշուին Աբրահամ Վ. Ամթեցի եւ Սարգիս դպիր» (Պոտուրեան, առած Մխիթ. ձեռագրէ մը):

1673. «Զգերապանցեալն հոգւով...: Զի Եղիազարու վանաց գրքերն .Խ. հին փտեալ գիրք վերստին ետուն նորոգել եւ կազմել եւ զեկեղեցւոյ սալքերն եւ զգումբէթն վերստին նորոգեաց եւ զեկեղեցի սրբոյն Ստեփանոսի ի հարաւոյ կուսէ եկեղեցւոյն վերստին շէնցուց (Դիւան՝ ի հիմանց շինեաց եւ պայծառացոյց) զսուրբ Մենաստանս ժամակարգութեամբ եւ սաղմոսերգութեամբ...:

Կազմեցաւ Լուծմունքս ի դուռն սուրբ Առաքելոցն ձեռամբ մեղապարտ Սահակ վանեցւոյ ի թվ. ՌՃԻԲ» (Գեղամ Տէր–Կարապետեան, Ձեռագիրք Տարօնի. Գր. Տաթեւաց-

ւոյ Լուծմունք Յովհաննու: Դիւան, Ժ., էջ Լթ, Ճառք Յովհ. Որոտնեցւոյ):

1673. Սահակ ի խնդրոյ Աւետիսի եւ կողակցին Կիւլվարդին կ'օրինակէ Աւետարան մը. «Եւ արդ գրեցաւ, ծաղկեցաւ Ս. Աւետարանս յերկիրն Տարօնոյ (ի) Մուշ, ի վանս Եղիպարու, ի դուռն ԺԲ. Առաքելոց եւ այլ բազմախուռն սրբութեանց եւ սրբոց գամբարանաց որք աստ կան հաւաքեալ, ձեռամբ ...Սահակ Վանեցւոյ ի Թվ. Հայոց ՌՃԻԲ. ի հայրապետութեան... Յակոբայ... կաթողիկոսի, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Յովհաննէս եւ Դաւիթ վարդապետացս եւ աստուածաբան գիտապետացն եւ Ստեփանոսի կրօնաւորին, որ մեզ խնամածու, բերկրիչ. եւ այլ միաբան եղբարց որ աստ կան հաւաքեալ. վարձս բարեաց պարգեւեսցէ Տէր...: Յիշեցէք զմեղապարտ Սահակ դպիր, զծնողսն իմ զԱմիրջան եւ զՉինարն եւ զեղբարսն իմ զՍատաղէն եւ զամենայն մերձաւորսն իմ...: Եւ եղեւ սկիզբն սուրբ Աւետարանիս ի մարտի ամսոյ ԺԲ.ն եւ գրաւն յապրիլի վեց...: Այլ եւ յիշել աղաչեմ զԲաղիշեցի աստուածաբան Վարդան վարդապետն, որ յոյժ ամի բերեալ զմեզ ի Վանայ եւ նստոյց ի վանս Ղազարու եւ զնորին փոխեալ եւ փերեւետեալ գրեանս ԽԴ. գիրք վերստին ետ կազմել եւ նորոգել. եւ բազում շինութիւն եւ պարտս վճարեալ, զոր մաղթեմ... յիշել... զՎարդան բարունապետն եւ զնորին աշակերտն զԱբրահամ վարդապետն...» (Աւետ. Մուշի

*Ճիկրաշէն թաղի Ս. Կիրակոս եկեղեցւոյ: Գ. Տ. Կարապետեան):*

*Անկէ կը տեսնուի, թէ Սահակ վերջացուցած է ձեռագիրներու նորոգութիւնը յընթացս* 1671—1672 *տարիներուն եւ* 1673*ին սկիզբը ազատ՝ ձեռնարկած է Աւետարանի օրինակութեան, զոր գրած է* 25 *օրուան մէջ. ապացոյց մը իր արագագրութեան: Ան մեկնած ըլլալու է Տարօնէն* 1673, *ապրիլին:*

*Սահակ Վանեցի Տարօնէն անցած է Բաղէշ, նորոգելու Ամիրդոլի վանքին ձեռագիրները: Այս միջոցին Վարդան կը գտնուէր Բաղէշ: Առաջին անգամ քաղաքիս մէջ կը յիշուի Սահակ* 1674*ին: Այս տարւոյն Գրիգոր քահանայ կ՚առաջարկէ Սահակի նկարազարդել Աւետարան մը, զոր ինքը գրել տուած էր Կ. Պոլիս Յովհաննէս դպրի: Յանձն կ՚առնէ Սահակ իրեն եղած առաջարկութիւնը. իր Յիշատակարանին մէջ կը գրէ.*

*«Եւ արդ ես մեղուցեալ եւ անպիտան ծառայս ձեր Վանեցի Սահակ դպիրս եկեալ իմ ի քաղաքն Բաղէշ եւ ստացայ զսուրբ Աւետարանս ի քահանայէն Վարդանայ տեառ միայն սեաւ գրով: Եւ իմ բնակեալ ի վանս Ամիրդոլու, առ ոտս երանաշնորհ եւ աստուածաբան վարդապետին Վարդանայ՝ ամ մի եւ հինգ ամիս: Եւ ծաղկեցի վարդապետին երկու Աւետարան. ոսկեզօծ եւ ծաղկել: Եւ զհնացեալ գրեանս եւ վերատին նորոգել, թուով եօթանասուն եւ ութ գիրք: Զոր Տէր Աստուած անփորձ եւ անսայթաք պահեսցէ*

*զՎարդան բարունապետն եւ զաստուածաբան գիտապետն, եւ զհարազատն իւր Աբրահամ վարդապետն...։*

*«Ես մեղապարտ Սահակ Վանեցիս ծաղկեցի զսուրբ Աւետարանս ի վանս Ամրդօլ, ի դուռն սրբոյն Յոհաննու եւ սրբոյն Ստեփաննոսի եւ Ս. Աստուածածնի տաճարիս եւ այլ սրբութեանցս, բազում աշխատութեամբ, ծաղկեալ ոսկով եւ լաջվարդով եւ այլ երփն երփն գունով զարդարեցի։ Զոր տեսեալ մեծահաւատ... տէր Գրիգոր, ջերմ սիրով ստացաւ...։ Յիշել աղաչեմ միով Տէր ողորմեայս զտառապեալ Վանեցի Սահակ ծաղկօղս եւ զծնողսն իմ զԱմիրջանն եւ զՋինարն, եւ զուսուցիչն իմ զմեծ բարունին զՍիմէօն էջմիածնեցին. եւ Աստուած զձեզ յիշէ. ամէն»* (*Դիւան*, Ժ., էջ ԼԸ. Լալայեան, *Ցուցակ*, Թ. 411, էջ 943—946)։

*Այս Սահակէն է նաեւ Էջմիածնի Թ. 2639 (Ագաթանգեղոս), ուր Թղ. 4բ Գր. Լուսաւորչի՝ նկարին տակ կը կարդացուի. «Յիշեայ զիս, Տէր իմ եւ ստեղծող, զՎանեցի Սահակ ծաղկօղ»։ Ձեռագիրը գրուած է 1672ին։*

*Սահակ վերադարձաւ այս Վան. հոս 1680ին կը ծաղկէ Աւետարան մը. «Ծաղկեցաւ եւ կազմեցաւ ձեռամբ Սահակ Վանեցւոյ թվին ՌՃ. եւ ԻԹ. ի դրան սուրբ առաքելոյն Բարդուղիմէոսի ի առաջնորդութեան Եսայեայ վարդապետի եւ քաջ հռետորի, ի վայելումն սրբասնունդ տէր Յովհաննիսին»* (Լալայեանց, *Ցուց.*, էջ 587—570)։

*Իր աշակերտներն եղած են ի մէջ այլոց* Յովհաննէս երէց *որդի Սահակայ եւ Աննայի եւ* Գրիգոր դպիր։ *Ասոնցմէ են հետեւեալները*։

1675․ «*Եւ արդ գրեցաւ սուրբ Աւետարանս ի մայրաքաղաքս Բաղէշ, ի դուռն ․Է․ խորան եկեղեցւոյ ձեռամբ... Յովհաննէս երիցուս ի Թուականիս... ՌՃԻ եւ չորսին․ յառաջնորդութեան քաղաքիս Մեսրովպ ճըգնազգեաց վարդապետին․ այլ եւ քաջ բաբունապետին երկրորդ Վարդան վարդապետի եւ հարազատին իւրոյ Աբրահամ բանասիրին․ որ նոքա եղեն պատճառ անարժանիս ի յուսումն ծաղկին...։ Յիշեցէք... Յովհաննէս գրիչս եւ Աստուած ողորմի ասացէք ծնօղաց իմոց տէր Սահակին եւ Աննային եւ որդոյն իմոյ Սահակ պատանեկին... որ ծրեցի... եւ ծաղկօք զարդարեցի...։ Առաջին արուեստ ծաղկիս սա՛ է...։ Այլ եւ յիշեցէք ի Քրիստոս զուսուցիչն իմ զՎանեցի Սահակ վարպետն, որ ուսոյց ինձ զծաղիկն եւ զարուեստ գրչութեան...*» (*Էջմիածին, Թ*․ 317)։

1683․ *Քարոզգիրք մը* «*վերատին կազմեցաւ ձեռամբ Յովհաննէս անարժան երիցու ընդ Հինգխորան սուրբ եկեղեցւոյ ի վայելումն Վարդան աստուածաբան վարդապետի ի Թվ․ ՌՃԼԲ*» (*Պետերբուրգ, Արեւելեան ճեմարան, Թ*․ 3, *Յուց*․ *Ն*․ *Մառի, Հանդ․ Ամս*․, 1892, *էջ* 82*բ*)։

1690․ *Յովհ*․ *գրիչ ի Բաղէշ կ՚օրինակէ ճաշոց գիրք մը եւ կը խնդրէ*․ «*այլ եւ զՎար-*

*դան աստուածարան վարդապետն յիշեցէք ի Քրիստոս, որ եբեր զՍահակ վարդապետն ի Վանայ ի վանս իւր եւ հոգաբարձութեամբ ետ ուսուցանել անարժանիս զծաղիկ եւ զկազմ» (Գ. Տէր–Կարապետեան, Տարօնի ձեռագիրներ):*

*Իսկ Գրիգոր գրիչ, որ ինքզինքը «դպիր» կը ներկայացնէ, 1680ին օրինակած է Աւետարան մը, զոր «զարդարեցի, կ՚ըսէ, ծաղկով, գոյնզգոյն յօրինուածով եւ կազմեցի»․ եւ կը խնդրէ․ «այլ եւ զաստուածարան վարդապետն Վարդան յիշեցէք ի Քրիստոս, որ եղեւ պատճառ արուեստիս․ զի բերեալ զՍահակ վարպետն ի Վանայ ի վանս իւր եւ երկու տարի զմեզ առ ինքն առեալ եւ ուսուցեալ․ վասն որոյ Աստուած զինքն հաստատուն պահեսցէ ի վերայ գաւազանին իւրոյ․ Թվին ՌՃԻԹ․ կազմեցաւ» (Երեւան, Պետ․ Թանգարան, Թ․ 172):*

Վարդան վարդապետ ի Բաղէշ: *Տարօնէն հալածական՝ շրջեցաւ Վարդան Ասորիքի մէջ ժամանակ մը, ուսկից ապա վերադարձաւ Բաղէշ ողջամբ: Տեսանք, որ ան 1673 դեկտեմբերի վերջերը այցելած էր Լիմի անապատը: Որչափ ալ զբաղուած էին անոր ժամերը վարչական, տնտեսական եւ շինարարական գործերով, բայց եւ այնպէս ի բնէ գրասէր, աչքէ չէր հեռացներ Վանքին Մատենադարանը: Ոչ միայն ջանք տարաւ, որ Սահակ Վանեցին վանք բերէ եւ անոր նորոգել տայ Մատենադարանին փտտուած եւ*

քայքայուած գրքերը, այլ եւ աշխատեցաւ ճոխացնել գրքերու թիւը նոր հատորներով, յատկապէս այնպիսի ձեռագիրներով, որոնք կը պակսէին հոն։ Այս նպատակով ունէր ձեռքի տակ քանի գրագիրներ, եւ օրինակել կու տար անոնց գործեր, որոնց բնագիրը վերհանած էր Տարօնի եւ Լիմի վանքերու մէջ եւ կամ վերահաստատ եղած էր անոնց գոյութեան որ եւ է վանքի կամ անձի քով։ Պօղոս Գաւառցի կը հաստատէր մեզի, թէ Վարդապետը նաեւ հալածանքի օրերուն ետեւէ էր, որ իր գրիչները չարունակէին օրինակութիւնները անընդհատ։

1671ին, երբ Վարդան Տարօն կը գըտնուէր, իր աշակերտը Պօղոս Գաւառցի, կ'օրինակէր ի Բաղէշ Յովհ. Երզնկացւոյ Մատթէի Մեկնութիւնը (Երուսաղէմ, Թ. 581)։

1672ին նոյն Պօղոս կը գրէր Պատմագիրներու հաւաքածոյքը (Էջմիածին, 2639) եւ 1674ին վանական վարդապետի Մեկնութիւնն Յոբայ (Վենետիկ, ըստ Պոտուրեանի) եւ հաւանօրէն նոյն տարուոյն՝ Յակոբ Ջղօնի ճառերը (հմմտ. Զարբհանալեան, Մատենադարան, էջ 45)։

Վարդան Վանի մէջ (1675)։ Տարեգիր մը կը պատմէ թէ 1675ին Վան եկած է Սարգիս Վ. Ջօլախ, արքեպիսկոպոս եւ առաջնորդ Կիպրոսի։ «Սա սկսաւ քարոզել եւ խօսել հերձուած, գի ասէր. Ոչ է պարտ քրիստոնէից կանանց ի ծնանել զտղայս պահել

*քաղաքսն. այլ այն Աստուածածնին միայն մնացել էր պահել: Որոյ չար համբաւ տարածեցաւ եւ լու եղեւ ընդ ամենայն աշխարհ. եւ ժողովեցան բազում վարդապետք»: Ասոնց թուին մէջ էին.*

*Իսահակ Վ. Մակուեցի,*
*Սարգիս Վ. Կաֆայեցի, աշակերտն Իսահակ վարդապետի,*
*Վարդան Վ. Բաղիշեցի,*
*Մարտիրոս Վ. Գաղատացի,*
*Յովասափ Վ. Ղափանցի, առաջնորդ Վանի,*
*Թումայ Վ. Գանձակեցի,*
*Վարդան Վ. Գաւաշեցի,*
*Գրիգոր Վ. Բոբիկ Անարծաթն:*

*Ժողովականները կը դատապարտեն Զօլախ վարդապետի «անասելի» վարդապետութիւնը* (*Դիւան, Ժ.*, *էջ* 106):

*Այս Սարգիս Վ. Զօլախ Կիպրացի, ինչպէս ժամանակը ցոյց կու տայ, Կիպրոսի Մակարայ վանքին առաջնորդն էր, որուն մասին տե՛ս Հանդ. Ամս.* 1949 (*Մխիթար տօնագիրք*), *էջ* 375, 378, 380 *եւ* 383:

Վարդան վարդապետ նուիրակ էջմիածնի ի Տարօն: 1676*ին հրաման կ'ընդունի Յակոբ կաթողիկոսէն նուիրակութեամբ շրջիլ Տարօն: Այս մասին մեր տեղեկատուն է Պօղոս գրիչ, որ* 1676*ին կը գրէ. «եւ է այժմ Վարդապետն յերկիրն Մշու ի սպասաւորութիւն Ս. Էջմիածնի, այս ինքն նուիրակ հրամանաւ*

*տեառն Յակոբայ, Թուին ՌՃԻԸ» (Էջմիածին, Թ. 1899. հմմտ. Սամուէլ Անեցի, էջ ԺԱ)։ Այս միջոցին հաւանաբար կը ստանայ Վարդան Գրիգոր Աստուածաբանի ճառերը, զոր Նորոգել տալով 1677ին «եդ ի յիշատակ ի դուռն Ամրդոլու յընթերցումն հոգեւոր որդւոց Աբրահամ վարդապետին եւ այլոց աշակերտացն» (Էջմիածին, Գէորգեան Բաժին, Թ. 124. հմմտ. Երեւակ, Դ., էջ 295)։*

Վարդան վարդապետ նուիրակ Երուսաղէմի ի Նոր Ջուղայ։ *1678ին կ՚անուանուի Վարդան Երուսաղէմի Եղիազար Այնթափցի պատրիարքի կողմէ Նուիրակ Պարսկահայոց. այս մասին կը հաղորդէ մեզի Գրիգոր դպիր 1679ին, իր օրինակած Աւետարանին մէջ, «ի հայրապետութեան ամենայն Հայոց տեառն Յակոբայ եւ մերումս վերակացուի եւ առաջնի տեառն Վարդանայ քաջ հռետորի եւ բանիբուն վարդապետի, որ յայսմ ամի ի նուիրակութիւն է գնացել ի Շօշ քաղաք, որ է Ասպահան, վասն Երուսաղէմայ» (Երեւան, Պետ. Թանգ. Թ. 172)։ Վարդան յԱսպահան էր 1678, մայիս 25ին։ Այս տեղ օրինակել տուած է քառամանեայ ձեռագիր մը, որ ունի Յիշատակարաններս.*

1. *«Զստացօղ սորա, այլ եւ յոյժ տաժանմամբ սրբագրօղս զՎարդան վարդապետս Բաղիշեցի աղաչեմ յիշել ի սուրբ յաղօթս հանդերձ ծնօղօք մերովք. Թվ. ՌՃԻԷին»։*

2. *«Զստացօղ գրոցս եւ գրագրում երկօք յերեք եւ ի Դ. օրինակէ սրբագրօղս եւ զստու–*

*թիւն եւ զախալանս ամենեւին բարձօղ զՎարդան պիտակ վարդապետ Բաղիշեցի, որ եւ յոյժ աշխատեցայ, եւ զներսէս սարկաւագն իմ, որ ընթերցաւ զօրինակն, յիշել աղաչեմ զիս եւ զծնօղսն իմ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ՝ զՂարիպ եւ զԵղիա եւ զԽաչատուր վարդապետ, եւ զաշակերտեալ մանկունսն զԱբրահամ վարդապետ եւ զայլսն ի զթութիւնն Քրիստոսի եւ թողութիւն մեղաց. եւ դուք յիշ(եալ լիջիք) ի Քրիստոսէ: Գրեցաւ ի Սպահան քաղաք ի Ջուղայ»:*

3. *«Յիշեցէք զմեղուցեալ Վարդանս սպասաւոր բանի, զստացօղ մատենիս եւ զծնօղսն իմ՝ զՂարիպն եւ զԵղիա եւ զԽաչատուր վարդապետն Բաղիշեցի եւ զաշակերտսն իմ զԱբրահամ վարդապետն եւ զտէր Մարգարէ եւ զտէր Գրիգոր կրօնաւորսն, որ աշխատութեամբ բազմաւ սրբագրեցաք զսա. ի թվին ՌՃԻԷ. ի Շօշ քաղաք որ է Իսպահան եւ Աստուած զձեզ յիշէ եւ ողորմի»:*

4. *«Արդ գրեցաւ գիրքս այս ձեռամբ Մարտիրոս քահանայի ի խնդրոյ սրբամիտ եւ հեզահոգի եւ լի աստուածային շնորհիւն Վարդան քաջ րաբունապետի, որ ետ զսա գրել յիշատակ իւր եւ ծնօղացն եւ ամենայն արեան մերձաւորացն. ի թւին ՌՃԻԷ. մայիսի ամսոյ ԻԵ»* (Leiden, *Համալսարանի Գրադարան*, Or 5474. *Հանդ. Ամս.* 1937, *էջ* 343—351):

Վարդան ուխտաւոր Երուսաղէմի: 1684*ին*

*առած հետը 15 աշակերտ գնաց ուխտաւորութեամբ Երուսաղէմ: Այս փառաշուք ուղեւորութեան մասին դժբախտաբար մէկ վկայ ունինք: Յանկալի էր ոչ միայն իր ուղեկից 15 (Դիւան, «ԺԵ» կարդացած է «ԺԷ») աշակերտներու անունները գիտնալ, այլ եւ ճանապարհին ուղեգիծը: Մեր տեղեկատուն է Յովհաննէս գրիչ, որ օրինակած է Ճաշոց մը տանուտէր պարոն Պօղոսի համար: Կը գրէ. «Գրեցաւ Ճաշոց գիրքս ի քաղաքն Բաղէշ, ընդ հովանեաւ .Ե. խորան սուրբ եկեղեցւոյ, Ս. Խաչին, Ս. Աստուածածնին, Ս. Պաւղոսի, Ս. Պետրոսի եւ Ս. Սարգսի զաւրաւարին ի թվին ՌՃԼԳ* (1684) *ի հայրապետութեան տեառն Եղիազարու, յիշխանութեան Շարաֆ խանին, որ էր այր խաղաղարար եւ զաւրս սակաւացոյց...: Յիշեցէք զուսուցիչն իմ զԲաղիշեցի տէր Վարդան վարդապետն զմեծ հռետորն*, որ յայսմ ամի գնաց յԵրուսաղէմ հնգետասան աշակերտօքն՝ մխիթարել զհոգեւոր եւ զմարմնաւոր եղբարսն որ անդ: Եւ կատարեալ զուխտն դարձեալ եկն, ի բնիկ աթոռն իւր *Ս. Յովհաննէս Մկրտչին, որ Ամիրդոլ վերաձայնի: Այլ եւ զՎանեցի զՍահակ վարդապետն, որ ուսոյց ինձ զկայն, զծաղիկ: Ես գրողս Յովհաննէս քահանայ, ի Ջրօրհնեաց սկսեցի եւ աւարտեցի ի Նոր Կիւրակէ... Թվ. ՌՃԼԳ» (Գ. Տէր-Կարապետեան, Ձեռագիրք Ծիկրաշէնի Ս. Կիրակոս եկեղեցւոյ. հմմտ. Դիւան, Ժ., էջ ԼԶ):*

Վարդան վարդապետ եւ Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան: *Երեմիա Չէլէպի իր չափական «Պատմութիւնն Ստամպօլոյ» նուիրած է Վարդան վարդապետի մը, ինչպէս գրուածքին ճակատին գրուած ընծայականէն կը տեսնուի. «Մեծարգոյ եւ քաջ րաբունապետին տեառն Վարդանայ վարդապետի ընծայեալ յԵրեմիայէ Կոստանդնուպոլսեցւոյ*[3]»:

*Հեղինակը նոյնը կը կրկնէ նաեւ քիչ յետոյ.*

*«Ըստ սաստիկ խնդրոյն յիշատակ*
*րաբունւոյ Վարդանայ ընծայն.*
*Ով տէր մեծ վարդապետ իմ*
*ողջունիւ զքեզ մեծարանան.*
*Առից զքեզ ի հարաւոյ (Կ. Պոլսոյ)*
*շրջեսցուք յերկիրս ի զբօսան* (էջ 4):
*Դարձեալ գրուածքին վերջաւորութեան.*

*«Յիշատակարան ընծայիս երգողի».*

*Յիշատակ տեառն Վարդանայ*
*որ կոչի մեծ րաբունի այն,*
*Յղեմ զիմ աղվոր աղերսս*
*զի շնորհաց Տեառն նա գոհարան...*
*Տէր Վարդան վարդապետդ մեծ՝*
*ընդ սուրբ աղօթսդ յիշել յարաժամ*
*Զսակաւս ի շատ համարիս,*
*զի յոլով բարեաց դու արժան»* (120/21):

---

[3] *Այս ընծայականը կը տեսնուի նաեւ նոյն հեղինակի «Օսմանցւոց համառօտ պատմութեան» վերջը* 1695 *թուականով (հմմտ. Ակինեան, Երեմիա Չէլէպի, էջ* 80):

Առ այս կը գրէ Դկտ. Վահրամ Թորգոմեան, որ հրատարակողն եւ ծանօթագրողն է Երեմիայի «Պատմութեանս».

«Վարդան վարդապետ Երեմիա Չէլէպիին շատ ծանօթ եւ անկէ շատ սիրուած ու յարգուած անձնաւորութիւն մ'ըլլալու էր, որ ‘մեծարգոյ եւ քաջ րաբունապետ,, ‘մեծ վարդապետ,, ‘մեծ րաբունի, տիտղոսներու կ'արժանանայ անոր գրչէն. եւ հարկաւ Կ. Պոլիս ալ եկած ըլլալու էր, եւ թերեւս ալ իրա՛ւ քաղաքին չորս կողմն այցելած Երեմիա Չէլէպիի հետ, եւ ուզած որ անոր նկարագրութիւնը պատրաստէ, ինչպէս արդէն այս գլուխին Բ. տողին ‘Ըստ սաստիկ խնդրոյ յիշատակ, խօսքերը կը յայտնեն»:

Ո՞վ էր այդ «տէր մեծ վարդապետ» Վարդան եւ ե՞րբ եւ ի՞նչ առիթով ծանօթացած է Երեմիայի: Այս 1660—1689 տարիներուն, երբ կը գրէր Երեմիա իր «Պատմութիւնը», հրապարակին վրայ մէ՛կ Վարդան միայն կար, որ իբրեւ «մեծ վարդապետ» եւ «րաբունապետ» տիտղոսի արժանացած է, այն է Վարդան Բաղիշեցի, առաջնորդն եւ ուսուցչապետը Ամիրտոլի վանքին: Իր անունը հռչակուեցաւ յատկապէս 1684ին, երբ 15 վարդապետ աշակերտներով Երուսաղէմ գնաց: Երեմիա իր Պատմութիւնը սկսած է գրել 1661—1664, 1673—1681—1689 տարիներուն ընդհատ ընդհատ, եւ հաւանօրէն պէսպէս խմբագրութեամբ: Այժմեան օրինակի սկիզբը գրուած ընծայականը եթէ նախնական խմբա-

գրութեան մաս համարինք, անոր հանդիպումը Վարդանին 1660ին հարկ է ենթադրել, երբ Վարդան պարզապէս վարդապետ էր եւ տակաւին չէր ընտրուած առաջնորդ։ Այս պատճառով ալ 1933ին գրած էի. «Վարդան վարդապետ կ'երեւայ թէ Կ. Պոլիս եկած է 1660ին եւ այս առթիւ առաջարկած է Երեմիայի գրել քաղաքին նկարագրութիւնը» (Երեմիա Չէլէպի, էջ 87)։ Պատմութիւնը սակայն չի յիշեր թէ Վարդան առ հասարակ Կ. Պոլիս գտնուած ըլլայ։ Բայց կան կռուաններ, որոնք թոյլ կու տան ենթադրել անոր այցելութիւնը այս քաղաքը. 1672ին հալածանքի մէջ էր Վարդան. ան Տարօնէն իջած էր Միջագետք. հաւանօրէն անկէ անցած է Կ. Պոլիս արդարացնելու ինք զինքը Բարձրագոյն Դուռի առջեւ։ 1673ին կազմած է ինքը Ամիրտոլի գրքերու Ցուցակը. հոս կը յիշէ. «Քօմուրչու տետրեր» (Արարատ, 1903, էջ 188), առանց անոնց բովանդակութիւնը մատնանշելու. բայց կրնանք ենթադրել թէ անոնցմէ մէկը Օսմանեան եւ միւսը Ստամպոլոյ պատմութիւնը եղած ըլլայ, որոնք Վարդանի նուիրուած էին (հմմտ. Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, Ստամպօլոյ պատմութիւն. հրատարակեց հանդերձ ծանօթագրութիւններով Դկտ. Վ. Յ. Թորգոմեան, Ա., Վիեննա 1913, Բ., 1932 եւ Հ. Ն. Ակինեան, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, Կեանքն եւ գրական գործունէութիւնը, Վիեննա 1933, էջ 85—88)։

*Երեմիայի քով Վարդանի անուան կից «Տէր» տիտղոսը ցոյց կու տայ, թէ ան* արքեպիսկոպոս *է. օծումը 1670էն ետքը տեղի ունեցած ըլլալու է:*

Վարդան վարդապետ ի Բաղէշ 1685—1704: *Արդէն յառաջացած տարիքի մէջ էր Վարդապետը. ան միայն այս թուականէն ի վեր Ամիրտոլի վանքը: Հետամուտ էր օրինակել տալ իր «քարտուղարներու» նոր գրքեր: Կը յիշեմ.*

1685. *Վարդան քահանայ Բալուեցի կ'օրինակէր Մաշտոց մը «ի քաղաքն Բաղէշ, ի վանքն որ մականուամբ Ամրդօլ վերաձայնի, առ ոտս Վարդան քաջ հռետորի եւ արքեպիսկոպոսի որ է լոյս աշխարհի» (ի Ձեռագիրս Տարօնի):*

1687*ին Գրիգոր դպիր կ'օրինակէ Գր. Տաթեւացւոյ Քարոզգիրքը Յովհ. Վ.ի համար «ի մերումս վերադիտի տեառն Վարդանայ» ի Բաղէշ (Էջմիածին, Թ.* 2078)*:*

1693*ին Բաղդասար սարկաւագ կ'օրինակէ Աւետարան մը «ի Բաղէշ քաղաքի ընդ հովանեաւ սուրբ Յովհաննէսին, առ ոտս Վարդան վարդապետին» (Ձեռ. Տարօնոյ):*

1696*ին կը գրէ Եղիազար վարդապետ.*

*«Ես Եղիազար վարդապետս ի համար ածի զմերեանս* (°) *Սուրբ Յովհաննու Եղրդուտի վանաց, յայսմ ամի. եւ առի զիշխանութիւնն վարդապետութեան ի վեհէն Վարդանայ վարդապետէ Բաղիշեցւոյ. Թվին ՌՃԽԵ» (Աւետարան, ի Ձեռագիրս Եղրդուտի վանաց):*

Աբրահամ դպիր կ'օրինակէ Տաթեւացւոյ Լուծմունքն Մատթէի եւ Յովհաննու 1697ին ի վանս Ամիրդօլու յառաջնորդութեան ուխտին «մեծ րաբունապետին եւ քաջ փաղեբոյին վարժապետին մերոյ Վարդան վարդապետին» (Սեւան, Ն· Մառ, Ցուցակ, էջ 25)։

Գրիգոր (Ծղթայակիր) 1703ին կ'օրինակէր ի Բաղէշ յԱմրտօլու վանս Տօնապատճառ մը, «ձեռնտու օժանդակութեամբ սուրբ ծերունի աստուածապատուեալ արհի եւ պանծալի քաջ րաբունապետ Վարդան աստուածարան վարդապետի» (Հայաստան, 1852, Թ· 101)։

Այսպէս թէեւ ալեւորած արդէն բայց դեռ ձեռնտու օժանդակ կ'ըլլայ Վարդան վարդապետ, իր երիտասարդ գրասէրներուն եւ գրագիրներուն, ընդօրինակութեամբ աճեցնելու եւ բազմացնելու գրքեր։

## ՎԱՐԴԱՆ Վ· ԲԱՂԻՇԵՑԻՈՅ ՄԱՀԸ

Մեծ Վարդապետը «ծերունի» էր արդէն։ Ունէր ան իր ետեւ աւելի քան 80 տարիներ։ Բոլորած էր 50ամեակ մը վարդապետութեան, վարած էր 42 տարի Ամիրտոլի վանքին առաջնորդութիւնը։ Հարուստ էին այդ տարիները արդասաւորութեամբ։ Ծաղկած էր իր դաւազանէն ընտիր թիւ մը վարդապետներու եւ վարպետներու։ Իր շինարարական գործունէութիւնը պայծառացուցած էին Բաղէշի շուրջը, մինչեւ Տարօն, հայ եկեղե–

*ցիներն եւ վանքերը։ Ամիրտոլի Համալսարանն եւ մեծարժէք Մատենադարանը հռչակ կը վայելէին իր օրով։ Ունէր ան իր բարեգործութիւններով երախտագէտներու հոյլ մը ժողովուրդի ամէն խաւերէն։ Օգտակար եղած էր իր նուիրակութիւններով Էջմիածնի եւ Երուսաղէմի։ Իբրեւ հռետորարան քարոզիչ իր համարձակախօսութեամբ շահած էր իր շուրջ հիացող բարեկամներ եւ նախանձաբեկ թշնամիներ։ Էր խարազնագգեստ ճգնաւոր եւ իր կենդանութեան իսկ համբաւուած էր բարեպաշտ հաւատացեալներու քով կենդանի «սուրբ»։*

*Այսպէս սիրուած իր ձեռնասուն աշակերտներէն, յարգուած ողջամիտներէն եւ պաշտուած ժողովուրդէն կնքեց ծերունազարդ Մեծ վարդապետը իր մահկանացուն։ Վախճանեցաւ* 1704 *մարտ* 31*ին Ամիրտոլի վանքին մէջ եւ թաղուեցաւ նոյն վանքի Եկեղեցւոյն մէջ ի շարս վանքին արդիւնաւոր առաջնորդներու։*

*Իր աշակերտներէն մէկը այսպէս հաղորդած է Մեծ Վարդապետին մահը.*

*«Ի թվին Հայոց ՌՃԾԳ* (1704) *ամին, որ էր նահանջ եւ տանուտէրն Կարին, ի մարտ ամսոյ ԼԱ. օրն, յաւուր ուրբաթու Քառասնորդաց պահոց, որ լուսանայր ի շաբաթու տօնի սրբոյ Լուսաւորչին, յառաջնում ժամու գիշերոյն, եղեւ վախճան երանելի տէր Աստուծոյ տեառն Վարդանայ մեծի վարդապետին մերոյ եւ քաջ հռետորին Բաղիշեցւոյ,*

*մեծի փիլիսոփային, աշակերտի մեծ վարժապետին <Խաչատրոյ>. եւ թաղեցաւ ի տօնի սրբոյն Գրիգորի բազմաչարչար Հայրապետի Հայոց, մեծաւ փառօք եւ բազմամբոխ ժողովրդօք, առաջի սրբոյն Յովաննու Մկրտչի սեղանոյն: Եւ սուգ մեծ եթող ազգիս Հայոց եւ աշակերտաց իւրոց: Որք հանդիպիք սմա՝ յիշեցէք ի սուրբ յաղօթս ձեր զմեծ վարդապետն մեր եւ Աստուած զձեզ յիշէ. ամէն»:*

= Leiden, Universitätsbibliothek, Or. 5494, f. 242*ա. Ձեռագրին նկարագրութիւնն եւ Յիշատակարանս տե՛ս* F. Macler, Rapport d'une mission scientifique en Belgique etc., p. 83 *եւ Հանդէս Ամսօրեայ*, 1937, *էջ* 349:

*Մեծ Վարդապետին յարգողները պատուած են անոր շիրիմը՝ զետեղելով վրան տապանաքար մը հետեւեալ արձանագրութեամբ.*

Ի ՏԱՊԱՆԻ ԱՍՏ ԱՄՓՈՓԻ
ՄԱՐՄԻՆՆ ՄԱՔՈՒՐ ՄԵԾ ՀՌԵՏՈՐԻ.
ՏԵԱՌՆ ՎԱՐԴԱՆԱՅ ՓԱՂԵՐԱՑԻ,
ԱՐԻ ԵՒ ՔԱՋ ՎԱՐԺԱՊԵՏԻ,
ԽԱՐԱԶՆԱԶԳԵԱՑ ՃԳՆԱՒՈՐԻ,
ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ.
ՈՐ Ի ՀՈՎՏԷՍ ՅԱՅՍ ՏՐՏՄԱԼԻ
ԵԼ ԱՌ ՓՐԿԻՉՆ Ի ՅՈՅՍՆ ԲԱՐԻ
Ի .ԻԳ. ՅՈՐԲԵԼԷՆԻ,
ԵՐՐԵԱԿ ԹՈՒՈՅՆ ՅԱՒԵԼԱԴՐԻ,
ՈՐ ՀԱՆԴԻՊԻՔ ՏՈՒՔ ԶՈՂՈՐՄԻ:

*Հրատարակուած՝ Սուրհանդակ (Կ. Պոլիս)* 1904, *Թ.* 1763: *Բիւզանդիոն*, 1907, *Թ.* 3300 (*Տ. եպ. Պալեան*): *Բարգէն Ծ. Վ.*

Կիւլէսէրեան, Կոլոտ Յովհաննէս պատրիարք, Վիեննա 1904, էջ 201—202: Բիւզանդիոն (Կ. Պոլիս), 1909, Թ. 3916: Վահրամ Յ. Թորգոմեան, Ծանօթագրութիւնք Սամպօլոյ պատմութեան Երեմիա Չէլէպիի, Հանդէս Ամսօրեայ, 1910, էջ 316 = Արտատպ., Ա., 193: Գիւտ քահանայ Աղանեան, Դիւան Հայոց Պատմութեան, Ժ., էջ 82:

ՎԱՐԴԱՆԻ ՆԿԱՐԸ

Այս նկարը նկարել տուած է Վարդան Վ. Բաղիշեցւոյ աշակերտը Գրիգոր Վ. Շիրուանցի, Շղթայակիր պատրիարքն Երուսաղէմի եւ կը պահէր իր Մատուռին մէջ յանձնաձ յիշատակ իր սիրելի ուսուցչին, զոր կը յարգէր որդիական գորովիկ զգածումներով:

Լուսանկարած է լուսանկարիչ Արամ Խաչատուրեան: Օրինակս նուիրած է ինձ բարեյիշատակ լուսահոգի Տ. Մեսրոպ Եպիսկոպոս Նշանեան, նորընտիր պատրիարքն Երուսաղէմի Ս. Յակոբեանց, 1939 դեկտեմբերին, հրատարակելու թոյլտուութեամբ:

ՎԱՐԴԱՆԻ ԳՈՎԱՍԱՆՔԸ

Վարդան վարդապետի ներբողը հիւսած է Գրիգոր Վ. Շղթայակիր իր Վիպասանութեան մէջ այսպէս.

«Վարդան արհին յայժ պանծացեալ,
Մաքուր վարուքն սրբասնեալ,
Որ յԱմիրդօլ վանքն էր նստեալ,
Ի Խոզց քաղաքէ կոչեցեալ.

Եւ դըպրատուն անդըր բացեալ,
Բազում որդիս ի փառս ածեալ:
Որբոց, անանկաց էր խնամակալ,
Եւ աղքատաց հայր նա գըտեալ.
Եւ անձանձիր յերկս աշխատեալ,
Զեկեղեցիս յոլովս շինեալ:
Իսկ եւ վարուք յոյժ մաքրացեալ,
Հոգւով մարմնով արիացեալ.
Ի պահս, յաղօթս էր նա ժուժկալ,
Եւ ի մարմին խոշոր զգեցեալ:
Յուսուցանելն աղբերանայր,
Հոգւով սըրբով առատացեալ.
Եւ քարոզէր նա անաշառ,
Խրատէր զմարդիկ յօրէնսըն կալ[4]:
Նաեւ մըտօք խորին գըտեալ,
Զանյայտ գրանս ի լոյս ածեալ.
Այլ եւ գրաւէր այնչափ եղեալ,
Զյոլով գըրեանս գըծագըրեալ:
Եւ զարդարիչ տեղեացն օրհնեալ,
Եկեղեցեացն աստուածընկալ,
Ըզվանորայս նա հաստատեալ,
Զինքն օրինակ բարեաց ցուցեալ:
Վիշտըս բազումս յոքունց կըրեալ,
Ըստ Պօղոսի ասիցն եղեալ,
Թէ ի մերոց օտարացեալ,
Թէ յարտաքնոց, որք զնա ատեալ:
Այլ նա զընթացս իւր կատարեալ,
Եւ ըզհաւատն ամբողջ պահեալ,

---

[4] Տպ. յօրէնս ընկալ:

Եղեւ առ Տէր վերափոխեալ,
Յանձառ հանգիստըն պատրաստեալ:
Ի թուին հազար հարիւր անցեալ,
Յիսուն 'ւ երեք այլ յաւելեալ.
Պետրըն[5] վարժիչ յերկինս ելեալ,
Եւ զմեզ եթող որբ թափառեալ:

= Էջմիածին, Թ. 737 (հին՝ 639), թղ. 181բ—182ա: Անկէ հանելով հրատարակած է Ս. Տէր-Յակոբեան՝ Արարատ, 1903, էջ 176—177:

Մահուան տարին այսպէս գիտէ նաեւ Յարութիւն Ալֆայեան. «Ի սոյն (ՌՃԾԳ) թուին Վարդան վարդապետն սուրբն Բաղիշոյ վախճանի» (Դիւան, Ժ., 127): Իսկ Յովհաննէս Կոլոտ մահուան տարին կը նշանակէ ՌՃԾԴ, եթէ «Դ» փոխ. «Գ»՝ տպագրական վրիպակ չէ. «ի թուաբերութեանս մերում ՌՃԾԴ ելից առէր եւ ուսուցիչ հայրս մեր քաղցրաքարոզ եւ համեղաբան՝ գիւրոյ պանդխտութեան ժամանակս» (Զենոր Գլակ, Կ. Պոլիս 1719, էջ 47):

Հետաքրքրական է հետեւեալ Գովասանքը, որ աշուղական է, զոր գտած եմ Էջմիածնի Թ. 737 ձեռագրին մէջ: Բնագիրը համառօտագրութեամբ է տեղ տեղ: Մնացին տեղիքներ, որոնց ճշգրիտ ընթերցումը չյաջողեցաւ ինձ:

---

5 Տպ. Զպէտն:

## ԳՈՎԱՍԱՆՔ ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ ԲԱՂԻՇԵՑԻՈՅ ԱՍԱՑԵԱԼ ՅԱՇԸՂՆԵՐԱՑ

*Դու ես քրիստոնէից դագին,*
*Երես սեւ է դամագին:*

*Գիշերն եմ տեսեր յերազին*
*Խորան Վարդան վարդապետին.*
*Խորանն ամէն լաճվարդ էր,*
*Մէջն ամէն կին ու մարդ էր.*
*Դրէր Աւետարան եւ կարդայր Ղուրան,*
*Վարդան վարդապետին,*
*Անգին մարգարիտ կու թափի բերան*
*Վարդան վարդապետին:*

*Քո չուրջն եկած տեղիքն ո՞ւր է,*
*Քո խօսքերն Մարի թուր է.*
*Քեզ ականջ չէնող խուլ է,*
*Մէկիկ Վարդան վարդապետին:*
*Ծառայ չնորհաց ավօղին:*

*Քո երես տեսնող չի քաշեր դամ.*
*Քրիստոսի ձեռնէն խմեր ես ջամ.*
*Հազրաթ է քեզ Ուրումն, Աջամ,*
*Դիմաց Վարդան վարդապետին,*
*Ծառայ եմ քո արդար դատին:*
*Յառաջ քո սիրտն կէր փափաք,*
*Եղար Քրիստոսի մշակ,*
*Քեւչ (՞) կւին (՞) Վարդան հրեշտակ,*
*Խեղճուկ Վարդան վարդապետին*
*Անգին մարգարիտ կու խօսի բերան,*
*Վարդան վարդապետին:*

*Ասացած խօսքին է՞ր էք նաչար,*
*Մէկ պատմութիւնն կէնէ հազար:*

Երխատուի ձեռնէն բարդուղար[6] եկար,
Վարդան վարդապետի.
Ծառայ եմ շնորհացդ վարդապետին:
Վարդանի քարոզն գաւառն է.
Աշխարհն ամէն իւր գուռն է.
Դունակի[7] մանուկն իւր ծուռն է.
Դիմաց Վարդան վարդապետին
Ծառայ եմ ի տար դար[8] դան:

= Էջմիածին, Թ. 737, Թղ. 48բ (ժողովածու):

## ՕՏԱՐ ԲԱՌԵՐ

Բարդուղար. պ. պէրկիւզար, պարգեւ.
Դունակ (?).
Հասրաթ. ա. կարօտ.
Ղազի. ա. մարտիկ հաւատքի համար.
Ղամ. պ. հող.
Ղամազ. ա. քսու.
Ղուրան. ա. ընթերցուածք.
Նաչար. պ. անճար անօգնական.
Ջամ. պ. բաժակ.
Տար դարդան (?):

[6] բրդ՞ղր:
[7] դունկի:
[8] դր:

## Բ· ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*Աղբիւրները, զորոնք ունիմ տրամադրութեանս տակ, թոյլ կու տան ինծ առանձին բաժնով խօսելու Մեծ Վարդապետին առաջնորդական, ուսուցչական, շինարարական, գրասիրական եւ գրական գործունէութեան վրայ, գոնէ առ ի փորձ։ Այս առիթով պիտի ներկայացնեմ բնագիր մ'ալ, «Պատմագիրք», զոր կը համարիմ յօրինուած իր աշխատասիրութեամբ։*

### ԱՌԱՋՆՈՐԴՆ ԵՒ ՈՒՍՈՒՑԻՉԸ

*Վարդան կ'էս դարու շրջան մը գործեց ուսուցչութեան ասպարէզի վրայ։ Անմիջապէս որ առաւ վարդապետական գաւազանը, անցաւ նստաւ ան ուսուցչութեան կաթեդրը, հաւաքեց իր շուրջը պատանիներ եւ սկսաւ դասախօսել։ Այս մասին Պօղոս Գաւառցի գրիչ 1676ին կը յիշատակագրէր Թոմաս Մեծոփեցւոյ Պատմութեան վերջ կարեւոր տեղեկութիւնները.*

*«...Այլ եւ Վարդանայ մեծի հռետորի Բաղիշեցւոյ վարդապետի (եղիցի յիշատակ), որ եւ ա զսա յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց եւ աշակերտեալ մանկանց՝ Աբրահամու վարդապետի Համթեցւոյ, որ է բնիկ կարգացող եւ խորին փիլիսոփայ, տեղեակ հնոց եւ նորոց կտակարանաց, այլ եւ արտաքնոց եւ ներքնոց եւ քերականութեան տեղեակ. եւ տէր*

Մարգար եւ տէր Գրիգոր կուսակրօն աբեղայից. եւ Ներսէս եպիսկոպոսի, որ է ընտիր, հեզահոգի. եւ երկու Սարգիս սարկաւագաց եւ երկու Ներսէս սարկաւագաց, եւ այլոցն ամենեցունց, որք են թուով Խ կարդացողք, վարդապետ եւ եպիսկոպոս, կուսակրօն աբեղայ եւ Դ աշխարհի քահանայք. այլ եւ տնտես մի եւ երկու սպասաւոր կանայք առաջի ձեռաց նորա, եւ երկու մշակ, որք լինին ԽԵ միաբան, Խ կարդացող եւ Ե տնտես եւ մշակ: Խնդրեմք ի բարերարէ Տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ այսպիսի կարգաւորութեամբ պահեսցէ զսուրբ ուխտս Յովհաննու որ մականուամբ Ամիրդօլու Ս. Յովհաննէս առի, վարդապետօք եւ եպիսկոպոսօք, քահանայիւք եւ սարկաւագօք եւ հաւատացեալ ժողովրդօք. ամէն: Գրեցաւ ի մերում թուականութեանս ՌՃ եւ ԻԵ. ամին, ձեռամբ տէր Պօղոս Գաւառցոյ»:

Որպէս զի իր աշակերտները աւելի հրահանգուին դպրութեան, ծաղկարարութեան եւ կազմարարութեան արուեստներու մէջ, բերաւ 1673ին վանքը Վանեցի Սահակ վարպետը. որ մնաց հոն ժամանակ մը եւ ունեցաւ յաջող աշակերտութիւն:

Մեզի չէ աւանդուած Ամիրտոլի Դպրոցին ուսմանց օրակարգն եւ առարկաները: Բայց կարելի է հետեւցնել մանր ակնարկութիւններէ, թէ այդ օրակարգին մէջ էին Երգեցողութիւնը, Գրչութիւնը, Հայերէն լե-

*գուլ Քերականութիւնը, Աստուածաշունչ Մատեանին մեկնութիւնը, նուրբ գրքերու ուսուցումը եւ այլն: Աշակերտները դասախօսութիւններէն դուրս ունէին իրենց տրամադրութեան տակ ճոխ Մատենադարան մը, ուր կարող էին դիմել անդրադոյն զարգացման համար: Դպրոցս թէեւ չտուաւ մեծ թուով մատենագիր հեղինակներ, բայց կը նկատուի այս շրջանին գրուած մանր գրութիւններէն եւ Յիշատակարաններէն, որ հայերէն լեզուի ուսուցման ուշադրութիւն դարձուած էր: Բաղէշի Դպրոցին աշակերտները եղած են նախնեաց գրական լեզուին հետեւողներ, գրած են պարզ, քերականական օրէնքներուն համաձայնող հայերէնով: Լատինաբանութիւնը մուտ չէ գտած անոնց քով, թէեւ մատչելի եղած են իրենց «պաամայ» գրքեր, ինչպէս Թովմայ Կեմպացւոյ Համանմանութիւնն Քրիստոսի, զոր գտած էր Վարդան «քաղցր եւ անոյշ յոյժ, իբրեւ զնարեկացին յօգուտ ընթերցողաց» (Արարատ,* 1903, *էջ* 184) :

*Բազմաթիւ եղած են Վարդանի աշակերտները, որոնք ստացած են իր ձեռքէն վարդապետական գաւազան* (§ 26) : 1680*ին, երբ Վարդան գաւազանի իշխանութիւնը պիտի տար Գրիգոր Բաղիշեցւոյ, իբրեւ վկայ ներկայ էին* 11 *վարդապետ աշակերտներ* (*տես* § 24) : *Իսկ* 1684*ին, երբ Վարդան ուխտի գնաց Երուսաղէմ, իր չուին մէջ էին իր աշակերտներէն* 15*ը*:

## ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ ՇԻՆԱՐԱՐ

Տեսանք զինքը Տարօնի Առաքելոց վանքի մէջ, ուր կը նորոգէր Եկեղեցւոյն գմբէթը եւ չորս սալերը. ի հիմանց կը շինէ Ս. Ստեփանոս եկեղեցին: Այն շինութիւններ կատարած է նաեւ ուրիշ վանքերու, գիւղերու եւ քաղաքներու մէջ, որոնց մասին ակնարկութիւններ ունի Պօղոս Սասունցի, առանց մանրանշելու տեղերն եւ թուականները. անթուական է նաեւ անոր Յիշատակարանը. Պօղոս կը գրէ Աւետարան մը. «ի վերադիտողութեան սուրբ ուխտիս Յովհաննու, որ է Ամիրտօլու վանք ի Բաղէշ քաղաքի, տէր Վարդան քաջ եւ արի վարդապետի, որ յաւուրս եւ ի ժամանակիս յայսմիկ ոչ ոք է նման նմա. զի է անձանձիր ուսուցանող, շինող եւ հաստատող սրբոց եկեղեցեաց Հայաստանեայց. զի զբազում եկեղեցիս վերստին շինեալ կանգնեաց. եւ զոչ եղեալսն ի բազում տեղիս նորոգ հիմնարկեաց եւ շինեալ աւարտեաց. եւ ելից զնոսա քահանայիւք եւ սարկաւագօք, աւետարանաւ եւ արծաթի սկօք, շուրջառով եւ մաշտոցով. եւ այլ բազում ուղղութիւնս արար, զոր ոչ կարեմ մի ըստ միոջէ ի չար քարտիսիս արկանել. բայց զկատարեալ վարս նորա թողումք ամենագիտին Աստուծոյ, որ նա գիտակ է բարի գործոց նորա...: Յիշեցէք յաղօթս ձեր զիս զՊօղոս գծող սուրբ Աւետարանիս, որ եմ յերկրէն Բաղիշոյ, ի գաւառէն Նրչայ եւ Անձունից, ի

Ջորու Նախիայից, ի փոքրիկ գեղջէն Կորկոնոյ» (Դիւան Հայոց Պատմութեան, Ժ., էջ ԼԷ—ԼԸ)։

Կատարած է շինութիւններ եւ նորոգութիւններ նաեւ Ամիրտոլի վանքին մէջ. Գրիգոր գրիչ 1683ին օրինակած է Ամիրտոլի վանքին մէջ Ստ. Օրբելեանի Պատմութիւնն Սիւնեաց ի վայելումն Վարդան Բաղիշեցւոյ. «որ բազում եկեղեցիս շինեաց եւ զԱմիրտօլու վանքս ի հիմանէ շինեաց տներով եւ հացներով (?), եւ նա գրել բազում գրեանս եւ եդ ի վանս, եւ բազմացուց միաբանօք աւելի քան զՏաթեւու» (ձեռագիրը տեսած է Հ. Ն. Սարգիսեան ի Մուշ՝ ըստ Հ. Մ. Պոտուրեանի)։ Վանքին տաճարի աւագ դրան ճակատին արձանագրուած է յանմոռաց յիշատակ՝

ԿԱՐՈՂՈՒԹԵԱՄԲ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՒ ՇՆՈՐՀՕՔ Ս. ՀՈԳՒՈՅՆ ՇԻՆԵՑԱՒ ԳԵՂԵՑԿԱՁԱՐԴ ՏԱՃԱՐՍ ՍՐԲՈՅՆ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԿԱՐԱՊԵՏԻՆ ՎԵՐԱԿԱՑՈՒԹԵԱՄԲ ՎԱՐԴԱՆԱՅ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԵՒ ՕԳՆԱԿԱՆՈՒԹԵԱՄԲ ՔԱՂԱՔԻՍ ԵՒ ԹԱՂԻՍ ԺՈՂՈՎՐԴՈՑ Ի ԹՒԻՆ Ռ. Ճ. Խ. Դ. (1695). ԱՄԷՆ։

(Սուրհանդակ, 1904, Թ. 1763.. Բիւզանդիոն, 1907, Թ. 3300 եւ Հանդ. Ամս. 1910, էջ 316, ծան. 4)։

Նոյնը կը հաստատէ նաեւ Խաչքարի մը արձանագրութիւնը.

ՈՎ ԿԵՆՍԱՏՈՒ ՍՈՒՐԲ ԽԱՉ ՓՐԿՉԻՆ ՆԵՐԿԵԱԼ ԱՐԵԱՄԲ ԿԵՆԱՐԱՐԻՆ, ԲԱՐԵԽՕՍԵԱ ՅՕՐՆ ԱՀԱԳԻՆ ՎԱՍՆ ՎԱՐԴԱՆԱՅ ՄԵԾ ՏԷԼԷՏԻՆ· ՇԻՆՈՂ ՍՐԲՈՑ ԱՅՍՄ ՏԱՃԱՐԻՆ ԹՎԻՆ ՌՃԽԴ:

*(Բիւզանդիոն, անդ: Կիւլէսէրեան, Կոլոտ,* էջ 201:

ԳՐԱՍԷՐԸ

*Քիչեր գտնուած են նախորդ շրջաններու մէջ մատենասէրներ, որոնք նոյն եռանդով, նոյնքան գուրգուրանքով վերաբերած ըլլան դէպի գիրք, ինչպէս Վարդան Բաղիշեցի: Սիրած է հաւաքել գրքեր, աշխատած է օրինակել տալ մատեաններ, պահպանել նախնեաց օրինակութիւնները, մաշուածները նորոգել, քայքայուածները կազմել, անձամբ կամ ի ձեռն վարպետ արհեստաւորներու: Գրիգոր Ծիրուանցի կը գրէ·*

*Այլ եւ գրասէր այնչափ եղեալ,*
*Զյոլով գըրեանս գծագըրեալ:*

*Տեսանք վերագոյն, թէ ինչպէս վարժած էր Սահակ Վանեցին կազմելու եւ նորոգելու Առաքելոց եւ Ամիրտոլու վանքերու ձեռագիրները: Սահակ Առաքելոց վանքի մէջ նորոգած եւ կազմած էր* 45 *ձեռագիր: Իսկ Ամիրտոլի Մատենադարանին համար նորոգածներու թիւն է* 74:

*Վարդան օրինակել եւ ծաղկել կու տար նաեւ Եկեղեցական գրքեր, Աւետարաններ, Մաշտոցներ, Ճաշոցներ, Տարականներ եւն,*

*որպէս զի նուիրէ զանոնք Եկեղեցիներու, որոնք կը կարօտէին։*

*Ան մանաւորապէս կ՚օրինակէր եւ օրինակել կու տար կարեւոր գրքեր, Ս. Հարց գործեր, Մեկնութիւններ եւ նուրբ գրեանք վանքին Մատենադարանին համար։ Իր նպատակն էր ընել Ամիրտոլու վանքը կենդրոն մը գրականութեան եւ մտաւոր լուսաւորութեան։ Հասած է մեզի իր Մատենադարանին ձեռագիր եւ տպագիր գրքերու Ցուցակը, կազմուած իր իսկ ձեռքով։*

## ՊԱՏՄԱՍԷՐԸ

*Զարմանալի նախասիրութեամբ հետամուտ եղած է Վարդան հաւաքել իր Մատենադարանին համար պատմական գրականութիւնը․ եւ յաջողած է գրեթէ լրիւ կազմելու շարքը հին պատմագիրներու, շնորհիւ իր բազմաշրջութեան եւ հետապնդումներու։ Ուր հասած է ան, անչափ գրասիրութեամբը մղուած է քրքրել Եկեղեցիներու պահարանները, վանքերու գրադարանները։ Ինչ որ հազուագիւտ, հետաքրքրական եւ պատմական նիւթ գտած է, փութացած է օրինակել տալ առանց ծախքէ վախնալու։ Կը համարիմ, թէ իր այս հետապնդումներու արդիւնքն է Պատմագիրներու այն ցանկը, որ հասած է մեզի ԺԸ․ դարէն (տես վարը)։*

*Իր յանձնարարութեամբ օրինակած են Պօղոս եւ Գրիգոր դպիրները 1672ին Երեւանի*

Պետ. Մատենադարանի Թ. 2639 (նախկին 611 եւ 2463) ձեռագիրը, որ կը պարունակէ իր ծոցը՝

ա. Ագաթանգեղոս,
բ. Թուղթ Դաշանց,
գ. Մեսրոպ երէցի Պատմութիւնն Ս. Ներսէսի,
դ. Մովսէս Խորենացի,
ե. Եղիշէ,
զ. Ղ. Փարպեցի, Պատմութիւնն եւ Թուղթը,
է. Սեբէոս,
ը. Կորիւն:

Վարդան իր Գրացուցակին մէջ նշանակած է Ձեռագրիս բովանդակութիւնը այսպէս. «ԺԲ. Մէկ Մովսէս պատմագիր. որ կայ ի մէջ. է. պատմագիրք. Ագաթանգեղոս, Մովսէս. Եղիշէ, Ներսէսի Պատմութիւն, Ղազարու Փարպեցւոյ եւ Խոսրովու» (Արարատ, 1903, էջ 179): Չէ անդրադարձած Ցուցակագիրը, թէ ձեռագրին մէջ Փարպեցւոյ Պատմութեան կից կայ նաեւ. Սեբէոսի (կամ Եւսեբիոսի) Պատմութիւնն ի Հերակղ, վասն զի այն անխորագիր էր. իսկ անոր յաջորդող գրուածքը՝ «Յիշատակ սրբոյն Մեսրովպայ արարեալ երանելւոյն», այսպէս առանց անուան հեղինակին, որ Կորիւնն է, համարած է գործ «Խոսրովու», այսինքն, ինչպէս բացայայտ կ'ըսուի «Պատմագիրք Հայոց»

գրուածքին մէջ «Խոսրով եւս Թարգմանիչ, որ է Պատմութիւն սրբոյն Սահակայ հայրապետին», մինչ Կորիւնի համար կ'ըսուի. «Կորիւն Թարգմանիչ, որ է Պատմութիւն սրբոյն Մեսրոպայ վարդապետին», անշուշտ ուզած Ղ. Փարպացիէն: Խոսրովիկ Թարգման յիշուած է Ղ. Փարպեցւոյ Թուղթին մէջ. «Ահա ո՞ւր գայ միւս եւս Թարգմանն» (էջ 202). որ Հայաստանի սահմանին վրայ գտած էր իր մահը: Իսկ «Խոսրովիկ Թարգմանիչ» անուանուած է Խոսրով քահանայ վարդապետը, որ ծաղկած է Ը. դարու առաջին քառորդին: Այլուր չենք գտներ յիշուած թէ «Խոսրով Թարգմանիչ» հեղինակած ըլլայ «Ս. Սահակի պատմութիւնը». բայց Ղ. Փարպեցւոյ Պատմութեան սկիզբը զետեղուած յաւելուածական մասը, որ Ը. դարէն կ'երեւայ, կրնայ Ս. Սահակի Պատմութիւն նկատուիլ. եւ այս պարագային միայն Խոսրով(իկ)· Թարգմանիչի վերագրուիլ այն:

Պօղոս գրիչ օրինակած է 1676ին Պետ. Մատենադարանի Թ. 1899, որ կը բովանդակէ.

Բ. Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրութիւնը,
Ժ. Կիրակոս Գանձակեցի,
ԺԱ. Թովմաս Մեծոփեցւոյ Տարեգրութիւնը:

Գրիգոր գրիչ 1683ին օրինակած է ի Բաղէշ Պետ. Մատ. Թ. 1896.

ժբ. *Ստեփաննոս Օրբելեանի Պատմութիւնն Սիւնեաց,*

*Յակոբ երէց 1689ին օրինակած է ի Բաղէշ.*

ժգ. *Սամուէլ Անեցւոյ Ժամանակագրութիւնը,*

իբ. *Մխիթար Այրիվանեցի,*

ժգ. *Մատթէոս Ուռհայեցւոյ Տարեգրութիւնը,*

ժե. *Յովհ. Դրասխանակերտցւոյ Պատմութիւնը,*

ժզ. *Սիմէոն Ապարանեցւոյ Վիպասանութիւնը:*

*Վարդան ունէր Ամիրտօլի Մատենադարանին մէջ հետեւեալ հատորն գրուած ԺԳ. դարուն, որ կը պարունակէր.*

ժէ. *Ղեւոնդի Պատմութիւնը,*

ժը. *Վրաց պատմութիւնն. եւ Եւագրի բանք:*

*Այս ձեռագրէն ապա օրինակ հանելով, բնագիրը 1690ին նուիրած է Էջմիածին, որ այժմ կը կրէ Երեւանի Պետ. Մատենադարանի Թ. 1902: Վարդան Թողուցած է հոն յիշատակագրութիւնս. «Զստացօղ գրոցս որ կոչի Ղեւոնդ պատմագիր եւ Վրաց պատմագիր եւ Ս. Հօրն անապատաւորացն Եւագրի բանք եւ խրատք բազում: Որ եւ Վարդան վարդապետս Բաղիշեցի ստացայ ի հալալ արդեանց*

իմոց եւ ետու զյիշատակ ի դուռն սուրբ էջ-միածնի ի փրկութիւն հոգւոյ իմոյ։ Որք ըն-թեռնուք եւ օգտիք ի սուրբ գրոյս, յիշեցէք ի Քրիստոս զԲաղիշեցի Վարդան վարդա-պետն եւ զծնօղսն իւր․ ամէն։ Ի թվին ՌՃԼԹ» (Ակինեան, Մատենագրական Հետազօտու-թիւններ, Գ․, էջ 37)։

ժբ․ Սմբատ, Տարեգրութիւն։

Վարդան Ամիրտոլի Մատենադարանի գրքերու Ցանկին մէջ կը յիշէ թէ կայ հոն հատոր մը, որ կը բովանդակէ «Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի պատմագիրքն եւ Ղեւոնդի պատմագիրքն եւ Վրաց պատմագիրք եւ Սմբատ գիրք» (Արարատ, 1903, էջ 180)։

ի․ Զենոբ պատմագիրք,
իա․ Ստեփանոս Ասողնիկ,
իբ․ Մխիթար Այրիվանեցի,
իգ․ Օրպէլեանց պատմութիւն։

Նոյն ցանկին մէջ կը նշանակէ Վարդան հատոր մ՚ալ, որ ունի «Զենոբ պատմագիրք, ի հետն Ստեփաննոսի Տարօնացւոյն որ է Ասողնիկն, եւ միւս Ղեւոնդ պատմագիրք եւ միւս Վրաց պատմութիւն եւ միւս այլ Մխի-թարայ Այրիվանեցւոյ պատմագիրք․ եւ միւս այլ Օրբէլեանց պատմութիւն» (անդ)։

Այդ ցանկի մէջ կը յիշուին (էջ 179/80) նաեւ

իդ. Թոմայի Արծրունւոյ Պատմութիւն,
իե. Վարդան պատմագիր,
իզ. Անանիա Շիրակացի,
իէ. Աղուանից պատմութիւն,
իը. Դաւիթ վարդապետի պատմագիրք,
իթ. Եւսեբիոս Կեսարացւոյ Եկեղեցական Պատմութիւն,
լ. Սոկրատ,
լա. Յովսէպոս,
լբ. Միքայէլ Ասորի,
լգ. Պատմութիւն Աղեքսանդրի,
լդ. Փռանկաց պատմութիւն:

Կղեմէս Գալանոս, Պատմ. բաժինը:

Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութիւնն ունի տպագիր:

Այս պատմագիրներէն մէկ քանին երկու եւ աւելի օրինակներով:

Ի վիճակի չենք մատնանշելու, թէ այս ժթ.—լԴ. պատմագրքերը ուր եւ երբ գրուած են եւ այժմ ո՞ւր կը գտնուին:

Ամիրտոլի Մատենադարանը կը բովանդակէր աւելի քան 200 հատորներ, զանազան բովանդակութեամբ:

Այս ցանկին պիտի անդրադառնամ յետոյ:

Այս պատմագիրներէն չորսը հասած են մեզի, որոնք ունին հետեւեալ յիշատակարանները, որոնք կարեւոր են, վասն զի ունին ակնարկութիւններ Վարդան վարդապետի մասին:

«Արդ ես Վարդան վարդապետս Բաղիշեցիս ցանկացայ բարի աւուրցն որ միշտ արծարծէր շնորհք Հոգւոյն սրբոյ յարժանաւորս իւր. սիրոյ նոցին եւ աղօթիցն տենչացայ: Եւ ետու գրել զպատմութիւն սուրբ կաթուղիկոսացն եւ թագաւորացն. զի աղօթիւք նոցա ողորմեսցի Քրիստոս Աստուած մեզ եւ մերոցս ամենայնի. հօրս իմոյ Եղիային եւ մօրս Ղարիպին. եւ եղբարցս Խաչատուրին եւ Խօջապարին եւ զաւակաց նոցին: Եւ ես առաւել հոգեւոր հօրս իմոյ եւ ուսուցչի Խաչատուր մեծ իմաստուն եւ փիլիսոփայ վարդապետի՝ Խաչատուր Բաղիշեցոյն. որ յայսմ ամի որ զգիրս ետու ծրել՝ Ժ. ամաւ յառաջ փոխեալ է առ Տէր: Եւ նորաբողբոջ հոգեւոր որդոցս իմ Աբրահամ վարդապետի Համթեցոյն, եւ Սարգիս փոքր պատանեկին. եւ միարան եղբարցն ամենեցուն որ կան ի սուրբ ուխտս Յովաննու Մկրտչի ի ծառայութիւն սուրբ խորանացս եւ ի սպասաւորութիւն մեզ, որ մականուամբ Ամրդօլու վանք ասի: Արդ աղաչեմ զձեզ, ով հարք մեր եւ եղբարք, որ ընթեռնուք եւ հոգեւոր բանս օգտիք ի սուրբ գրոցս, բոլոր հաւատով Աստուած ողորմի ասացէք ինձ Վարդան վարդապետիս եւ գծագրողի սորա հոգեւոր որդւոյ իմոյ տէր Պօղոս երիցու Գաւըռցոյ. եւ դուք յիշօղքդ յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի. ամէն: Գրեցաւ ի Ռ եւ ի Ճ եւ ի ԻԱ թվին» (Թղ. 142ա, ի վերջ Դաշանց թղթին) (Արարատ, 1891, էջ 149):

2․ «Քրիստոս Աստուած… ողորմեա ստացողի գրոցս Վարդան քաջ եւ սրբասէր վարդապետին եւ իւր ծնողաց… եւ հոգեւոր որդւոց իւրոց Աբրահամ վարդապետին եւ Սարգիս պատանեկին։ Զի յոյժ սիրով եւ փափաքանօք ետ գրել զգիրքս զայս յիշատակ իւրն եւ ծնողաց իւրոց…։ Արդ… յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՎարդան քաջ եւ րաբունի վարդապետն զԲաղիշեցին, որ իբրեւ զարեգակն փայլէ եւ լուսաւորէ զխաւարեալ եւ մեղսասէր մարդիկս ասելով եւ խրատելով եւ զամենեսեան դարձուցանէ ի չարեաց քաղցր բարբառովն եւ աստուածային քարոզութեամբն. զի միշտ եւ հանապազ ոչ դադարէ ի քարոզելոյ եւ յուսուցանելոյ։ Քանզի զբազում ժամանակաց զխանգարեալ եւ զաւերեալ եկեղեցիսն նորոգեալ կանգնեաց, եւ զոչ եղեալսն շինեաց ի հիմանէ. եւ այլ բազում բարեգործութիւնս արար ի վերայ երկրի, զոր ոչ կարեմ մի ըստ միոջէ արկանել ի չարս քարտիսիս. այլ բարեաց հատուցանօղն որ տայ սիրօղաց իւրոց զիւր անճառ բարիսն, տացէ նմա եւ զիւր երկնից արքայութիւնն ի միւսանգամ գալստեանն իւրում. եւ ի կեանս յայս ընդ երկայն աւուրս պահեսցէ զնա ամէն։ Ես Պօղոս երէցս գծօղ սորա աղաչեմ զձեզ, զի յիշման արժան անէք զիս» (Թղ. 111ա) (Արարատ, 1891, էջ 148—149)։

3․ «Արդ յերեսս անկեալ աղաչեմ զձեզ, ով սուրբ հարք… զի յիշման արժան առնէք

*զխորին փիլիսոփայն եւ զհոգելինկալ վար-դապետն զՎարդան Բաղիշեցին, որ յայսմ ամի ի հալածանս է յանիծեալ ազգէն Մահ-մետականաց յերկիրն Սուրացւոց որ այժմ Հազու վերաձայնի: Որ յայսմ հալածանաց միջի ետ գրել զգիրս յիշատակ իւրն եւ ծնո-ղաց իւրոց: Եւ ես Պօղոս սուտ երէցս, որ եմ գծօղ տառիս, աղաչեմ զձեզ զի յիշման արժան առնէք զիս»* (Արարատ, 1891, էջ 150):

4. «*Փառք... Աղաչեմ զձեզ զամենեսեան յիշելոյ եւ Թողութիւն խնդրելոյ... արժանի առնէք զՎարդան վարդապետն զԲաղիշեցին եւ զծնօղսն իւր զՆղիէն եւ զՂարիպն... եւս առաւել զհօգեւոր հայրն նորա զԽաչատուր քաջ վարդապետն զԲաղիշեցին. եւ զԲարո-նենց Յովաննէս վարդապետն որ նա եւս բա-զում աշխատութիւն ունի ի վերայ նորա ի գրոց սերտացուլն. եւ զիւր աշակերտն զԱբրա-համ վարդապետն զՀամթեցին. եւ զիս զա-նարժանս զնորին անատակ որդին զՊօղոս... երէցս որ եմ գծօղ սորա, որ բազում երախ-տիք ունի ի վերայ իմ հոգեւոր եւ մարմնա-ւոր...*» (*Թղ.* 244*բ*, Արարատ, 1891, էջ 150):

5. «*ԶՎարդան վարդապետն զԲաղիշե-ցին յիշեցէք ի Քրիստոս... որ ետ գրել զսա յիշատակ իւրն եւ եղ ի դուռն սուրբ Յովա-նիսայ*» (Արարատ, 1891, էջ 148):

1676*ին օրինակել տուած է Սամուէլ Անեցւոյ Հաւաքումն պատմութեանց, Կիրա-կոս Գանձակեցւոյ Պատմագիրքն եւ Թովմա Մեծոփեցւոյ Տարեգրութիւնը մէկ հատորի*

մէջ, որ այժմ կը պահուի Էջմիածին, Թ. 1899. նկարագրուած Ա. Տէր-Միքէլեանէ՝ Սամուէլ Անեցի, էջ Ժ—ԺԱ: Յառաջ կը բերեմ կարեւոր յիշատակարանները.

«Ով վսեմք հանդիսասիրաց եւ խումբք կոչեցեալ բարունապետաց, յորժամ պատահիք այսմ գրենացս եւ քաղցրանայք ի բանս ճաշակացս, մաղթեմ ես ի ձէնջ յիշել անմոռաց յաղօթս ձեր սուրբ զտրուպ Պօղոս Գաւառցի գրչակս.

Նաեւ զվարդապետն իմ վարդապետաց,
Վարդան անուանեալ, պետ քարոզողաց,
եւ զԱբրահամ գլուխ աշակերտաց՝
Տիգրանակերտցի վարդապետ գոված.
զի եւ ձեզ լիցի մասն պարգեւաց
յանյաչաղ ձրից ի Տեառնէն կենաց»:

Երկրորդ եւ երրորդ Յիշատակարանները յառաջ բերինք վերը:

1689ին օրինակել տուած է Մատթէոս Ուրհայեցւոյ Տարեգիրքը, Յովհ. Դրասխանակերտցւոյ Պատմութիւնն եւ Սիմէոն Ապարանեցւոյ Վիպասանութիւնը. պահուած այժմ Էջմիածին, Թ. 1896: Յիշատակարանն է.

«Արդ այսմ մատենագրի փափաքող եղեալ գերերջանիկ եւ աստուածարեալ եւ մեծ բարունապետն տէր Վարդան Բաղիշեցի, որ յայսմ ժամանակի սա միայն երեւեալ աշխատող եւ հոգաբարձու ծածկեալ եւ անյայտ պատմագրաց: Եւ սա բազում աշխատու-

թեամբ եւ ջերմեռանդ սիրով ժողովեաց եւ ի լոյս էած, զոմանս ի հեռաստանէ բազմում ծախիւք բերելով. եւ զոմանս գրել տալով գրագրաց հմուտ եւ արագագիր գրչաց: Եւ զայն որ ոչ էր յայտնի շարագրով կարդեալ ի մի տփի, մեծաւ աշխատութեամբ հանեալ ի գրոց յիշատակարանաց ինքն ժողովեալ հաւաքեաց զթիւս ժամուց եւ ժամանակաց զանյայտ եւ զխափանեալ թիւս եւ զպատմութիւնս, որ ի ծուլութենէ ուսումնասիրաց եւ յանհոգութենէ վարդապետաց խափանեալ էր...: Որ եւ զայս պատմագիրքս Մատթէոսի ...ետ գրել... ի փրկութիւն հոգւոյ ծնողաց իւրոց՝ հօրն Եղիային եւ մօրն Ղարիպին եւ եղբարցն Խաչատուրին փոխեցելոյն ի Քրիստոս եւ Խօշխապարին եւ որդւոյ նորին Ներսէս սարկաւագին... եւ հոգեւոր ուսուցչին իւրոյ Խաչատուր վարդապետին...: Գրեցաւ (ի ձեռն Յակոբ երիցու) ...ի քաղաքն Բաղէշ, ի վանքն Ամրդօլու ընդ հովանեաւ Ս. Յովհաննու Մկրտչին... ի թվականիս Հայոց ՌՃԼԸ, օգոստոս ի ԻԴ եղեւ աւարտ սորին, օրն Շաբաթ»:

## ՎԱՐԴԱՆԻ ԳՐԱԿԱՆ ՎԱՍՏԱԿՆԵՐԸ

Հայ գրականութեան համար վաստակաւոր էր Մեծն Վարդան զանազան գլուխներէ: Ան խնամոտ գուրգուրանքով հաւաքած էր մատենագարաններու մութ խորշերէն հայ պատմական գրականութիւնը եւ զայն բազ-

մացնել տուած էր օրինակութեամբ։ Ան նորոգել եւ կազմել տուած էր Տարօնի Առաքելոց եւ Բաղէշի Ամիրտոլի վանքերու իբր 100 ձեռագիրները։ Ան հաւաքած էր գրչութեան արուեստի վարպետներ եւ ծաղկեցուցած հարուստ թուով գրագէտ վարդապետներ։ Իր գրասէր ոգւոյն ժառանգն եղած էր Յովհաննէս Բաղիշեցի Կոլոտ, որ ոչ միայն մեկենաս հանդիսացած էր բազմաթիւ նոր թարգմանութիւններու արեւմտեան գրականութեան, այլ եւ աճեցուցած էր մեծ թուով աշակերտներ գրչութեան եւ ընտիր վարդապետներ։

Գրասէր եւ ուսումնասէր բարունապետը թէպէտ չնուիրուեցաւ գրական հեղինակութիւններու, բայց թողուց գրական մանր աշխատութիւններ, որոնք հետաքրքրական են իրենց սեռերու մէջ։ Ասոնք են.

## 1. Ժամանակագրութիւն։

Անթիլիասի Կաթողիկոսարանի Մատենադարանի Թ. *** ժողովածոյքը կը պարունակէ հատուած մը «Վասն Պատմագրաց Հայոց», որ ժամանակագրական կարգով կու տայ հայ պատմագիրներու անունները Եւսեբիոսէն սկսեալ. եւ կ'աւարտի «Թոմաս. եւ Առաքել. Վարդան յետին պատմագիր»։ Այս Վարդանը Բաղիշեցին է. իր ժամանակագրութեան կը հային Յակոբ երէցի հետեւեալ տողերը, որ 1689ին Ամիրտոլի վանքին մէջ

*օրինակելով Մատթէոս Ուռհայեցւոյ, Յովհ․ Դրասխանեցւոյ պատմագիրքներն եւ Սիմէոն Ապարանեցւոյ Վիպասանութիւնը, Յիշատակարանին մէջ կը գրէ, թէ Վարդան ոչ միայն աշխատող եւ հոգաբարձու եղած է* «ծածկեալ եւ անյայտ» *պատմագիրները հետախուզելու, այլ եւ «սա բազում աշխատութեամբ եւ ջերմեռանդ սիրով ժողովեաց եւ ի լոյս էած՝ զոմանս ի հեռաստանէ բազում ծախիւք բերելով եւ զոմանս գրել տալով գրագրաց հմուտ եւ արագագիր գրչաց․* Եւ զայն որ ոչ էր յայտնի շարագրով կարգեալ ի մի տփի, մեծաւ աշխատութեամբ հանեալ ի գրոց յիշատակարանաց ինքն ժողովեալ հաւաքեաց զթիւ ժամուց եւ ժամանակաց զանյայտ եւ զխափանեալ թիւս եւ զպատմութիւնս, որ ի ծուլութենէ ուսումնասիրաց եւ յանհոգութենէ վարդապետաց խափանեալ էր»:

*Ակնարկուած գրութեանս մասին կը հաղորդէ Գիւտ Աղանեանց տողերս․ «Այժմ Էջմ պահուած Միքայէլ Ասորւ Պատմութեան վերջում նա (Վարդան Բաղիշեցի) գրած ունի պատմագրական մի ընդարձակ Յիշատակարան, որ քաղուածաբար արտագրել է Փիրղալէմեանը — ոչ ամբողջութեամբ: Այդ մասը, որ լոյս է տեսնում ներկայ հատորում, ընդգրկում է իր մէջ* 1170—1654 *Հայաստանի զանազան անցքերի պատմութիւնը համառօտի, իսկ վերջին տարւոյ անցքերն աւելի մանրամասն, այն է Բաղէշի Աւղալ բէկ ամիրայի Վանի փաշայութեան ձեռքով ան-*

*կումն ու... Հոռոմոց ազգից՝ Հայոց Ս. Յակոբ վանքի յափշտակելու պատմութիւնը» (Դիւան, Ժ., էջ ԼԹ—Ի)։*

*Ժամանակագրութիւնը կը սկսի. «Բանզի Մահմէտն մարդ անօրէնութեան եւ որդին կորստեան եւ Կարապետ Նեռին ի յԱրաբիոյ ի Յաթրաբ քաղաքէ, որդի Աբդլայի, ի ԿԸ. թուին Հայոց* (619) *տիրացաւ (ոչ) սակաւ աշխարհի, այլ եւ Շամայ եւս կալաւ զիշխանութիւն...։*

*Կ'աւարտի* 1657 *տարւոյն Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքին Յոյներէն գրաւուելու դէպքով։ Ասոր կը կցէ Յիշատակարանս.*

*«Աղաչեմ յիշել ի Տէր Քրիստոս յոյան իմ՝ զմեղուցեալ բանի սպասաւորս Վարդան եւ զծնողսն իմ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ, որ զգիրքս կազմեցի վերստին եւ զՅիշատակարանս եւ զսակաւ Պատմութիւնս արարի տկար մտօք, ոչ որպէս ձեզ վայել է, այլ ըստ իմում չափոյ. եւ դուք յիշեսջիք ի Քրիստոսէ։ Նաեւ զհամշիրակ եղբայրդ իմ զՏիգրանակերացի Սարգիս բարունին ի հետ (տպ. յետ) յիշեցէք. ամէն (էջ* 80—81)։

*Հրտ. Դիւան Հայոց պատմութեան, Ժ., էջ* 67—81 *(Մեծն Վարդան Բաղիշեցի»)։ Հմմտ. նաեւ Յ. Թօփճեան, Ցուցակ Դաղեան Խաչիկ վարդապետի ձեռագրաց, Բ., էջ* 58։

## 2. Պատմագիրք Հայոց։

*Այս վերնագրի տակ հաւաքած են մեզի կրկին ցանկեր՝ Հայ պատմագիրներու եւ*

*օտար ազգերու պատմագիրքերու հայերէն թարգմանութեան: Ե. դարէն մինչեւ ԺԸ. դարու առաջին տասնեակը: Կան այն տեղ ծանօթ եւ անծանօթ պատմագիրներ: Անծանօթները թէեւ ծանօթ են անունով, բայց չեն հասած մեզի անոնց պատմագիրքերը: Այս ցանկերը մինչեւ ԺԷ. դարու սկիզբը կարելի է նկատել ամբողջ: ԺԸ. դարու պատմագիրներէն յիշատակուած են միայն Առաքել Դաւրիժեցի եւ Զաքարիա սարկաւագ: Անծանօթ մնացած են Գրիգոր Դարանաղցի, Սիմէոն Ապարանեցի, Վարդան Բաղիշեցի, Դաւիթ Բաղիշեցի, Սիմէոն Լեհացի (ինչպէս նաեւ Սրապիոն Ուռհայեցւոյ եւ Գրիգոր Կեսարացւոյ պատմական գրուածքները, զորոնք կը յիշեն ժամանակակիցները, բայց մեզի հասած չեն ցայժմ): Այս չորս պատմական գործերը, զորոնք ունինք այսօր, պահուած են սկզբնագիրներով. ուստի չեն բազմացուած ընդհանուրին մատչելի ըլլալու համար:*

*Ցանկերս ծանօթ են ինձի չորս օրինակներով (տե՛ս վարը), անոնցմէ հնագոյնն է Էջմիածնի Թ. 2271, ներս առնուած 1724ին Մովսէս Զուգայեցւոյ կազմած ժողովածոյքին մէջ: Յիշեալ օրինակներէն չորրորդն է Յակոբ Այուբեանի հրատարակութիւնը Մադրասի Ազգասէր անդրանիկ պարբերագրին մէջ 1795ին: Այս տեղ ճոխացած են Ցանկերս նոր յաւելուածներով. ներս առնուած են պատմագիրքեր, որոնք յօրինուած կամ*

Թարգմանուած են ԺԸ. դարու երկրորդ կէսին. կը յիշուի նաեւ «Մարգարէ Շահրիմանեանց» Թարգմանած «Պատմութիւն Սինէացւոց» 1793էն: Ինչպէս Այտըեան ջանք տարած է արդիականացնել Յանկերս, նոյնպէս կրնանք մտածել, թէ նաեւ Մովսէս Զուգայեցի յաւելուածներ մուծած ըլլայ իր օրինակին մէջ, յատկապէս իրմէ յաւելուած ըլլան «Զաքէոս պատմագիրք... մինչեւ ՌՃԾ Թուին» եւ «Պատմագիրք սուրբ ժողովոյն Եփեսոսի եւ Քաղկեդոնի... ի ժամանակս Թուականութեան Հայոց ՌՃԿ»:

Դուրս հանելով այս երկու յաւելուածները Յանկերուս յօրինումը կրնանք ենթադրել ԺԷ. դարու 70ական Թուականին. կանխագոյն եզր առնելով 1669, այն է Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութեան տպագրութիւնը: Հեղինակին ծանօթ է նաեւ Յովսեպոսի Պատմութեան Թարգմանութիւնը ի ձեռն Ստեփանոս Լեհացւոյ 1660ին:

Ո՞վ կարող է ըլլալ Յանկերուս հեղինակը այս ԺԷ. դարուն: Միակ անձ մը կը ցցուի այս շրջանիս մեր առջեւ, որ բոլոր Թափով հետամուտ է պատմական գրականութեան, որ ոչ աշխատանք եւ ոչ դրամ կը խնայէ կազմելու լիակատար հաւաքածոյք մը Հայ եւ օտար պատմագիրքերու եւ զանոնք օրինակութեամբ մատչելի ընելու ընդհանուրին: Այդ Վարդան Վ. Բաղիշեցին է: Հեղինակը իր Յանկերը չէ կազմած ի լոյս կամ նախնեաց հաղորդած գրական յիշատակարաններէ քա-

դելով, այլ զանոնք, — գոնէ մեծագոյն մասը — անձամբ կարդացած ցոյց կու տայ ինքզինքը: Ան գիտէ պատմագիրներու անունները, ժամանակը, պատմագիրքերու բովանդակութիւնը եւ նկատի առնուած ժամանակամիջոցը: Այդ պատմագիրքերը հազուագիւտ էին մինչեւ ԺԷ. դար. անոնց ոչ անունները ծանօթ եւ ոչ պահուած տեղերը յայտնի: Առաջին անգամ Ամիրտօլի վանքին առաջնորդի ջանքերով անոնք հաւաքուեցան վանքին Մատենադարանին մէջ եւ դարձան հետաքրքրուողներու մատչելի: Ուստի այդ վանքին միաբան մը միայն ի վիճակի էր կազմել նման Ցանկ մը: Որովհետեւ այդ վանքին մէջ միայն Վարդան Բաղիշեցին էր, որ կը հետաքրքրուէր պատմական գրականութեամբ, հարկ է իր գրչէն համարել այս կրկին Ցանկերը: Ինքն էր, որ խորհած էր կազմել նաեւ Մատենադարանին գրացանկը, որոշ դասաւորութեամբ, զանազանութեամբ անոնց սեռերու եւ այլն: Եթէ այն տեղ մատնանշած է պատագիրքերու համարները, այս տեղ իր նպատակը եղած է տալ հայ պատմական գրականութեան պատկերը. ի՞նչ հեղինակած են նախնիք եւ ի՞նչ բերած հասցուցած է ժամանակը:

Թէ ինչո՞ւ համար անյիշատակ թողուցած է հեղինակը իր իսկ ժամանակագրութիւնն եւ Դաւիթ Բաղիշեցւոյ Ծաղկաքաղ Պատմութիւնը, պատճառը կամ համեստութիւնն պէտք է համարել եւ կամ զգուշու-

*թիւնը։ Երկու գրուածքներու ալ սկզբնագիրները գտնուած են Լիմ անապատի Մատենադարանին մէջ ի պահպանութիւն։ Կարեւոր չէ համարած Վարդան այդ գործերու օրինակները բազմացնել տալ։ Երկու յուսամիտ հեղինակներն ունէին մութ նախանձորդներ. որոնց առջեւ պէտք էր զգուշանալ։*

*Ցուցակներէս ծանօթ են ինծ երեք ձեռագիր եւ մէկ տպագիր. ասոնք են. Էջմիածին Թ.* 2271, *թղ.* 218*ա*—220*բ* (1724*էն*). 2220, *էջ* 578 (1790*էն*) *եւ Անթիլիասի Թ.* ***, *թղ.* 95*ա*—96*ա* (*ԺԸ. կամ ԺԹ. դարէն*)։ *Եղած է չորրորդ օրինակ մ'ալ Յակոբ Այուբեանի ձեռքը, որուն համեմատ հրատարակած է զայն Ազդարար* (*Մադրաս* 1795), *էջ* 188—192. *անկէ արտատպուած՝ Հ. Գ. Գալէմքեարեան, Պատմութիւն հայ լրագրութեան, Վիեննա* 1893, *էջ* 205—210։ *Ինչպէս կ'երեւայ Այուբեան ոչ միայն յաւելուածներ մուծած է բնագրին մէջ, այլ եւ կատարած է տեղ տեղ յապաւումներ։ Հինգերորդ օրինակ մ'ալ կը յիշէ Ստեփաննոս քահանայ Տէր-Յոհաննեանց* 1839*ին. որ իր նամակին մէջ* 29 *փետր. առ Գեր. Աբբահայրն Մխիթարեան Ուխտին ի Ս. Ղազար «ծանուցանէ, թէ յերթալն յԱսպահան գտեալ է ուրեք Ցուցակ մի գրչագիր մատենից, զոր կարծէ լինել Ամենափրկիչ վանաց Նոր-Ջուղայու. եւ զանուանս մատենիցն կարգէ ի նամակին, յորս նշանակեալ է եւ Գործք Աթանասի, եւ այլ ոչ սակաւ գրչագիրք սակաւագիւտք եւ ցանկալիք, որպիսիք*

ևն՝ խորովայ թարգմանչի Պատմութիւն Ս․ Սահակայ․ Կորիւն Պատմութիւն Ս․ Մեսրոպայ․ Շապուհ պատմագիր, որ է Որմըլզաքբաղայ [*կարդա՝* պատմութիւն սրբոյն Սմբատայ] ատրատելատին և այլոց սուրբ նահատակաց որ ի թուին ԳՃԲ…» (*Ս․ Աթանասի… Ճառք և Թուղթք, Վենետիկ* 1899, *էջ Զ—Է*)։ *Ընդգծուած տեղիքները ա՛յս Յանկէս հանուած են, ուստի տեղեկատուն սխալած է, երբ համարած է, թէ այդ Յանկը Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքին ձեռագրաց Ցուցակը եղած ըլլայ։ Որով մոլորցուցած է նաև ուրիշները․ այսպէս Հ․ Գ․ Զարբանալեանը, որ գրած է երկիցս իր Հայկական հին դպրութեան պատմութեան մէջ «ի Նոր Ջուղա պահուած ձեռագրաց թուին մէջ կը յիշուի գիրք մը»* (*էջ* 295), *«Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանաց ձեռագրաց Ցուցակի մը մէջ ալ կը գտնենք ի թիւս այլոց…»* (*էջ* 504) *և այլն։ Հեղինակին ծանօթ էր նաև «նորագոյն յիշատակագիր մը պատմչաց դասակարգութեան»* (*էջ* 465, 504 *և* 571), *որ ոչ այլ ոք է, եթէ ոչ Յակոբ Այուբեան, ուստի կարող էր անդրադառնալ, թէ Տէր-Յոհաննեանցի «Ցուցակ»ն նոյն է այդ Յիշատակագրի պատմչաց դասակարգութեան հետ։*

*Կարևոր կը տեսնեմ այս «Պատմագիրքը» միանգամ հրատարակել Էջմիածնի Թ․* 2271 *բնագիր ընտրելով։ Բնագրին ստորև կը նշանակեմ Անթիլիասի ու Այուբեանի օրինակներուն տարբերակները։*

## ՊԱՏՄԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

(Ա.)

*Ա.* Պատմութիւնք սրբոց Առաքելոցն, *որք ի Հայս կատարեցան. որպէս վկայէ Մովսէս Խորենացին. Բ. հատոր, ԼԱ. գլուխ:*

*Բ.* Ագաթանգեղոս. *Պատմութիւն չարչարանաց եւ Վարդապետութիւն սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին:*

*Բայց* (ի թղթոյ) Դաշանցն սիրոյ եւ միաբանութեան *զգոյշ պարտի լինել. զի ի հին օրինակն ոչ ուրեք գտանի, այլ ի նորագոյնն. Անթարգմանից բազում ինչ բառ նորեանց ախորժակացն չարադրեալ խորամանկութեամբ՝ երեւի:*

Գ. Մեսրովբ Երէց. *որ է Պատմութիւն սրբոյն Ներսիսի մեծի Հայրապետին:*

Դ. Մովսէս Խորենացի. *հաւաստապատում պատմագիրք, չորս հատոր. սկսեալ*

A = *Էջմիածին Թ.* 2271:
B = *Անթիլիաս:*
C = *Ազգարար* 1795:
ԽՈՐԱԳԻՐ՝ C *Նախապէս պատմութիւնք:*
Առաջին հատուածը չունի C:
*Վկայէ* չունի B:

*Բ.* C *Ագաթանգեղոսի զոր վասն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին հօրն մերոյ, եւ Տրդատայ Թագաւորին, ի ժամանակս նոյա եղելոյս պատմէ:*

*Բ.* B *այլ զարդարեալ երեւի ի անթարգմանից զոր խորամանկեալ են:*

*Գ.* C *Մեսրոպ երէցն պատմէ վասն սրբոյն:* ABC *Երէց:* BC չունին *մեծի:*

*Դ.* BC չունին *հաւաստապատում պատմագիրք:* BC չունին *սկսեալ:* AC *մինչեւ Զ.* B *մինչ ի:* C *կայսր:*

յԱդամայ մինչեւ ի Զենոն կայսրն, որպէս վկայէ Թովմաս Արծրունեաց պատմագիրք. բայց այժմս զերիս հատորսն միայն տեսանեմք իսկ չորրորդն ոչ ուրեք գտանի ի սադրելոյ հերձուածողաց:

Ե. Կորիւն թարգմանիչ. որ է Պատմութիւն սրբոյն Մեսրոպայ վարդապետին:

Զ. Խոսրով՝ եւս թարգմանիչ. որ է Պատմութիւն սրբոյն Սահակայ հայրապետին:

Է. Եղիշէ վարդապետ. որ է Պատմութիւն նահատակութեան սրբոց Ղեւոնդեանցն եւ Վարդանեանցն: Թէպէտ եւ զպատերազմունսն սրբոյն Վարդանայ որ նախ քան զնահատակելն ըստ պատմագրաց՝ այժմ ոչ գտանի ուրեք, զոր արարեալ է եւս սրբոյն Եղիշէի:

Ը. Ղազար Փարպեցի ճարտասան. Պատմագիրք սկիզբն արարեալ ի մահուանէ սրբոյն Սահակայ մինչեւ ի մահն Զենոնի կայսեր:

Թ. Բիւզանդ. որ գրեալ իւր պատմէ Հայոց աշխարհիս իբր զմնացորդս նախկին պատմագրաց. հատորս վեց:

BC Թովմաս: A այժմս: A երեւի BC տեսանեմք: A զչորրորդն: B չորրորդն: C չունի իսկ — հերձուածողաց:

Զ. C չունի եւս:

Է. B կը համառօտէ թէպէտ — Եղիշէի այսպէս. բայց պատերազմի գիրն Վարդանանց որ նախ քան զնահատակելն այժմ ոչ երեւի. այն Եղիշէի է արարեալ: իսկ C դուրս ձգած է:

Ը. ABC պարպեցի. A ս. առեալ. BC չունին: BC մինչ ի. C չունի մահն:

Ժ. Զենոբ պատմագիրք, *որ է Պատմութիւնք Տարօնոյ սուրբ Կարապետին եւ յաղթութիւնք իշխանացն Տարօնոյ որ առ Խոսրով Պարսից արքայիւ։*

ԺԱ. Հերակլ յեւսեբիոսէ եպիսկոպոսէ *ասացեալ, որ ինչ սակս պատերազմացն Հերակլի եւ Խոսրովու եւ այլ բանք պիտանիք։*

ԺԲ. Անանիա Շիրակացին. *սկիզբն առեալ յԱդամայ համառօտ գաւազանաւ իջանէ մինչեւ ի ժամանակս Անաստասայ կաթողիկոսի։*

ԺԳ. Ղեւոնդ պատմագիրք. *որ է Պատմութիւն անօրէն ազգին չարի։*

ԺԴ. Շապուհ պատմագիրք. *որ է Պատմութիւն սրբոյն Սմբատայ սպարապետին եւ այլոց սրբոց նահատակացն որ ի թուին ԳՃԲ* (853)։

ԺԵ. Յովհաննէս կաթողիկոս, *ազգական սրբոյն Մաշտոցի. սկսեալ յԱդամայ մինչ ի թուին ԳՃԿԲ* (912), *ի կատարումն Սմբատայ թագաւորին։*

ԺԶ. Մովսէս Կաղանկատուեցի. *որ է երեք հատոր, Աղուանից պատմութիւնք։*

Ժ. C *պատմութիւնն։*
ԺԱ. B *յեւսեբիոսէ։* BC չունին *որ ինչ։*
ԺԲ. AC *կաթողիկոսին։*
ԺԳ. B *ազգի։*
ԺԴ. C *շապուհ։* BC Շ. *պատմութիւն որ է գիրք սրբոյն։* C *ն. թուին Հայոց։* A *թուինն։*
ԺԵ. AB *յոհաննէս։* A *թուինն* B *թւին. մինչեւ ի թուին ԳՃԿ։*
ԺԶ. AB *կօղան կատուեցի* C *կօչան կ.։*

ԺԷ. Ուխտանէս. *որ է Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց։*

ԺԸ. Թոմաս պատմագիրն. *որ է երկու հատոր, Պատմութիւն Արծրունեաց սկսեալ ի Նոյէ մինչեւ ի կաթողիկոսութիւն Աղթամարայ։*

ԺԹ. Ստեփանոս Տարօնեցի. *որ եւ կոչի* Ասողիկ. *երեք հատոր. սկսեալ յԱբրահամէ մինչեւ ի մահն սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն՝ ի ՆԾԲ* (1003) *թուին։*

Ի. Արիստակէս Լաստիվերդացի. *սկսեալ ի ԴԾԲ* (1003) *թուէն մինչ ի ԵՃԼ* (1181) *թուն, ողբերգական դիմօք։*

ԻԱ. Յոհան Կոզեռն. *արար պատմագիրս որ ինչ ի ժամանակս իւր։*

ԻԲ. Յոհան Տարօնացի. *որ է Պատմութիւն Բագրատունեաց։*

ԻԳ. Սարկաւագ վարդապետն սուրբն Յովհաննէս. *արար եկեղեցական պատմագիրս։*

ԺԷ. C *վ. եւ հ.։*
ԺԸ. ABC *Թօմաս։*
ԺԹ. AB *ստեփաննոս* A *տրօնեցի* BC *տարոնեցի։* BC *Թուականին*
Ի. BC *լաստրովարդեցի* իմացիր *լաստիվերտացի։* A *Թուինն.* B *Թին։*
ԻԱ. C *ա. ի ժամանակս իւր զոր ինչ եղեւ։*
ԻԲ. A *տարոնացի։*
ԻԳ. A *ԴՃՁ* BC *ԴՃԼ* բայց Ուռհայեցւոյ պատմութիւնը կը սկսի Ն. թուականին եւ կ'աւարտի ՈԺԱ տարւոյն։

ԻԴ. Մատթէոս Ուռհայեցի. *Պատմութիւն աւերման աշխարհիս Հայոց, սկսեալ ի ՆԶ (957) թուէն մինչեւ ի Ո (1151) թուականն:*

ԻԵ. Սամուէլ Երէց. *որ արար զՔննիկոն գաւազանագիրքն:*

ԻԶ. Մխիթար Անեցի. *որ է Պատմութիւն Անւոյ քաղաքին եւ այլ ինչ բանից պիտանեաց:*

ԻԷ. Ներսէս Շնորհալի. *ողբ վիպասանական ի նախնեաց իւր. եւ սակս Առմանն Ուռհայոյ եւ Երուսաղէմի:*

ԻԸ. Վահրամ որդի Տիգրանայ[1]. *եւս ողբ զկնի բանից սորին Ներսէսի ի նոյն ոճս արարեալ՝ սակս Տանն Ռուբենեանց:*

ԻԹ. Սմբատ պատմագիրքն. *եւս Թագաւորութեան Ռուբենեանց:*

Լ. Մխիթար Գոշն. *արար պատմութիւնս պիտանիս որ ինչ սակս Հերձուածողաց*[2]:

ԻԵ. B *սամօէլ:* ABC *էրէց:* BC *զքնիկոն:*
ԻԶ. AB *յանեցի... յանւոյ:* C *բանք պիտանիք:*
ԻԷ. C *չնորհալւոյն ողբ վիպասանական վասն նախնեացն եւ վասն...:* B ի լուսանցս *մոռացեալ զներ-սէս լամբրօնացւոյն գործք:*
ԻԸ. C *Վահրամայ որդւոյ Տ. եւ ողբ զկնի...:*
ԻԹ. C *եւս վասն Թագաւորութեանս:*
Լ. C *պատմութիւնն պիտանի սակս Հ.:*

---

[1] *Հեղինակը նոյնացուած է իբր* 1030*ին ծաղկած «Վահրամ որդի Տիգրանայ» պատմագիրը (Վարդան պատմիչ, էջ* 94. *իսկ Մխիթար Այրիվանեցի, էջ* 37. *«Վ. Տիգրանակերացի») համանուն Վ. Րաբունւոյ հետ, Գանձերը գրողէն, վախճանած* 1293*էն ոչ շատ վերջը:*

[2] *Կ'ակնարկէ հաւանօրէն Մխիթար Գօշի Թուղթն առ կաթողիկոսն Վրաց. հրատարակուած Արարատ* 1900, *էջ* 497, 562. 1901, *էջ* 121:

ԼԱ. Յովհաննէս[3] Վանական. *որ ինչ ի ժամանակս իւր սակս Թաթարացն:*

ԼԲ. Կիրակոս պատմագիրք. *եւս վասն ազգին Թաթարաց եւ այլ պիտանի բանից:*

ԼԳ. Գրիգոր պատմագիրք. *եւս վասն Թաթարաց մինչեւ ի ժամանակս Կոստանդնի մեծի կաթողիկոսին:*

ԼԴ. Վարդան վարդապետ. *սկսեալ յԱդամայ մինչեւ ի ՉԺԵ* (1266) *թիւն:*

ԼԵ. Ստեփանոս Սիւնեցին. *որ է Պատմութիւն Սիւնեաց եւ կոչի Տաթեւու կոնդակ:*

ԼԶ. Մխիթար Այրիվանցի. *համառօտ գաւազանաւ մինչեւ ի ՉԿ* (1311) *թիւն:*

ԼԷ. Թովմաս Մեծոփեցի. *աշակերտ սրբոյն Գրիգորի Տաթեւացւոյն. երկու համառ պատմութիւն. մին վասն Թամուր Լանգին եւ չարեացն նորին. եւ միւսն վասն նորոգութեանն կաթողիկոսութեանն սուրբ Էջմիածնին:*

ԼԱ. C *իւրոյ եղեալ էր սակս:*
ԼԲ. C *եւ այլոց պիտանեաց ը.:*
ԼԳ. C չունի *ազգին:*
ԼԴ. B *ՉԺԷ թւին:* C չունի *ի.* A *թուինն:*
ԼԵ. AB *ստեփաննոս.* C չունի *Սիւնեաց:* A *կոնտակ:*
ԼԶ. ABC *թուին:*
ԼԷ. A *թօմաս* B *մեծօփեցի:* AB *չարաց* C *չարախաղաց:*

---

[3] *Վերագոյն* § 2, Գ., *ծան.* 4 *ուշադիր ըրած էի, որ Վանականն վարդապետ առաջին անգամ Յովհաննէս անուանուած է Վարդան Բաղիշեցւոյ տուած Վկայագիրին մէջ: Նոյնը կը տեսնենք նաեւ հոս, նո՛յն գրչէն: Վանականի այս Պատմութիւնը յիշած են Վարդան եւ Կիրակոս, 'ուսկից օգտուած է Հեղինակս:*

ԼԸ. Առաքել Դավրէժեցի. *Պատմութիւն թագաւորացն Պարսից եւ գերութեան Հայոց եւ Վարք կաթողիկոսացն որ ի նոյն ժամանակի, մինչ ի թիւն ՌՃԹ* (1660)։

(ԼԹ.) Զաքէոս պատմագիրք. *երկու հատոր, սկսեալ զկնի բանից Առաքելին մինչ ի ՌՃԾ* (1701) *թիւն*։

---

ԼԸ. C չունի *թագաւորացն եւ որ ի սոյն — ՌՃԹ*։

ԼԹ. BC *բանիցն զկնի*։ C *Առաքելի*։ AB *թուին*։ C *կ'աւելցնէ*.

(Խ.) *Տէր Յովսէփ Զուղայեցւոյն պատմագիրք, որ կոչի Քնիկոն, յԱդամայ մինչ ի ՌԲԾ թիւն, յորս գոն զանազան ասութիւնք ի վերայ աստուածայնոց արանց եւ պատմութիւնք Հայոց իշխանաց և թագաւորաց. եւ վասն ամենայն անցիցն անցելոց զոր տեսողացն է յայտնի*։

(ԽԱ.) *Խաչատուր վարդապետէ պատմագիրք վասն բռնակալութեանցն Պարսից, եւ թագաւորացն Նեռոգաց, եւ վասն ժառանգութեանցն Հայոց, եւ նահանգաց նոցին, այլ եւ գետոց, եւ լերանց. Բ. հատորս արարեալ է՝ վասն անցելոցն, եւ ներկայիցն, զոր ունի պարունակեալս յինքեան, զբաղում եւ զզանազան պատմութիւնս*։

(ԽԲ.) *Յակոբ Շամիրեանէ Զուղայեցւոյ՝ պատմագիրք Յորդորակ կոչեցեալ, յորս գոն պատմութիւնք, յԱդամայ մինչեւ ի Ռ[Ճ]ՄԻԱ թիւն, վասն հսկայից թագաւորաց, եւ իշխանաց, եւ մանաւանդ վասն ժառանգութեանցն Հայոց, եւ բնակութեանց նոցայ, աշխարհագրութիւնք լերանց եւ դաշտաց եւ՝ գետոց...*։

(Բ․)

*Այլ եւս զոն պատմագիրք թարգմանեալք որք են այսոքիկ։*

Ա․ Յովսեփոս․ *ի Յունաց լեզուէ թարգմանեալ եղեւ․ որոյ Պատմութիւնն սկսանի զկնի բանիցն Մակաբայեցւոցն մինչեւ ի ․ԽԲ․ ամն Քրիստոսի, վասն կործանման Հրէից եւ քակման տաճարին։ Գիրքս այս նախ թարգմանեալ եղեւ ի սրբոց թարգմանչացն․ եւ ի անյայտ լինելն՝ վերստին թարգմանեալ եղեւ ի Լատինացւոց լեզուէ ի ձեռն Ստեփաննոսի Լեհացւոյն․ բայց ոչ զամենայն բանն Յովսեփոսի, այլ միայն զութ հատորս ի Վիպից նորին։*

*Բ․* Երանոս (*Իրենէոս*) *հետեւող առաքելոցն․ ի Յունաց լեզուէ․ Բանք Յաղագս գնայից առաքելոցն, եւ բանից Հերձուածոցն։*

(*Բ․*)՝ Այս վերնագրին փոխարէն C ունի ԽԲ հատուածին վերջ․ *Եւ զինչ ասացից պատմութեանցն այնոցիկ (տպ․ այնոքիկ) որք ի մերմէ բանաւորաց թարգմանեալք զոն յայլոց լեզուաց ի մեր լեզուս։*

*Ա․* C *Յովսէփոս․․․ եղեւ թարգմանեցեալ*։ B *եղեւ սկ․* BC *սկսեալ ի* (չունի) *յետ Մակաբայեցւոց մինչ ի*։ A *մինչեւ ԽԲ*։ A հոս եւ այլուր *թարգմանեալ* ունի նաեւ *թարճմանեալ* գրչութեամբ։ BC *տաճարին․ ԻԸ* (կարդա՛ *ի Ը*) *հատորս* (C *հատորք*)․ B կը շարունակէ *են վէպք նորա․* մնացեալը չունին BC։ A *ստեփաննոսի*։

*Բ․* BC *երանոսի հետեւողի*։ B չունի *բանք*։ C *առեա առաքելոցն գործոց եւ վասն բանից Հ․*։ Կ'ակնարկէ Ս․ Իրենէոսի *Յաղագս գնայից առաքելոց* եւ *Գիրքն Հերձուածոց*։

Գ. Եւսեբի *Եկլեսիաստիկայ պատմագիրք երեք. առաջինն յԱդամայ մինչեւ ի Քրիստոս. երկրորդն՝ ի Քրիստոսէ մինչ ի Մեծն Կոստանդիանոս. եւ երրորդն՝ Վարք սորին Կոստանդիանոսի: Գիրքս այս թարգմանեալ եղեւ ի յունական լեզուէ:*

Դ. Աթանաս *Հայրապետին չարադրեալ զՎարս միանձանց եւ խոստովանողացն զուգղափառութիւն սուրբ հաւատոյ. որ ի Ղպտաց լեզուէ եղեւ թարգմանեալ ի սրբոց հարցն:*

Ե. Եպիփան Կիպրացի. *երկու գիրք ի Յունաց լեզուէ. յորոց առաջինն է Պատմութիւն նախահարց եւ մարգարէից. եւ երկրորդն՝ Բացայայտումն բանից ութսուն հերձուածողաց որք երեւեցան մինչեւ ի ժամա-*

Գ. A *եկլեսաստիկայ պ.* BC *պատմագիրք եկլեսիաստիկայ* այն է ἐκκλησιαστικὴ ἱστορία, *եկեղեցական պատմութիւն*, թարգմանուած ասորերէնէ. միւս գիրքն է *Քրոնիկոն կամ ժամանակական կանոնք*, թարգմանուած յունարէնէ. իսկ երրորդը «*Վարք Ս. Կոստանդիանոսի*» չէ հասած մեզի, եթէ չէ *Վարքն Սեղբեստրոսի*: C *Գ հատոր. առաջին սկսեալ յԱ.*: B *մինչ ի Քրիստոս սկսեալ յադամայ*: C *կ. Թագաւորին... թարգմանեցեալ*:

Դ. C *Հայրապետն* չունի *չարադրեալ* B *չ. է*: BC *եւ խոստովանութիւն* (C *-թիւնն*) *զուգղափառացն*: AB *զոր* C չունի. B *ղպտաց* չունի *լեզուէ*. C *թարգմանեցեալ է ի ղպտոց լեզուէ*:

Ե. C չունի *յորոց*. BC չունին *է*: A *բացայայտումն*: B չունի *բայց գիտելի է զի*: B *եւ գիր մի եւս յանուն սորին կայ զոր այլք շինեալ են որպէս է վարուց գիրքն մանկութեան..., Կիրակոս, զոր խոտեալ են սուրբ հարքն*. C չունի *բայց* — *Կիրակոս*: A *ի սրբոց*:

*նակս իւր: Բայց գիտելի է զի գիրք մի եւս անուամբ սորին գտանի խառն ճառից ընդ պատմութեանց, յորս գտանին բանք հերձուածողաց եւ չարափառութիւնք յոլովք. եւ ոչ հաւատոյ գլխաւորական տանջանաց. զորս խօսեալ է սրբոց Հարցն մերոց ընդ Գրոսակայ (Գորդոսակայ) եւ Կիրակոսակայ եւ ընդ Վարուց մանկութեան Տեառն եւ Մեկնութեանն Մանեայ եւ գայլոցն, զորս գրէ վարդապետն Կիրակոս*[4]:

Զ. Արեւելեան վկայից պատմութիւնք. *զոր թարգմանեալ է սրբոյն Աբրահամու Խոստովանողի ի Պարսից լեզուէ, մինչ բանդարկեալ կայր ի Պարսիկս սակս խոստովանութեան սուրբ հաւատոյ:*

Է. Սոկրատ. *ի Կոստանդիանոսէ սկսեալ մինչեւ ի մահն Թէոդոսի Փոքու. հատորս եօթն. այս եւս ի Յունաց լեզուէ թարգմանեալ եղեւ. բայց յետոյ ի ժամանակս կաթողիկոսութեան Անաստասայ ի խնդրոյ Ներսեհի իշխանին պատմագիրքս այս համառօտեցա-*

Զ. C *թարգմանեցաւ սրբոյն յԱբրահամու խոստովանողէ մինչ բ. կայր... խոստովանութեանն սրբոյ հաւատոյ, ի Պարսից լեզուէ:* A *զոր* BC *կայր:*

Է. BC *սկսեալ ի Կոստանդիանոսէ մինչ ի* (C *մինչեւ ց*): ABC *զայս եւս:* B *ի Յունաց է թարգմանեալ.* C *թարգմանեցաւ զոր համառօտեցաւ վասն խնդրոյ Ներսեհի իշխանին ի ժամանակս կաթուղիկոսութեանն Անաստասայ. եւ այժմ գերկուսն միայն երեւի զոր ասեն... եւ փոքր Սոկրատ:* BC չունին *ի միջի մերում:*

[4] *Կիր. Գանձակեցի, Վենետիկ* 1865, *էջ* 29:

ցին. որ այժմ երկուքն եւս երեւին ի միջի մերում եւ անուանին Մեծ Սոկրատ եւ Փոքր:

Արդ այս եօթն պատմագիրքս ի սորոց թարգմանչացն եղեն թարգմանեալ:

Ը. Պատմագիրք սորայն Յովհաննու Ոսկեբերանին որ ի Յունաց լեզուէ թարգմանեալ եղեւ ի ձեռն սորայն Գրիգորի Վկայասիրին:

Թ. Պատմագիրք սուրբ ժողովոյն Եփեսոսի եւ Քաղկեդոնի եւ ամենայն Թուղթք որ ի նոսա ընթերցան, թարգմանեալ եղեւ ի Լատինացւոց լեզուէ ձեռամբ Գէորգայ Կոստանդնուպօլսեցւոյ ի ժամանակս թուականութեան Հայոց ՌՃԿ (1711)[5]:

B չունի արդ. ABC գայս: C պատմագիրքն եւս ի թարգմանչացն եղեւ թարգմանեցեալ:

Ը. AB յոհաննու. C կ'աւելցնէ այսինքն Վարքն եւ կեանքն նորին ի ծննդենէ մինչեւ ի մահն ի սորայն Գ.է Վ.է թարգմանեցեալ եղեւ ի Յունաց լեզուէ: AB գոր: B չունի լեզուէ:

Թ. C նաեւ ամենայն թուղթք որպէս... եւ թարգմանեցեալ... ի ժամանակս ՌՃԿ թ—եանն Հայոց:

---

[5] Այս տեղ յիշուած Գէորգ Վ. Կոստանդնուպոլսեցին է Մխլայիմ օղլու կոչուածը. իր թարգմանութիւնը պահուած է Էջմիածնի Թ. 1907 ձեռագրին մէջ, որ գրուած է 1754ին. ունի խորագիր «Սուրբ եւ տիեզերագումար Բ. ժողովը Եփեսոսի ընդդէմ Փլաբիանոսի երկարնակ պատրիարգին Կոստանդնուպօլսոյ, արարեալ ի մեծ վկայէն Քրիստոսի սուրբ Դիոսկորոսէ հայրապետէն Աղեքսանդրիայու. արտահանեալ ի Գործոց գրքէն Քաղկեդոնի ժողովոյն. եւ թարգմանեալ ի Հելլենացւոց լեզուէն ի հայ բարբառ ի Կոստանդնուպօլսեցի Գէորգ վարդապետէն ի մէջ Դպրատանն Փարիզու մայրաքաղաքին Ֆրանձայու. թուին Քրիստոսի ՌՉԵ» (1705): Ուստի Գէորգ վարդապետս թարգմանած է միայն 449ի Եփեսոսի Բ. ժողովին Գործերը հանե–

Ժ. Հարանց վարուց (Պատմագիրք)․ ի Ղրատաց լեզուէ եւ ի սորոյն Գրիգորէ Վկայասիրէ (եղեւ թարգմանեալ)։

ԺԱ. Պատմութիւն սորոց Հայրապետացն եւ Վկայիցն, որ այժմ Ճառընտիր կոչի, յայլ եւ այլ լեզուէ թարգմանեալ եղեւ ի ձեռն բազմաց․ իսկ յետոյ սուրբ հայրն Սողոմոն Մաքենից հաւաքեաց ի մի տուփ եւ անուանեաց Տօնական․ քանզի մինչեւ ցայն ոչ գոյր ի մէջ մեր Յայսմաւուրք։

ԺԲ. Յայսմաւուրք եւ այլ Ճառք սորոց թարգմանեալ եղեւ ի Յունաց եւ յԱսորւոց, ձեռամբ սորոյն Գրիգորի Վկայասիրին։ Իսկ յետոյ Գրիգոր Անաւարզեցին ձեռն արկեալ բազում ինչ այլայլեաց․ եւ յետ նորա Գրի-

Ժ. B վարուցն ի գրաոց... գրիգորէ (A գրիգորի)։ Այս հատուածը թերակատար կ'երեւայ։ C չունի։
ԺԱ. AB եւ յայլ։ C բ. բանասիրաց։ B մատենից C մատենադրաց հաւաքելով... տօնական որ է յայսմաւուրք․ շարունակութիւնը չունի։
ԺԲ. B ճ. բազում չունի սորոց։ AB անարզաւեցին։ B ծերենց։ A զոր։ C չունի այս հատուածը։

լով «ի Գործոց գրքէն Քաղկեդոնի Ժողովին»։ Եւ եթէ Հեղինակս Եփեսոսի եւ Քաղկեդոնի «Ժողովոյն» Գործերու թարգմանութիւնը կը յիշէ կատարուած 1711ին, պէտք է նկատի առնել այդ Գործերու այն թարգմանութիւնը, որուն թարգմանիչն եղած է Յակոբ դպիր Ճամճի օղլի, Շուետի թարգմանը, որ յոյն եւ լատին լեզուներէ թարգմանած է Զորս Տիեզերական Ժողովներու Գործերը, ընթացս 1711—1750 տարիներու (իր այս թարգմանութեանց ճիշդ տարին չէ աւանդուած)։ Քաղկեդոնի Գործերն ունինք Վիեննայի թ. 721 ձեռագրին մէջ։ Գէորգ եւ Յակոբ Կ. Պոլսեցիները ի միասին ուսած էին ի Պարիս ԺԸ. դարու առաջին տասնակին։

*զոր Խլաթեցին որ կոչի Ծերէնց. որ այժմ վարի յեկեղեցւոջ:*

*ԺԳ. Հարցումն գիրք սրբոյն Գրիգորի պապուն Հռոմայ, որ է Պատմութիւն սրբոց ճգնաւորաց. չորս հատոր. ի Լատինացւոց լեզուէ թարգմանեալ եղեւ ձեռամբ սրբոյն Ներսէսի Լամբրոնեցւոյն:*

*ԺԴ. Միխայէլ պատմագիրք. յԱսորւոց թարգմանեալ եղեւ հրամանաւ Կոստանդի մեծի կաթողիկոսին:*

*ԺԵ. Վիրք Պատմութիւն. ի Վրաց լեզուէ թարգմանեալ եղեւ. որ է յԱդամայ մինչեւ* ՉՃ (1151) *թիւն Հայոց:*

*ԺԶ. Գաւազանագիրք Լատինացւոց. որ են Պատմութիւնք Յունաց կայսերաց եւ թագաւորացն Փռանկաց եւ պապուցն Հռոմայ. ի լատին լեզուէ թարգմանեալ եղեւ ի ժամանակս թագաւորութեան Ռուբենեանց:*

*Մանաւորք եւս Բանք պատմութեանց եւ Թուղթք գտանին, զորս ոչ եդաք, որպէս Աշխարհագիրքն եւ Հայելի վարուցն եւ այլք.*

*ԺԳ.* C *Հ. Գրիգորի* B չունի *պապուն:* A *հռոմայ:* BC *որ է Դ. հատոր պատմութիւն սրբոց ճ. (*C *պ. մխանձանց) թարգմանեալ (*C *թարգմանեցեալ).* դուրս ձգած են *ի Լատինացւոց լեզուէ:* C չունի *սրբոյն:* A *ներսէսէ:* AC *լամբրոնեցւոյն* C *լամբրոնեցւոյ:*

*ԺԵ.* B չունի *եղեւ* C *պատմութիւնն եղեւ թարգմանեցեալ ի Վրաց յադամայ:* AB *մինչեւ ՉՃ թուին:*

*ԺԶ.* BC *որք են... եւ Լատինացւոց կ.* չունին *եւ թագաւորացն — եղեւ:* A *կայսերց:* C չունի *թագաւորութեանն:* C *ռուբենեան:*

*կամ թէ եւս գտանին պատմութիւնք սուտք եւ առասպելք եւ վարք անպիտանք, որ ոչ են ի կարգի պատմագրաց, թողաք. այլ միայն զհարկաւորացն բուռն արկեալ ի վերուստ յետ մարդեղութեան Տեառն՝ կարգաւ իջաք, թէ ի մերոց վարդապետաց պատմարանեալքն եւ թէ յայլ լեզուացն ի մերս թարգմանեալք: Եւ զայս ի փառս մարմնացելոյ Բանին Աստուծոյ, ընդ Հօրն երկնաւորի եւ սուրբն Հոգւոյն ճշմարտի, երր յաւիտենիւ. ամէն:*

---

(Յաւելուածք C օրինակի)

*ԺԷ. Վէմ զայթակղութեանն. Բ. հատոր. առաջին պատմէ զպատառումն եկեղեցեաց արեւելեանի եւ արեւմտականի. եւ երկրորդն պատմէ զխռովութիւնս փափիցն ընդ թագաւորացն Գալլիացւոց. եւ այլոցն եւրօպէականաց, ԽԳ գլխով, եւ է յօդուածովք բաժանեցեալ ի յունական լեզուէ:*

B *Գտանին եւս այլ պատմութիւնք զորս ոչ եդաք աստ բայց միայն որ հարկ էր մեզ գրել զայն գրեցաք ի փառս մեծի սրբոյն Սիոնի. զոր եւ արժանի լիցուք ժառանգութեան նորին. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:*

*Տէր Սամօէլ: Տէր Փիլիպպոս Վ.:*

C դուրս թողուցած է ամբողջը: Բայց ի յուշումն նախորդին կ'աւելցնէ ԺԷ—ի հատուածները հանդերձ վերջաբանով:

ԺԸ. Պատմութիւնք Սինէացւոց թարգմանեալ ի Մարգարէ Շահրիմանցւոյ Նոր Ջուղայու, լեզուէ յանկլիականէ ի հայս ԻԴ գլխով որպիսութիւն քաղաքաց, վարուց նոցա, եւ պետութեանց կառավարմանց նոցա, ելից եւ մտից բնական օրինաց, եւ քաղաքական աւանդութեանց նոցա, եւ բնաւորութեանց եւ կայսերականացն պերճութեանց. ի ՌՄԽԲ թուին Հայոց:

ԺԹ. Պատմագիրք Նադիր շահին թարգմանեալ է ի Պօղոսէ Միրզայեան Համթեցւոյ ի յԱնգլիացւոց լեզուէ ի հայս:

Ի. Պատմագիրք ինչ՝ Զամչեանց Միքայէլէ Պօլսեցւոյ, յԱդամայ մինչեւ ի ՌՄԼԵ թիւն, գիրք երեք, եւ 6 հատոր, զոր ճշմարտութիւնն յայտնի է բազում տեղիս:

Բայց որովհետեւ գիրն յազգիս մերոյ իբր սեա զոլ երեւի, ոմն պատմագիրն տեսակ համաթուի, վասն որոյ զոմանս զանյայտս յիշել մարթ վարկայ՝ վասն ծանօթութեանց եւ խնդրոց ոմանց:

Գ.

Վասն պատմագրաց Հայոց:

Այստեղ կը զետեղեմ նոր ցանկ մ'ալ Պատմագիրներու, զոր գտած եմ Անթիլիասի Կաթողիկոսարանի վերոյիշեալ ձեռագրին մէջ, թղ. 107բ—108բ: Հետաքրքրական է

Յանկս իր նոր անուններով։ Առաջին անգամ հոս կը տեսնուի Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանի պատմական գրուածքներու ցանկը, որ ուշադրութեան արժանի է։ Այն հանուած է, ինչպէս կ'երեւայ, Երեմիայի մէկ հաւաքածոյ ձեռագրէ։

1· Եւսեբի ի Յունաց թարգմանեալ Եկեղեցական·
2· Ագաթանգեղոս·
3· Բիւզանդ·
4· Սոկրատ·
5· Մովսէս Խորենացի·
6· Ղազար·
7· Կորիւն·
8· Եղիշէ·
9· Փաստոս (=3)·
10· Զենոբ·
11· Արիստակէս·
12· Շապուհ·
13· Յովհաննէս կաթողիկոս·
14· Ղեւոնդ էրէց·
15· Հերակլ (=Սեբիոս)·
16· Ուխտանէս·
17· Ստեփաննոս·
18· Վահրամ[1]·
19· Մխիթար·
20· Յակոբ·
21· Եսայի·

---

[1] Չ. վայիրամ,

22. Սարգիս.
23. Վանական.
24. Մատթէոս Երէց.
25. Սամուէլ Երէց.
26. Դանիէլ.
27. Մատթէոս.
28. Վարդան.
29. Կիրակոս.
30. Հեթում.
31. Թովմաս եւ
32. Առաքել.
33. Վարդան յետին պատմագիր:
34. Իսկ Երեմիայի՝

ա. զՄաճարացն եւ
բ. զԱնգիտոյն.
գ. զՍուտ Քրիստոսին եւ
դ. զՍուլթան Մահմետին.
ե. զՕսմանցոցն Դ. հատորս. եւ
զ. զՎանկ Թամուրին[2].
է. զԽալիփայիցն Պաղտատայ եւ
ը. զՊարսկացն.
թ. զՀռոմայեցւոց եւ
ժ. զՅունաց.

ժա. զՆոր նահատակացն եւ
ժբ. զՀրկիզութիւն Ստամպօլոյ.
ժգ. զԱմերիկային եւ
ժդ. զԱռնաուտին.
ժե. զՀամառօտ Օսմանցուն.

---

[2] Զ. Թամփուրին:

ժզ· *զԲագրատունեացն եւ*
ժէ· *զԿիլիկեցւոցն համառօտ.*
ժը· *զՄովսիսին համառօտ եւ*
ժթ· *զՁուատութիւնս Հայոց· եւ*
ի· *զԺամանակագիրս· եւ*
իա· *զԱշխարհացոյց· եւ*
իբ· *Արարողութիւնք ոմանց ազգաց·*

*եւ այլ բազումք· ըստ որում եւ այն մատեանս մանաւորապէս ժողովեալ:*

*Միխայէլ կաթողիկոս էր Ասորւոց· որք ծանօթացեալ՝ Վարդան վարդապետն եւ թարգմանել զնորա Պատմութիւնն յԱսորւոց ի Հայոց լեզու:*

3· Ցուցակ գրոց Ամիրտօլու վանաց:

*Վարդան Բաղիշեցւոյ գրականութեան գեղեցիկ գրաւականն է Գրացուցակը Ամիրդօլի վանքին, զոր կազմած է անձամբ, ինչպէս վերնագիրս ցոյց կու տայ·*

*«Այս են վարդապետական գրեանք ի վանքն Ամիրդոլու՝ համարով, անջինջ յիշատակ գրեալ իմով ձեռամբ Վարդանոյ վարդապետի:*

*Սկ· «Ա· Նախ ·Ե· Աստուածաշունչ, որոյ յատկութիւն այս է . . . վՋ· ա· Սինց· Առքն· (Սինեցի Առաքելին) երկար տաղ եւ ստանաւոր վասն սուրբ Լուսաւորչին եւ Ներսիսի Հայրապետին եւ Յովակիմայ եւ Աննայի (այս*

*ստանաւորներու բուն հեղինակն է Առաքել Բաղիշեցի): Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն»:*

*= Էջմիածին, Թ. 737, Թղ. 223բ—232բ: Հրատարակած Ս. Տէր-Յակոբեան, Վարդանայ վարդապետի Բաղիշեցւոյ Յուցակ գրոց Ամիրդօլու վանուց. Արարատ,* 1903, *էջ* 176—178 (*Յառաջաբան*), 178—189 (*բնագիր*):

*Յանկուած են* 193 *գիրք կամ հատորներ, ձեռագիր եւ տպագիր:*

### 4. Գիրք Աղօթից:

*Սխալմամբ կամ շփոթութեամբ Վարդան Բաղիշեցւոյ վերագրուած է Աղօթագիրք մը այսպիսի խորագրով. «Գիրք Աղօթից արարեալ երանելւոյն Վարդանայ սրբազան վարդապետի Բաղիշեցւոյ, ի պէտս աղօթասիրաց ազգիս: Կ. Պոլիս* 1841:

*Մկրտիչ եպ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ* 503—504, *ուշադիր եղած է, որ Աղօթագիրքս* 1841*ի տպագրութեան մէջ* սխալմամբ *Բաղիշեցւոյ ընծայուած է, բայց ինքն ալ կը սխալի, երբ զայն* 1321*ին ապրող Վարդան Արեւելցւոյ մը կը վերագրէ:* 1734*ի տպագրութեան մէջ անոր հեղինակը ցոյց տրուած էր «երանելւոյն Վարդանայ վարդապետի», որ Այգեկցին է:*

## 26. ՎԱՐԴԱՆ Վ. ԲԱՂԻՇԵՑԻՈՑ ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

*Այբուբենական կարգով պիտի դասեմ այս տեղ այն վարդապետներու անունները, որոնք աշակերտած են ԺԷ. դարու երկրորդ կէսին Ամիրտոլի Համալսարանին եւ կ'իջնան Վարդան Բաղիշեցւոյ գաւազանէն: Անոնցմէ ոմանք հաւանօրէն Գրիգոր Բաղիշեցւոյ աշակերտներն են: Վարդանի մահէն ետքը, ինչպէս կ'ըսուի, ցրուեցան անոր աշակերտները խումբ խումբ: Պատմութեան մէջ կը յիշուին այն հինգերը միայն, որոնք ուխտած էին հետեւիլ Գրիգոր Շիրուանեցւոյ քայլերուն: Այս աշակերտներէն չորսի մասին պիտի խօսիմ առանձին գլուխներով. ասոնք են Աբրահամ Քեղեցի, Գրիգոր Շիրուանեցի. Յովհաննէս Բաղիշեցի եւ Սահակ Ամթեցի:*

### 1. Աբրահամ Վ. Ամթեցի:

*Վարդանի անդրանիկ աշակերտն է սա, գաւազանը առած 1659էն յառաջ: 1671ին Վարդանի հետ էր, երբ Առաքելոց վանքի վերաշինութիւնն եւ պարտուց հատուցումը կը կատարուէր: Աջակցած է Սահակ վարդապետին, որ զբաղած էր վանքին ձեռագիրներու վերանորոգութեամբ: 1676ին կ'անուանուի «գլուխ աշակերտաց», «որ է ընտիր կարդացող եւ խորին փիլիսոփայ, տեղեակ հնոց եւ նորոց կտակարանաց, այլ եւ արտաքնոց եւ ներքից եւ քերականութեան տեղեակ»: 1678ին գացած է Վարդանի հետ Նոր-Ջուղայ: Մահուան տարին ծանօթ չէ:*

2. Աբրահամ Վ. Քեղեցի (*Խօշաբեցի*), *առաջնորդ Տարօնի եւ կաթողիկոս Էջմիածնի*: *Տես* § 29:

3. Անդրէաս Վ. Արծկեցի:

*Կը յիշուի 1680ին ի Բաղէշ, իբրեւ վկայ Գրիգոր Բաղիշեցւոյ գաւազանատուութեան*:

4. Բարաղամ Վ. Հզվեցի:

*Կը յիշուի 1680ին իբրեւ վկայ Գրիգոր Բաղիշեցւոյ գաւազանատուութեան*:

5. Գրիգոր Վ. Բաղիշեցի:

*Գաւազանի իշխանութիւնը առած 1680ին· իբրեւ աբեղայ ընկերակցած էր 1678ին իր ուսուցչին, երբ ան նուիրակութեամբ գացած էր Նոր Ջուղայ (Հանդ. Ամս. 1937, էջ 349): 1687ին օրինակած է Յովհաննէս վարդապետի համար Տաթեւացւոյ Քարոզագիրքը*:

6. Գրիգոր Վ. Շիրուանցի, *կոչուած Բաղիշեցի, Շղթայակիր պատրիարք Երուսաղէմի*: *Տես* § 27:

7. Եղիազար Վ. Տարօնեցի:

*«Ես Եղիազար վարդապետս ի համար ածի զմերեանս (՞) Ս. Յովհաննու Եղրդուտի վանաց: Յայսմ ամի. եւ առի զիշխանութիւն վարդապետութեան ի Վեհէն Վարդանայ վարդապետի (!) Բաղիշեցւոյ թվին ՌՃԽԵ»* (1696). (*Աւետարան Մշոյ Եղրդուտի վանաց*):

8. Կարապետ Վ. Սպարկերցի:

*Կը յիշուի 1680ին իբրեւ վկայ: Սա՞ է համանուն եպիսկոպոսն Հնձուց վանքի. Գրի–*

*գոր Բաղիշեցի կը գրէ 1711ին, թէ գալով Մուշէն Կարնոյ Հնձուց վանք իջեւանեցանք՝*

*«Առ մեր եղբայրն սիրեցեալ,*
*Տէրէտ մաքուր խոհեմացեալ*
*Որ Կարապետ անուամբ կոչեցեալ,*
*Եպիսկոպոս տեղւոյս օրհնեալ»:*

9. Մարգարէ Վ. Կարնեցի:

*Կը յիշուի 1676 արեղայ, 1678ին ընկերացած էր Վարդանի նուիրակութեան ի Նոր-Ջուղայ. 1680ին արդէն վարդապետ ներկայ էր իբրեւ վկայ Գրիգոր Բաղիշեցւոյ վարդապետական վկայականին. 1681ին կը գտնուէր Ամիթ. կը վերադառնայ Կարին եւ կը կարգուի եպիսկոպոս Հնձուց վանքին. 1699ին կու տայ Մխիթար Սեբաստացւոյ գաւազանի իշխանութիւն (հմմտ. Ակինեան, Մխիթար Սեբաստացի, Հանդ. Ամս. 1949, Մխիթար տօնագիրք, էջ 387—388=Արտատպ., էջ 69):*

10. Մարտիրոս վարդապետ:

*Կը յիշուի 1699ին. «Ի սոյն թուին Մարտիրոս վարդապետն նորոգեաց զՎարդիկ հօր եկեղեցին զանազան յօրինուածով. սա յաշակերտաց Բաղիշեցի Վարդան վարդապետին էր» (Դիւան Հայոց Պատմութեան, Ժ. 117):*

11. Մխիթար Վ. Խուբեցի:

*Կը յիշուի 1680ին իբրեւ վկայ:*

12. Յովհաննէս Վ. (Բաղիշեցի՞):

*Որդի է Տատուրին եւ մօրն Մարիամին. իր եղբայրն է Սարգիս եւ քոյրերն՝ Մարիամ*

*եւ Ամիդին*: 1687*ին «ի խնդրոյ Յովաննէս վարդապետի» կ՚օրինակէ Գրիգոր* (*Շիրուանցի*) *գրիչ Տաթեւացւոյ Քարոզգիրքը*· *կը խնդրէ յիշել*· *«զՅովաննէս սրբասնեալ վարդապետն*, *զաշակերտն Մեծին Վարդանայ Բաղիշեցւոյ»* (*Էջմիածին*, *Թ*. 2078) : *Թերեւս նոյն ըլլայ սա Թ*. 13—14 *յիշուած Յովհաննէսներէն մին հետ* :

13· Յովհաննէս Վ· Առանացի:

*Կը յիշուի* 1680*ին Վարդան վարդապետի վկայագրին մէջ*: *Եպիսկոպոս ձեռնադրուած է ՌՃԼԴ* (1685) : *Յարութիւն սարկաւագ կ՚օրինակէ անոր յանձնարարութեամբ Ներսէս Լամբրոնացւոյ Սաղմոսաց Մեկնութիւնը* (*Երուսաղէմ*, *Թ*. 1011) : 1696*ին ի Սեբաստիա Կիւրինցի Կարապետ եպիսկոպոսի հետ՝ կը ձեռնադրէ Մխիթար Սեբաստացին քահանայ* (*հմմտ*. *Հանդ*. *Ամս*. 1949, *Մխիթար տօնագիրք*, *էջ* 337 *եւ* 385[1]) :

14· Յովհաննէս Վ· Թոխաթցի:

*Կը յիշուի* 1680*ի վկայագրին մէջ իբրեւ վկայ*:

15· Յովհաննէս Վ· Բաղիշեցի (Կոլոտ): *Տես* § 28:

16· Յովհաննէս Վ· Քեղեցի:

*Գրիգոր Բաղիշեցի կը գրէ* 1711*ին*, *թէ իրեն հետ էին Հնձուց վանքին մէջ՝*

---

[1] *էջ* 385, *տող* 7 *«վարդապետական գաւազանը» կարդա՛ «եպիսկոպոսական օծումը»*:

*Քեռու որդին իմ Աբրահամ,*
*Քեզ զաւառէն առ իս սնեալ.*
*Միւս Յովհաննէս քաղցրաձայնեալ*
*Ի մեր երկրէն եւ նա սերեալ:*

17. Ներսէս վ. եւ եպ. Արծկեցի:

*Կը յիշուի* 1676*ին «Ներսէս եպիսկոպոս, որ է ընտիր, հեզահոգի»:* 1680*ին վկայ էր Գրիգոր Բաղիշեցւոյ վկայագրին:* 1711*ին Գրիգոր կը յայտնէ թէ իրենց հետ էր՝*

*Մեր ծերունի հայրըն ընտրեալ*
*Ներսէս աէյէտըն զովեցեալ*
*Նրժդեհակից ընդ մեզ եղեալ:*

18. Ներսէս վ. Բաղիշեցի:

1689*ին կը յիշուի Վարդան Բաղիշեցւոյ եղբայրն Խօջխապար «եւ որդի նորին Ներսէս սարկաւագ»: Իսկ* 1703*ին կը խնդրուի յիշել «զհամապատիւ ինքեան* (*Վարդանայ*) *զձեռնասուն որդեակս իւր հոգեւոր, զեղբօրորդին զՆերսէս վարդապետ»* (*Հայաստան*, 1852, *Թ*. 101): *Սա ըլլալու է* 1676*ին Վարդանայ աշակերտներու թուին մէջ յիշուած երկու Ներսէս սարկաւագներէն մէկը:*

19. Սարգիս վ. Բաղիշեցի:

*Կը յիշուի* 1680*ի վկայագրին մէջ իբրեւ վկայ:*

20. Սարգիս վ. Կարնեցի:

*Կը յիշուի* 1680*ի վկայագրին մէջ իբրեւ վկայ «Ս. Վ. Արզրումցի»:* 1697*ին Աբրահամ դպիր յԱմբրտօլու վանս կ'օրինակէ Գրիգոր*

Տաթեւացւոյ Մեկնութիւնն Մատթէի եւ Յովհաննու. խնդրողն է «Սարգիս Վ. Կոփեցի ի Կարնոյ եւ այժմ արքեպիսկոպոս նահանգին Վաղարշակերտոյ, բազմեալ ի վանս Ս. Գրիգոր Լուսաւորչի» (Սեւան, 59. Ցուցակ Ն. Մառի, էջ 25):

Այս վերջին երկու Սարգիսներն են հաւանօրէն 1676ին յիշուած երկու համանուն սարկաւագները: 1672ին ալ Վարդան խօսք կ'ընէ «Սարգիս փոքր պատանեկի» մասին:

21. Սարգիս Վ. Ամբեցի:

Ծնած է Ամիթ. ծնողքն են Վարդան եւ Սուրահի: Իր մասին կարեւոր տեղեկութիւններ կը հաղորդէ Վարդան Բաղիշեցի 1653ին. Բաղէշի վանքերէն մէկուն մէջ երեւան կու գայ Մխիթար Գոշի Մեկնութիւնն Երեմիայ Մարգարէութեան, շատ փտտուած ձեռագիր մը: «Եւ զի էր տասն այս յանհոգութենէ աշխարհասիրաց այրեալ եւ փտեալ եւ կարկամեալ (յոր. կարկամեար) գիւրանց նիւթն սորա՝ զաւրէն տատասկեալ տնանկի, զոր եւ տեսեալ զսորայս փարթամութիւն անկեալ ի գետնի՝ սիրելի եղբայրն մեր Սարգիս, որ ի կարգէ աստիճանաց սրբոյն Ստեփաննոսի, եւ հասեալ ի վերայ կորգեաց զսոսս ի ժանգահոտ վայրէն եւ վեր առեալ զսա իբր զմարգարիտ ի աղմէ եւ ուրախամիտ մտօք կարկատեալ զսորայս հնութիւն բազմաշխատ եւ վշտակիր ջանիւ. եւ զկնի աշխատեալ ի խոյզս աւրինակի եւ հազիւ գտեալ յաջողութեամբ

Տեառն. եւ ապա քաջալերեալ զտկարութիւնս մեր առ ի յԸնկերելն ինքեան ի գրել զպակասն եւ զեղծեալսն. եւ մեր վշտացուցեալ զնա մեր անհամբերութեամբս բազմաղիմի, եւ կարողութեամբ հաստչին Յիսուսի այժմ աւարտեցաք ի փառս նմայ, ի Թվականիս Հայոց ՌՃԲ ի քաղաքս Բաղէշ, ի մենաստանս Ամիրդօլու սուրբ Յովհաննու Մկրտչին եւ այլոցն...: Հայցեմ... յիշել յաղօթս զՍարգիս քաջ երաժիշտ եւ զարադագիր գրչապետն եւ նկարողն... որ է սա ի Միջագետաց ի քաղաքէն Յամթայ եկեալ աստ վասն տքնութեան սուրբ գրոց ընթերցման. որ եւ խակ ունի զցայգաջան աշխատութիւնն դեգերեալ ի դրունս իմաստից միշտ...»: Կը խնդրէ յիշել «եւ զիս զսակաւ տաժանողս Վարդան»: Կը կցուի՝ աւելի նուրբ գրչով՝ «Կազմեցաւ սուրբ գիրքս ձեռամբ Վարդան անարժան սարկի. յիշեցէք զվայելող սորա զՍարգիս եւ զծնօղսն՝ զՄուրահին եւ զՎարդան հայրն եւ Աստուած ողորմի ասացէք. ամէն» (Զմմառ, Թ. 349 ըստ Քէչիշեանի Ցուցակին):

1684էն յառաջ Մարզուանցի Գրիգոր դպիր կ՚աշակերտի Սարգիս վարդապետին եւ կ՚ուսանի ընթերցողութիւն եւ ծաղկարարութիւն. հաւանօրէն Սղերդի Ս. Կոնոնոսի վանքին մէջ, որուն վանահայր կարգուած էր Սարգիս: 1684ին վարդապետ եւ աշակերտ Կոստանդնուպոլիս կ՚երթան, այն տեղ կը պարապի Սարգիս քարոզութեամբ: Ժամանակ մը վերջը կը վերադառնայ իր վանքը.

այս նկատմամբ գրած է Գրիգոր Մարգուանցի իր ապագրած Յայսմաւուրքի յիշատակարանին մէջ․ «Ես նուաստ ամենեցունց Մարզուանցի Գրիգոր դպիրս, որ եմ ձեռնասուն աշակերտ Տիգրանակերտցի Ծաղիկ Երաժիշտ Սարգիս գիտնական վարդապետին, որ ի յԱմրտօլ Դասատունն է վարժեալ, հմուտ աստուածային գրոց: Եւ ես նուաստ աշակերտ գոլով նմին ըստ խմում կարողութեամբս (sic) ուսայ ի նմանէ զընթերցողութիւն եւ զծաղկարարութիւն: Եւ զկնի ժամանակաց եկեալ ի Կոստանդնուպոլիս հանդերձ վարդապետիւս, որ էր Թուական Հայոց ՌՃԼԳ (1684): Եւ ինքն յետ բազում քարոզութեան՝ ել գնաց ի վանքն իւր սրբոյն Կոնոնոսի»

Անդրադարձ տեղեկութիւններ կու տայ իր մասին Յովհաննէս Կոլոտ․

«Ի սոյն ամի (1706) Սարգիս վարդապետն, որ էր ի մեր Դասատանէս, այր խոհեմ յոյժ եւ քաղցրաքարոզ, նորոգեաց սրբատաշ քարամբք կրամածիւք՝ զեղրդուտի լուսաւորչաշէն վանաց սաղերմ, հանդերձ այլո՛վք շինուածովք: Եւ անընդունակ լեալ ի համանմանեաց վերագրեցելոց, զրովանդակ շինուածոյն ծախսն ինքն հոգաց․ եւ դարձաւ յառաջին վանսն մեր, եւ անդ փոխեցաւ առ բաղձալին իւր․ որոյ հոգւոյն Տէր ողորմեսցի եւ դասեսցէ ընդ սուրբս իւր» (Կիւլէսէրեան, Կոլոտ, էջ 156):

### 27. ԳՐԻԳՈՐ Վ. ՇԻՐՈՒԱՆՑԻ, ԿՈՉՈՒԱԾ ԲԱՂԻՇԵՑԻ, ՅՈՐՋՈՐՋՈՒԱԾ ՇՂԹԱՅԱԿԻՐ, ՊԱՏՐԻԱՐՔ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

*Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Գ. 770 կը ներկայացնէ Գրիգորը հայրենեօք «Շիրուանցի կամ Շիրակվանցի», որ ապա կոչուեցաւ «Բաղիշեցի»: Թէ ի՞նչ աղբիւրէ քաղած է Չամչեան իր տեղեկութիւնները, ինծի ծանօթ չէ. բայց կ'երեւայ թէ այս կէտի մէջ պղտոր եղած է իր աղբիւրը, վասն զի չէ կրցած անկէ ճշդիւ դուրս կորզել տեղանունը. «Շիրուանցի կամ Շիրակուանցի» դժուարաւ կը շաղկապուին «կամ»ով: Յաջորդ շրջանի պատմագիրները խրացուցած են «Շիրուանցին», առանց մատնանշելու Շիրուանի տեղը աշխարհագրութեան մէջ. այսպէս ի մէջ այլոց Մ. Օրմանեան, Ազգապատում, Բ.,* § 1910, 1924: *Առաջին անգամ Տ. Սաւալանեանց եղաւ, որ նոյնացուց Շիրուանը Աղուանից աշխարհին հետ. «սա Աղուանից կամ Շիրուանի երկրէն էր, ուստի եւ կոչուեցաւ Շիրուանցի» (Պատմութիւն Երուսաղէմի, Բ., էջ* 690): *Այսպէս նաեւ Մ. Սմբատեանց, որ նոյն իսկ Գրիգոր Վ. Շիրուանցին համարեցաւ Սաղխանի Ս. Ստեփանոս վանքի վանահայրերէն մէկը. «Գ. Վ. Շիրուանցի* 1707: *Սա յուխտ գնալով ի Ս. Կարապետ վանս Մշոյ՝ մնացեալ է անդ ց*1721 *ամն. յորում ամի Յովհաննէս պատրիարքն Կ. Պոլսոյ հաստատելով զԳրիգոր վարդապետն պատրիարք Երուսաղէմի՝ առաքեալ է*

անդ, որ եւ յայտնի է Շղթայակիր անուամբ» (Նկարագիր Ս. Ստեփանոսի վանաց Սաղխանի, Տփղիս 1896, էջ 33): Սրբազանը պատմութիւն չինած է փոխանակ գրելու: Իրեն հետեւած է Մ. Աղաւնունի, Միաբանք եւ այցելուք Հայ Երուսաղէմի, էջ 83:

Գրիգորի ծննդավայրն Տիրուան հարկ է փնտռել Բաղէշի չուրջը: Արդեամբք ալ Հ. Ղ. Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 180 կը մատնանշէ «Տիրուան. Կիզան կամ Կիրկան: Են գաւառք բարեբերք ի հարաւակողմն Բաղիշոյ. որք մերթ լինին միճակք ընդ տէրութեամբ պէյի այլոց գաւառաց. բերեն ազգս ազգս պտղոց. եւ առաքեն աստ եւ անդ եւ ի Բաղէշ»: Ուստի Տիրուան գաւառիս համանուն քաղաքի կամ աւանի ծնունդն է Գրիգոր: Որովհետեւ գաւառս մասն կը կազմէր հին Աղձնեաց նահանգին եւ Նոր Բաղէշ նահանգին, կարող էր, ինչպէս Խողցեցիք նոյնպէս ինքը իբրեւ Տիրուանցի[1], նաեւ Բաղիշեցի յորջորջուիլ: Ժամանակակից մը Յղնեցի տէր Յակոբ 1748ին կ՚օրինակէ ի խնդրոյ Գաբրիէլ վարդապետի Աւետարան մը. Յիշատակարանին կը կցէ Գրիգոր պատրիարքի կենսագրութիւնը այսպիսի սկզբնաւորութեամբ. «Աղաչեմ զձեզ յիշել ի Տէր զերջանիկ հայրն հոգեւոր եւ գլուսատուն հոգւոյ իմոյ զտէր

[1] «Գրիգոր Տիրուանցի» 1699ին կազմած է Առաքելոց վանքի ճաշոցն ի Մուշ: Իր տաղերու վերնագիրներու մէջ յիշուած է երիցս «Տէրվանցի» (տես վարը):

Գրիգոր զսրբազան պատրիարգն սրբոյ Աթո-ոյս, որ էր սա երկրէն Շիրուանու, ի կող-մանց Մարաց (Քուրդիստանու), ծնեալ եւ սնեալ առ ոտս բարունեաց բարունոյն տեառն Վարդանայ ի սուրբ վանքն Ամրտօլու» եւ այլն (Երուսաղէմ, Թ. 2632):

Գրիգորի ծնողքն են Աւետիս քահանայ եւ Սառա[2]. կը յիշուի իր եղբայրն Պետրոս, որ 1687ին արդէն հանգուցեալ էր:

Գրիգոր ծնած է 1670ին. Աբրահամ Քե-ղեցի կը գրէ. «Մեծ վարդապետին (այսինքն Գրիգորի) ծննդեան թիւն՝ ՌՃԺԹ» (էջմ. 737, թղ. 248բ): Աշակերտած է ան Վարդան Բաղիշեցւոյ Ամիրտոլի վանքին մէջ. անկէ կո-չուած է Բաղիշեցի, իսկ ինքը նախընտրած է անուանել ինքզինքը «յԱմրտոլու վանաց» եւ կամ Ամիրտոլցի, ինչպէս կը տեսնուի իր Մեծ եւ Փոքր կնիքներու վրայ (Տէր-Յով-հաննէսեան, էջ 434): Գաւազանի իշխանու-թիւնը առած ըլլալու է 1699էն յառաջ: Պէտք չէ շփոթել զինքը միւս Գրիգոր Վ. Բաղիշեց-ւոյ հետ, որ վարդապետական իշխանութիւնը առած էր 1680ին: Ունինք Գրիգոր Շիրուան-ցիէն յիշատակարաններս Բաղէշի շրջանէն.

Գրիգոր Տաթեւացւոյ Քարոզգիրք, Ձմռան հատոր, գրուած Յովհաննէս վարդապետի համար ՌՃԼԶ (1687) թուին. «Գծեցաւ... ի

[2] Այսպէս իր ինքնագիր Յիշատակարաններու մէջ 1687ին եւ 1703ին: Երուսաղէմի Թ. 1464ի մէջ Աբրա-համ գրիչի յիշած «Աւետիս եւ Զօհար» հաւանօրէն գրչին ծնողներն են. ուստի կը սխալի հոս Մ. Աղաւ-նունի (անդ, 83):

քաղաքս Բաղէշ... ի խնդրոյ Յովանէս վարդապետի ի վայելումն անձին իւրոյ եւ յիշատակ բարի ծնողաց հօրն Տատուրին եւ մօրն Մարիամին եւ եղբօրն Սարգսին եւ քերցն իւրոց Մարիամին, Ասմնին եւ այլոցն: Արդ... յիշեցէք ի Քրիստոս զՅովաննէս սրբասնեալ վարդապետն, զաշակերտն Մեծին Վարդանայ Բաղիշեցոյ... եւ զիս զանարժան Գրիգոր գրիչս եւ զմիւս ծեր տէր Գրիգորն, որ օգնեց ինձ եւ հասոյց յաւարտ: Եւ զհայրն իմ զտէր Աւետիս քահանայն եւ զմայրն իմ զՍառայ, Նաեւ զհանգուցեալ եղբայրն իմ զՊետրոս եւ զուսուցիչն իմ զՎարդան վարդապետ եւ զկոկող թղթիս զՂազարն» (Էջմիածին, Թ. 2078):

1699ին հաւանօրէն ի Տարօն գրած է յիշատակագրութիւնս. «Կազմեցաւ ձեռագիր ճաշոցս Ս. Առաքելոց ձեռամբ Շիրվանցի տէր Գրիգոր վարդապետին. Թվին ՌՃԽԸ» (Գեգամ Տէր-Կարապետեան, Ձեռագիրք Տարօնի):

Եւ 1703ին ալ Տօնապատճառ գիրք մը կ՚օրինակէ «Ձեռնտու օժանդակութեամբ սուրբ ծերունի աստուածապատուեալ արհի եւ պանծալի քաջ բարունապետ Վարդան աստուածարան վարդապետի...»: Կը խնդրէ յիշել «զհամապատիւ ինքեան զձեռնասուն որդեակս իւր հոգեւոր՝ զեղբօրորդին զՆերսէս վարդապետն եւ զայլ միահամուռ վարդապետս եւ զկուսակրօն աբեղբայրս (ա՛յսպէս)...» Նաեւ զգրողն Գրիգոր եւ զծնողսն՝ Աւետիս քահանայ եւ զՍարրա. «ի Նահանգիս Բաղէշ կոչե-

ցելոյ, ի Թուականիս հայկազուն սեռի ՌՃԾԲ (1703) ամին. ընդ հովանեաւ Ս. Յովհաննու Կարապետին մականուամբ Ամրդօլու վանք վերաձայնելոյ, ի հայրապետութեան տեառն Նահապետի ամենայն Հայոց եւ ամիրապետութեան Սահաթ խանի...»: Կը յիշուի նաեւ Վարդան վարդապետի եղբօրորդին տէր Սահակ անուն (Հայաստան, 1852, Թ. 101):

Մեծին Վարդանի մահէն († 1704) ետքը հինգ միաբաններ կը հեռանան վանքէն, անոնց հետ աբեղաներ եւ սարկաւագներ, եւ կ'երթան Տարօն անդամագրուելու Գլակայ վանքին: Ասոնք են Գրիգոր Վ. Բաղիշեցի, Յովհաննէս Վ. Բաղիշեցի (Կոլոտ), Ներսէս եպ. Արծկեցի, Աբրահամ (քեռորդի Գրիգորի) եւ Յովհաննէս Բեղեցի վարդապետներ. անոնց հետ կը յիշուին նաեւ Գաբրիէլ եւ Ստեփանոս, հաւանօրէն աբեղաներ. որոնք որոշած էին ապրիլ ի միասին անբաժան (1705):

Յովհաննէս Կոլոտ կը գրէ. «Եւ յետ որոյ՝ վեհագն հովուիս մերոյ առ Տէր գնալոյ, ցրուեցան գառինք ողջամիտք եւ եղեն յիբրու տատանման վասն զի զտաւ ո՛չ ընդ Մովսիսի՝ Յեսու. որոյ վասն եւ որդիքս հայրենամեռք՝ եղաք ի վարատման: Լցեալ ուժգին արտասուօք որբացելոցս դէմք՝ դէմ եդեալ յերկիրն Տարօնոյ: Զուեալ անուի իսկ — այսինքն Բաղէշէն — յԱպահունիս (Մանազկերտի՞ ուղղութեամբ՝ հանդիպելու Խառաբաստայ եւ Մեծոփայ վանքերու) եւ անտի ի

Վաղարշակերտ՝ գնալով ի Վիշապաձոր կոչեցեալ ուխտ Սրբոյն Թադէոյ եւ Վարոսի (այժմեան Ալաշկերտ). եւ անտի անցանելով զԳարեղինօք (Արշարունեաց սահմանակից Կամրջաձորի վանքը այցելելու) եւ զԿրօք (հաւանօրէն Վանանդի Կարս քաղաքի վրայէն) մինչ ի վանքն Հոռոմոսի (Շիրակի մէջ): Եւ առեալ անդ զսակաւ ինչ չունչ տեսութեամբ տաճարին Սրբոյ Մեծին Յոհաննու. տեսաք ոչ սակաւ զմարդասիրութիւնս ազնիւս եւ յայլոց եկեղեցեաց ի գնացս մեր ամենայն. յաւե՛լ եւ զհրաւէրն լիովին, եթէ Կացէք աստ. որոց զվարձս ամենից տացէ Տէր առատ: Եւ ելեալ անտի... դարձաք առ ընդ կրունկն... եկեալ հասաք ի Յարծանք աստուածախնամ գիւղիկն» (Տարօնի), ուր կը դիմաւորեն զիրենք Գլակայ վանքին Կարապետ եպիսկոպոսը եւ ժողովուրդը, «քանդի կարի սիրով ընկալան զմեզ՝ ժողովելով զմերս օտարութիւն» (Կոլոտ, 148—150):

Կարապետ եպիսկոպոս կը յանձնէ Գլակայ վանքին տեսչութիւնը եկող հիւրերուն, որոնք որոշած էին մնալ հոն իբրեւ միաբան: Գրիգոր Բաղիշեցի կարգուած էր տեսուչ Տարօնի: Աբրահամ կը գրէ. «Իսկ յորժամ եղեւ առաջնորդ սուրբ Կարապետի վանացն՝ ՌՃԾԳ (1704) թվին» (էջմ. 737): Այս միջոցին Գրիգոր օծուած էր արդէն եպիսկոպոս:

Անմխիթար պայմաններու մէջ կը գըտնուէր վանքը: Ընկճած էր պարտքերու տակ: Շրջապատուած էր անօպայ ազգակիցներէ եւ

*այլազգիներէ։ Պարտատէրները կը պահանջէին պարտքերը. քուրդ պաշտօնեաներ կը հարստահարէին միաբանները. ազգայինք կը յարուցանէին դժուարութիւններ։ Յովհաննէս Կոլոտ այսպէս կը նկարագրէ կացութիւնը. «Այլ զՄարաց (այսինքն Քրդաց) անգութ լինելն եւ զարիւնս մեր ծծելն անասելի է։ Քանզի սատանայ, որ բնիկ ներհակն է բարեկարգութեան, ի մարտ (եկեալ էր) ընդ սրբոյ Տանն այնորիկ խռովքն համախոհիւք. որք գիշատէին զմեզ, նեղէին եւ տառապէին՝ ի մայրս եւ ի ծերպս վիմաց փախստական առնելով մաշէին զմեր կեանս եւ լնուին զլսելիս մեր դառնակսկիծ բանիւ։ Իսկ զպարտատեարց զանյագ եւ զանիրաւապէս տուժումն ի գիր ոչ կարեմք արկանել. նաեւ զմեր ողորմելի լինելն ի դրունս այլասեռից եւ ոմանց զիւզօրէից։ Եւ զայս ոչ միայն յանհաւատից կրէաք, այլեւ ի մեր ազգէ, որպէս է բարք մեր»։ Բայց եւ այնպէս ճակատ տալով ամէն դժուարութիւններու կը յաջողի 1706ին, նորոգել Ս. Կարապետի եւ Ս. Ստեփաննոս եկեղեցիներու սալերը։ Նոյն տարւոյն Սարգիս Վ. Ամթեցին ալ, Ամրտօլի Դպրոցէն, կը նորոգէ Եղրդուտի եկեղեցին։*

*«Եւ այսպէս զառօրեայ կեանս դառնախուր զխմօք եւ միշտ փորձութեամբ անցուցեալ՝ կայաք յայժ տառապանօք... Թէպէտ մեք այսպէս, այլ զօրութիւն Աստուծոյ օգնէր յամենայնի եւ սրբոյ Տանն իւրոյ աճէր օր ըստ օրէ վայելչութեան պայծառութիւն»*

(153—157) [3]: Միաբանները ձմեռուան շրջանին, երբ ժողովուրդը անգործութեան դատապարտուած է, կը շրջէին քարոզութեամբ գիւղէ գիւղ, եւ գարնան կը վերադառնային իրենց վանքը:

1708ին (ըստ Կոստի՝ 1709ին) դեռ նոր վերադարձած էին իրենց առաքելութենէն, երբ յանկարծ, Մեծահրաշի Կիրակիին, տեղի կ'ունենայ ահաւոր երկրաշարժ մը, մայիս 16ին, որ կը կործանէ եկեղեցւոյն

---

[3] Ժամանակին տխուր պարագաներուն նկարագրութիւնը տուած է Յակոբ երէց որ օրինակած է Գրիգոր Տաթեւացւոյ Քարոզգիրքը, որուն «ցանկացող եղեւ գերերջանիկ վարդապետն Աբրահամ»: «Արդ կ'ըսէ, գրեցաւ սա ի Մուշ քաղաք, ընդ հովանեաւ Ս. Յարութեան տաճարին, առ ոտս մեծ րաբունապետին Գրիգոր վարդապետին եւ առաջնորդ սուրբ Կարապետին, ի Թուականիս Հայոց ՌՃԾ եւ է ամին ձեռամբ... Յակոբ երիցու, ծառայ եւ աշակերտ հոգեւոր հօրս մերոյ Վարդան վարժապետի հանգուցելոյ առ Քրիստոս»: Կը խնդրէ յիշել «զգրիս ուսուցողն իմ զտէր Ալէքսանն եւ զՇահպաղն եւ զեղբայրն իմ զՍահակ...: Այլ եւ զտէր Մելիտոս ուստ էրէց Մշոյ քաղաքիս յիշել, որ բազում ուէր եւ եղբայրական գթով խնամարկեալ մխիթարեաց կերակրով եւ այլ ամենայն բարութեամբ...:

Զի մինչ ես որ զայս սուրբ գիրքս աւարտեցի երեք տեղ փոխեցայ վասն դառն ժամանակին եւ հարկապահանջութեան չար բռնաւորին Սահատ խանին: Նախ ի Բաղէշ քաղաք եւ անտի ի Պոռայ սուրբ Նա(ր)եկացոյ վանքն եւ անտի ի Մուշ քաղաք: Եւ այս բազում նեղութեամբ եւ չարչարանօք ի ձեռն նախանձոտ, կոշտ եւ բիրտ քահանայից այլոց, վասն պաշտման փողից խռովեալ խորովէին զիս. չուզէին զկենալն իմ անդ, ոլոր աչօք յիս հայէին եւ կրճտէին զատամունս, բազում անգամ աքցի եւ բռնցի ինձ ցուցանէին եւ առէին. յե՛լ, գնա՛ զմեր հացն կարեցիր. ապա վասն ահի առաջնորդին եւ խոճա Յոհանին ոչ կարէին մօտել...» (Էջմիածին, Թ. 2075, Թղ. 419բ):

*դմբեթը եւ կը խախտէ միւս բոլոր շինուածքները։ «Եւ զկնի երից աւուրց եկին հասին ի Մուշաղշինոյ մար (քուրդ) իշխանէն եւ զատուորէն արք, որք տեսեալ զիրսն՝ ծանուցին մեծի Ամիին որ ի Բաղէշ. եւ մեր գնացեալ ընդ նոսա՝ առնուլ հրաման եւ շինել զանկեալսն»։ Հրամանը կը շնորհուի։ «Սակայն կարի շատ տառապանս կրեցաք ի խստասիրտ ազգէն Մարաց»։ Բայց եւ այնպէս «շինեցաք զկաթողիկէն զեղեցկաքանդակ յօրինամբ. նմանապէս եւ զաւիթ կամարակապ քարեայ սեամբք. եւ զանկակատուն կաթողիկեայ խաչիւ պսակեալ եւ սուրբ Հոգւոյն սեղանիւն զարդարեալ. եւ այլ շինուածք եւ ըստ չափու՝ թանապիք եւ խրճիթք ի փառս Աստուծոյ»* (158—162)։

*Նորոգութիւնները կը կատարուին. բայց հին պարտքերու վրայ կը բարդուին նորերը տոկոսներով հանդերձ։ Պարտատէրները անելի մէջ կը ձգեն միաբանները. կ՚ահաբեկեն սպառնալիքներով։ Գրիգոր կը հառաչէ.*

*Այս երք ամ զմեզ չարչարեալ,*
*Ի խորափիտ տեղիս մըտեալ,*
*Երկեակ ամսօք յարեւ չելեալ։*

*Այս պայմանները կը ստիպեն զիրենք «անդուստ փութով կրկին ցրուիլ»։ Ոչ Վանքը լքել էր իրենց միտքը, եւ ոչ խոյս տալ պարտատէրներէն. որոշած էին ժամանակ մը հեռանալ Տարօնէն եւ հայաբնակ գաւառներու մէջ ժողովարարութիւն ընել ի նպաստ*

վանքին։ Այս նպատակը բացայայտ կը չէշտէ Յովհաննէս Կոլոտ, որ կացութիւնը համառօտիւ ներկայացնելով կը գրէ․ «Սակայն եկ եւ կրկնակի լաց զկրկնամեռքս, թէ ո՛րքաննեաց բարդութեանց պարտուց անկաք ի ներքոյ․ որոյ վասն ելեալ ի սուրբ ուխտէն՝ տարագէմ գնացիւք դիմեցաք յայլ օտարական գաւառ՝ ժողովել ողորմութիւն յաստուածասէր անձանց առ ի թեթեւացուցանել զպարտուցն ծանրութիւն» (Կոլոտ, 163)։ Փախստականները կը հասնին Կարնոյ երկիրը եւ ապաստանարան կը գտնեն Հնձուց վանքը։ Գրիգոր կ՚երգէ․

Եւ ի Կարնոյ յերկիրն եկեալ,
Ի նոցանէ մեք խոյս տուեալ…
Առ մեր եղբայրըն սիրեցեալ,
Տէլէտ մաքուր խոհեմացեալ,
Որ Կարապետ անուամբ կոչեալ,
Եպիսկոպոս տեղւոյն օրհնեալ…

Վանքիս երբեմնի առաջնորդն էր եղած Մարգարէ Վ․ Արգրումցի, Ամրտօլի Դպրոցէն, աշակերտն Վարդանի։ Այժմ անոր յաջորդն եղած է Կարապետ Վ․ Հաւանօրէն Սպարկերցին, նոյն Դպրոցէն, ինչպէս «մեր եղբայրն սիրեցեալ» արտայայտութիւնը թոյլ կու տայ ենթադրել։

Վարդապետները կը ձեռնարկեն նուիրակութեան․ կը շրջին քաղաքէ քաղաք եւ գիւղէ գիւղ Ս․ Կարապետի համար ողորմութիւն հաւաքելու։ Անոնց թուին մէջ է Յով–

հաննէս Վ. Բաղիշեցին. որ իր մասին խօսելով կը գրէ. «Եւ այնպէս շրջաշուրջ դնացիւք հասաք յաջողութեամբ Տեառն յաստուածակեցոյց արքայանիստ, կայսերապերճ, բազմամարդ քաղաքն Կոստանդնուպօլիս» (Կոլոտ, 163):

Կոլոտ Կ. Պոլիս կը հասնի 1712ին, հաւանօրէն ոչ առանձին: Օրուան պատրիարքն էր Սահակ Ապուչեխցի (1707—1715). որուն կը ներկայանայ Բաղիշեցին եւ կը յայտնէ Գլակայ վանքին կարօտութիւնը: Կը գտնէ սրտագին կարեկցութիւն: Ընկալաւ, կը գրէ, բազում սիրով, եւ «յորդորեաց զաստուածասէր ժողովուրդսն. որք ետուն ողորմութիւն լիալիր եւ զբազում յիշատակս զարդուց սրբոյ Տաճարին. որովք եւ ազատեցաւ սուրբ վանքն ի բազմատոկոս պարտուցն. եւ գերապանցապէս շքեղացաւ գերապանց զարդուք Հարսն մաքուր, որ ոչ էր յառաջ բնաւին»: Այս տողերուն կը կցէ Բաղիշեցին. «Եւ մեզ ամենեցուն էր յորդորիչ, գլուխ եւ դէտ հայրս մեր Գրիգոր զուարթանուն րաբունապետն սրբակրօն» (անդ, 163—164):

Գրիգոր իր կարգին մեկնած էր Խրիմ ողորմութիւն հաւաքելու նոյն նպատակով: Իրեն հետ էր հաւանօրէն Աբրահամ վարդապետ: Երուսաղէմ Թ. 2287 (Ձեռնագրութեան Մաշտոց) ունի Գրիգորի գրչէն Յիշատակարանս. «Աւարտեցաւ... ի Թվին Հայոց ՌՃԿ (1711) սեպտեմբեր ամսոյ ԺԵ. օրն, ի Նաւակատեաց շաբաթու աւուրն կեն-

սատու Ս. Խաչվերացի տօնին, յերկիրն Հո–նաց ի Կաֆա քաղաքի, ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին, ձեռամբ... պանդուխտ եւ նչդեհ Գրիգոր անուամբ եւեթ վարդապետի, սպա–սաւորի սրբոյ Կարապետին գերեզմանի, որ ի Տարօն է հանգուցեալ, եւ եպիսկոպոսի նոյնոյ գաւառին. որ ի բռնութենէն որդւոցն Հագարածնեայց ազգին Մարաց շատ եկեալ հասի Թախիծ սրտի եւ լալոտ աչօք, տարա–կուսեալ իմ եւ իմոյքն ամենեքին ի սուրբ վայրացն եւ զրկեալ յերկնահանգէտ սրբոց տաճարացն տեսութեանց» (թղ. 42բ)։ «Աղա–չեմ... յիշել... զմեղապարտ Գրիգոր տրուպ վարդապետս, որ տրտում եւ նչդեհ կենօք զսակաւ ծիրս գրեցի յերկիրս Հոնաց, ի Կաֆայ քաղաքի, ի սուրբ Գէորգ եկեղեցին, ի ՌԾԿ» (թղ. 102ա, ըստ Ցուցակին Խա–պայեան Սահակ Կաթողիկոսի)։ Իսկ էջ–միածնի Թ. 737, թղ. 186ա արձանագրած է. «Ի Կաֆայ քաղաքի ի սուրբ Խաչ եկե–ղեցի զգիրս ծրեցի ի ՌԾԿ (1711) թւի ի ԺԱ սեպտեմբերի, ձեռամբ իմըս Գրիգորի տըրուպ եւ նչդեհ բանասիրիս»։ Իսկ թղ. 194բ. կը գրէ. «Ի ԽԱՁՆ թւ (1712) Ժ. օրն յապրիլի յԱկքերման զսա ծրեցի»։

Հաւանօրէն Գրիգոր վերադարձաւ Հնձուց վանք, իբր 1713ին։ Այն տեղ սպասեց իր ա–ռաքեալներուն, որոնք ուղարկուած էին այլ կողմեր։ Յովհաննէս իր հանգանակած գու–մարները հասցուց Գրիգոր վարդապետին, իսկ ինքը մնաց Կ. Պոլիս։ Պէտք ունէր իրեն

Սահակ պատրիարք։ Գրիգոր 1712/13 տարին պէտք է վերադարձած ըլլայ Մուշ։ Ունէր իր տրամադրութեան տակ բաւականաչափ գումար հատուցանելու համար Ս. Կարապետի վանքին պարտքերը։ Իր գործունէութեան մասին ի Տարօն կը պակսին մեզի անդրադոյն տեղեկութիւններ։

Այս միջոցին Երուսաղէմի պատրիարքութիւնն, որ միացած էր Կ. Պոլսոյ պատրիարքութեան, ընկճած էր պարտքերու տակ անհաւատարիմ պաշտօնեաներու երեսէն։ Նոյն 1713 տարւոյն կը յանձնարարէ իրեն պատրիարքը «տանել զողորմութիւն հաւատացելոցն ի սուրբ Երուսաղէմ եւ ծառայել աստուածակոխ տեղեացն» (Կոլոտ, էջ 164)։ 1715ին կը վախճանի Սահակ պատրիարք։ Ազգը անոր յաջորդ կ'ընտրէ Յովհաննէս Վ. Գանձակեցին եւ ասոր յաջորդ Յովհաննէս Կոլոտը։ Նոր պատրիարքը իր առաջին գործը կ'ընէ համոզել իր շուրջինները, որ Երուսաղէմի պատրիարքութիւնը ինքնակաց ըլլայ եւ անոր պատրիարք անուանուի Գրիգոր Վ. Բաղիշեցին, Տարօնի տեսուչը։ Բայց որովհետեւ գիտէր թէ ան պիտի հրաժարի այս պատուէն, կը խնդրէ առանձին թղթով էջմիածնի նորընտիր Աստուածատուր կաթողիկոսէն (1715 մայիս 7—1725 հոկտ. 10), որ ստիպէ զինքը յանձն առնել։ Հարկադրանքի տակ կը ստանձնէ Գրիգոր իրեն եղած առաջարկը։ Կը յանձնէ Տարօնի տեսչութիւնը իր

քեռորդւոյն եւ աշակերտին Աբրահամ Վ. Քեղեցւոյն եւ կը մեկնի Տարօնէն:

Աբրահամ վարդապետ կը գրէ. «ի թվին ՌՃԿԶին եւ յուլիսի ամսոյ յ·Ը·ին մեկնեալ անջատեցաւ ի մէնջ մեծ Գրիգոր վարդապետն սուրբն եւ երջանիկն եւ գնաց ի մայրաքաղաքն Բիւզանդիոյ եւ եղեւ պատրիարգ սուրբ Երուսաղեմայ եւ զմեզ եթող որբ եւ անտերունչ» (էջմ. 737, թղ. 248ա):

Գրիգոր Կ. Պոլիս կը ժամանէ 18 օգոստոս 1717, վերափոխման տօնին: Զինքը կը դիմաւորէ Յովհաննէս պատրիարք. սիրով եւ արցունքով կ'ողջունէ «զիւր հայր մեծ վարդապետն Գրիգորիս», ինչպէս կը գրէ Հաննէ (126) այսպիսի խօսքերով.

Ով սուրբ Տեղեացն պսակադիր.
Խոնարհեցար եւ եկիր.
Երեսս հող եւ մոխիր.
Ճանապարհիդ որ եկիր:

Գրիգոր[4] ժամանակ մը մնաց Կ. Պոլիս: Յովհաննէս Կոլոտ պատրաստեց զինքը նոր պաշտօնին համար, որուն ամէն կողմն ուսումնասիրած էր անձամբ: Պոլսոյ մէջ հանգանակութիւն, կարգադրութիւն, ամէն բան

---

[4] Իր կնիքը կը կրէր վերտառութիւնս. է ՅԻ ՔԻ ԾԱՌԱՅ ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՄԻՐՏՕԼՈՒ ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔ ՍՈՒՐԲ ՍԱՂԻՄԱՅ. ՌՃԿԶ (1717). Կիւլէսէրեան, Կոլոտ, էջ 21, ծ. 2: Հմմտ. նաեւ Տէր-Յովհաննէսեան, Ա., 434:

ըրին։ Եւ առաջին առիթով Գրիգոր վարդապետին աթոռակալ կարգեցին կոնդակով՝ Երուսաղեմացի Յովհաննէս (Հաննէ) վարդապետը. աշխատասէր, գործունեայ վարդապետ մը, որ Կոլոտին աջակցած էր արդէն, եւ աջ բազուկը եղաւ Նորընտիր պատրիարքին» (Կիւլէսէրեան, 18)։ Երուսաղէմ ծանր պարտքերու տակ էր։ Այդ պարտքերը պիտի ծանրանային իր վրայ։ Գրիգոր գգալ տալու համար իր սահմանած լուծին ծանրութիւնը՝ կախեց իր վզէն երկաթի շղթայ մը (1718ին), ուխտով որ պիտի չհանէ զայն մինչեւ չհատուցանէ վանքին պարտքերը։ Ութը տարի կրեց զայն։ Ասկէ իր յորջորջանքը «Շղթայակիր»։

Տարեգիր մը յամի 1719 կ՚արձանագրէ. «Գրիգոր վարդապետն ժամ ըրաւ. Յովհաննէս վարդապետին յաշակերտացն գտիրացու Թումայն եւ գտիրացու Երեմիայն աբեղայ օրհնեաց, ի թուին Հայոց ՌՃԿԸ. յունուարի 1»։

Երուսաղէմ հասաւ Շղթայակիր Պատրիարքը բազմամբոխ ուխտաւորներու հետ 12 փետր. 1721։ Գործեց 22 տարի անխոնջ եւ բազմավաստակ. ծաղկեցուց Ս. Յակոբեանց վանքը ներքուստ եւ արտաքուստ։ 1736 մայիս 6ին այցելեց միւսանգամ Կ. Պոլիս Երուսաղէմի գործերու համար. զորոնք կարգադրելով՝ վերադարձաւ 15 սեպտ. 1740։ Վախճանեցաւ 12 փետր. 1749. անմահ թողլով իր յիշատակը պատմութեան մէջ։

Գրիգոր Վ. Բաղիշեցի, Շղթայակիր պատրիարք Երուսաղէմի, պահեց իր սրտին մէջ յիշատակը իր հոգեւոր հօր եւ ուսուցչին Վարդան Վ. Բաղիշեցւոյ. որուն նկարը հոգաց եւ կը պահէր իր սենեակին մէջ որդիական գուրգուրանքով:

Գրիգոր Շղթայակիրի 1717—1749 շրջանի գործունէութեան պատմութիւնը, զոր շատ համառօտ գծեցի, տուած են ընդարձակ Աստուածատուր եպիսկոպոս Տէր-Յովհաննէսեանց, Ժամանակագրական պատմութիւն Ս. Երուսաղէմի. Երուսաղէմ 1890, հատոր Ա., էջ 440—454, հատոր Բ., էջ 5—77: Տիգրան Սաւալանեանց, Պատմութիւն Երուսաղէմի, Բ., Երուսաղէմ 1931, էջ 691—752:

### ԳՐՈՒԹԻՒՆՔ

Բաղէշի Դպրոցին արտադրութիւններն են հետեւեալ ոտանաւոր գրութիւնները, որոնց հեղինակն է Գրիգոր Վ. Բաղիշեցի, գրուած 1694—1712 տարիներուն: Անոնք կը գտնուին Էջմիածնի Թ. 737 ժողովածոյ ձեռագրին մէջ, հաւանօրէն Գրիգորի ինքնագրութեամբ: Ձեռագիրը խառն գրչութեամբ փոքրադիր ժողովածոյք մըն է, գրուած մեծ մասամբ Գրիգորի աշակերտ Յովհաննէսի (հմմտ. Արարատ, 1903, էջ 178) եւ Աբրահամի ձեռքով: Այս ձեռագրին մէջ պահուած է նաեւ Վարդան Բաղիշեցւոյ Ցուցակը Ամիրտոլի Մատենադարանին, զոր յիշեցինք վերագոյն:

1. [Գովասանք Յովհաննէս Փաղերացի ոտանաւոր խրթնածածուկ]:

ա. *Տարուն ի տարփրոնդ մերտարազմեալ.*
*Ով պարմինոս քաջ պարուպտան*
*ճոխացեալ...*

վչ. *Այս ծիր ի Թիւ ՄԻՋԻ գոլով*
*եղեւ ծրեալ,*
*Երկ եւ մու թըլով յանկիւ տուաւելեալ.*
*Յօգոստոսի հընկիւ հընդեակ*
*աւուրբք չափեալ,*
*ՅԱփրոդիտեայ օրն մեցչարաթի*
*բոթ անուանեալ:*

*Տուներու սկզբնագրերը կը կազմեն.*

ՏԷՐ ՅՈՎԱՆՆԷՍ ՓԱՂԵՐԱՑ,
ԳՐԻԳՈՐԻՍՆ Է ՔՈ ԾԱՌԱՅ

բ. *Իբրինոս հռետոր կաթուր*
*փարթամացեալ...*

*Տնակապ գրերը կը յօդեն.*

Ի ՔՈ ԾԱՌԱՅԻՑՍ ԼՈՒ:

*Գրութեանս տարին է ՄԻՋԻ* + 3, *այն է* 1694, *օգոստոս* 10, *ուրբաթ*:

*Էջմ.* 737, *թղ.* 173*ա*—175*ա*:

*Առաջին տաղը հրատարակած է Հ. Ս. Անասեան, Գրական նմուշներ Գրիգոր Շղթայակրից. Էջմիածին ամսաթերթ*, 1950,

Թ. 3—4, էջ 39—46. առկէ արտատպուած՝ Սիոն, 1950, էջ 299—307: Այս գրութիւնը վրիպած էր իմ ուշադրութենէս, երբ տպագրութեան յանձնած էի յօդուածս (Հանդ. Ամս. 1952, էջ 187—207). ուր Տաղիս գրութեան ամսոյն օրը նշանակած էի վրիպակաւ «25, շաբաթ». այսպէս իմանալով «հնկիւ հնգեակը» 5×5=25): Անաստեան, որ վերլուծած է տաղիս խրթնաբանութիւնը, անդրադարձած է ճշգիւ, թէ նաեւ այստեղ պատկերաւոր է օրն ու թիւը. այս ինքն «հնգիւ հնգեակ աւուրբք» իմանալու է 5+5=10. եւ «յԱփրոդիտեայ օրն» թարգմանութիւն լատիներէն dies veneris =օր Վէնուսի, այն է Ափրոդիտեայ, որ կը համապատասխանէ հայերէն ուրբաթի, ուստի նաեւ «վեցշաբաթին» է շաբթուն վեցերորդ օրը. եւ ճշգիւ ալ 1694ին օգոստոս 10ի պատկերն է ուրբաթ: Այսպէս նաեւ «բօթ անուանեալ» իմաստ կը ստանայ, եթէ նկատի առնենք այն տեղիքը, զոր Նոր Բառգիրք հայկազնեան լեզուի յառաջ կը բերէ Վանական վարդապետի Հարցմունք եւ Պատասխանիքէն եւ Տօնականէն. «Ուրբաթն հայերէն է օր բօթի. իսկ ըստ Երբայեցւոց՝ կազմութիւն»: Այս կոչումին աղբիւրն է հաւանօրէն Հին Բառգիրքը. Պարիսի Թ. 260 (ԺԶ. դարէ) ունի. Ուրբաթ. կազմութիւն կամ ի հայ լեզու բօթ» (Wutz, Onomastica sacra, II, 631, ծան.):

Տաղիս տնակապ գրերը «Յովաննէս փագերայ, Գրիգորիս է քո ծառայ» կը յօդեն:

Այս Յովհաննէս փաղերան Անասեան կը նոյնացնէ Երուսաղէմի Յովհաննէս Կ. Գոլ-ոեցի պատրիարքին հետ, որ պաշտօնավարած է 1684—1697: Գրիգոր, որ 1694ին կը յօրինէր տաղս, իր 24 տարեկան հասակին ի Բաղէշ դժուարաւ աչքի առաջ կրնար ունենալ Սաղիմեան պատրիարքին ներքին եւ արտաքին տեսքը: Ան Յովհաննէս փաղերան «սուրբ» գիտէ, հրեշտակաց դասին մէջ: Ուստի Յովհաննէս չէր գտնուէր այս աշխարհի մէջ: Ան էր հեղինակ տաղերու, դասասաց եւ բեմական· այս յատկութիւնները չունէր Երուսաղէմի պատրիարքը:

Վերագոյն § 26, էջ 316 յիշատակած էի 4 ժամանակակից Յովհաննէսներ, որոնց հետ աղերսի մէջ եղած էր Գրիգոր· բայց նաեւ ասոնք չեն երեւցներ այն նկարագրականը, զոր կ'ենթադրէ Տաղս: Ինձ հաւանականագոյն կը թուի յանձին Յովհաննէս փաղերայի նկատել Յովհաննէս Բրդութենց վարդապետը, որ Բաղէշի դպրոցէն ելած էր· եւ իբրեւ դասապետ գործած Ուշտունիքի մէջ· եղած է սրբակեաց, հմուտ վարդապետ, դասախօս, բեմական եւ քերթող: Գրիգորի Վիպասանութենէն կ'իմանանք, թէ նա մինչ առ ոտս Վարդան վարդապետին էր, ձեռնարկած էր վիպասանել նախկին հայրերը· ինչպէս կ'երեւայ անոնցմէ առաջինը նկատի առնուած է Յովհաննէս Բրդութենց: Գրիգորի գովասանքները իրեն լիուլի կը պատշաճին:

2. Յիշատակարան ի յոտք հանօղի զա–
կաւ բանս (*Վիպասանութեան*):

*Փառք գերագոյն Հօրըն բարձրեալ,*
*'ւ Որդւոյ Փրկչին համայնց եղեալ...*
վջ. *Գորգոր գաստինս գաղտ գաթգաթեալ...*

*Վերջնոյս տնակապ գրերը կը յօդեն*
Գրիգոր:

*Էջմ.* 737, 181*բ*—184*ա*:

*Գրուածքս Վիպասանութեան մը յաւելուածական մասն է գրուած 1711ին Հնձուց վանքին մէջ: Իսկ այդ Վիպասանութեան մասին կու տայ բացատրութիւնս.*

*Արդ... ի յաւարտ գըրոյս հասեալ...*
*Արդ թէ դիպիք ինչ գրօնեալ*
*Յայս սակաւ բանս շարակարգեալ,*
*Խնդրեմ ի ձէնջ չի լիցիմ հեղնեալ...*
*Վասն բանիս անհամացեալ...*
*Զպատճառ իրիս ձեզ ծանուցեալ*
*Որ ի յայս եղէ հարկեալ.*
*Քանզի երբեմըն պարապեալ*
*Առ վեհըն իմ գերայմաքրեալ,*
*Զգիր վիպիս իմ ընթերցեալ*
*'Ւ եղէ հոգւով յոյժ տոչորեալ,*
*Հանել ի յոտս տաղիւ չափեալ*
*Ինձ յիշատակ առ յապա լեալ:*
*Որ եւ ըղձիւ ի յիրն սկսեալ,*
*Հասի ի կարգ հարանցն ընտրեալ.*
*'Ւ ի դիպմանէ ինչ յապաղեալ,*
*Կիսակատար բանըս մնացեալ...*

Այս միջոցին Վարդան Բաղիշեցի կը վախճանի· Գրիգոր կ'երթայ Տարօն, ապա Հնձուց վանք: Այս տեղ կը յօրդորէ զինքը Ներսէս եպ· Արծկեցի·

Թէ զվարդընջուցն կիսատ թողեալ,
Հան ի յաւարտ Տէրամբ օգնեալ:
Եւ մեք տխուր զիմօք սկսեալ
Եւ ի կատար զսա հասուցեալ···

Այս տեղի կ'ունենայ 20 մարտ 1711: Թէ «Գիր վիպիս» ո՞ր պատմագիրքը կ'ակնարկէ, չեմ կրնար կռահել: Հաւանօրէն կա՛մ Առաքել Դաւրիժեցւոյ Պատմութիւնն է եւ կամ Դաւիթ Բաղիշեցւոյ Ծաղկաքաղ պատմութիւնը: Գրիգոր յամենայն դէպս այդ պատմագիրքներէն մին ձեռնարկած է յառաջ հանել, այն է տաղաչափօրէն վիպասանել: Ան «Հասի ի կարգ հարանցն ընտրեալ» կ'ըսէ· այս հարք առանց տարակուսի Բաղէշի դպրոցի վարդապետներն են: Դժբախտաբար այդ վիպասանութիւնը իր հիմնական մասին մէջ մեզի չէ աւանդուած: Մեզի ծանօթ միակ ձեռագրին մէջ ունինք միայն պակասորդը, այն զոր գրած է 1711ին Հնձուց վանքին մէջ: Այս մասը նկատի ունի Վարդան Բաղիշեցին եւ 1704—1711/12 տարիներու դէպքերը:

Գրուածքիս առաջին մասէն Վարդան Բաղիշեցւոյ հայող բաժինը հրատարակած է Սենեքերիմ Տէր-Յակոբեան, Արարատ 1903, էջ 176—177, ընդամէնը 39 տող: Տես վերը, էջ 264—266:

Մանր քաղուածներ հանած եմ Վիպասանութենէս, զորոնք կ՚ամփոփեմ այստեղ:

Յետ այսօրիկ անդուստ ցրուեալ
Ոչխարք հօտին աստանդ եղեալ...
Իսկ հընգեքին եղբարքս խորհեալ.
Հանդերձ մերովքն ի մի տեղ կալ,
Ի յիննակնեան տեղիս եկեալ,
Որ Գլակայ վանք յորջորջեալ...
Յետոյ աղէտ մեզ անդ դիպեալ...
Քանզի երկիր եղեւ շարժեալ...
Մինչ գի աղբիւրքըն յորդեցեալ
Ի գոյնս արեան պղտոր եղեալ...
Զի սուրբ կըմպէթըն բարձրացեալ
Կարապետին գեղեցկացեալ
Ի վայր անկաւ կործանեցեալ
Եւ այլ շինուածք համայնք խախտեալ...
Ի Թուին հազար իրս այս եղեալ
Հարիւր յիսուն եւ եօթամբք լրացեալ,
Յետ Համբարձման Փրկչին օրհնեալ,
Յայն Կիրակին երկիրն շարժեալ...

Նոյն տարւոյն միւսանգամ կը նորոգուի գմբեթը. Երկրին բռնաւորները այս նորոգման հրամանին համար մեծ սակ նշանակած էին.

Սակայն այն պարոնքն ընդ հնոյն բարդեալ
Եւ տոկոսեօքըն շատացեալ,
Զմեզ արարին ահարեկեալ.
Այս երեք ամ զմեզ չարչարեալ,
Ի խորափիտ տեղիս մըտեալ,
Երկեակ ամսօք յարեւ չելեալ...

Այս պատճառով կը հարկադրուին միաբանները·

Անդուստ փութով կրկին գրուեալ...
Եւ ի Կարնոյ յերկիրն եկեալ
Ի նոցանէ մեք խոյս տուեալ...

Կ՚ապաւինին Կարնոյ Հնձուց վանք·

Առ մեր եղբայրըն սիրեցեալ,
Տէլէտ մաքուր խոհեմացեալ,
Որ Կարապետ անուամբ կոչեցեալ
Եպիսկոպոս տեղւոյս օրհնեալ...

Յայսմիկ տեղւոջ զմեզ հարկեալ։
Մեր ծերունի հայրըն ընտրեալ
Ներսէս տէլէտըն գովեցեալ,
Նըժդեհակից ընդ մեզ եղեալ
Թէ զվաղընջուցն կիսատ թողեալ
Հան ի յաւարտ Տերամբ օգնեալ·
Եւ մեք տխուր դիմօք սկսեալ
Եւ ի կատար զսա հասուցեալ...
Ես որ Արթուն եմ կոչեցեալ
Եւ Տարօնոյ տեսուչ կարգեալ...
Նաեւ եղբարքն իմ սիրեցեալ,
Որք տէլէտք են կոչեցեալ,
Տերըն Ներսէս Արծըկեցին,
Որ զմեզ ի յերս նա յորդորեալ·
Եւ Յովաննէսն Խոզցայ եղեալ,
Յոյժ զխտութեամբ շնորհօք լըցեալ·
Քեռու որդին իմ Աբրահամ,
Քեզ զաւառէն առ իս սընեալ·

*Մխս Յովաննէսն քաղցրաձայնեալ,*
*Ի մեր յերկրէն եւ նա սերեալ.*
*Եւ Գաբրիէլ Ստեփաննոսի*
*Ընդ այս լիցին առ Տէր յիշեալ:*
*Սոքա յոլովք են աշխատեալ,*
*Առ ի շինումն տեղոյն օրհնեալ,*
*'Ի ի դրունս այլոցըն դեգերեալ,*
*Զողորմութիւն յայն գահն բերեալ:*
*Արդ... ի յաւարտ գըրոյս հասեալ...*
*Արդ թէ դիպիք ինչ գրօննեալ*
*Յայս սակաւ բանս չարակարգեալ,*
*Խնդրեմ ի ձէնջ չի լիցիմ հեղնեալ...*
*Վասն բանիս անհամացեալ...*
*Զպատճառ իրիս ձեզ ծանուցեալ*
*Որ ի յայս եղէ հարկեալ,*
*Քանզի երբեմըն պարապեալ*
*Առ Վեհըն իմ գերայմաքրեալ,*
*Զգիր վիպիս իմ ընթերցեալ,*
*'Ի եղէ հոգւով յոյժ տոչորեալ.*
*Հանել ի յոտս տաղիս չափեալ*
*Ինձ յիշատակ առ յապա լեալ:*
*Որ եւ ըղձիւ ի յիրն սկսեալ,*
*Հասի ի կարգ հարանցն ընտրեալ.*
*'Ի ի դիպմանէ ինչ յապաղեալ,*
*Կիսակատար բանըս մնացեալ...*

### 3. Գանձեր եւ Տաղեր:

*Այստեղ այբուբենական կարգով կ՚ամփոփեմ Գրիգոր Շիրուանեցւոյ գանձերն եւ տաղերը, որքան անոնք ծանօթ են ինծի:*

*Այս տաղերը գրած է Գրիգոր սկսեալ 1691էն (տե՛ս Թ. 2)։ Կան հոս տաղեր ալ, որոնք երկրորդ Գրիգորի մը կ՚երեւան, որ ինքզինքը 1692ին «Գրիգոր ծառայս սուրբ Գեթսեմանին» կը ներկայացնէ. ուստի եղած է ժամանակ մը Երուսաղէմ (տե՛ս Թ. 13). սա ունի տաղ մ՚ալ 1686ին յօրինուած (Թ. 17)։ Հաւանօրէն իր գրչէն են նաեւ Թ. 12, 20, 27 եւ 40։ Իր անձը՝ ուրիշ կողմէ ծանօթ չէ ինծի։*

1. Տաղ սուրբ Աստուածածնի ի ճշդեհ Գրիգոր վարդապետէ։

*Ահա ես դու գեղեցիկ,*
*մաքուր ընտիր անապական,*
*Հարսն երկնից կոյս Տիրամայր...*

վջ. *Արդ Գրիգորն անկեալ առ դրանդ*
*աղաղակէ յոյժ անճարակ...*
*Հաս նըմա, փրկեա զնա յանթիւ*
*պարտուցըն կրկնակի...*

=*էջմ. 737, թղ. 195բ։ Հայէպ, 15, էջ 84 (Սիւրմ., Ցուց., Բ., 62)։*

2. Երգ գովեստի ըստ մերոյ գրոց այբու-բենի, ի սուրբ խաչն աստուածընկալ ի տրուպ Գրիգորէ ճախկին զայս երգեալ։

*Ահեղասքանչ լոյսդ երկնային,*
*Յիսուս Քրիստոս Հօր միածին,*
*որ զըթական սիրով քոյին*
*Իջեր յերկնից յերկիր սորին...*

*Վջ· Է խմ երգեալ զայս բան չնչին,*
*Ի քաններորդ յոբելինին,*
*Հարիւր քառ տասն ընդ նոյն թուին,*
(=1691)
*Երգիչք դուք տուք զտէր ողորմին:*

= *Հայէպ*, 15, *էջ* 124 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, 63):

3· Այլ աղերս առ սուրբ Տիրամայրն ի Գրիգորէ:

*Աղքատ հոգւովս ունայնացեալ,*
*Մեղօք ի լի ժահահոտեալ,*
*Առ ոտըս քո կամ ես անկեալ...*

*Վջ· Լեր պահապան եւ հովանի,*
*Գրիգոր նուաստ վարդապետի:*

*Տնակապք «Աղքատ Գրիգորիկ»·*

= *Հայէպ*, 15, *էջ* 74 (*Սիւրմէեան*, *Ցուց.* *Բ.* 62): *Էջմ.* 2339, 257*բ*—259*ա* (*ԺԸ*)[1]:

4· Տաղ հոգեւոր ասացեալ Գրիգորիսէ:

*Անձնըրդ չար եղկելի եւ թշուառական,*
*Աղտեղի եւ զազիր գործովք անպիտան·.*

= *Հայէպ*, 15, *էջ* 71 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, *էջ* 62): 35, *էջ* 326 (*Ցուց.*, *Բ.*, 101):

---

[1] *Տաղ սուրբ Աստուածածնի ի Գրիգոր Ճէրուանցոյ վարդապետի ստ'' յոյժ գեղեցիկ:*

5. Այլ տաղ սուրբ Ստեփանոսի ի Գրի-
գորէ:

*Անմահ անեղին տեղի բանին հըզօրին,*
*Գովեալ սուրբ վկայդ Պրս(ս)կրդմին...*

*Տունք «Ա.—Բ. Գրիգոր»:*
= *էջմ.* 233, *թղ.* 289*ա*—290*ա*:

6. Տաղ սուրբ Հրեշտակապետացն աս՛
ի տրուպ Գրիգորէ:

*Անմահ Բանին երկնաւորի սուրբ*
*զօրապետք երկնից խմբի...*

= *Հայէպ*, 35, *էջ* 325 (*Սիւրմէեան*,
*Ցուց.*, *Բ.*, 101):

7. Ի նոյն Գրիգոր վարդապետէ աս՛:

*Արփիահրաշ եւ լուսազարդ աթոռ*
*տիրական...*

վջ. *Բարեխօսեա քոյդ Միածնին,*
*ով մայր սրբութեան:*

*Տունք՝ «Արթունի է»:*
= *էջմ.* 2339, *թղ.* 259*բ*—260*բ*:

8. Տաղ սուրբ Աստուածածնի ի նշդեհ
Գրիգոր վարդապետէ:

*Բանին եղեր լուսոյ խորան,*
*Մարիամ, Մարիամ մայր,*
*Կրեցեր ի քեզ զէակըն բան, Մարիամ...*

վջ. *Այլ դու շնորհեա եւ տուր ծրի Մ.*
*Զիմաստութիւնդ տրուպ Գրիգորի, Մ.:*

= *էջմ.* 737, *թղ.* 195*բ*:

9․ Այլ տաղ սուրբ Աստուածածնի ի Գրի–գորէ։

*Արեւ պայծառ եւ գեղեցիկ Մարիամ,*
*Բարձող Բանին սուրբ օծելոյն Մարիամ,*
*Մարիամիդ քեզ ո՞վ նման աննըման...*

= *Հայէպ,* 15, *էջ* 77 (*Սիւրմէեան, Ցուց․, Բ․,* 62)։

10․ Այլ տաղ ի նոյն Գրիգորէ աս″ սուրբ Աստուածածնի։

*Բարձող եղեր անտանելոյն Մարիամ,*
*եւ ծնող Բանին...*

= *Հայէպ,* 35, *էջ* 316 (*Սիւրմէեան, Ցուց․, Բ․,* 101)։

11․ Տաղ սուրբ Ստեփանոսի ի Գրիգոր վարդապետէ։

*Գեղեցիկ զարմանազան գունով փայլա–*
*կան,*
*Քան զարեգակն եւս գերագոյն լուսով*
*աննըման...*

Վջ․ *Սուրբ Ստեփաննոս Գրիգորն ի քեզ է*
*միշտ ապաստան։*

*Տունք՝ «Գրիգորի է»։*
= *Էջմ․* 2339, 282*ա*։

12․ Տաղ ի Ս․ Աստուածածինն։

*Գերի եղէ ես թշնամեաց*
*Ոււնայն եւ դատարկ ի բարեաց...*

*Տունք՝ «Գրիգորէ»։*

*Վիեննա, Թ.* 577, *Թղ.* 123*ա*։ *Հրտ. Տաշեան, Կ. Գ. (տարին չէ նշանակուած), էջ* 57—58։

13. Գանձ սուրբ Գեթսեմանին Քրիստոսի։

*Գովել պարտ է զքաղաքն Յիսուսին,*
*Զաստուածակոխ երկիրն եւ տեղին...*
*Գանձ քաղաքին եմ գովելի,*
*Բոտ պատմութեան զարմանալի...*

*Տողք «Գրիգորի է»։*

*Տունք՝ «Գրիգոր ծառայս սուրբ Գեթսեմանին» (1692էն)։*

= *Վիեննա,* 973, *Թղ.* 17*ա*—23*ա*։ *Տէ՛ս տաղն Փառք քեզ Քրիստոս որդի կուսին...*

14. Տաղ սուրբ Տիրամօրն ի նշդեհ Գրիգոր վարդապետէ։

*Գովեստ բերկրանաց տացուք*
*զկոյսն կուսից գովեսցուք*
*եւ յատսն արտասուօք անկցուք...*
վղ. *Է Մայր, Գրիգորն է անկեալ,*
*ողորմ պանդուխտ Թափառեալ,*
*ձեռն տուր եւ յարս զուարթացեալ*։

*Տունք՝ «Գրիգորի է»։*
= *Էջմ.* 737, *Թղ.* 195*բ*։

15. Տաղ սուրբ Աստուածածնին ի պանդուխտ Գրիգոր վարդապետէ։

*Դու ես տախտակ մաքուր էյէ,*
*ով ամենօրհնեալ կոյս...*

վջ. *Գրիգորն առ ոտսդ անկեալ էյէ գոչէ...*
*պանդուխտ, նըժդեհ խըղճուկ...*

= *էջմ.* 737, *թղ.* 195*ա*:

16. Տաղ Վարդի եւ Պլպուլի ասˮ ի Գրիգոր վարդապետէ:

*Գեղեցկագան հաւիկն պլպուլ տոչորէր,*
*տոչորէր.*
*Եկեալ յայգին զվարդըն քաղցրիկ որոնէր,*
*որոնէր...*

վջ. *Է Գրիգորիս ողորմելի խեղագար,*
*Զթափեալ զքեզ ի յայդ քնոյդ թմբրեալ:*
*Է զրանս խնդրեալ յինէն Մարկոյս փադերայն.*

*Ի թիւ ՌՃԽ 'ւ երեքեան* (1694):
*Այ[ս] սիրելի, այս նազելի զմեզ յիշեցէք յարա...*

*Տունք՝ «Գրիգորիսի է»:*
= *էջմ.* 2339, *թղ.* 290*ա*:

17. Տաղ Գրիգոր վարդապետի, որ է Երուսաղէմէ. ասացեալ ի վախճան աշխարհի:

*Գուն գործեա՛, ով դու Գրիգոր,*
*Զբարիս գործել տե՛ս որպէս...*

= *Վիեննա*, 577, *թղ.* 123*բ*: *Հրտ. Տաղարան, էջ* 126—127:

*Տաղս գրուած է 1686ին. ուստի տաղասացը կարող է Գրիգոր Երուսաղեմացին ըլլալ:*

18. Այլ տաղ հոգեւոր ի Գրիգոր սարկէ Շէրւանցոյ:

*Եղկելի մրտօք յիմարեալ,*
*աւաղելի կենօք տոչորեալ,*
*Ով անձն ընդէ՞ր ես մեղուցեալ,*
*եւ չար գործովք այսահարեալ...*

Վջ. *Գրիգոր ծառայդ ի քեզ յանձնի, ով մայր գթութեան...*

*Տունք՝ «Երգ ի Գրիգորէ»:*
= *Հայէպ*, 15, *էջ* 120 (*Սիւրմէեան*, *Յուց*., *Բ*., 63): *Էջմ*. 2339, 268*ա*/69*ա*[2]:

19. Տաղ սուրբ Աստուածածնի ի Գրիգոր վարդապետէ: Յետ գնալոյ վարդի գոյնն է:

*Ես մայր լուսոյ սուրբ Մարիամ գովեալ,*
*Զոր եւ վկայէ գքէն Սիրաք սրբասնեալ.*
*Գեղեցիկ եւ մաքուր մայր Բանին օրհնեալ,*

Վջ. *Ողբալին Գրիգոր սէֆիլ թափրացեալ,*
*Գոնէ ի փշրանացդ տուր սեղանոյդ օրհնեալ:*

= *Հայէպ*, 15, *էջ* 122 (*Սիւրմէեան*, *Յուց*., *Բ*., 63):

20. Տաղ սուրբ Պատմութեանն Քրիստոսի:

---

[2] *Է. Գրիգորիս ողորմելի...:*

*Երես դընեմ քեզ ի հողին...*

վջ. *Թըւական էր մեր Հայոց ազգին քանեւ-*
*երկու յոբելեանին.*
*Տարըն քառեակ եւ մի թըւին, Գրիգոր*
*գրեաց զԳանձս ընդ տաղին:*

= *Վիեննա* 973, *թղ.* 11*ա*—15*ա*:
*Տես Գանձն՝ Կամիմ երթալ:*

21. Տաղ խաչելութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ. ի մեղուցեալ Գրիգորիսէ ասʺ:

*Ի լեառն մեծ զարմանալի,*
*Ի Գողգոթայ գիտանոցի,*
*Դու բարձրացար ի փայտ խաչի,*
*Անճառ սիրով զԹա Յիսուս, Յիսուս...:*

= *Հալէպ*, 15, *էջ* 69 (*Սիւրմէեան, Ցուց., Բ.*, 62): 35, *էջ* 318 (*Ցուց., Բ.*, 101: 1710):

22. Տաղ սուրբ Տիրամօր վերափոխման ի նժդեհոյ Գր. վարդապետէ.

*Ի լըման ամաց կուսին մօր շնորհաց,*
*Եհաս ելք կենաց, յերկրէս գրաղանաց.*

վջ. *Է մայր յորդ փոխման զԳրիգոր պարտա-*
*կան,*
*Ազատեա ըստ հայցման դարձ տուր գե-*
*րութեան:*

*Տունք՝ ի Գրիգոր վարդապետէ:*
= *Էջմ.* 737, 196*բ*: *Հալէպ*, 15, *էջ* 85 (*Սիւրմէեան, Ցուց., Բ.*, 62):

23. Աղերս առ սուրբ Մարմին եւ Արիւնն Քրիստոսի, ոգեալ ի Գրիգորէ:

*Իմանալի սեղան կազմեալ,*
*Յերկնից բարձանց հաց սուրբ իջեալ,*

= *Հայէպ*, 35, *էջ* 322 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, 101):

24. Աղերս առ սուրբ Աստուածածինն ի Գրիգորէ:

*Ի յորսողէն գազանի նետից խոցեցայ.*
*խոցեցայ.*
*Եւ չար մեղօք աղտեղեցայ, գարշեցայ*
(կրկ.)...

= *Հայէպ*, 15, *էջ* 83 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, 62):

25. Ողբ ի վերայ մեղուցեալ անձին իմոյ տրուպ Գրիգորի:

*Ի սիրոյ անմահ փեսային.* կրկ.
*զեղկելի հոգիս հերքեցին.*
*Այժմ այրի եղեալ մորմոքիմ ի մեղս*
*մընալով, մ. մ.*

վջ. *Է եղբայր հոգւոյս ըղձալի.* կրկ.
*Տէր Յովաննէս իմ նազելի*
*Ահա զխնդրեալդ քո երգեցի,*
*յիշեա մաղթելով մեղաց թողութիւն..*

*Տունք՝ «Գրիգորիսէ»:*

*Ի Հնձուց վանքն գրեցան սակաւ բան(ք)ս*

*ձեռամբ խմոլ Գրիգորի մեղապարտ վարդա-պետի* (1711)։

= *Էջմ*. 737, 193*ա*։ *Հայէպ*, 15, *էջ* 80 (*Սիւրմէեան*, *Ցուց*., *Բ*., 62)։

26. Աղերս առ սուրբ Տիրուհին ի հեղգ Գրիգորիսէ։

*Ծաղիկ դաշտաց կընդրկածին Մարիամ*
*Շուշան հովտաց դու լուսածին Մարիամ*,
*Ահա մեղօք լոյժ ցաւագին Մարիամ*,
*Անկայ ի կարծ չար բանսարկուին*,
*Մարիամ*...

= *Սիւրմէեան*, *Հայէպ*, *Բ*., 15, *էջ* 68 (*Ց*. 61)։

27. [Գանձ Բերդեհեմի։]

*Գանձքս գրեցայ ես ի քարտիս*,
*Բոռ քաղաքին Բեթղէհէմին*...

Սկզբնագիրը ԳՐԻԳՈՐԻ է։

*Կամիմ երթալ ի քաղաք Դաւթին*,
*Ի Բեթղէհէմ տունըն Եփրաթին*...
*Տունք՝ «Կուսին ծառայէ»*։

= *Վիեննա*, *Մխիթ*. 973, *թղ*. 6*բ*—11*ա*։ *Տե՛ս տաղն՝ Երես գրնեմ*։

28. Աղերս առ սուրբ Հոգին Աստուած ի Գրիգոր վարդապետէ։

*Ճաշակ դու քաղցր բարութեան*,
*Հոգի Աստուած հեզութեան*...

= *Հայէպ*, 15, *էջ* 86։

29· Գովեստ եւ աղերս առ սուրբ Աստուածածինն ի ճշդեհ Գրիգոր քանասիրէ:

*Մայր Աստուծոյ եւ բնակարան ամեն–*
*օրհնեալ կոյս Մարիամ բարեխօսեա...*

վջ· *Ով կոյս ահա յոյժ անպիտան*
*կամ ես գեղերեալ ի դրունս մարդկան,*
*Ով մայր Գրիգորն («գրիգոյն») պանդըխ–*
*տական գոչէ ձայնիւ հառաչական...*

= *Էջմ*. 737, 194*բ*:

30· Այլ տաղ սուրբ Աստուածածնի ի Գրիգորէ:

*Մայր կենդանեաց կոյս երանեալ,*
*Սուրբ Տիրամայր ամենօրհնեալ.*
*Աղաղակեմ յառս քո անկեալ,*
*Եւ աղերսեմ յոյժ նքողեալ...*

= *Հայկպ*, 15, *էջ* 77 (*Սիւրմէեան*, *Ցուց*., *Բ*, 62):

31· Տաղ ի վրայ է· վշտաց սուրբ Աստուածածնի աս" ի տրուպ Գրիգորիսէ:

*Յառաջագոյն գուշակ լինի,*
*Մեծ Սիմէոն սուրբ ծերունի.*
*Եթէ քո սիրտըն խոցոտի...*

= *Հայկպ*, 15, *էջ* 70 (*Սիւրմէեան*, *Ցուց*., *Բ*., *էջ* 62): 35, *էջ* 320 (1710· *Ցուց*. 101):

32· Տաղ անոյշ սուրբ Աստուածածնի ի նոյն Գրիգոր վարդապետէ:

*Ցիմանալի զօրաց գովեալ,*
*ով մայրդ մաքրեալ Մարիամ...*

վջ· *Խեղճ գերի Գրիգորիկն գոչէ տոչորեալ··*

*Տունք՝ «ՅԱրթունե»:*
= *էջմ*. 2339, *թղ*. 259*ա—բ*:

33· Այլ տաղ ողջունի առ սուրբ Աստուածածինն ի Գր. վարդապետէ:

*Ողջոյն ընդ քեզ կոյս ամենօրհնեալ տի-*
*րուհի,*
*Գովեալ ես դու յամէն լեզուէ Իսկուհի··*

վջ· *Ողջոյն քեզ տամ ես Գրիգորիսս եղկելի,*
*Ի թուըն ՌՃԽԴ* (=1695) *մաքուր քեզ*
*գայս երգեցի...*

= *Հալէպ*, 15, *էջ* 123 (*Սիւրմէեան*, *Ցուց*., *Բ*., 63): *էջմ*. 2339[3], 264*բ*/65*բ*:

34· Տաղ հոգեւոր ի Գրիգոր ստրկէ:

*Ով իմ թագաւոր փրկիչ խնամող,*
*եւ միշտ բարերար,*
*Քննող եւ արդարադատ,*
*դու գըթա ի յիս տխրաբար...*

*Տունք՝ «Ողբ ի Գրիգորէ»:*
= *Հալէպ*, 15, *էջ* 81 (*Սիւրմէեան*, *Ցուց*., *Բ*., 62): *էջմ*. 2339, 269*ա—բ*[4]:

---

[3] *Առ սուրբ Աստուածածին ստ՛՛ ի նոյն Գրիգոր վարդապետէ:*

[4] *Այլ տաղ ի նոյնոյ Գր. վարդապետէ:*

35. Տաղ սուրբ Աստուածածնի ի պանդուխտ Գրիգոր վարդապետէ:

*Ուրախ լեր մայր անեղին,*
*Ծնող անճառ անհասին,*
*Զի փայլեցար իբր զարփին*
*յաւուր փոխման քո յերկին...*
Վջ. *Ընդ նժդեհս ցաւագին,*
*Գրիգոր ողորմ լալագին...*

= *Էջմ.* 737, *Թղ.* 196*ա*: *Հայէպ*, 15, *էջ* 84 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, 62):

36. Տաղ ի Գրիգորէ ի վրայ անձին իւրոյ:

*Տարաշխարհիկ եղեալ ես,*
*ի հայրենեաց զրկեալ ես,*
*Ով անձն ընդէ՞ր վատթար ես,*
*ի մէջ մեղաց անկեալ ես...*
Վջ. *ԶԳրիգորն ի հրոյն փրկեսցես:*

*Տունք՝* «*Տաղ ի Գրիգորէ*»:

= *Հայէպ*, 15, *էջ* 82 (*Սիւրմէեան*, *Ցուց.*, *Բ.*, 62): *Էջմ.* 2339, 269*բ*[5]:

37. Սակաւ ինչ բան յերգ երգոցէ առեալ աղերս առ տէր Յիսուս ի Գրիգոր վարդապետէ:

*Տարփմամբ սիրով խանդաղատեալ սուրբ*
*հարսին* կրկ.
*Սուրբ հարսն եղեալ խնդրէր զփեսայն*
*մաքուր սիրելին...*

[5] *Այլ տաղ հոգեւոր ի Շերւանցի Գր–է աս''*:

Վջ· *Փրկեա զԳրիգոր ի գեհենոյն, գթա*
*Տէր...։*

= *Էջմ.* 737, 193*բ*։

38. Տաղ ի Գրիգոր վարդապետէ Տէր ամենակալի ոճիւք։

*Տէր Աստուած ամենակալ*
*Աբրահամու հօր մեր մաքրեալ,*
*Իսահակայ 'ւ այլոյն ընտրեալ,*
*տէր թող ըզմեղս իմ բազմացեալ...*

Վջ· *Յիշեա զԳրիգոր յարքայութեան։*

= *Հալէպ*, 15, *էջ* 119 (*Սիւրմէեան*, *Յուց.*, *Բ.*, 63)։

39. Տաղ սուրբ Աստուածածնի ի պանդուխտ Գրիգոր պաշտօնեէ։

||||| *խօսնակ մըթին ըստուերին,*
*Ճշմարտաճառ ի տառին,*
*Ըզքեզ բերկրեաց սուրբ հոգին,*
*Ով մայր սուրբ կուս տիրածին...*

= *Հալէպ*, 15, *էջ* 84 (*Սիւրմէեան*, *Յուց.*, *Բ.* 62)։

40. Գանձ։

*Փառք քեզ Քրիստոս որդի կուսին,*
*Երկիր պագեմ քո տաճարին...*

Վջ· *Թըւական էր մեր Հայոց ազգին*
*.Ի. եւ .Բ. յարելենին,*

·Ժ· եւ քառեակ եւ մի թըւին
Գրիգոր գրեաց զԳանձս ընդ տաղին
(1692)։

= Վիեննա 973, թէ. 23ա—27ա[6]
Տես Գանձն Գովել պարտ է...։

## 4· ԿՈՆԴԱԿՆԵՐ ԵՒ ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆ

ա. Կոնդակ Գրիգոր եւ Յովհաննէս վարդապետաց առ վանահայրս եւ ժողովուրդն Բաղէշի. գրուած 25 յունիս 1720։ Հրատարակեց Բաբգէն Վ. Կիւլէսէրեան, Բիւզանդիոն, 1900, թ. 1191։

բ. Գրիգոր Շղթայակրի մի նամակը Յովհաննէս Կոլոտին։ Հրատարակեց Գ. Վ. Յովսէփեան, Արարատ 1915, էջ 11—17։

գ. Ստորագրութիւն ուղեւորութեան Տ. Գրիգորի Շղթայակրի պատրիարքի Ս. Աթոռոյս՝ յԵրուսաղեմէ ի Կ. Պոլիս (6 մայիս 1736—15 սեպտ. 1740)։ Հրատարակուած Սիոն, 1866, էջ 122—127, 141—143, 84—90)։

[6] «Ես Սուքիաս ծառայ Փրկչին,
գնացի քաղաք Տեառն Յիսուսի,
Յորջոյն սուրբ գերեզմանին.
եւ անդ տեսայ զԳանձս ընդ տաղին.
Եւ վառեցայ սիրով նորին,
ետու գրել զամենեսին,
Տանել որդւոց իմ երկսին՝
Մկրտչին, Յովանէսին։
Եւ ես Գրիգոր ծառայ կուսին,
լըցի զխնդիրս Սուքիասին.
Գրեցի սիրով Յովանէսին
եւ Մկրտչին եղբօր նորին...»։

Կը գտնուին անշուշտ ուրիշ Կոնդակներ, Նամակներ եւ Տաղեր, պահուած Երուսաղէմի Ս. Յակոբեանց Ձեռագրատան մէջ: 1950ին, երբ տօնեց Երուսաղէմի պատրիարքական Աթոռը Գրիգոր Շղթայակրի մահուան 200ամեայ տարեդարձը (1749—1950), գեղեցիկ առիթն էր անշուշտ գրելու Մեծ Պատրիարքին Կեանքն եւ Գործունէութիւնը հիմնուած վաւերագիրներու վրայ:

## 28. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ԲԱՂԻՇԵՑԻ ԿՈԼՈՏ, ՊԱՏՐԻԱՐՔ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍԻ ՀԱՅՈՑ

«Երանի՜ թէ Կոլոտի ծննդեան, մանկութեան եւ երիտասարդութեան եւ այլ պարագաներն ու հանգամանքներն ալ ծանօթ ըլլային մեզի», կը գրէր Բաբգէն Վ. Կիւլէսէրեան 1904ին, երբ կը գրէր իր մենագրութիւնը «Կոլոտ Յովհաննէս պատրիարք[1]»:

Պիտի ջանամ այստեղ ամփոփել այն տեղեկութիւնները, որոնք կը հային Յովհաննէս Բաղիշեցւոյ կենսագրութեան մինչեւ 1715:

Ծննդավայրը կը մատնանշէ Գրիգոր Շիրուանցի Շղթայակիր իր Վիպասանութեան մէջ, երբ կը գրէ 1711ին.

Եւ Յովհաննէսն Խողցայ եղեալ,
Յոյժ գիտութեամբ շնորհօք լցեալ:

Այսպէս Խոզց կ'անուանէ իր հայրենիքը նաեւ ինքն Յովհաննէս, 1719ին. «ի Դ. Հայոց

[1] Վիեննա 1904, էջ ժ:

ի գաւառին Խողձ, ի տեղին Սալնոյձոր, կերտեալ ի Բղեշխացն Արծրունեաց, որ ածանցեալ կոչի Բաղէշ[2]»: Այս Խողձ (գրուած նաեւ Խողց, Հողձ եւ Խոց) գաւառը եղած էր նաեւ Վարդան Բաղիշեցւոյ ծննդավայրը: Կը վերաբերէր ան Աղձնեաց նահանգին, Բաղէշ քաղաքի հարաւակողմը, Վանայ ծով թափող Թուխայ գետին աջ եւ ձախ տարածութեան վրայ[3], առած անունը Խողձ աւանէն, որ կը կարծուի թէ ըլլայ այժմեան Թուխ աւանին հետ նոյն[4]: Աւանն եւ գաւառը նոր շրջանին նկատուած է մաս Բաղէշ նահանգին. ասկէ ինչպէս Վարդան, նոյնպէս անոր աշակերտը կոչուած են Բաղիշեցի:

Ծննդեան տարին պէտք է նկատել 1677/8, վասն զի, ինչպէս կը հաւաստէ Յակոբ Նալեան, վախճանած է Յովհաննէս 63ամեայ 1741, փետրուար 13ին[5]: Ծնողաց անունները չեն աւանդուած մեզի:

Աշակերտած է Յովհաննէս Վարդան Բաղիշեցւոյ Ամիրտոլի Դպրոցին մէջ, անոր ծերութեան տարիներուն. կը նկատուի նաեւ

---

[2] Յիշատակարան պատմագրաբար, Կիւլէսէրեան, անդ, էջ 142:

[3] Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւն, էջ 250 եւ Աշխարհացոյց:

[4] Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 179:

[5] Յակոբ Նալեան, Գիրք կոչեցեալ Գանձարան ծանուցմանց, Կ. Պոլիս 1758, Ա., էջ 421. խօսելով եօթէ կազմուած տարիքներու վրայ, ինչպէս 63ը, որոնք վտանգաւոր տարիներ են, կը գրէ. «եւ լուսահոգի Հայր վարդապետն մեր եւս՝ ննջեաց ի Տէր ԿԳ ամի կենաց իւրոց». խօսքը Յովհաննէս Կոլոտի մասին է (Համմ. Կիւլէսէրեան, անդ, էջ 75):

Գրիգոր Շիրվանեցւոյ աշակերտ, ինչպէս նա ինքը կ՚անուանէ ինքզինքը։ Յովհաննէս նոյն վանքին մէջ իրեն աշակերտակից ունեցած է Աբրահամ Քեղեցին։ Աբեղայ ձեռնադրուած ըլլալու է իբր 1698ին Վարդան Բաղիշեցիէն. իսկ վարդապետական գաւազանը առած է 1708ին Գրիգորէն Մուշի Ս. Կարապետի մէջ[6]։

Վարդան Բաղիշեցի վախճանեցաւ 1704, մարտ 31ին[7]։ Նոյն տարւոյն Ամիրտօլէն կը հեռանան հինգ միաբաններ, ոմանք վարդապետ. ուրիշներ՝ աբեղայ։ Անոնք որոշած էին մէկ սիրտ, մէկ հոգի չբաժնուիլ իրարմէ։ Գացին Ս. Կարապետի վանքը եւ գրուեցան վանքին միաբան։ Գրիգոր Վ. Շիրվանցի կը կարդուի «առաջնորդ Ս. Կարապետի վանացն» (էջմ. 737)։ Կը նորոգեն վանքը. բայց 1708, մայիս 16ին[8] երկրաշարժ մը կը կործանէ Եկեղեցւոյն գմբէթը եւ կը խախտէ շէնքերը։ Միաբանները կը լծուին գործի. կը վերականգնեն եկեղեցին եւ կը վերանորոգեն շէնքերը։ Այս պատճառով արդէն պարտքի տակ գտնուած վանքը կը ծանրաբեռնուի նոր պարտքերով։ Պարտատէրներու պատճառած նեղութիւններէն հարկադրուած

---

[6] Յովհաննէսի կնիքը կը կրէ «ՌՃԿԷ» (1708), «որ է փոխած պատրիարքութեան ամէն». Կիւլէսէրեան, անդ, 135։

[7] Կոլոտ իր Պատմութեան մէջ Վարդանի մահը նշանակած է ՌՃԾԴ (1705). պէտք է կարդալ ՌՃԾԳ։

[8] Կոլոտ, անդ, նշանակած ՌՃԸ (1709). բայց Գրիգոր ունի ՌՃԷ. ուստի 1708, մայիս 16։

*կը փախչին միաբանները Կարնոյ գաւառ, ապաստան կը գտնեն Հնձուց վանքը* (1711)։ *Անկէ կը մեկնին զանազան ուղղութեամբ, հանգանակելու համար ողորմութիւն Ս. Կարապետի համար։ Գրիգոր կ'անցնի Խրիմ եւ Յովհաննէս Կ. Պոլիս* (1712)[9]։ *Այստեղ կը գտնէ Կոլոտ Սեբաստացի Գասպարի*[10] *քով ասպնջականութիւն։ Քաղաքին պատրիարքն էր Սահակ Ապուչեխցի. որ ամէն կերպ աջակից կ'ըլլայ Յովհաննէսի։ Կը հանգանակուին Ս. Կարապետի համար ողորմութիւն եւ նուէրներ։ Յովհաննէս կը փութայ հասցնել զանոնք Գրիգորի, որ վերադարձած էր Տարոն։ Վանքը կ'ազատի պարտքերէն* (*տե՛ս* § 27)։

Յովհաննէս՝ պատրիարք։ — *Յովհաննէս «վասն առաքինի բարուցն եւ եւս վասն անհամեմատ քարոզութեանն, որ գրէ թէ էր ազգիս մերոյ նոր Ոսկեբերան եւ կրկին աստուածաբան», գտած էր ժողովուրդին եւ անոր իշխաններուն քով համակրութիւն։ Անոնք չթողուցին, որ ան վերադառնայ Տարոն։ Իրեն յանձնեցին Երուսաղէմի պարտքերուն խնդիրը* (1713)։ *Նոյն տարւոյն ուխտաւորներուն հետ ուղարկեցին զինքը իբրեւ «աթոռակալ եւ վէքիլ» Երուսաղէմ, յանձնելով իրեն «չափաւոր» գումար մը, որ հանգանակուած էր Ս. Տեղեաց համար։ «Ուխտ*

[9] *Նուիրակութեան եկած են* 1711*ին. հետեւաբար Կոլոտ Կ. Պոլիս հասած ըլլալու է առ անագան* 1712*ին*։

[10] *Հմմտ. Կիւլէսէրեան, էջ* 69, *ծան.* 1 *եւ* 125։

եղին, կ՚ըսէ Հաննէ, ընտա իշխանք եւ ժողովուրդք Հայոց ընդ նմա (ապ. սա), թէ զոր ինչ եւ գրեսցես մեզ ի սրբոյ Սաղիմայ մինչեւ ցհասանիլ մահուան եւս՝ Տէրամբ օգնական եմք քեզ»։ Հասաւ ան Երուսաղէմ (1713 զատկէն [5 ապրիլ] յառաջ)։ Տեսաւ վանքին սոսկալի կացութիւնը. 800 քսակ պարտքի տակ էր. պարտատէրները «բարբարոս», մերայինք «յափշտակողք»։ Նման կացութեան մէջ-տեսած էր ան նաեւ Տարօնի Ս. Կարապետը. անցած էր ան տառապանքի դպրոցը։ Չյուսալքուեցաւ նոր, դառնագոյն դժուարութեանց առջեւ։ Այս միջոցին տեղի կ՚ունենայ Կ. Պոլիս պատրիարքի փոփոխութիւն. Սահակ Ապուչեխցի հրաժարած էր, յաջորդած Յովհաննէս Վ. Գանձակեցի (28 մարտ 1714)[11]։ Նոր պատրիարքի կողմէ կ՚ուղարկուին 3—4 «արք ժանգոտեալք» եւ «նեխեալք», ծծելու արդէն արինաքամ միաբանութենէն արիւն։ Կը նկատեն պարտա—

[11] Գրիչ մը, Յովհաննէս Ակնեցի գրած է իր Յիշատակարանին մէջ. «ի Թուին Հայոց ՌՃԿԴ (1715) ի Վարդավառի շաբաթ օրին աւարտեցաւ գիրս հրամանաւ տեառն Յովհաննէս սրբազան վարդապետի <Գանձակե>ցւոյ, որ ի ՌՃԿԳ (1714) թւին ի սրբոյ զատկին նստաւ յաթոռ պատրիարգութեան յարքայանիստ քաղաքն Կոստանդնուպօլիս. նաեւ սուրբ Երուսաղեմայ տիեզերահռչակ հրաշալի աթոռոյն կրկնապատիւ վայելչացեալ, ի ծրագալուցի շաբաթ օրին» (Մոսկուա, Լազարեան ճեմարան, Թ. 74. ժողովածու)։ 1714ին զատիկը կ՚իյնայ ապրիլ 1ին, ուստի նկատի առնուած է հոս նոյն տարւոյ մարտ 31ը, շաբաթ Յարութեան։ Աստուր, էջ 127 եւ Օրմանեան, Բ., էջ 2796 կը նշանակեն «1714 մարտ 21ին Ծաղկազարդի օրը»։

տեարք, թէ վանքին եկամուտները օր աւուր կը նուազին: Իրենց պարտքերը զանձելու համար հրաման կը բերեն Կ. Պոլսէն աճուրդի հանել վանքին կալուածքները: Միաբանները յաճախ կ՚իյնան պարտատէրներու ոտքը՝ յետաձգելու պարտքերու խնդիրը. անոնք կը գիջանին երբ երաշխաւորութիւնը յանձն կ՚առնէ, չորս տարուան համար, Յովհաննէս վարդապետ: Ան կը վերադառնայ Կ. Պոլիս[12] պարզելու համար ազգին առաջ իրաց առած ընթացքը: Միակ ելքը կը համարի երկու պատրիարքութիւնները, որոնք միացուած էին Կ. Պոլսոյ աթոռին հետ Աւետիքի օրով (1701), բաժնել միանգամ: Ժողովուրդն եւ իշխանք կը հաւանին առաջարկութեան միակ պայմանով, որ Կ. Պոլսոյ պատրիարքութիւնը յանձն առնէ նա իր վրայ. իսկ Երուսաղէմի պատրիարքին անուանումը կը թողուն իր լաւատեսութեան: Կը հարկադրուի Յովհաննէս յանձն առնել: Յովհաննէս պատրիարք գահ կը բարձրանայ 1715 սեպտեմբեր 9 ուրբաթ օր[13]. յաջորդ օրը տօնն էր «Ս. Յարութեան եւ Գողգո–

[12] Ըստ Օրմանեանի, Բ., 2807 «1715 զատկէն ետքը»:

[13] Հաննէ, էջ 139, գահակալութեան օրը կը նշանակէ «ի սեպտեմբերի ԺԲ. յօրն ուրբաթի». այս տարւոյն, սակայն, սեպտ. 12 էր երկուշաբթի: Սարգիս դպիր Յովհաննիսեան գրէ «Սեպտեմբեր 7» (Գալէմքեարեան, Սարաֆեան, էջ 154): Սաւալանեան ունի «13 սեպտեմբեր» (էջ 690). Տէր-Յովհաննէսեան «1715 սեպտ. 16 ուրբաթ» (Ա., էջ 438): Աստուր «Սեպտ. 9» (էջ 128). այսպէս նաեւ Կիւլէսէրեան, էջ 15. Օրմանեան

թային»․ հաւանութեամբ քահանաներու եւ ժողովուրդին՝ կը ծանուցուի բոլոր եկեղեցիներուն, որ պատարագի մէջ յիշատակուի «սուրբ Երուսաղէմի պատրիարք տէր Գրիգոր աստուածաբան վարդապետը»: Յովհաննէս, որ այսուհետեւ «Կոլոտ» (կարճահասակ) մականունը ստացաւ, պատշաճ տեսած էր Երուսաղէմի աթոռին համար իր հոգեւոր հայրն եւ ուսուցիչը Տարօնի Ս. Կարապետի վանքին առաջնորդը: Այսպէս թէպէտ կը բաժնուէին երկու պատրիարքութիւնները միւսանգամ, բայց երկու պատրիարքները սրտով միացած, գործեցին ձեռք ձեռքի տուած՝ Երուսաղէմը պարտքերէն ազատելու եւ անոր տնտեսութիւնը բարուոքելու համար:

Յովհաննէս՝ եպիսկոպոս: — Տակաւին լոկ վարդապետ էր ան: Ժամանակ չէր ունեցած երթալու Էջմիածին եպիսկոպոսական ձեռնադրութեան համար: 1725 հոկտ. 10ին վախճանեցաւ Էջմիածնի Աստուածատուր կաթողիկոս: Այս միջոցին Էջմիածին օսմանեան տիրապետութեան տակ էր: Յովհաննէս ի լուր մահուան կաթողիկոսին ժողով գումարեց Կ. Պոլսոյ Մայր եկեղեցւոյ մէջ եւ կա-

(Բ., էջ 2810) «եօթնեկի եւ տօնի օրերը 1715ին սեպ-
տեմբեր 9ին եւ 10ին կը պատասխանեն... ուրիշ կող-
մէն ալ սեպտեմբեր 16ին եւ 17ին տանելու ուղղու-
թիւնն ալ (Զամչ., Գ., 772) տօնական յիշատակին
չյարմարիր»: Սեպտեմբեր 12ին ուրբաթ կ'իյնար 1715—
1734 տարիներուն միայն 1718ին եւ 1729ին: Այս վրի-
պակը տպագրողին պէտք է վերագրել:

*Կաթողիկոս ընտրուեցաւ Անկիւրիոյ առաջնորդն Ուրնեցի Կարապետ եպ. «Ծծկեր» մականուանեալ: Օծումը տեղի ունեցաւ Կ. Պոլիս 27 փետր. 1726: Երեք օր ետքը (2 մարտ) նորընտիր կաթողիկոսը եպիսկոպոս օծեց Կ. Պոլսոյ պատրիարք Յովհ. վարդապետը (Կիւլէսէրեան, 27):*

Գերեթափութիւն: 1722—1734 *տարիներուն անդադար կռիւներ կ՚ըլլային Պարսից եւ Օսմանեանց մէջ: Այս կռիւներուն միջոցին կը բերուէին բազմաթիւ հայ գերիներ օսմանեան հողը: Յովհաննէս պատրիարք ջանք եւ դրամ չէր խնայեր փրկանաւորելու այդ գերիները:*

*Իր կարգին ջանք տարաւ պայծառացնել իր թեմը: Նորոգեց, նաեւ ի հիմանէ շինեց եկեղեցիներ: Աշխատեցաւ խաղաղել ժողովուրդը, վերջ տալ ներքին խռովութիւններու: Փոյթ տարաւ նաեւ ժողովուրդին, յատկապէս կղերին մտաւոր զարգացման,* 1719*ին բացաւ Իւսկիւդար Դպրատուն մը, Հասցուց մեծ թուով աշակերտութիւն: Թարգմանել տուաւ Ղուկաս Խարբերցւոյ եւ ուրիշներուն իտալերէնէ եւ լատիներէնէ բազմաթիւ գրքեր, աստուածաբանական, մեկնողական, հովուական եւ ընդհանուր գիտութեանց հայոց գործեր:*

Շինարար: 1718 *յուլիս* 6*ին տեղի կ՚ունենայ Կ. Պոլիս մեծ հրդեհ մը, որ կ՚այրէ նաեւ Հայոց Մայր եկեղեցին: Կոլոտ եւ Տղթայակիր կը յաջողին վերաշինել եկեղեցին*

1719ին։ Նոյն 1719 տարւոյն յունիս 23ին կը ծագի նոր հրդեհ մ'ալ, որուն զոհ կ'երթայ միւսանգամ Մայր եկեղեցին։ Դարձեալ կը վերաշինէ Կոլոտ։

1722ին կը նորոգէ Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցին, կը շինէ Ս. Երրորդութեան մատուռը։

1726ին կը վերաշինէ Օրթագիւղի Ս. Աստուածածին եկեղեցին։

1727ին հրաման կը հանէ շինելու Իւսկիւտարի եկեղեցին ի հիմանց։

1730ին կը վերաշինէ Գալաթու Ս. Հրեշտակապետաց եկեղեցին, որ այրած էր 1729ի հրդեհին։

1733ին կ'աւարտէ Ղալաթիոյի Ս. Լուսաւորիչ եկեղեցին, որ հրկիզուած էր 1731ի հրդեհին[14]։

---

[14] Այս առիթով յօրինուած է Մեսրոպ դպիրէն այն մարմարեայ Յիշատակարանը, զոր հրատարակած է Բ. Վ. Կիւլէսէրեան (էջ 133), իբրեւ 22 տողեայ արձանագրութիւն, համարելով բովանդակութիւնը անլուծանելի «հանելուկ»։ Տողատումը ուղիղ չէ կատարուած։ Արձանագրութիւնը կազմուած է 20 վանկեան տողերէ. այսինքն առաջին սիւնակին մէն մի տող ունի իր շարունակութիւնը երկրորդ սիւնակին մէջ. ուստի կարծուած հանելուկը կը լուծուի եթէ կարդանք այսպէս.

Ի փայլ . ու . յր . (ար) . շաւ . արդ . չքնաղակապ
Արհարնակ . պճնեղ . որ . յառողաց . կապ .
Միգախոյս . տարաղ . շինուս . երկակս .
Սոսկ . չընծաէ գիւր . ի տես . յարակս . . .
Իմացիր՝

Ի փայլ սայրարշաւ արդ չքնաղակապ
Արհիարնակն պճնեղ, որ յարարողացն (*) կապեցաւ,
Միգախոյս տարագիւ շինուածոյս երկակս
Սոսկ չընծայէ գիւրն ի տես յարակս։
Վերջին տողերն են.

Աշակերտները: *Յովհաննէս իր բազմապիսի զբաղմանց մէջ եղաւ նաեւ ուսուցիչ վարդապետ:*

*Սարգիս դպիր Սարաֆեան կը յիշէ անոր ձեռնասուն աշակերտներէն հետեւեալները* (*Կիւլէսէրեան*, 70—72).

1 *Թովմաս վարդապետ*
2 *Երեմիա վարդապետ*
3 *Յարութիւն վարդապետ Բասենցի*
4 *Յակոբ վարդապետ* (*Նալեան*)
5 *Սահակ վարդապետ Ահագին*
6 *Սարգիս վարդապետ Սարաֆեան*
7 *Ադամ վարդապետ* (*Գալէմք.*, 327, 384)
8 *Յովհաննէս վարդապետ Ժամկոչեան*
9 *Պօղոս վարդապետ Խաչատուրեան Կ. Պոլսեցի*
10 *Ստեփանոս վարդապետ եպ. Տրապիզոնի*
11 *Ղազար վարդապետ Պոնտոսեան Անմարմին*
12 *Յովհաննէս վարդապետ Սէտէֆճի օղլու*

---

*էլ · յանգ · նէր · թուում էյին պանծացեղ ·*
*Սայս · օղոստահոմ նամսոյ · արեգեղ ·*
*Կարդա՛՝*
*Եւ յանգ նէր թուում ԷՅԻՆ ՊԱՆԾԱՑԵՂ*
*ՍԱՅՍ օղոստահոմ նամսոյ արեգին:*
*Իմացիր եկեղեցւոյն շինութեան տարին.*
7 + 300 + 20 + 400 + 800 + 1 + 400 + 50 + 1 + 3 + 5 + 90 = 6378 *ամ աշխարհի՝ ըստ Եւսեբիոսի Քրոնիկոնին, նկատի առնուած նախ քան զՔրիստոս* 5197 *տարին. ուստի* 6378 — 5197 = 1181 (*ՌՃՁԱ*) + 551 + 1732. *օգոստոս = արեգ ամսոյն մէջ:*

*Եկեղեցւոյն շինութեան տարին է ճշգիւ* 1732 *օգոստոս. Համմտ. Կիւլէսէրեան, անդ, էջ* 31 *ծան. եւ էջ* 32—33:

*Արձանագրութիւնը կը կարօտի վերաքննութեան:*

13 Գրիգոր վարդապետ Խուզի
14 Կարապետ վարդապետ Ճամպազեան
15 Աւետիք վարդապետ (Գալէմք. 179)
16 Սամուէլ վարդապետ Երզնկացի
17 Մանուէլ վարդապետ
18 Գէորգ վարդապետ
19 Պետրոս վարդապետ «Պետօ»
20 Ղազար վարդապետ Մշակ
21 Յարութիւն վարդապետ Սանտալճը օղլու
22 Պետրոս վարդապետ Տիվրիկցի
23 Յովհաննէս վարդապետ Աղւանի
24 Մարտիրոս սարկաւագ (Գալէմք., 272)
25 Պետրոս սարկաւագ Թէրզի օղլու
26 Պօղոս սարկաւագ Ախըր դրանն
27 Կարապետ սարկաւագ Զիլինկիրեան

Վերջին երեքը Նալեանէ առին զաւազանը:

Գրասէր: Յովհ. պատրիարք ծանօթացաւ Ղուկաս Վ. Խարբերդցւոյ, որ Հռոմ առած իր ուսումնքը, կը պարապէր իտալերէնէ եւ լատիներէնէ թարգմանութիւններով: Անոր յանձնարարեց ինքը (ինչպէս եւ ուրիշներ) թարգմանել ժամանակին յարգուած աստուածաբանական, մեկնողական, քարոզչական, ինչպէս նաեւ փիլիսոփայական եւ գիտական գրքեր: Կարճ ժամանակի մէջ հրապարակ ելան բազմահատոր եւ ստուար գործեր, զորոնք հրամայեց օրինակութեամբ բազմացնել եւ մատչելի ընել ոչ միայն Կ. Պոլսոյ գրասէրներու, այլ եւ Երուսաղէմ եւ Էջմիածին: Կ. Պոլսոյ, Երուսաղէմի, Էջմիածնի եւ այլ Մատենադարաններու մէջ մեծ քանակութեամբ կը տեսնուին անոնք մինչեւ ցայսօր:

*Մասնաւորապէս իր յանձնարարութեամբ թարգմանուած են.*

1. *Լուսաւորութիւն խոստովանութեան* (1725. *Կիւլէս.*, 177—182).
2. *Աստուածաբանութիւն Սկոթոսի* (1729. *Կիւլէս.*, 183—189).
3. *Անտառ այլաբանութեան* (1740. *Կիւլէս.*, 190—200).
4. *Խարէութիւն աշխարհի* (*անդ*, *էջ* 188).
5. *Մեկնութիւն Յայտնութեան.*
6. *Գիրք Օրինակաց եւ այլն.*
7. *Իր հրատարակութեամբ լոյս տեսած է՝ Գիրք պատմութեանց երկրին Տարօնոյ, որ կոչի Զենոբ. Կ. Պոլիս* 1719.

*Ասոնց կցած է Յովհաննէս ընդարձակ յիշատակարաններ, զորոնք արտատպած է Կիւլէսէրեան յիշեալ տեղերը.*

*Յովհաննէս Կոլոտ պատրիարք Բաղիշեցի վախճանեցաւ Կ. Պոլիս* 12 *փետրուար* 1741*ին. Մահուան օրը Տարեգիր մը կը նշանակէ փետր.* 13. *ուրիշներ՝ փետր.* 3. *Տապանագիրը՝ Բազմավէպ*, 1928, *էջ* 342 *եւ* 1925, *էջ* 32. *Կիւլէսէրեան*, *էջ ԺԴ.*

*Յովհաննէս Նուրիճեան նուիրած է իր յիշատակին տողերս* (*Գալէմքեարեան*, *Սարգիս Սարաֆեան*, *էջ* 42—43).

*Էր նոյն կորուստ յիրաւ արժան*
*Անմխիթար մեծ աշխատման,*
*Լալեաց, ողբոց եւ հառաչման*
*Հայոց Պօլսոյն Կոստանդինեան.*

*Զի էրն այր մեծ հանապազօր*
*Ներհուն ճարտար բանիւ հըզօր,*
*Որոյ նըման մինչեւ ցայսօր*
*Ոչ ոք եկաց գէտ անղանօր:*

## 29. ԱԲՐԱՀԱՄ Վ. ՔԵՂԵՑԻ, ԿՈՉՈՒԱԾ ԽՕՇԱԲԵՑԻ ԵՒ ՄՇԵՑԻ, ԿԱԹՈՂԻԿՈՍ ԷՋՄԻԱԾՆԻ

*Քեռորդին էր Գրիգոր Բաղիշեցւոյ, որ յիշած է զինքը իր Վիպասանութեան մէջ.*

*Քեռու որդին իմ Աբրահամ,*
*Քեղ գաւառէն առ իս սնեալ:*

*Քեղ գաւառ մասն էր հին Աղձնեաց նահանգին, նոր ըմբռնումով Բաղէշի վիլայէթին (Ինճիճեան, Ստորագրութիւն հին Հայաստանի,* 67. *Հիւբշման, Տեղւոյ անուններ,* 169)*: Գաւառիս անունը գրուած է նաեւ Քաղ եւ Քիղ. նոր յորջորջումը ծանօթ չէ*[1]*: Նկատի առնելով, որ Աբրահամի մայրը քոյրն է Շիրուանցի Գրիգորի, պէտք է անոր ծննդավայրը Շիրուան գաւառի շրջանակի մէջ փնտռել: Մ. Զամչեան, Պատմ. Հայոց, Գ.,* 805 *կը գրէ Աբրահամի կաթողիկոս ընտրութեան առթիւ. «ընտրեցաւ* (1730)... *տէր Աբրահամ Բ.* ի գեղջէ խոշաբայ յերկրէն Վանայ. *եւ զի էր նա առաջնորդ սուրբ Կարապետու՝ որ ի Մուշ, կոչի եւս Մշեցի եւ Քիւրտիստանցի. եւ էր սա ազգական Գրի–*

---

[1] *Հ. Ղ. Ալիշան, Տեղագիր Հայոց մեծաց, էջ* 23 *Քեղի նոր յորջորջումն կը համարի «Խարզան, Խզու». Հմմտ. Նաեւ էջ* 44—45:

գորի վարդապետի պատրիարգին Երուսաղէմի»։ Այս տեղիքը կ՚իւրացնէ Մ. Օրմանեան. «Աբրահամ ընիկ Խոշաբեցի ըսուած է, Վանայ հարաւակողմը Հայոց ձորի սահմանակից գաւառին ասանէն. եւ գիտենք թէ Շղթայակիրն ալ Տիրուանցի էր» (Ազգապատում, Բ., էջ 2872)։ Օրմանեան հոս Տիրուան Բաղէշի շրջանի մէջ գիտէ։ Բայց Խոշաբ, որ թէ գաւառի եւ թէ քաղաքի անուն է, իր դիրքով հեռու կ՚իյնայ Բեղէն, եւ կարելի չէ այլուստ հաստատել թէ Խոշաբ ծննդավայրն եղած ըլլայ Աբրահամի։ Եւ եթէ Բեղ նոյն նկատենք Խզուի հետ, Աբրահամ պիտի նախընտրէր կոչուիլ Հզուեցի, ինչպէս կը կրեն յորջորջումս Բարսղամ Վ. Հզուեցի, եւ իրմէ յառաջ Ներսէս Վ. Հզուեցի եւ ուրիշներ։

Աբրահամ քեռորդին էր Գրիգոր Տիրուանցի-Բաղիշեցւոյ, ինչպէս տեսանք. այս իմաստով իմանալու է Ջամչեանի «ազգականը» եւ ուղղելու է Տէր-Յովհաննէսեանի «որ էր եղբօրորդի Գրիգոր պատրիարքի» (Ժամանակագրական պատմութիւն Ս. Երուսաղէմի, Բ., 104). եւ Ադաւնունիի «մօրեղբօրորդի Շղթայակիր Գրիգոր պատրիարքի» (Միաբանք եւ այցելուք, էջ 4)։ Զայս կը հաստատէ ինքն Աբրահամ, որ ԺԷ. դարու վերջերը օրինակած է Երուսաղէմի Թ. 1464 (Հաւաքածոյ ճառից), որուն յիշատակարանը յառաջ բերած է Սաւալանեան իր Ցուցակին մէջ այսպէս. «գրեալ ի վանքն Ամիրդոլու

*ձեռամբ Աբրահամու դպրի քեռորդւոյ Գրի-
գոր վարդապետի, որդւոյ Աւետիքի եւ Ջու-
հարի»: Որովհետեւ Գրիգոր իր ծնողաց ա-
նունները կը յիշէ Աւետիք քահանայ եւ Սա-
ռա, պէտք է հոս իմանալ, թէ Աւետիք եւ
Ջուհար Աբրահամ դրչին ծնողք են, ուստի
Ջուհար քոյրը նկատելու է Գրիգորի:*

*Ան ծնած է* 1677*ին, ինչպէս կը գրէ
ինքնին. «Իմ ծնունդն թվին ՌՃԻԶ. է» (Էջմ.*
737, *թղ.* 248*բ*):

*Աբրահամ պատանեկութեան հասակին
արդէն կը յանձնուի իր մօրեղբօր Գրիգոր
վարդապետի խնամքին Ամիրտօլի վանքին
մէջ:* 1697*ին ան տակաւին դպիր կ՚օրինակէ
Սարգիս Վ. Կոփեցւոյ, Վաղարշակերտի ար-
քեպիսկոպոսին համար Գրիգոր Տաթեւացւոյ
Մեկնութիւնքն Մատթէի եւ Յովհաննու «ի
վանս Ամրդօլու... յառաջնորդութեան ուխ-
տիս մեծ բաբունապետիս եւ քաջ փաղերայիս
վարժապետիս մերոյ Վարդան վարդապետին»
(Սեւան,* 59· *Մատ, Յուց., էջ* 25)*: Ա. Տէր-
Յովհաննէսեան զինքը «աշակերտ» Գրիգոր
Բաղիշեցւոյ գիտէ (անդ, Բ.,* 104)*. վարդա-
պետական գաւազանը հաւանօրէն ստացած է
անոր ձեռքէն:*

*Վարդան Բաղիշեցւոյ մահէն ետքը ինքն
ալ մէկն էր այն հինգերէն, որոնք հեռացան
Ամիրտօլի վանքէն եւ գացին Տարօն ի միա-
սին ապրելու համար Գլակայ վանքին մէջ:
Անոնց հետ ի միասին ինքն ալ չարչարանա-
կից եղաւ տառապանքներուն, ընկերակից*

փախստականներու եւ գործակից ի նպաստ վանքին ձեռնարկուած հանգանակութեան։ 1708ին ան Մուշ էր (էջմ. 2075)։ Կարգուած է Առաքելոց վանքին առաջնորդ։ Յակոբ քահանայ 1714ին կ՚օրինակէ Մաշտոց մը «ի վայելումն տէր Յովհաննէս վարդապետին, վերակացութեամբ Տէր Սահակ կրօնաւորի, ընդ հովանեաւ Բժան Ս. Առաքելոց վանացն ...յառաջնորդութեան Ս. Առաքելոցն տէր Աբրահամ վարդապետին, ի կաթողիկոսութեան Աղեքսանդրի» (Գ. Տէր–Կարապետեան, Ձեռագիրք Տարօնի)։ 1717ին, երբ Տարօնի տեսուչն Գրիգոր Բաղիշեցի Երուսաղէմի պատրիարք անուանուեցաւ, Տարօնի տեսչութիւնը յանձնուեցաւ իրեն, զոր վարեց մինչեւ 1730։ Յովհաննէս Կոլոտ 1719ին կը գրէր. «ընդ մեզ էր յամենայնի ի սկզբանց անտի եւ մեծապատիւ եղբայրն իմ Աբրահամ վսեմաբան եւ քաջաշնորհ վարդապետն, որ է այժմ վերատեսուչ եւ արժանաժառանգ առաջնորդ Տարօնոյ եւ գահակալ սրբոյ ուխտին այնորիկ» (Կիւլէսէրեան, Կոլոտ, 164)։ 1727ին ուխտաւորութեամբ կ՚այցելէ Երուսաղէմ. այս առիթով կը նուիրէ Ս. Յարութեան տաճարի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյն Յովհաննէս Մկրտիչի սեղանին համար պատկեր մը, որ արձանագրութիւնս կը կրէ. «Յիշատակ է սուրբ պատկերքս Մշոյ սուրբ Կարապետի առաջնորդ Աբրահամ աստուածաբան վարդապետին ի սուրբ յԵրուսաղէմ ի մէջ Ս. Յա-

*րութեան, ի խորանն սրբոյն Յովհաննու Մկրտչին ի պատրիարքութեան Գրիգորի վարդապետին ի թվին ՌՃՀԷ* (1728) *ամին. յիշեցէք ի Քրիստոս»: Իր այցելութեան յիշատակին խաչքար մ'ալ կայ Յակոբեանց վանքը, վերատառութեամբս.*

*«Ի թվին ՌՃՀԶ* (1727) *ամին կանգնեցաւ սուրբ Խաչս բարեխօս առ Աստուած վասն տեառն Յովհաննու պատրիարգ վարդապետի, սրբոյ աթոռոյս սպասաւորի, եւ տեառն Աբրահամու դիտի Մշոյ սուրբ Կարապետի, ծնողաց նոցա. յիշեցէք ի Տէր եւ Աստուած ողորմի ասացէք. ամէն»* (*Աղաւնունի, անդ, էջ* 4):

1730*ին, երբ կը վախճանի Կարապետ Ուլնեցի կաթողիկոսն էջմիածնի, անոր յաջորդ կ'ընտրուի Աբրահամ Բ. առաջնորդն Մուշի Ս. Կարապետի վանքին: Կը հասնի էջմիածին* 1730 *յունուար* 4*ին: Կ'օծուի յունուար* 7*ին* (*էջմ.* 2347): *Ջամչեան կը գրէ. «Սա շինեաց յէջմիածին ի մեծի տաճարին երկուս խորանս՝ յանուն սրբոյն Յակոբայ եւ սրբոյ Լուսաւորչին. նորոգեաց եւ զայլ շինուածս ինչ վանացն»: Կը վախճանի* 1734, *նոյեմբեր* 11*ին* (*էջմ.* 1085, *թղ.* 116*բ. իր մասին՝ Օրմանեան, Ազգապատում, Բ.,* § 1965): *Սիմէոն Երեւանցի կաթողիկոս* (*Ջամբռ, էջ* 29) *տուած է իր նկարագիրը. «այր առաքինի եւ ճգնազգեաց, հեզ եւ բարեբարոյ, աղօթասէր եւ տօնակատար, որ ի մէջ տաճարիս* (*էջմիածնի*)

դռնաչնոյ դասի երկուս սեղանսն կառոյց եւ անուանեաց սուրբ Յակոբ եւ սուրբ Լուսաւորիչ: Զորս եւ զարդարեաց ծաղկօք եւ մարգարէական պատկերովք: Եւ զամենայն պատկերսն տաճարին նա ետ նկարել» (տե՛ս առ այս Գարեգին Կաթողիկոս, Էջմիածնի տաճարի նկարազարդումն ու ծաղկազարդումը ԺԷ.—ԺԸ. դարում, Հայկ հայագիտական տարեգիրք, Բ. տարի 1949—1950, էջ 310—346, յատկապէս 335—342). Յովսէփեան կը գրէր. «Ուշադրութեան արժանի է, որ միաժամանակ Հայ Եկեղեցու երեք մեծ աթոռների ներկայացուցիչները՝ Գրիգոր Շղթայակիր Երուսաղէմի, Յովհաննէս Կոլոտ Կ. Պոլսոյ եւ աւելի ուշ Աբրահամ կաթողիկոս Էջմիածնի, գեղարուեստական մեծ գործունէութիւն են ցոյց տալիս, կարծես, բարի մրցակիցներ հանդիսանալով միմեանց». ...երեքն էլ հոգեկից աշակերտներ Վարդան Բաղիշեցու» (էջ 337):

ԳՐՈՒԹԻՒՆՔ

1. Կոնդակ 1734 յուլիս 14 թուակիր: Հրտ. Բազմավէպ 1924, էջ 62:

2. Կոնդակ ի վերայ Հայր Յօհաննու վանից, 1734 օգոստոս 10 թուակիր: Հրտ. Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 440—441:

3. Կոնդակ ի Ս. Կարապետէ. Էջմ. 737, թղ. 248ր:

Իր գրչէն կը համարիմ հետեւեալ երկու տաղերը.

1. *Տաղ Ս. Աստուածածնի ի տէր Աբրահամ պիտակ բանասիրէ*:

*Արեւ պայծառ եւ երկնային,*

*Կոյս Մարիամ Աստուածածին...*

Վջ. *Ես Աբրահամ նուաստ ոգի,*

*Երկրպագեմ քեզ նազելի*:

*Տնակապ գրերը կը յօղեն.* Աբրահամ Իր ծառայէ:

= *Էջմիածին, Թ.* 2339, *Թղ.* 265*ր*—266*ր*:

2. *Տաղ Յարութեան ի յԱբրահամ վարդապետէ*:

*Արքայ եւ տէր զքեզ բոլորից հաւատամ, հ.:*

*Հայր երկնի եւ երկրի, ստեղծող գոյից հաւատամ, հ.:*

*Տնակապ գրերը կը յօղեն* Աբրահամ:

= *Էջմիածին, Թ.* 2339, *Թղ.* 282*ր*:

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

Ի լրումն վերագոյն յառաջ բերուած վարդապետական ցանկերու կը զետեղեմ այստեղ երկու Վկայագիրներ, որոնք Փիլիպպոս Կաթողիկոսէ եւ Վարդան Բաղիշեցւոյ գաւազաններէն ճիւղաւորութիւններ կը ներկայացնեն։ Առաջինը կը գտնուի Ղազար Ջահկեցւոյ Դրախտ ցանկալի գրքին մէջ, տպուած Կ. Պոլիս 1758ին, էջ 649, այսպէս (Հմմտ. վերը, էջ 16, տ. 4)։

Փիլիպպոս Կաթողիկոս.

«Նորին աշակերտ Յակոբ Կաթողիկոս սրբոյն Էջմիածնի.

Նորին աշակերտ Սահակ Վարդապետ.

Նորին աշակերտ Ղազար Վարդապետ.

Նորին աշակերտ Աստուածատուր Կաթողիկոս Ս. Էջմիածնի.

Նորին աշակերտ Պետրոս Վարդապետ.

Նորին աշակերտ եւ մեղապարտ Ղազար Վարդապետս.

Եւ իմ աշակերտք Ստեփաննոս եւ Յոհաննէս վարդապետք»։

Երկրորդը գտած եմ Էջմիածնի Թ. 1066 ձեռագրին մէջ, որ է կարգ գաւազան տալոյ, գրուած Եղիազար վարդապետի համար, Աստուածատուր երէցէն 1744ին (Հմմտ. վերը էջ 19, 21)։

«Վկայական ծայրագոյն գաւազանի որ ասի ԺԴ:

*Ի գերագանց լուսոյ...: Եւ նա (Վարդան Բաղիշեցի) ետ Գրիգորի մեծի Վարդապետին Բաղիշեցւոյ...:*

*Եւ նա ետ մեծի Յովհաննու վարդապետին Բաղիշեցւոյ...:*

*Եւ նա ետ Իսահակայ վարդապետի Կեղեցւոյ, որ է առաջնորդ Թէոդուպօլի:*

*Եւ նա ետ Պօղոս վարդապետին Թէոդուպօլսեցւոյ:*

*Եւ արդ ես Թէոդուպօլսեցի Պօղոս վարդապետս, որ եմ առաջնորդ Վաղարշաւանու սուրբ Աստուածածնի վանաց, որ ի յերկրին Բասենու որ մականուամբ Հասան ղալու վանք ասի: Եւ ի միջի սոյն ամենապայծառ մենաստանիս սուրբ Աստուածածնի... ետու ծայրագոյն գաւազան եւ իշխանութիւն վարդապետական սիրելի եւ հոգեւոր եւ հարազատ որդեկին իմոյ Եղիազար վարդապետին, որ է ի յերկրէ Արարատու եւ ի գեղջէն Թէգխարապու. եւ է վարժեալ ուսմամբ եւ ընթերցմամբ աստուածային գրոց...:*

*Գրեալ եղեւ սոյն նամակ ընդհանրական ՌՃՂ* (1741) *թուին հայկական, ի յօգոստոս ամսոյ. ԺԷ.ին. լինի աւարտ լման...:*

*Վկայութեամբ ի ներքոյ գրելոց կարգունակաց եղեւ շնորհարաշխութիւնս այս Եղիազար վարդապետին.*

Դաւիթ Վ. Բասենու ի գեղջէն Ախու.
Ղուկաս Վ.ն Կրիտեցի.
Պօղոս Վ.ն Սիւնեցի.
Պօղոս Վ.ն Արզրումցի.
Պետրոս Վ.ն Արզրումցի:

Եւ ես Եղիազար վարդապետս ետու եղբօրորդոյն իմոյ Գրիգոր վարդապետին ըստ վկայութեամբ տէր Նիկողոս քահանային եւ տէր Առաքել քահանային, ի նաւահանգիստն Կոստանդինուպօլիս եւ ի գիւղն Նոր գեղ: Տեսողաց ընդունելի լիցի»:

Էջ 161. Տառկցի Յովսէփ եպիսկոպոս, որդի Սիմէոնի եւ Գուլխատունի, հանդիպելով Բաղէշ 1607ին, կ'իջեւանի «ի վանքս Գոմաց, ի դրունս սուրբ Աստուածածնին եւ սուրբ Գէորգեայ զօրավարին» եւ կ'օրինակէ Աւետարան մը Ջուղայեցի Մահսում վաճառականի համար «ի հայրապետութեան տէր Մելքիսէթ կաթողիկոսի եւ ի յառաջնորդութիւն սուրբ ուխտիս տէր Կարապետ րաբունապետին, որ խիստ հոգէբարձու էր մեզ ամենեցուն եւ սփոփէր զմեզ որպէս հայր զորդի եւ կամ հաւ զձագս իւր, կերակրելով, ըմպելով եւ հանդերձս տալով, զի էր լիասիրտ եւ առատաձեռն, զոր եւ Աստուած հատուցանէ յիւր հոգին ամէն: Եւ ի բռնակալութիւն քաղաքիս Խան Դիւաղնին. բայց այնպէս սովութիւն եղեւ, որ այլ ոչ մնաց շուն կամ կատու, կրիայ եւ այլ ինչ որ ան-

սուրբ են, կերան. զոր ոչ կարեմ ընդ գրով արկանել»։

Յաջորդ տարին Յովհաննէս գրիչ յԱմիթ կը ծաղկէ ձեռագիրն եւ կը կազմէ (Ցուցակ Էջմիածնի նոր ստացուած ձեռագրերի, թ. 44։ Էջմիածին ամսագիր, 1951, թ. 1—3, էջ 87—88)։

Գոմաց վանքի առաջնորդ տէր Կարապետ բարունապետ 1607ին անշուշտ նոյն է Խնդրակատարի առաջնորդ Փարխնդեցի Կարապետ վարդապետի հետ։

Տաոկցի Յովսէփի կը հանդիպինք նաեւ «ի վանքն Բարխձորոյ ի դուռն սուրբ Աստուածածնին, ի Թվ. ՌԾԹ», ուր կէս մնացած Շարակնոց մը կը լրացնէ օրինակութեամբ (Երուսաղէմ, թ. 1645)։

Էջ 247, տ. 22։ Հաւանօրէն 1672/3ին ձեռք բերած է Վարդան Ս. Կիւրղի Պարապմանց գիրքը, ընդօրինակութեամբ Ներսէս Լամբրոնացւոյ յամի 1175, որ ժամանակ մը գտնուած է նաեւ Մեծոփայ վանքը։ Վարդան գրել կու տայ Վարդան (Բալուեցի՞) քահանային Կիւրղի Գանձուց գիրքն ալ, եւ կը յանձնարարէ Սահակ Վանեցւոյ որ նորոգէ Պարապմանց գրքի կազմը եւ անոր մէջ դետեղէ նաեւ Գանձուց գիրքը։ Այս ձեռագիրը այժմ կը պահուի Վենետիկ, Մխիթ. Մատենադարան 448 համարին տակ (Ճառք Ս. Աթանասի. Վենետիկ 1899, էջ ԺԴ—ԺԵ)։

# ԱՆՈՒՆՆԵՐՈՒ ՑԱՆԿ

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

## ՄԱՏԵՆԱՇԱՐ

ՃԾԸ. Ակինեան Հ. Ն., *Ս. Մաշտոց վարդապետ. կեանքն եւ գործունէութիւնը. հանդերձ կենսագրութեամբ Ս. Սահակայ*: 1949, *էջք* ԺԱ + 473: *գ. Փր.* 6·—

ՃԾԹ. Ակինեան Հ. Ն., *Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան. «Գերի Կինը», Ս. Հռիփսիմէ եւ Ս. Նունէ*: 1949, *էջք* ԺԱ + 348: *գ. Փր.* 5·—

ՃԿ. Սեֆուլայ Հ. Օ., *Նոր Կտակարանի գրքերու կարգը Հայոց քով*: 1949, *էջք* 96: *գ. Փր.* 1·—

ՃԿԱ. Աբեղեան Ա., *Քերովբէ Պատկանեան Դորպատում*: 1949, *էջք* 54: *գ. Փր.* 1·—

ՃԿԲ. Պօղոսեան Հ. Ե., *Կարապետ Արթին Փաշա Տատեան* (1816—1873): 1949, *էջք* 84: *գ. Փր.* 1·50

ՃԿԳ. Ակինեան Հ. Ն., *Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու եւ Հայոց եկեղեցական տարին է. դարու սկիզբը*: 1951, *էջք* 192: *գ. Փր.* 2·—

ՃԿԴ. Ակինեան Հ. Ն., *Սիմէոն Պղնձահանեցի եւ իր թարգմանութիւնները վրացերէնէ*: 1951, *էջք* 276: *գ. Փր.* 1·50

ՃԿԵ. Տէր-Պօղոսեան Հ. Պ., *Տեղագրական հետազօտութիւններ Հայաստանի մէկ քանի քաղաքներու եւ բերդերու մասին*, 1951, *էջք* 134: *գ. Փր.* 2·—

ՃԿԶ. Աճառեան Հ., *Եւրոպական փոխառեալ բառեր հայերէնի մէջ*: 1951, *էջք* Ը + 188: *գ. Փր.* 4·—

ՃԿԷ. Ոսկեան Հ. Հ., *Բարձր Հայքի վանքերը*։ 1951 էջ ԺԲ + 230։ գ. Ֆր. 4·—

ՃԿԸ. Ակինեան Հ. Ն., *Եղիշէ վարդապետ եւ իւր Պատմութիւնն Հայոց պատերազմին. քննական ուսումնասիրութիւն*։ Հատ. Գ.։ 1952, էջք 530։ գ. Ֆր. 7·—

ՃԿԹ. Ակինեան Հ. Ն. Վ., *Կարմիրն Վարդան եւ Աւարայրի ճակատամարտը ըստ Ղազար Փարպեցւոյ*։ 1951. էջք Է + 96։ գ. Ֆր. 1·—

ՃՀ. Պօղոսեան Հ. Ե. Վ., *Գուլամճեան եւ Թընկըրեան Գերդաստանները*։ 1951, էջք Ե + 122։ գ. Ֆր. 1·20

ՃՀԱ. Ոսկեան Հ. Հ., *Գնունեաց եւ Ռշտունեաց Նախարարութիւններ*։ 1952, էջք Ը + 156։ գ. Ֆր. 3·—

ՃՀԲ. Ակինեան Հ. Ն., Վ., *Բաղէշի Դպրոցը* 1500—1704. *Նպաստ մը Հայոց Եկեղեցւոյ Պատմութեան եւ Մատենագրութեան*։ 1952, էջք Ը + 390։ գ. Ֆր. 5·—

ՃՀԳ. Ակինեան Հ. Ն., *Մատենագրական Հետազօտութիւններ*. հտ. Ե. 1953։ գ. Ֆր. 5·—

---

*Հասցէ*

**ՄԽԻԹԱՐԵԱՆ ԳՐԱՎԱՃԱՌԱՆՈՑ**

*Librairie des Pères Mechitharistes*

*Vienne VII/62, Mechitaristengasse 4 (Autriche)*

